Յետ այսորիկ պատառեցին զհանդերձս նց յանդամոց նց, և պրկեցին զնս մի մի 'ի չորս ցիցս. և ծակեցին զմորթս 'ի պճղունս նոցա ընդ օրինակի ոչխարաց, և եդին փողս, և փըչելով այնմ կենդանւոյն մորթեցին զմարմինս զերեսին 'ի ներքուստ 'ի վեր մինչ 'ի ոտսն (6). և ծակեալ զծոծրակսն՝ ընդ այն հանին զլեզուն. և վարեցին քարինս ընդ գոգս նոցա, և ցրուեցին զաղիս նոցա յորովայնիցն ընդ գոգս նց. և քանզի դեռևս կային կենդանի, ապա բարձին զգլուխս նց սրով: Եւ այսպէս սքանչելի համբերութբ կատարեցան նոքա սրբ Գայիանեանք զկնի սրբոց Հռիփսիմեանց:

Նոց՝ երկու կատարումն սրբ կուսանաց 'ի վեշտասաներորդ ամի թագաւորութեն Տրդատայ, և յութուտասաներորդ ամի կայսերութե Դիոկղետիանոսի, այն ամ էր Տեառն. 301 : 'Ի քսան և վեց ամսոյն հոռի, (որ յայնժամ անկանէր 'ի նոյեմբերի. 7.) կատարեցաւ սրբն Հռիփսիմէ՝ դասուն իւրով. լգ. նահատակակից ընկերօքն հանդերձ. և 'ի քսան և եօթն ամսոյն հոռի (որ է նոյեմբ. 8.) սրբն Գայիանէ. է. ընկերօքն (7). որ ընդ նմա պատերազմեալ պսակեցան, և առին զնշան յաղթութե. ընդ ամ՝ օգիք. Հ և Է (8) : Իսկ թէ զիա՞րդ յետ վեց աւուրց եհաս պատուհաս ածասաստ 'ի վր արքային Տրդատայ, մինչև այսահարիլ և փոխիլ 'ի խոզակերպ տեսիլ քստմնելի, ընդ նմին և բազմաց դիւաբախ մոլեգնիլ. և թէ ո՛րպէս զկնի այլ եւս երից աւուրց ելեալ սրբն Գրիգորի 'ի վիրապէն՝

պէն՝ ամփոփեաց զնշխարս սրց կուսանաց , և բժշկեաց զԹագաւորն և զհարուածեալսն , և լուսաւորեաց զհայաստան , և շինեաց ըզ վկայարանսն զերեսին՝ զհռիփսիմեանց և զգայիանեանց և զմինաւորին որ 'ի հնձանին թաղեալ , հանդերձ եկեղեցեաւն էջմիած-նի , ուսնիմք ասել 'ի վերս սր լուսաւորչին , որպ և սմին տրդատայ և որոց ԼԷ նմա :

Այլ յայսմ վայրի շատ լիցի նշանակել , թէ մարմինք սր կուսանացն իննն օր անթաղ մը-նացին 'ի բացի՝ անմերձ 'ի գազանաց և 'ի թռչնոց , անապական և անուշահոտ . մին-չև ամփոփեալ ձեռամբ լուսաւորչի յիւրա-քանչիւր տապանս՝ եդան յերիս վկայարանս . և կնքեցան տապանք միոյ միոյ 'ի նոցանէ արքունի մատանեաւ . և ապա 'ի քահանայա-նալ սմին գրիգորի՝ կնքեցան նաև հայրա-պետական կնքովն նր : Իսկ յանցանել դարու միոյ 'ի վր՝ իբրև աներևութանայր տեղի տապանացն , սմին սահակ պարթև խնդրեաց յայն աղօթիւք . և գտեալ զնոս՝ կնքեաց ան-դրէն իւրով մատանեաւ , և հանգոյց յերևե-լի տեղւոջ 'ի նոյն վկայարանս : Իսկ 'ի մու-տանգամ անհետանալ յետ երկու այլ դա-րուց՝ կոմիտաս կաթողիկոս վերստին ետ փո-րել , և հանել 'ի դուրս . և նորոգեալ զվը-կայարանս նր պայծառ ևս շինուածով հաս-տատեաց և իւրով կնքով . և ասաց 'ի նաւա-կատիս տաճարի նր զպանծալի շարականն ԼԷ այրուցեալնոյ՝ * Անձինք նուիրեալք սիրոյն սրբի ‖ . Թող զհետ քարոզն աքանչելի զառ 'ի

լու-

լուսաւորչէ առաջեալ 'ի պատիւ սրբոց Հռիփ-
սիմեանց. * Ա͞Ծ մեծ հզօր և փառաւորեալ:
Իսկ զկնի ժամանակաց բացեալ ոմանց 'ի
հայրապետաց զտապան սրբոց կուսանաց՝
բաշխեցին զմասն ինչ յոսկերաց նց. որպէս
և այլք 'ի ծածուկ բարձին զմասն ինչ. սուրբ
գտանի ոփռեալ ուրեք ուրեք. կայ և մասն
փոքրիկ 'ի սբ Նշխարաց անտի Հռիփսիմեայ
կուսին 'ի ձեռս մեր՝ պարգևեալ յումեմնէ
յեպ̃սաց եկեղցոյ յէջմիածնէ:

Ուր արժան է սքանչանալ ըն անբաւ մարդա-
սիրութե փրկչին և ըն անքննին տեսչութե
վերին իմաստութե, որ հեղմամբ արեան սբ
կուսանացս և բարեխօսութ նց պարգևեաց
հրաշապէս լուսաւորութե հայաստան Ազգիս.
որք բազմօք հաստատեաց և նա ինքն երիցս
երանելի սբ լուսաւորիչն մեր 'ի վկյութե
քարոզութե իւրոյ առ տրդատ և առ ամ ժո-
ղովուրդն հայաստանեայց:

Սմին իրի և սբն մովսէս խորենացի այսպէս
կնքէ զառանձին իւր պատմութի զսբց Հռ-
իփսիմեանց (բաց 'ի ներբողինէ՝ զոր արար
'ի վր Հռիփսիմեայ). * Արդ ով պատմես-
,, ցէ զզօրութիս նն՝ լսելի լինել սքանչելեաց
,, նր. որ 'ի ձեռն ողորմութե իւրոյ ծագեաց
,, մեզ լոյս գերազանց՝ յարևմտից արևելից
,, հայաստան երկրի, մանաւանդ 'ի ձեռն
,, կանանց, յորոց մտին մեզ քյծ. զի ամ ինչ
,, կարելի է նմա, և տկարանայ առ 'ի նմա
,, նէ և ոչինչ... Յորոց ձեռն ծագեաց մեզ
,, անստուեր արեգակն 'ի բարձանց՝ լուսա

,, ւո-

„ Ճառից՝ որ հնաւին էր ՚ի սասուէ, կարգեցի զճշմարտութին,
„ զատենաբանութեան իմաստնոց յեղլաղացելոց իմ թերա_
„ ցեալ՝ բազմ անգամ զատ զոմ գրոցս. և ՚ի պատմութեն
„ մերոյ հիւսմունս յեղակարգեցէք. զոր թարգմանել կա_
„ մեցայ. և ոչ ժամանեցի մնացել այլուամ ունելաց. զի
„ մահկանացու գոլով՝ և ծեր և հիւանդոտ, երկու_
„ ցեալ՝ ոչ հրեշտակ գոլով, կմ որդի բարձրելոյ, որպ
„ Ածայինն ասէ բան, սակայ մի երկրորդեցի ՚ի նոյն
„ գրոցս, զոր քաղ քարտողարն թողեալ ագաթանգե_
„ ղոս. որ և ոչ կարէր զմմ զբանս և զգործս ՚ի միասն
„ ծավալացուցանել, մնալով և այլոց ևս : Եւ արդ՝ ՚ի
„ նոյն գիրս պատմի, ՚ի նոյն թագաւորական տոհմէ գո_
„ լով սպյն լինել ազատաս կայսեր, ցեղապետ թագա_
„ ւորաց. լինի և գայիանէ ՚ի նոյն ցեղէ, առաքինի և
„ զարմանալի հոր և մոր դուստր, նախանձ ունելով
„ առաքելական դասուցն, զրէ ամ անսուք նոքա էին
„ մօտաւորյնք առ նմ, որոց ոչ հին համբաւով ՚ի մոռա_
„ ցութն ինչ էին եկեալ գործք նց. ընդելեալ, կմ յու_
„ լացեալ՝ որպէս առ մերովք ժամանակօքս ածպաշ_
„ տութին նուաղեալ, սրբութի լռեալ, և անկել մեզք.
„ այլ՝ արքն որպս թէ առաքեալք՝ լաւութե նախանձ
„ ունէին, և կանայքն զգաստանային՝ նախանձ ունե_
„ լով ածածնին, քնի լինելով մարք. որպ ասաց ոմն ՚ի
„ հարցն||. և որ ՚ի կարգին՝ ըստ եղելոյս ՚ի վկայաբա_
նութե :

Եւր տեսանես, զի որպս վերնագիրն՝ նոյնպէս և ամն
ամ սարքք վկայէ զայդ գործ լինել Խորենացւոյն. այլ
դըշբախտութին աղօտացուցեալ է զբանն. որոյ իմաստ
մեզ կարևոր այս երևի, թէ Խորենացին ՚ի կարգի բուն
պատմագրութե իւրոյ լռել զվեշտակ հռիփսիմեանց նշա_
նակեալ ՚ի բանից ագաթանգեղոսի, և ապա յայլ յու_
նական մատեանս խուզարկեալ, և ոչ գտեալ զխնդրե_
լին, ՚ի ձեռս բերեալ է զգիրս ինչ կմ զվեշտակարան
պատմական վս մեծահորդութե հռիփսիմեանց. և այնպէս
յաւելեալ ՚ի նոյն և զաւանդութիս գաւառացն՝ ըստ որս
անցին նք ( որպ յայտ է յընթացից բանին ), լցեալ է
զմնացուածն կամ զթերին ագաթանգեղոսի, * որ և
ոչ կարէր (ասէ) զմմ զբանս և զգործս ՚ի միասն ծավա_
„ ցուցանել||:

(2) Որպէս վայելուչ գրէ Խորենացին սաստիկ զայս
աղօթս ՚ի բերանոյ գայիանեայ առ տիրամայրն՝ յանձ_
նելով նմա զատնն իւր զհռիփսիմէ, ( զոր և նովին ե_

ոչ երբէք պակաս լինէր յաւուրս հեթանոս թագաւո-
րաց. և ԽԸ այսմ զոյի կմ՛ եւզոյէ մին ՚ի քերց գայիանեայ
մնացելոց ՚ի հռովմ, նահատակեալ ՚ի պատճառս փա-
խըստեան հռիփսիմեանց՝ յիշի ՚ի խորենացւոյն և ՚ի Հ.
որ կարէ լինել կոյս ոք, և կարէ լինել կին առնակին
իբրև վանապան արգելանանից կուսանացն. և եթէ առ-
ցուք ԶԸ վերջին վիճակի, նոյնանայ ընդ այնմ՝ որ գրի
՚ի Լ. յուլիսի. 5. * ՚ի հռովմ (կատարումն) սրբոյն զոյի
„ վկայուհւոյ, կնոջ երանելւոյն Նիկոստրատոսի վը-
„ կայի... առ կայսերութ դիոկղետիանոսի ||. զորոյ և
զպատմութիւն ոչ գտանեն լիով բոլլանդեանք, այլ միայն
զյիշատակուն ՚ի վկայաբանութեն սրբոյն սեբաստիանոսի
՚ի 20. յունվարի:

(9) Արժան էր աստանօր դնել ամբողջ և զներբողեան
նորին երանելւոյն մովսէսի քերթողահօր հրաշազարդ
յօրինուածովք ՚ի յիշատակի սրբոյն հռիփսիմեայ և նո-
րին վկայակցացն. այլ քանզի երկար է յոյժ, և ուրոյն
տպագրեալ զայն գիպօղագոյն. խուն մի ճաշակ տացուք
՚ի ժամուս, առ ՚ի տալ գիտել՝ թէ ոճ խորենացւոյն
բանք զագաթանգեղոսի զպատմութե սաորագրեն. նոյնոճ
և բանք շարականին և տաղից և գանձուց և ՆԾ մատե-
նագրաց յայսմ մասին՝ զոյգ Է ագաթանգեղոսի և զխո-
րենացին քաղեն: Արդ սկիզբն ներբողենին ունի այս-
պէս. * Նորահրաշ և գերապայծառ է տօնս, և զա-
„ ւետիս հոգևոր ցնծութե Է հանուր առաջնէ բոլոր
„ հայաստանեաց... Կուսական է տօնս... մարտիրո-
„ սական է տօնս, և ծննդեանական հանդէս ||, այլովքն
հանդերձ. յորոց քաղեմք զառաջինկայ բանս ևեթ.

* Այսօր յիշատակ սրբ և մաքուր անարատ քնի հար-
„ սինն. Հռիփսիմեայ տօնեմ, և որ Է նմա աղբեւր ըզ-
„ գաստութե և մայր հաւատոյ գայիանեայ, և որդէք
„ որբութե կուսանք իմաստունք՝ մշտավառ լուսով ջա-
„ հազգեաց՝ ծագեն յարևմտից զերրորդութեն համա-
„ պայծառ ՚ի հայաստանս փայլատակեալ աշխարհ (ըզ-
„ լոյս)... Արքայի լեր, և ցնծա հայաստան Տ, նոր
„ իէլ, երկիր աւետեաց և դրախտ ածատունդ՝ զար-
„ դարեալ առաքելօք և մարգարէիւք, և սրբցն լուսե-
„ ղէն դասիւքն. վկայիցն արեամբ՝ ՚իքեզ մոլորութեն
„ չիջաւ բոց, և Չ.մարտութե ջահ վառեալ բորբոքե
„ բոց՝ լոյսն անպատարորբոց ճառագայթիւք... Աշա
„ գայ հարսն կոյս սլացեալ ՚ի թևս հոգւոյն... գայ
„ մատանէ ցնծութ ՚ի յառագաստ արեան, անեւէ զնը
„ իւր՝

» իւր՝ ցնծութեամբ եկեալ 'ի նոր առագաստ 'ի զենուածն
» խաչին: Հրով և արեամբ հարսնանայ այնմ, որ 'ի
» հուր ծնունդ մաքրեաց զնա, և արեամբն իւրով ծի-
» րանաներկեալ՝ խաչազգեաց լուսով պսակեալ՝ ին-
» քեան հարսնացոյց. որում հոգին սբ հովանաւորել
» ծածայլին հարսանեացն՝ անապական կուսութբ ծնաւ
» 'ի յոյս կենդանի. այս է բազմերջանիկ և սբ կոյսն
» Հռիփսիմէ...
» Բայց մի զի պսակեալս այս 'ի հոգւոյն սբյ հարսն՝
» մայր իմոյ հոգւոյս, կուսութբ անապական զիս ծնել,
» և 'ի գիրկս սրբութեան գգուեալ, կուսական արեամբն
» զմծգխութեան արբուցեալ կաթն՝ հաղորդեցոյց զիս
» 'ի բանն կենաց. և բնաւորականն այն 'ի ծննդոց առ-
» մարս առանց ուսման բնաւորել զգութ՝ զիմս սափ-
» ալէ գեղաբրոյս անձն՝ զնոյ մորս և զկուսի (որ) ամա-
» վայելուչ արանց ներբողելի, (սակաւուք ներբողել)
» 'ի յարախմբմունս հոգևոր սորա ծննդոց...
» Սա՝ որպէս ամենեցունց յայտնի է, 'ի հռովմայեցւոցն
» գերապայծառ նահանգէն, 'ի ծիրանափառ պատուա-
» կանացն կայսեր՝ երկնային բուսաւ ծաղիկ, առաքե-
» լական արեամբն պետրոսի և պօղոսի ... առոգեալ,
» փթթեալ... ոչ միայն հոգւոյն մաքրութբն բազմա-
» պայծառ կուսութեն ճառագայթիւք փայլեալ... այլև
» որպէս արդարև ճշմարիտ լուսոյն հայելի՝ արեգակ-
» նապէս փայլէր մարմնովն՝ գեղեցկապէս առեղծմամբ
» քան զծնունդս կանանց ... բնաւ որ գրախտ երկ-
» րորդ ադամայ՝ հրեղէն պարուքն շուրջ փակեալ....
» Յայս գրախտ՝ նախաշաւղն ջանայր մտանել օձ... սա
» զկերպարանեալն 'ի պատկեր արարչին՝ զկոյս հովա-
» նացեալ զօրութբ բարձրելոյն՝ տեսեալ 'ի կերպի յան-
» ցաւոր կնոջն, հնարէր ը մահուն արկանել Թիւնիւք,
» փոխանակ գեղեցկապատիր պտղոյն՝ զոսկիակուռ ծի-
» րանազարդ կայսերական պատուէրով շքեղացելով զօ-
» աւղն հռովմայեցւոց մոլեկան արփանօք 'ի տենչանս
» բորբոքէր՝ հարսնացուցանել ինքեան...
» Այդ չարին այդքան. իսկ կուսին զի՞նչ: զփեսաւե-
» րացն խանդաղատական արձակէր ձայն, թէ մ' մեկ-
» նեացէ զմեզ 'ի սիրոյդ քումմէ. և թէ՝ ահա մեք թո-
» ղաք զամ, և եկաք զկնի քո. և թէ՝ ընդ կեցցուք, և
» ը քեզ խաչեսցուք. և թէ՝ ը հովանեաւ նր փափա-
» քեալ նստցուք, և աջ քո ընկալցի զմեզ: Վասն կենա-
» րար փրկչին, զի առաջ, ո՛ն արքէք գնասցո՛ւք առաի,

D 3 » զար-

,, զարթուցեալ այսու ձայնիւ զուարթուն սր̃ սերով_
,, բէն հողեղէն՝ իմաստուն կուսանացն դասուք, սլացեր
,, 'ի թևս հոգևորս զգաստ և մաքուր կուսութեան, հա_
,, մանման թեթև ամպոյ ( Միշտ կուսի՝ ) յոր տր̃ն նըս_
,, տեալ մտանէր յԵգիպտոս, վերանայր 'ի ծագաց երկ_
,, րէ, 'ի գլուխ լերանց՝ որ անդ նստէին, և զընդ
,, երկնաւ շրջափակեալ, լերինք՝ յորս մեծն հանգչի, որք
,, են մարգարէութեան ցնծան առաջի տն̃, պետրոս և պօ_
,, ղոս. 'ի սոցա գրկաց լուսաւորս այս գաւառ, ամայ ա_
,, րօտատեսիլ՝ զանձրև հոգւոյն սր̃յ հօսեալ, և ցօղեր
,, 'ի ծագս հիւսիսոյ յայն այրարատոյ՝ յանդաստան երկ_
,, նաւոր մշակացն, Թադէոսի և Բարթողոմէոսի սր̃ց
,, առաքելոյն, զուարթացուցանել զբաղմածաղիկ քա_
,, րոզութեան նց̃ բոյս :
,, Ծագեալ եհաս առաւօտն անստուեր լուսոյն բաղ_
,, մաստեղն լուսով առ զամբարաշահիւք պարուք հո_
,, գևոր աստեղացն, աւետարանել զծագումն արեգա_
,, կանն արդարութ̃, ( որ ) բաղմափայլ Ճառագայթար_
,, ձակ լուսով երեք հնգից ամօք 'ի ծոց երկրի աղանէ
,, ( սր̃ լուսաւորիչն, ) ելանել և զխաւարչենաւորն առնել
արէ այսմ Ծի.... ( Այսուհետև Ճախ նկարագրէ զբնա_
կել հալիփախմեայ և ընկերացն 'ի հնձանս. զմնեամար_
տութիւն Է արգասոյ, և զպղղթութ̃ աւետխն առ ըն_
կերս իւր, և այլն. այլ մեզ 'ի դէպ է սոսս զնկարա_
գրութի Ոնահաստակութ̃ ևեթ յառաջ բերել. զի ասէ. )
,, Կոյսն զփեսայն աղաչէր, և աւանդեալ զինքն՝ խո_
,, նարհեցուցանէ զգլուխն 'ի պսակն. քանզի եհաս
,, այնուհետև խուարազգեաց վանիչն՝ ընդ իւր առեալ
,, զիշխանսն պարթևազանց. և զօրս հրաբորբոք ջահիւք՝
,, խամրացուցանել այրել զանթառամ կուսութ̃ վարդն,
,, որ լուսեղէն կանաչութ̃ հրոյն էր ծաղկեալ. անդէն
,, տացեալ չարն՝ եթէ մոլորութ̃ իւրոյ բոց՝ այրմամբ
,, նր̃ էր շիջանելոց. և ցօղով արեամբ նր̃ պարթևք էին
,, ծաղկելոց յանծութեան գաւիթս.... Քանզի հրամայա_
,, րեալք 'ի նմանէ իշխանք Թագաւորին և զօրք՝ գասան
,, և անողորմն տանջանս 'ի վր̃ անձէին մարմնոյ: Եւ այս
,, լինէր մեզ առիթ կենաց. իսկ չարին՝ մահուն: Քանզ
,, զի կապեալ լինէր մաքուրն՝ փոցեալ 'ի բանն. և ըղ_
,, մեզ լուծեալ 'ի կապանաց բաղմածութեն՝ չարին կա_
,, պելով զիշխանութ̃: Մերկանայր մարմինն լուսազ_
,, գեաց առագաստեալ սրբութ̃. և զմեզ զգեստաւո_
,, րեալ սրբութ̃ աւազանին լուսով. մերկացուցանելով

,, զշա_



# ՓՈԽԱԴՐՈՒԹԻՒՆ ՆՇԽԱՐԱՑ

սրբյն Յովհաննու կարապետի, և Աթանա գինեայ եպիսկոպոսին ։

Հ. Օգոստ. 11. որ և Նաւասարդի. ա. ըստ անշարժ տոմարի յայսմաւուրս" ։ Ա. Գաւառագեղոս ։ Օ երեքշ Գլուխ ։ Ճ. տարանջնոց ։ Ըստ Նարոսնեան յամի. 311. համար. ԷԷ ։ (1)



## ԱՅՍ ԵՐԿՐՈՐԴ ՏՕՆԻՆ

սրբյն յովհաննու կարապետի և մկրտչի՝ ’ի կարգի տօնացուցին. այլ զօրութ առաջին, ըն որում * Այսօր շնորհեցան մեզ դեղ կենաց նշխարք սորին ոսկերաց ’ի ձեռն սբ լուսաւորչին հայաստանեայց Տրի. և ’ի գլխաւոր տօնախմբութէ աստի սբ կարապետին՝ զոր կարգեաց սբ լուսաւորիչն ’ի պատճառս փոխադրութե նշխարաց, ’ի սկզբան տարեգլխոյ հայոց՝ յն յառաջնում աւուր նաւասարդի, առեալ եղեն և պատճառք տօնելոյ զմկրտչին ’ի զանազան աւուրս յկնի դարս. ոչ նշանակեսցուք զկնի պատմութե փոխադրութե նշխարացս ։

Արդ՝ ըն որում գրեն ագաթանգեղոս ատենադպիր տրդատայ, և զենոբ գլակ աշա-

կերտ

կերպս լուսաւորչին, յորժամ յետ ինն աւուր կատարման սրբոց Հռիփսիմեանց՝ ի ձեռն տեսլեան երևելոյ խոսրովիդխտոյ քեռ Թագաւորին՝ ել սրբ Գրիգոր 'ի վիրապէն, և բժշկեաց զտրդատ և զնոմ հարուածեալսն, և յայտնեցաւ լուսաւորիչ հայաստան աշխին, կայր առնէր նշ այլն ոչ, թէ պիտոյ է ձեզ խնդրել զոք քահանայ ոչ և հովիւ և առաջնորդ աշխին, որ մկրտեսցէ զձեզ և լուսաւորեսցէ և զարդարեսցէ ամ եկեղեցական կարգաւորութբ: Իսկ Թագաւորն ամ աշխաւ զնա ինքն զգրիգոր խորհեցաւ տալ ձեռնադրել 'ի քահանայապետութի ազգին. և թէպէտ բազմօք հրաժարէր սրբ լուսաւորիչն, բայց ստիպեալ յերկնաւոր հրամանէ՝ որ եղև առ նա 'ի ձեռն հրեշտակին, ընդունել զկարգ քահանայութե, ել գնաց 'ի կեսարիա քաղաք կապադովկացւոց՝ որ և մաժակ կոչի՝ յառաջին հայս, հրովարտակաւ տրդատայ արքայի և ուղեկցութբ երևելի նախարարաց հանդերձ զօրօք նոցին. և անդ մեծապէս ընդունելութի գտեալ և արժանաւոր պատուի խոստովանող վկայի յում ուխտէ եկեղեցւոյն, ձեռնադրեցաւ 'ի սրբյն ղևոնդեայ պատրիարգէ տեղւոյն քահանայ և եպիսկոպետ հայաստանեայց՝ յամի տն. 302:

Իսկ եղև զկնի հանդիսի օծմն՝ 'ի դառնալ բանակին հայոց ուրախութբ, յորժամ կամեցաւ սրբն ղևոնդ մեծարել զսրբն գրիգոր հոգևոր ուղերձիւ նշխարաց սրբց, սրբն գրիգոր խնդրեաց 'ի նմանէ 'ի սպարգևի մասին

և

և յօգնականութիւն վասն նորադարձ ազգին՝ մասն երևելի 'ի նշխարաց մեծին յովհաննու առաքելոյ և մարգարէի և կարապետի և մկրտչի որդւոյն ա̃յ . զի այն իսկ էր պատուականին և նշանաւոր քան զա̃մ մասունս գտեալս 'ի կեսարիա , անցեալ 'ի ձեռն սրբոյն յովհաննու աւետարանչի 'ի ձեռս աշակերտի նր̃ սրբոյն պօղիկարպոսի զմիւռնոյ հայրապետի . որ և պահէր երբեմն յեփեսոս . իսկ փիրմիլիանոս աշակերտ որոգինի՝ եպ̃ս եղեալ կեսարացւոց յաւուրս հալածանաց դեկոսի յամի տ̃ն 251 . բերեալ էր զայն 'ի կեսարիա . և պահէր պատուով ցաւուրս սրբոյն ղևոնդեայ : (2)

Արդ 'ի խնդրել սրբոյն գրիգորի 'ի ղևոնդիոսէ զայսպիսի մեծ խնդիր , զառաջինն դժուարին թուեցաւ նմա՝ առաւելապէս վասն ահի ժողովրդեանն . այլ յետոյ հրաման առեալ 'ի տ̃նէ լնուլ զգեղեցիկ խնդիր գրիգորի , 'ի գիշերի վերջնումն՝ յորում ունէր նա մեկնիլ 'ի կեսարիոյ , ետ զխնդրելին : Այլ զի արդէն իսկ չէր ինչ ամբողջ մարմին կամ մեծամեծ ոսկերք , վ̃ն վաղագոյն բաժանեալ գոլոյ 'ի զանազան տեղիս , այլ՝ մասն ինչ նշխարաց ( և որպէս կարծի , բազուկ սրբոյն ) , տայ նմա գրեթէ զբովանդակն իսկ ( ասէ զենոբ ) , զսակաւ ինչ մասն 'ի տեղւոջն թողեալ . Ը̃ որ ուրախ եղև յոյժ սրբն գրիգոր , և մեծապէս շնորհս կալաւ պատրիարգին ղևոնդի :

Այլ 'ի վաղիւ անդր՝ 'ի ժամուն , յորում հան-

նշխարաց երկոցունց սրբոցն . Թող զընծայսն՝ զորս ետուն սրբյն Ղւոնդի հայք ՝ի դիմաց արքայէն տրդատայ եւ գրիգորի . եւ այնպէս արձակեցան սիրով ՝ի խաղաղութեան :

Արդ ելեալ սրբյն գրիգորի ՝ի կեսարիոյ համդերձ նախարարօք՝ եկն նախ ՝ի սեբաստիա . եւ անդ մնայր աւուրս ինչ , եւ հաւաքէր առ ինքն զդասս կրօնաւորաց եւ քահանայից եւ զայլ անձինս երեւելիս ՝ի վրդպութեան՝ ՝ի յունաց եւ յասորւոց , գործակից ունել զնա ՝ի լուսաւորութիւն համօրէն հայաստանեայց . յորոց սակի անուանի էին անտոն եւ կրօնիդէս որքակրօն միայնակեացք , զորս ետ սրբն Ղւոնդ ՝ի գործակցութի լուսաւորչին : Ընտրեաց սրբն գրիգոր եւ զայլս բազումս յաշակերտութի՝ ձեռնադրել զնա ՝ի քահանայս եւ յեպսկպոսունս ՝ի պէտս Տին հայոց . յորոց մի եղեւ եւ եղբայրն եղիազարու նիւստրացւոց եպսի՝ զենոբ ասորի , մականուանեալն գլակ , որ պատմէ զայսոսիկ :

Ապա չու արարեալ եկին ՝ի սահմանս մեծին հայոց . եւ իբրեւ հասին ՝ի տուրուբերան Տ ( որ է մշու երկիր ) , ոմանք յիշխանաց անտի զգացուցին սրբյն գրիգորի՝ թէ ՝ի գաւառին տարօնոյ յիննակնեան տեղիս կան երկու բագինք կռոցն դեմետրի եւ գիսանեայ՝ գլխաւոր տեղիք հեթանոսական պաշտամանց , ուր դեւքս ձօնեն դիւաց . վսյ դէպուղիղ գնացին անդր ՝ի քանդել զայն մեհեանս : Այն իբրեւ զգացին քուրմք տեղւոյն՝ Ը յառաջագոյն ազդեցին ուխտանենք

իշ

իշխանին հաշտենից , փութացան զօր կազ-
մել 'ի գաւառականաց · ազդ արարին և յաշ-
տիշատ քրմացն երից մեհենից՝ վահագնի, ա-
նահտայ և աստղկան , և ելին պատերազ-
մաւ ընդդէմ բանակին գրիգորի · այլ 'ի պա-
տուհ մատնեալ՝ չարաչար խորտակեցան , և
մնացեալքն հարկեցան զիջանիլ առաջի իշ-
խանաց հայոց :

Բայց քանզի մեծ էր կուռն , սբն գրիգոր
թաքոյց յառաջագոյն զսբ նշխարսն յանյայտ
տեղի ուրեք առ ափամբ սյգեստանեայց · և
ինքն ընդ ստիպելոյ նախարարաց ամրացաւ
'ի թերդի ուրեք : Սպա 'ի դադարել մարտին՝
յորժամ ժողովէին ցրուեալքն 'ի բանակէն
ընդ մութն գիշերի , յանկարծակի ծագեաց
լոյս սաստիկ 'ի տեղւոջէ անտի՝ ուր ամփո-
փեալ կային նշխարք սբցն · մինչև լուսաւո-
րել զմերձակայ դաշտս և զգիւղորէս · վասն
այնր դիմեցին հանդերձ բնակչօք տեղեացն ·
և զայն գիշեր անցուցին աղօթիւք և խնդրու-
ածովք առ ած · և բազումք իսկ 'ի յամա-
ռելոյն 'ի հեթանոսութեն զղջացեալ դառ-
նային առ տր :

Ի վաղիւն՝ անդր իբրև պատմեցին սբյն գրի-
գորի զնմ անցս պատերազմին , արտասու-
եաց երանելին վն այնոցիկ որք յանհա-
ւատութեն իւրեանց մեռան · և ապա առեալ
զնշխարս սբյ կարապետին՝ տնագրեաց շուրջ
զնմ կողմամբք գաւառին , ասելով · Նշղի-
ցին աչք քո տր 'ի վր երկրիս այսորիկ՝ պա-
հել 'ի թշնամեաց · և եթէ վն մեղաց խրա-
տեա

ատեցին առ 'ի քէն , սակայն մի՛ զօրասցին թշնամիք նոցա իսպառ . և եթէ մտցեն հերձուածողք աստ , սակայն մի՛ տացես նոցա ըմպակել յայսմ վայրի . այլ սրբոյ կարապետիս հալածեսցէ զնոսա , և եղիցին որպէս փոշի առաջի հողմոյ :

Յետ այսորիկ իբրև հասին 'ի տեղին՝ որ կոչիւր Իննակնեան՝ մօտ ինն ականց բարեհամ աղբերաց եղելոց անդ , գտին կործանեալ խնջոյին զմեծ բագին կռոցն դեմետրի , և զպատկերն նորա՝ որ հնգետասան կանգուն բարձրութիւն , 'ի չորս մասունս բաժանեալ և ցրուեալ . տեսին և զպաշտօնեայսն նորա , զի աղաղակ բարձեալ ողբային չարաչար : Իսկ որ մեծն էր , երևեցան և դևք յօդս՝ որք իբրև զպիծակ և զմորեխ խուռն զեռային , և կոծէին 'ի լուր ամենեցուն , և ասէին . վա՜յ մեզ՝ զի մեռելոց ոսկերք հալածեն զմեզ յերկրէս : Իսկ ոմանք 'ի քրմաց այսահարեալք 'ի դիւաց չարաչար լլկանօք անկեալ տապածեալ էին 'ի գետնի իբրև զմեռեալս :

Յայնժամ մատուցեալ սրբոյն գրիգորի՝ բժշկեաց զնոսա . և ապա հրամայեաց կործանել զմեհս եւս մեծ բագինն գիտանէ կոչեցեալ , որոյ արձանն էր պղնձի՝ երեսուն կանգուն յերկայնութիւն , և երկու կանգուն և թզաւ 'ի լայնութիւն . և անդ եւս երևեցան դևք՝ որ յայլևայլ կերպարանս ճչէին և կրճտէին զատամունս :

Եւ իբրև կործանեցին զկուռսն , սկսաւ սուրբն գրիգոր արկանել զհիմն վկայարանի յանուն

Սբյ կարապետոսին 'ի տեղւոջ անդ, ուր էր մեհեանն դեմետրեայ. որպ̃ զի անհետասցի յիշատակ անօրէն պաշտամանց. և արար անդ զաւուրս երկոտասան, և ամփոփեաց մասն ինչ 'ի նշխարաց Սբյ կարապետոսին, և մասն ինչ 'ի նշխարաց Սբյն աթանագինեայ. և մկրտեաց 'ի բնակչաց տեղւոյն ոգիս իբրև հինգ հազար և յիսուն 'ի ձորն եմանու. և 'ի ժամ մկրտութեն երևեցաւ լոյս սփռեալ 'ի վերուստ զերիս ժամս: Այս առեալ Սբյն Գրիգորի զմկրտեալսն՝ եած 'ի տեղի վկայարանին հիմնարկելոյ. և ետ առնել տօն 'ի պատիւ Սբյ կարապետոսին. և զի օրն այն (ըստ գրելոյ. զենոբայ) հանդիպեցաւ տարեմուտ հայոց, ըստ առաջին օրն նաւասարդի, յայն օր կատարեցաւ և տօն փոխադրութեն նշխարաց Սբցս. այն օր էր յայնմ տարւոջ՝ ըստ յամի Տն. 302. ժը երորդ օր սեպտեմբերի՝ ըստ շարժուն և ամփոփական տումարի ազգին. թող զի ըստ անշարժ տումարին յայսմաւուրաց դնի 'ի ժա օգոստոսի:

Այս է առեղն և ագաթանգեղոսի. (եր. ԳՃՀԲ.)* Նու զյիշատակ վկայիցն բերելոց
,, ժամադրեաց 'ի տօն մեծ հաշակեալ յա-
,, ռաջագոյն կարծեցեալ մեհենացն պաշ-
,, տաման 'ի ժամանակի դիցն՝ ամանորաբեր
,, նոր պտղոց տօնին՝ հիւրընկալ դիցն վա-
,, նատրի, զոր յառաջագոյն իսկ 'ի նմին տեղ-
,, ւոջ պաշտէին յօր ուրախութեն նաւասարդ-
,, աւուր (որպ̃ս թէ՝ նոր արդեանց տարւոյ
,, օր). զի ժողովեալ 'ի յիշատակ մեծի երա-
,, նե-

,, նելի մկրտչին յովհաննու, և զսբ. վկային
,, քոյ զաթանագինեայ՝ յայնմ աւուր խըմ-
,, բել ՚ի նմին յաւանի ‖ ։

Բայց քանզի չև էր աւարտեալ շինուած վը-կայարանին, կանգնեաց սբն գրիգոր ըղ-փայտեայ նշան խաչի ՚ի դրան եկեղեցւոյն, ուր և ՚ի տեղւոջ կռոցն գիսանեայ. և եթող անդ ՚ի վերակացուն և ՚ի պաշտօն եկեղեց-ւոյն զանտոն և զկրօնիդէս. և սահմանեաց տեղի շինութ͞ե վանաց առ վկայարանաւն՝ հաստատեաց զզենոբ՝ գլակն կոչեցեալ՝ ա-ռաջնորդ տեղւոյն ։ Բայց քանզի յայնժամ է՛ իւր երթալ կամեցաւ զենոբ, կարգեաց երկրորդ նր հայր վանաց զեպիփան. և ընդ ձեռամբ նր եթող կրօնաւորս քառասուն և չորս. և սահմանեաց երկոտասան դաստա-կերտս շրջակայս՝ ՚ի պէտս ծառայութ͞ե վկայ-արանին և վանիցն. այն է եկեղեցին և վանքն կոչեցեալ յայժմուս սբ. կարապետ տարօնոյ կամ մշոյ. որ և կոչի ՚ի գիրս՝ իննակնեան վանք, ևս և գլակայ վանք՝ յանուն զենոբայ, որ եղև կատարիչ շինուածոյն հիմնարկելոյ ՚ի լուսաւորչէ ։

Իսկ չուեաց անտի սբն գրիգոր հանդերձ մնացեալ պաշտօնէիւք յաշտիշատ տարօնոյ (որ այժմ կոչի սբ. սահակ, զի անդ թաղե-ցաւ մեծն սահակ պարթև). քանզի լուաւ գրիգորիոս, թէ վահէվահեան մեհեանն առաւել հռչակաւոր մնացեալ է անդ յերկրին տարօնոյ, մեհեան մեծագանձ՝ լի ոսկւով և արծաթով, և ընծ͞մնուէրք մեծամեծ թագա-

սորաց ձօնեալ անդ՝ ութերորդ պաշտօն հրա- չակեալ՝ անուանեալ վիշապաքաղն վահագ- նի ( կամ վիշապաստապանն հերակլեայ ) , յաշ- տից տեղիք Թագաւորացն Հայոց մեծաց՝ 'ի անարգ լերինն քարքեայ 'ի վր̄ գետոյն եփրա- տայ ( որ և արածանի ), որ հանդէպ նայի մեծի լերինն տօրոսի. որ և անուանեալ է յաճախապաշտ պաշտաման տեղեացն յաշ- տիշատ. զի յայնժամ դեռևս չէին կային ե- րեք բագինք 'ի նմ : Առաջին մեհեանն վա- հէ վահեանն. երկրորդն ոսկիամօր ոսկիա- ծին դից ( այն է անահիտ՝ որ և արտեմիս կոչի , նշանակեալ 'ի լուսին ), և բագին նր̄ ոսկիահատ ոսկեմօր կոչեցեալ. և երրորդ մեհեանն անուանեալ աստղկան դիցն ( որ է արուսեկի , որ և լուսաբեր և գիշերավար ) սենեակ վահագնի կարդացեալ է յունա- կանին ( որ հարձ հերակլեայ ). որ է ինքն ափրոդիտէ : Արդ դիմեաց գալ սբն գրիգո- րիոս , զի քանդեսցէ և զայն ևս. զի տակա- ւին իսկ տգէտ մարդիկն զոհէին յայս բա- գինս մնացեալս : Այլ բարձեալ բերէր ընդ իւր զմնացուած նշխարաց մեծի մարգարէին երանելոյն մկրտչին յովհաննու , և զոր վկային քրի զաթանագինէին :

Իբրև եկին հասին յանդիման մեհենեացն , կամէր հանել զնս 'ի վեր 'ի բարձրաւանդակ տեղի մեհենիցն , զի կործանեսցէ զբա- գինսն , և շինեսցէ վկայարանս սրբոցն : Այլ յորժամ մօտ եղեն 'ի գետն եփրատ իբրև ձիոյ արշաւանօք երկու , և դեռևս է փոք-

բաձօրակ մի անցանել կամրջին ընդ. Ջուր մի սակաւ՝ որ է Արածանի, զտեղի առին սպի-տակ ջորիք կառացն՝ ուր կային գանձքն մծայլին՝ նշխարք սրբոց, և ոչ կարացին անցա-նել ընդ ձորակն։ Այս յայտնեալ հրեշտակ մն ասէ առ Գրիգոր. հաճեցաւ տր բնակել սրբոցդ այ ՚ի տեղւոջդ։ Ուր և անդէն բազ-մութն զօրացն մէն սակաւ սատարեալ շինե-ցին զվկայարանն, և զսրբսն ՚ի հանգիստ փո-խեցին. և կոչեցաւ տեղին այն՝ յովհաննու-վանք, կմ յոհանավանք. և դարձեալ մատ-րավանք կմ վանք մոտուան յովհաննու կա-րապետի. ( որ ռամկօրէն կոչի և մանրա-վանք, որպէս թէ մանրոցք ոսկերաց սրբոց եդեալ իցեն անդ. կամ մատնէվանք, զի անդ եդաւ ատեն ձկոյթ մատն սրբոյ կարա-պետին. այլ ադամանդեղոս՝ որ պատմէ զայս, պարզապէս կոչէ մատուռն, որ է մար-տիրոսարան, ՟ք վկայարան՝ կամ եկեղեցի փոքրիկ )։

Այս մինչդեռ զշինուածս մատրանն կազմէին, հրաման ետ Գրիգոր զօրականացն և իշխա-նացն՝ որ ՟Ը իւր էին, զի ելցեն և մրձօք տա-պալեսցեն զշինուածս երեցունց բագնացն նախաձառելոց. ուր ելեալ՝ շատ ջանացան, և ոչ կարացին զդուռս բագնացն գտանել՝ զի ՚ի ներքս մտցեն. քանզի ծածկեցին դևքն ՚ի նոցանէ. և ՚ի կողմանցն արտաքուստ ջա-նացան, և ոչ գծեաց անդր երկաթ գոր-ծոյն. ապա փութացան իջին իշխանքն առ սրբն Գրիգոր, և պատմեցին նմա զամ։

Սակ

Իսկ նա առնէր զնշանն տէրունական խաչին, և եւ եկաց 'ի ձորակին յանդիման բարձրաբերձ տեղեաց շինուածոյն. ասէ, Հրեշտակ քո Տէր հալածեսցէ զնոսա: Եւ Է բանիցն հողմ աւժգին բղխեաց 'ի խաչանիշ փայտէն, զոր ունէր 'ի ձեռին իւրում եպսն. և երթայր հողմն ուռուցեալ լերինն հաւասար, և չոգաւ հարթեաց տապալեաց ընկէց զնմ շինուածս բագնացն. և այնչափ կորոյս, զի յետ այնորիկ ոչինչ ոք յայնմ տեղւոջ նշմարանս կարէր գտանել՝ ո՛չ քարի, և ո՛չ փայտի, ո՛չ ոսկւոյ և ո՛չ արծաթոյ. և ո՛չ բնաւ երևէր՝ թէ լեալ ինչ իցէ անդ. թո՛ղ զի կոտորեցան անդ 'ի մէջ մեհենաց մարդիկ պաշտօնէայք քրմութեան, և անհետ եղեն ակերք նց. և զայսպիսի ահաւոր նշան տեսեալ բնակչաց երկրին՝ անթիւ մարդիկ հաւատացին:

Ասէ գրիգորիոս. արդ տեսէք, թէ ո՛րպէս չքնեցան դայթակղութիւնք ձեր. զի և չէին իսկ ինչ. այլ ծառայեցէք յայսմհետէ տն այ՝ որ արար զերկինս և զերկիր: Յետ այնորիկ եղանէր անձամբ 'ի վեր 'ի տեղիս անհետացեալ մեհենիցն աշտիշատայ, և ժողովէր դարձուցանէր և կրթէր զմարդիկ երկրին յաստուածպաշտութիւն: Եւ եդ անդ յաշտիշատ զհիմունս եկեղեցւոյ մեծի, և ուղղեաց սեղան փառացն քի. զի նախ անդ սկիզբն առաջ շինելոյ եկեղեցեաց: Եւ ուղղեալ յանուն տյ և կազմեալ աւազան մկրտութե՝ նախ զայնոսիկ լուսաւորեաց մկրտութբ, որ ընդ

նմա երթեալ էին 'ի քաղաքն կեսարացւոց , զմեծամեծ նախարարքն . և ապա զգաւառական բնակիչս երկրին զբիւրաւոր մարդիկ , երեկօթս առնելով անդանօր աւուրս քսան : Յայնուհետև իջեալ անդրէն 'ի մատրավանս՝ կանգնէր սեղան 'ի վկայարան սրբոյն հանգստի , զոր շինեաց . անդ մատուցանէր զառաջինն զպատարագն փրկութեան , և բաշխէր զկենդանարար մարմին և զարիւնն

ք͞ի :

Նա հրամայեաց կատարել անդ տօն ա͞մ յամէ՝ 'ի նմին տեղւոջ ժողովելով ամենեցուն 'ի յիշատակ սրբոյն , որ օր եօթն էր սահմի ամսոյ , ( և անկանէր յայնժամ 'ի ժէ , կ͞մ ժը նոյեմբերի . ) զի մեծապէս խնդութ͞ք տօնախմբեսցեն զայն օր (4) . զի նախ անտի րակիզքն արար շինելոյ զեկեղեցիս . և կացուցանէր քահանայս 'ի տեղիս տեղիս . և ելից զվայրսն եկեղեցեօք և քահանայիւք : Նա ինքն չու արարեալ անտի մեծապարծ պարծանօք զօրութ͞ք խաչին ք͞ի . և բարձեալ նշխարս անտի կէս մի 'ի սրբոյն , զի և յայլ տեղիս հաստատեսցէ զնոցա յիշատակսն , եկն 'ի բագրևանդ գաւառ , ուր ընդ առաջ եկեալ սպասէր նմա արքայ տրդատ ա͞մ ընտանեօք և մեծաւ բանակաւ . և հանդիպեալ սրբոյն առ ստորոտով նպատ լերին առ ակն եփրատ գետոյ՝ անդ մկրտեցան 'ի նմանէ . որպէս ունիմք ասել 'ի կարգ տրդատայ և

լուսաւորչի :

Յասացելոցս աստանօր՝ կէս մի 'ի բանից զե-

նոցայ , և կէս մի 'ի բանից ազաթանգեղա_
ոսի , յայտնի է խորհուրդ առաջինկայ տօնի
նշխարաց սբ̅յ կարապետին ը̅ սբ̅յն աթանա_
գինեայ , միանգամայն և խորհուրդ տօնի
եկեղեցւոյ կարգելոյ 'ի լուսաւորչէն յելոն
'ի վերայ . զոր կատարեմք յայսմ միջոցի
յերկրորդ կիրակէի պենտեկոստէին : Ս̅
զի ոչ 'ի տարեգլուխն , ա̅յ 'ի նաւասարդի ի̅ .
կարգեաց լուսաւորիչն զտօն սբ̅յ կարապե_
տին յիննակնեան վանս , նոյնպէս և զկնի
երկու ամսոց` 'ի մարտավանս և յաշտիշատ
կարգեաց տօն 'ի սահմի է , 'ի պատիւ նոյն
նշխարաց , և 'ի յիշատակ հիմնարկութե̅
եկեղեցւոյ . այն էր 'ի ժամանակին յայնմիկ
ը̅ ասացելոցս` տօնն առաջին 'ի ժ̅ը . սեպտ .
և տօնն երկրորդ 'ի նոյեմբ . ժ̅ը : Բայց ք̅զի
ամիսք հայոց` ըստ նմին և տարեգլուխն է
շարժուն ը̅ ինքեան , զի յիւրաքանչիւր դա_
րու գրեթէ մի մի ամսով կի̅ քսան և հինգ
աւուրբ տարբերի համեմատութիւն ամսոց
հայոց ը̅ ամսոց հռովմայեցւոց , ը̅ որում 'ի
չորս ամի միանգամ` ա̅յ 'ի նահանջ տարւոջ`
օր մի այլայլի . վասն որոյ 'ի կարգել յետոյ
զանշարժ տումար ը̅ հաշուի դարու թարգ_
մանչաց ( որով վարի յայսմաւուրքն ) , այս
տօնք սբ̅յ կարապետի այսպէս կարգեցան :
Տօն տարեգլխոյն զատեալ 'ի տօնէ նշխա_
րաց` եդաւ յօգոստ . 11 . զի յայնմ աւուր
սկսանէր նաւասարդն առ թարգմանչօք . և
միանգամայն վերածել եղև 'ի պատիւ ծննդ_
դեան նը̅ կարապետին . զի 'ի դրուէ թուա_

կանոնին Հայոց՝ միով դարու զկնի Թարգմանչաց՝ նաւասարդն սկսանէր 'ի յուլիսի 11. որ է ծնունդ մկրտչի ՚ու Հայոց։ Իսկ զատուցեալ տօնն նշխարաց՝ որ 'ի սահմի է, (ըստ դարու Թարգմանչաց 'ի հոկտեմբ. ժը. ) եղաւ յայս միջոց զկնի տօնի հռիփսիմեանց. և զուգեալն ընդ նմին 'ի լուսաւորչէ տօն եկեղեցւոյ՝ որոշեցաւ յանմիջական կիւրակէ նոյն եօթնեկին, ընդ մէջ արկանելով յօրն շաբաթու զտօն ելից լուսաւորչին 'ի վիրապէ. զորմէ ունիմք ասել յառաջիկայդ։

'Ի նոյն պատճառաց երևի յառաջագայեալ և կրկին տօն սրբոյ կարապետին զկնի այսր միջոցի. քանզի յետ պահելոյ զայս տեղի 'ի յիշատակ փոխադրութեան նշխարաց նորա, ըստ այլևայլ դարուց դիտելով զնաւասարդ և զսահմի՝ եղան և այլ երկու յիշատակք սրբոյն ընդ զաքարիայի հօր նորա, և ընդ այլ մարգարէս. այլ զայսցանէ տեսցես յիւրում կարգի։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Բովանդակ պատմութիւն փոխադրութեան նշխարացս սրբոյ կարապետին և սրբոյն աթանագինեայ հանդերձ հրաշափառութեամբ եկեղեցեաց և կարգաւորութեամբ տօնից 'ի սրբոյ լուսաւորչէն, հաստատութեամբ ունիմք յերկուց ժամանակից և ականատես վկայից՝ յագաթանգեղոսէ և 'ի զենոբայ. զոր չկարօտիմք այլուստ քննութեան. միայն հարկ էր ծանուցանել զեղանակ համաձայնութեան, և անհամաձայնութեան երկոցունց պատմագրացս 'ի կարգի բանից։ Քանզի ագաթանգեղոս զանց արարեալ [illegible]

Եւ գրեցաք զաւանդեալն յագաթանգեղոսէ, ըստ կարի համաձայնելով իրերաց. և զատանելով զբան 'ի բանէ ըստ կարգի ժմկին: Իսկ Հ. ըստ սովորական օրինակաց և ըստ այլ. 'ի կամիլն բաղադրել զերկուսին պատմութիւնս յօդուած. II. չփոթէ զիննակնեան վանս ընդ մատրավանից, ասելով. * 'Ի բերել լուսաւորչին զնշխար սրբոյ
,, կարապետին յՅս հայոց, մասն ինչ եդ 'ի մատրուճանս
,, հրամանաւ տեսլեան գիշերոյ. և զայս եդ 'ի տեղի
,, մեհենեացն, որ կործանեցան. և այն կոչեցաւ վանս
,, իննակնեան... այլև կոչեցաւ վանս գլակայ մն հօր
,, վանացն ||, եւն: Ուր ըստ մերումս տեսութեան՝ փոխանակ գրելոյ, * և զայս եդ ||, պարտ է ընթեռնուլ, և զայս էդ: Եւ արդարև յետ ուղղագրելոյ մեր այսպէս մոգք՝ գտաք և 'ի հնագոյն ձեռագրի. Հ. զի ասի, * մասն
,, ինչ 'ի մատրավանս եդ՝ հրամանաւ տեսլեան գիշե_
,, րոյն. և մասն ինչ 'ի տեղիս մեհենիցն, որ կործանե_
,, ցան (իմա՛ գեմերպի և գիսանեայ). և այն կոչեցաւ
,, վանս իննակնեան ||, եւն. որ է ուղիղ:

Թո՛ղ զգրեալն անդ 'ի Հ. մն տարեմտի հայոց, * Թուա_
,, գաւոր մի կայր հայոց արտաւազ անուն ||, եւն. ըստ հին աւանդութեան ռամկաց, զոր ըստ իմիք յիշէ և խորենա_ ցին 'ի խօսելն վարտաւազդայ:

(2) Որ այն նշխարք սրբոյն յովհ. կարապետի մնացին առ եէմնացիս 'ի սեբաստուպօլիս, յայ 'ի սամարիա՝ ուր էր գերեզմանն մկրտչին, և որ մասունք փոխագրեցան յան_ տիոք և յաղեքսանդրիա, և թէ զիարդ առ յուլիանո_ սիւ այլ ոսկերք այրեցան ընդ անօճամբ մկրտչին, փոքր 'ի շատէ ունիս իմանալ 'ի գրելոցս 'ի տօնի գլխատման. ուր և զայն 'ի միտ առնուս, թէ ո՛չ է ակարագոյն քան զայն աւանդս, այլ՝ զօրագոյն՝ աւանդութեն ազգիս, որ 'ի պատմութեն ասա: Գիտեմք զի անտիոքացիք զաջն սրբոյն ասէին ունել առ իւրեանս. և ազգ մեր զնոյն կարծիս ունի՝ թէ բերեալն 'ի հայս, աջ էր սրբոյն ընդ այլ մասունս. այլ զայսմանէ չէ՛ արժան վիճել, ոչ և չէ՛ իսկ մարթ ստուգել զմին՝ քան զմիւսն. որովհետև նշխարք սրբոց յոլովակի յաղագս բաղկի զնին պատուով, և թեև ձախն իցէ՝ աջ անուանի. և չէ՛ ինչ, զի միօրէ_ նակ յաջողէ բարեխօսութի նց յաջ և յահեակ՝ ըս օրինա_ կի յաջողակ եղելոց երկոքումբք ձեռօք, զօրութեամբ ամե_ նազօր ամն:

Օրինակ առ քեզ և զգուշանալիս՝ որ եղեն 'ի փոխագրութե պատուականն գլխոյ մկրտչին. զի ոչ պատմեցաք անդա_

նօր

նոր բանիւ սողոմոնեան՝ Հորին կառաց կացին մօտ 'ի բանտակք քաղկեդոնի. և ահա նոյն սքանչելիք եղեն և մօտ յաշտիշատ տարօնոյ. և չէ՛ մարթ չփոթել զերկոսին պատմութիւն, զի այս եղև առ Լուսաւորչիւ. և այն յետոյ առ Թ̃գրուք̈ վաղեսի և Թէոդոսի. մին 'ի հայ-աստան, և միւսն 'ի յունաստան. մին 'ի փոխադրութե̃ աջոյն կմ̃ ձեռին եւ̃, և միւսն՝ գլխոյն։

(3) Իսկ զմ̃ նշխարաց աթանագինեայ գրէ բարոնիոս՝ յամի տն̃. 311. 'ի համարն. իէ. այսպէս. * Սա էր
,, եպս̃ սեբաստիոյ՝ որ 'ի փոքր հայս, սակաւ ինչ ա-
,, մօք յառաջ ( ը մեզ՝ միով ամաւ, կմ̃ 'ի նմին ամի.
,, 302 ) պսակեալ նահատակութբ̃ 'ի ժամանակս սոյն
,, այս հալածանաց գիոկղետիանոսի։ Արդ արժան է
,, հաւատալ, թէ 'ի սմին ժամանակարգութե̃՝ յորժամ
,, էանց գրիգորիոս ը̃ սեբաստիա, յայց ելեալ իցէ 'ի
,, պատուել զնոյն վկայն, և առեալ զնշխարս նր̃ ||։ Ոչ
է անյարմար մտակարգութիւն. բայց ստոյգն այն է, զի մարմին սր̃յն աթանագինեայ առեալ սր̃յն գրիգորի 'ի սր̃յն զեւոնդեայ. և այն՝ ոմ̃ մասամբքն վկային նորոյն աղ-գականի՝ փոքր ինչ յառաջ նահատակելոյ։

(4) Փոխանակ հայերէն ամսոյ՝ սահմի է. 'ի յն. և լտ, թարգմանութիւս ազգաթ՝՝ առ մետափրաստեսի եդեալ է, * որ է ը հռովմայեցւոց՝ յանուարն հոկտեմբերի ||. յայտ է թէ ըստ շարժման տումարի՝ մօտ 'ի դարն թարգմանչաց. այլ թէ ոչ՝ 'ի ժամանակս լուսաւոր-չին սահմի. է. անկանէր 'ի նոյեմբ. 18. և յայն օր վեր-ածեալ է ը հ. յայժմուս վարք սրյ լուսաւորչին. զոր յերկրորդում տեղւոջ քննեսցուք։



# ՆԵՐԲՈՂԵԱՆ։

ՆՈՐՈՅՔ ԼՈՒՍԱՒՈրեալք 'ի ձեռն հրաշափայլ ծագման լուսաւորչին հոգւոց մեծին գրիգորի՝ 'ի խորունկ խաւարչտին գբոյ, անցցո՛ւք միաբան՝ մնաց ակնարկուք 'ի տեսիլ ահաւոր խորհրդոյս, զի՞նչ է բանս այս՝ զոր տր եցոյց մեզ։ Ո՛վ սքանչելեացս. զի ահա յերկրէ 'ի վեր ճառագայթէ այսօր իմանալի արեգակնս, զի յերկրէ յերկինս զմեզ հրաւիրեսցէ. 'ի խոր գերեզմանէ վերաբերի՝ ոչ չորեքօրեայ մահացեալն ըն ղազարու, այլ չորեքտասանամեայն ըն մեռեալս համարեալ, զի զմեռեալս հոգւով 'ի կեանս վերափոխեսցէ անմահութե. 'ի միջոյ զեռնոց թունաւորաց կորզի անարատական՝ մահաթոյն վիշապին ընգոտնիչ, զի տացէ մեզ առ ոտն կոխել զապականարար ախտիցն հոյլս՝ զօձս և զկարիճս և զամ զօրութիւն թշնամւոյն. 'ի կառոյ և 'ի տղմոյ որբի մաքուրն հոգւով՝ որ եղև տառապեալ վն մեր մարմնով, զի մաքրեսցէ զաղտեղութի հոգւոց մերոց՝ վերածնութեն սբ աւազանին, և զաշխատեալս 'ի մեղաց հանգուսցէ յած։

Եւ այս որո՞ց երախտեաց փոխարէն. և զի՞նչ առնեմ երախտիս։ Ո՜ 'ի մէնջ ապերախտութե,

և

և յա̃յ բարերարուի · տ̃ն ա̃յ մերոյ արդարուի, և մեր ամօթ երեսաց · զի արդարացի ասացեալն, ուր առաւել եղեն մեղքն, անդ առաւելան շնորհքն ; Ա̃յ գոչեսցուք յաւուր յայսմիկ · այլ շնորհք ա̃յ 'ի վ̃ր անպատում պարգևաց նր̃ · այն՝ որ 'ի ձեռն նր̃, որում ապաշնորհք գտաք, ( զի իմ են նախահարց իմոց յանցանք՝ որք զգրիգորիոս չարչարեցին անբերելի տանջանօք, ) առատաձեռնեաց 'ի մեզ զշնորհս · զի անոխակալութբ̃ և անյիշաչարութբ̃ յա̃ծանմանութի 'ի վեր ելեալ հայրն հոգւոց՝ 'ի նոյն և զորդիս իւր կըրթեսցէ · վ̃ն զի ուր մեք զնա զարփիազգեաց անձն գլխովին խաւարեցուցանել խորհեցաք, և շիջուցանել 'ի մէնջ զբազմալոյս ճառագայթն, 'ի կենաց լուսոյ զրկել կարծելով վիրապընկէց պատժաւորութբ̃, այլ ա̃ծ կարգեաց զնա լուսատու լինել խաւարելոցս՝ եօթնպատիկ լուսափայլ ծագմամբ յելսն 'ի վիրապէն ։

Եւ զի այս այսպէս՝ աներկբայ խոստովանեալ և հանդիսական տօնախմբութբ̃ հըռչակեալ, ապա ուրեմն եթէ յետ ա̃յ ամենաբարի բնութե̃ կայցէ ոք մեզ բարերար, առաջին սա մեզ իբրաւամբք ճանաչելի և արդեամբք մեծարելի ։ Ո ի թէ ըս̃ մարմնոյ ծընօղք այսպէս, իբրև երկրորդ պատճառք՝ զկենի առաջնոյն պատճառի անպատճառի, քանիօ̃ն և հոգևոր ծնօղս մեր ա̃ծանման սիրով գորովագութ հայր պարծանաց մր̃ գրիգորիոս ։ Եւ եթէ զնոյնէ ասացաւ պատուիրանաւ,

նաւ, պատուէեա՛ զՀայր քո և զմայր, քանի՞ առաւել իմացուք զՀօրէն Հոգւոյ պարտականութի մեզ անՀամեմատ ՚ի պատուել զնա արժանաւոր պաշտամամբ յարգութե՛, ունկնդրութեամբ բանից լուսաւոր վրդպուե̃ նորա, և պաՀպանուե̃ առաքելական կանոնաց նր̃, յորմէ և յորում ՚նմանութի և կերպարանաց Հարազատութե̃ նր̃:

Տե՛ս՝ ո̃ր ակնարկութե̃ նորուն գրիգորի, և մայր մեզ աւանդին՝ օգնական Հօրս մերում, և յետ նր̃ ընդ նմա վերապատուելի կայ առաջի. ո՞ այլ, բայց սքանչելին ՚ի սր̃ կուսանս անարատն Հռիփսիմէ. որ և զելս տիրամ̃ մեզ աւետեաց զգրիգորի ՚ի գբոյն, միանգամայն և արուսեակ Ցյս Հայոց ծագեաց՝ նախընթաց արփւոյն մերոյ գրիգորի. զի արևելք և արևմուտք, պարթևք և Հռովմայեցիք, սաՀմանեցան ՚ի տ̃նէ ձեռն տալ Հիւսիսականացս այցելութե̃:

Ծանե՛րուք և տեսէ՛ք որդի՛ք Թորգոմայ (Հընչէ ՚ի լսելիս մեր անդուլ բարբառ իսկապէս լուսաւորչին մերոյ), զի սքանչելիս արար ո̃ր, որոյ անքննելի են խորՀուրդք, և անՀասանելի՝ տեսչութի խնամոց արարչական սիրով. զի այց արար ձեզ ամենատ̃րն՝ ո՛չ ՚ի ձեռն ծանօթից և մերձաւորաց, այլ անծանօթից օտարաց Հիւրից՝ ՚ի ձէնջ անարգելոց, խոտելոց, և կառափնատելոց. զի զվէմն՝ զոր անարգեցիք շինօղքդ, զնա ասեմ՝ զոր առիք գլ̃եցիք ՚ի խոր վիրապն արտաշատու, արար ձեզ տ̃ր գլուխ անկեան. ՚ի տ̃նէ եղև այս, և

և ո՛չ լինէին. և է սքանչելի յաչս ձեր. մինչև
տանել ձեզ զԱ̅Ծ տեսանողին, եթէ 'ի վր̅ վկայս
զոր եհան ն̅ր 'ի գբոյ տառապանաց, եօթն
աչք են՝ դիտապետ լինել և լուսատու Հայոց
աշխս. արդ ինձ՝ որ տրուպս էի ա̅ծ սբ̅ց,
տաճարն շնորհաքս այս՝ սբ̅ պօղոսի, աւետարա-
նել 'ի ձեզ զանքննելին մեծութի խորհրդոցն
ա̅յ. զի թէպէտև բիւր դաստիարակս ունի-
ցիք 'ի ք̅ս, այլ ո՛չ եթէ բազում հարս. զի 'ի
ք̅ս յ̅ս աւետարանաւն ես ծնայ զձեզ:
Ո՛չ փոքր սքանչելիք և այն, զի զքարինս
ս̅բս՝ որովք է շինութի կաթողիկէ եկեղեց-
ւոյ, զառ 'ի ձէնջ քակտեալս, ձեզ պարիսպ
կանգնեաց նորոգումն հոգւոց՝ երկնաւորն
Ճարտարապետ. վն̅ զի զիմաստութն կուսա-
նացն դասս՝ զորս չարաչար մահուամբ բար-
ձիք 'ի կենաց, զնոսին 'ի ձեռս էառ սքանչել-
արարն՝ 'ի յարուցանել զձեզ 'ի նոր կեանս:
Նա արդ՝ եթէ զիս երախտաւոր հայր կար-
դայք, և զդոսա ծաներուք բարեացապարտ
ձեզ մարս հոգևորս. զի ծնան կուսանք ազգս
բազումս, և մարք մանկունք զհրապարակս
ծերոց. համայս 'ի գիրկս սրբութե նց̅ աղօ-
թիւք և պահօք դաստիարակեալք, աճե-
ցեալք հաւատովք՝ զարգացեալք 'ի ք̅ս: Ո՛ի
թէ չէր երկնեալ Հռիփսիմեայ կուսի իւրով
նահատակութը̅ զՀայաստան աշ̅, չէր և իմ
ծնեալ զազգս մի ողջոյն միանգամայն. և ե-
թէ չէր արիւն նր̅ վն̅ ձեր բարեխօսեալ, ոչ
առաքէր զիս տ̅ր 'ի մշակել զայգիդ խոպա-
նացեալ:

Ո՛այս

Զայս գոչեցեալ և նմին գրիգորի նա ինքն փառաւորեալ վկայուհին և հարսն քսի հաւի-տենին աւետարանեաց 'ի վիրապին , զայսօրի-նակ խորհրդաբար առաձայնելով յաւուր անգ-կատարման իւրոյ , ըստ ճահագրութե քերթո-ղահօր ․ ,, Ո՛վ աւետիք երկնաւոր նահա-
,, տակ և քարոզ փրկութե՝ բազմափայլ ճա-
,, ռագայթ , որ ծագեալդ ես 'ի գբի ․ ահա
,, հասի քեզ 'ի թիկունս՝ սլացեալ յարևմտից
,, յարևելս թևթևընթաց ամպով խմբոյ կու-
,, սանս ։ Զփայլակնաբորբոք ճառագայթ
,, տիեզերածաւալ լուսոյ աւետարանին խմոց
,, հարց պետրոսի և պօղոսի՝ 'ի վայրս քո ե-
,, կի ծագել , վանել փարատել զմէգ խաւա-
,, րի՝ որ զգոյգ արգելեալ փակեալ (ունէր)
,, զկենդանի լուսոյդ ճառագայթ ։ Զա-
,, գեալ լուսաւորդ մեծ 'ի խորոց անդնդոց
,, քաղցրանուագ լուսովդ զծարձակ ճառա-
,, գայթեալ լոյս փայլմամբ քով ընդ հարցն
,, աւետարանին թադէոսի և բարթողոմէոս-
,, ի ։ Երկպաքանչիւր լուսով փթթել զհիւ-
,, սիսի ։ Ցօր զլուսաւոր քո արևս , և ես ա-
,, ռեգակն արդարութե 'ի գնացս քո ցնծաց-
,, թե՝ յողջոյն արինազգեստեալ հարսին ,
,, որ մարտիրոսական արեամբ ճգնեալ ե-
,, կեալ 'ի քո խորանին հարսնանման անմահ
,, փեսային ։ Եւ 'ի պատահեալ ծածկեալ օ-
,, ղորմութենդ խնամ ճշմարտութեա , զի իմ և
,, քո խաղաղութիւնդ՝ համբուրիւք հարցն մե-
,, րոց՝ ողջոյն և խաղաղութի (աւետեացեն ,
,, նազելիմք ) զայս լցեալ ծ ; Ո՛հա բացի զեր-
,, կինս ,

,, կենս , զորոտումն հոգւոյն սբյ ՚ի դաշտս
,, քո հնչեցի՝ ցօղել զցօղ քաղցրութե՛ ՚ի հո-
,, վիտս արեամբ , ոռոգել զուարթացուցա-
,, նել զարդիւնս արդարութե՝ ցօղ քոյոց բու-
,, սոց աշխատեալ երկրագործ ։ Ահա խլե-
,, ցի յանդէ քումմէ զփուշ անիծից՝ զտա-
,, տասկս մեղաց կուսակին իմով հանդիսիւ·
,, Եւ սերմանեալ սերմանահա՛ն քաջ զսեր-
,, մանիս աւետարանին լուսոյ · որպէս զի ՚ի
,, հասանել հնձոյն ՚ի միասին ցնծասցուք ։
,, Ահա զիմս ՚ի քոյդ խառնեալ արեան վը-
,, տակս՝ շիջուցանելով զխաւարին բոց , վա-
,, ռեալ բորբոքեալ ( է իմ ) զհուր ա̃ծութե
,, լուսոյն առ ՚ի սրբել զանդաստանս ա-
,, րեամբ քո ներկեալ · Եւ տնկեալ մշակդ
,, քրտնեւ զորթն կենաց ։ Օ ողկոյզն ծաղ-
,, կեալ զմշակեալն ՚ի հօրէ զարիւն խաղո-
,, ղոյն՝ վաստակեալ սբ աջովդ , պաշտեա՛
,, յուրախութի՛ վերնոց և ներքնոց ՚ի տաճա-
,, րի իմոյ հարսանեացս ։ Ահա ձմլիմ ՚ի քո
,, հնձանսդ՝ կուսութե իմոյ բաժակաւս ,
,, զանմահութե հոսեալս պսակեալ քո ժողո-
,, վրդեան , զհրով և սրով կոտորեալս զվար-
,, դապետութե մերոյ ծաղկանցս , Եւ ժողո-
,, վեա՛ բոլորեւ պսակ քո նոր ժողովրդեանս·
,, զի այսու մնասցեն առ մեզ ՚ի յարկսն լուսոյ ։

Այսօրինակ մաքուր աղաւնին հռիփսիմէ՝ զտերև ձիթենւոյն ունելով ՚ի բերան՝ ըզ- հաշտութենն ա̃յ նշանակ է̃ հայաստանեայս, զհոգւոյն աւետիս տայր այնմ՝ որ ՚ի խորս էջ անդնդոց , որպս նոյ ՚ի ծոց տապանին ՚ի

նոյն

Ն

նոյն լերինս արարադայ ։ Քանզի և մերս նահապետս այսպիսում սպասեր մեծի աւետեաց , հնգետասանամեայ տքնեալն ասեմ 'ի խորս վիրապին՝ հայր Տիս արթունն գրիգոր՝ հոգևոր լուսոյն ճառագայթ , քարոզ միածնին՝ լուսաւորիչն մեծ ։ Նա զոյգ ընդ ազդմանս՝ աղօթք յերկրէ , աղօթք յերկնէ առ բարձրեալն վերանայր ը՟ բուրման խընկոց անուշից՝ վ՟ր փութով կատարման ա՟ծառաք առ մեզ այցելութե՟ . հռիփսիմէ իւր երամովն անդ 'ի վեր բարեխօս լինէր հայոց Տիս , զտիրականն աղօթելով 'ի վ՟ր խաչահանուաց . և գրիգորիոս 'ի խորոց սրտին 'ի գբոյ անտի վերագոչէր՝ աղօթելով ը՟ ստեփաննոսի 'ի վ՟ր քարաձգողաց ։

Յայնժամ քաղցրանայր գութ մարդասիրին 'ի վ՟ր մեր . և զի զոր սիրէ տ՟ր՝ խրատէ , տանջէ զա՟մ որդի՝ զոր ը՟ունի , նախ ընդոստուցանէր զ՟ն գաւազանաւ բարկութե՟ առ 'ի զյիմարութի՟ն յիմաստ փոխարկել , պատուհասակոծ թագաւորաւն և մեծամեծօք զամենեսին առհասարակ յահ և յերկիւղ իւր ա՟ծ կրթեալ . մինչև 'ի մարդկայնոց 'ի դերև ելեալ դարմանոց՝ զվերինն խնդրեսցեն օգնականութի՟ ։ Ապա առաքէր զզօրութիւնն առ կոյս մի պարկեշտ 'ի տանէ արքայի՝ բընաւորական մաքրութե՟ անարատ քաղաքավարեալ , նա իսկ էր քոյր արքային տրդատայ՝ խոսրովիդուխտ անուն , պատուէր տալ հրաշալի տեսլեամբ միանգամ և երկիցս՝ և ևս աւելի , հանել զկապեալն գրիգոր 'ի վի-

րապէն արտաշատու . զի նա բժշկեսցէ ասէ զհարուածեալսն , եւ լուսաւորեսցէ զհայաստան Ը ամծգխտութ : Եւ քանին արդիւնք լինէր . երթեղ աւագ նախարարն օտայ անյուսութ իբրեւ առ մեռեալն 'ի վաղուց , կենդանի գտանէր հրաշապէս զթաղեալն 'ի վիրապին . եւ այնպէս խնդութ արկեալ պարան' 'ի վեր հանէին 'ի գբոյն զերանելի այրն Այ զառաքելանման նահատակն զգրիգոր , որպէս եղբարք յովսեփու զյովսէփ զարկեալն անդր ձեռօք իւրեանց :

Արդ ելանէ արփիականն գրիգոր նոր արեւ՝ 'ի խորոց անտի իբրեւ յարեւելից , ընդ արտաքին տեսլեանն 'ի ժամուն՝ ոչ ամպով ծածկեալ՝ թխատեսակ գունով մարմնոյն , եւ այլագունեալ 'ի խստութէ բազմամեայ արգելանին . այլ այն իսկ էր առաւել նշանակ պայծառութե ոգւոյ՝ հոգւոյ լուսաւորին : Նոյն իսկ եւ իսկ 'ի վաղարշապատ անձել յարքայարանն՝ ծագեաց 'ի վր տանն արամայ ոչ զարեգակն գերարփի . ցնծացաւ հայաստան Ը 'ի տեսիլ լուսոյ յետ երկար գիշերոյ . զի եւտես զմեծ լուսաւորն տունջեան զգրիգոր . որ եւ անդէն եւ անդ զնմծապարգեւն 'ի կիր արկեալ հրաշանշան զօրութի՝ զհիմնն 'ի նոր կերպարանէ Ը . զի զկարծեցեալն անփարատելի յիւրոց անհնարին արկածից , եւ զհամակեալն 'ի սուգ տխրութե՝ ընդ թանձր մառախլոյ հեթանոսութե , լուսազարդէ , ափոփէ , եւ կենդանածնէ . զհարուածեալսն բժշկէ աղօթիւք եւ պահօք , եւ ոչ 'ի մարմնոց՝ առաւել

նել ՚ի հոգւոց զայսմն հալածէ զխաւարա-
մտերս . զի յերևել լուսոյ զիա՞րդ էր հանդուր-
ժել խաւարի , և ՚ի ծագել Ճշմարտութե՝ ո՞ւր
թաքչել ունէր ստութի՛ն մոլորութե ։

Այս արդ չէ՛ ժամանակս պատմելոյ վ՚ն մեծա-
մեծ գործոց եօթնաջահեան լուսաւորչին
հոգւոց մերոց՝ յելանն անդ ՚ի վիրապէն , եթէ
որպէս առ օրին զնշխարսն ամփոփեաց սբ
կուսանացն հռիփսիմեանց . կա՛մ որպէս այ-
նուհեան ՚ի հնձանատեղին՝ ուր վանքն իսկ
էին նց , օթևանս կալեալ՝ քարոզեաց թա-
գաւորին և ամ ժողովրդեան լուսաւոր վար-
դապետութբ զխորհուրդն ածպաշտութե ա-
ւուրս վաթսուն և հինգ . կա՛մ զիա՞րդ յետոյ
զմեհեանս և զբագինս ամ քանդեաց կոր-
ծանեաց գործակցութբ թագաւորին . և ընդ
ամ տեղիս և ՚ի հրապարակս կանգնեաց ըղ-
նշան տէրունական խաչին . մինչև երկնաւոր
կոչմամբ հրաւիրեալ ՚ի կարգ քահանայութե՝
չոքաւ ՚ի կեսարիա , և ձեռնադրեցաւ ՚ի քա-
հանայապետութի հայոց Տ՛ն ՚ի սբյն ղևոն-
դեայ պատրիարգէ . և եկեալ մկրտեաց ըղ-
թագաւորն տրդատ ազգաւքն . շինեաց եկե-
ղեցիս , և լուսազարդ պայծառացոյց զտունն
արևելից արեգակնապէս փայլմամբ ։

Ա՛յս հանդէս ելից լուսաւորչին ՚ի վիրա-
պէն , և այս ծագումն նորափթթենոյն՝ որ ել-
լից լուսով խորով զհայաստան Տ ՚ի ծագաց
մինչև ՚ի ծագս նորուն . և նոյն անմոռանալելի
զօրութի սքանչելահրաշ փայլմանն նի յաւեր-
ժանայ ՚ի մեզ մինչ ՚ի կատարած . զի անմոռա

 արև-

արեգական էր՝ որ ծագեաց 'ի տունչութէ անս-
պառ աղբերն լուսոյ, և աներեկ օր՝ զոր ծա-
ւալեաց 'ի մեզ լոյսն անեղական բնակեալն
'ի լոյս անմատոյց ։ Միայն թէ՝ որպէս հայրս
մեր յա̃ծակոյս կողմանէ մեզ լուսաւորիչ ե-
ղև, և անուանեցաւ, նոյնպէս և մեք լու-
սաւորեալք միշտ գտանիցիմք իբրև հարա-
զատ զաւակք լուսածնունդք ․ և մի փակեա-
ցուք զպատուհանս սրտից մերոց ը̃դէմ մի-
ջօրեայ լուսաւորութե̃ խաւարասէր մտօք,
և մի խցցուք զիմանալի տեսանելիս հոգւոց
մերոց ը̃դէմ պայծառութե̃ երկնաւոր իմաս-
տութե̃ ․ մի լիցուք բաժանորդք անպտղութե̃
գործոցն խաւարի ․ և մի կուրօրէն 'ի խոր-
խորատն բերիցիմք կորստական ճանապար-
հաց ․ մի զանձինս, և մի զընկերս գայթակ-
ղեսցուք, կա̃ գլորեսցուք 'ի վիրապն անդըն-
դային, այլ միմեամբք միմեանց նպաստամա-
տոյցք՝ 'ի վեր ելանել փութասցուք 'ի խա-
ւարէ 'ի լոյս ․ չեմք գիշերոյ, չեմք խաւա-
րի, իբրև 'ի տունջեան զգաստացեալ շրջեա-
ցուք ո̃պ զորդիս լուսոյ և զորդիս տունջեան ։
Այլ դու լուսաբուն հայր համատարած և
գեղեցիկ արևակն տանս Թորգոմայ՝ պար-
թևազեանդ գրիգոր, հովիւ հսկող և վար-
դապետ ճշմարտութե̃, խոստովանող վկայ՝
և բազմաչարչար նահատակ, հանապազ կեն-
դանի 'ի միջի մերում, զարթո զզօրութիւնս
քո լուսացնցուղ ճառագայթիւք յերկնից 'ի
բարձանց, և արդիւնացո յանդաստանի հոգ-
ւոց մերոց զտ̃մ բերս բարեաց ․ ծաղկեցո
զերփն

զերփին երփին վայելչութիս առաքինութե և ամենահաճոյ վարուց յա̃ծատունկ՚ի դրախտիս ոռոգելոյ արեամբ քո. և պտղաբերեալ ազգի ազգի բարեկարգութիս յայգի տ̃ն զօրութեց , զոր տնկեաց աջն անեղական , և մշակեաց քիրտն երեսաց քոց. ջերմացո՛ զհովացեալ սիրտս մեր յեռանդն ա̃ծպաշտութե , և լուսազարդեալ պայծառացո՛ գեղեցկութ̃ բազմազունի կարգաց` իբրև ականց պատուականաց փայլելոց յեկեղեցի սբ̃ , պաշտել մեզ ը̃ն քումդ նմանութե և ը̃ն հետոց ուղղափառ վրդ̃պուեդ` սրբութ̃ և արդարութ̃ զա̃մ աւուրս կենաց մերոց , զոր քև ծանեաք` զարարիչն մեր և զկեցուցիչ և զնորոգիչ , զհայրն ամենակալ և զորդին միածին և զկենդանարար սբ̃ հոգին , երկրպագանելով հոգւով և ճշմարտութբ̃` սբ̃ երրորդութեն և մի ա̃ծութե. որում փառք , պատիւ , և իշխանութի յաւիտեանս յաւիտենից. ամէն ։



# ԿՈՏՈՐՈՒՄՆ

## Սբց անմեղ Մանկանցն բեթղեհեմի ։

Դ. Տօնի. 10. բառ չէ ։ Կամ պաղ. 11. և յաւե- լուր. 8 ։ Տր էէւ. Տօնի. 9 ։ Յ. դեկտ. 29 ։ Լ. դեկտ. 28 ։ Պոր. Նիսա. 'ի Տաւաքիւ. Պ. Եր. չէ ։ Լյասէ. պասմ. ա. 8 ։ (1)

ԳՐՏՃՐՈՒ ԿՈՏՈՐՐ-ծի բանաւոր գառանցս 'ի տա- նէն եփրաթայ՝ փոխանակ հով- ուին եկեղոյ 'ի խնդիր մոլա- րեալ ոչխարաց, որ և զառն նոյ՝ բարձօղ մե- ղաց Նի, գեղզեցիկ բովանդակի 'ի պատմու- թեան աւետարանին՝ որ ըստ մատթէոսի ։ Զի յորժամ մոգք եկին յարևելից աստղագու- շակ տեսլեամբ 'ի հրէաստան յերկրպագութի- նորածին մեսիայի՝ փրկչին Նի, մտեալ 'ի թագաւորական քաղաքն երեմ հարցանէին, թէ ո՞ւր է որ ծնաւ արքայն հրէից ։ Յայն- ժամ դղրդեցաւ քաղաքն ամ. այլ առաւել խռովեցաւ հերովդէս արքայ մեծ՝ որ և առ- կաղոնացի, մի՞ արդեօք ծնեալ իցէ ճշմա- րիտ օծեալն՝ այն է յունարէն Քրիստոս, և եբրայեցերէն Մեսիա, որդի դաւթի և ժառանգ արքայութեն իւրոյ. և խնքն իւրև- օտար-

ստորադասցի անկցի 'ի Թագաւորութենէ, միանգամայն և նշաւակ լինիցի՝ ուր ինքն յաչս Հերովդիանոսաց իբրև մեսիա էր համարեալ։ Ապա հարցաքննեալ 'ի քահանայապետաց և 'ի դպրաց՝ թէ ո՞ւր ծնանիցի ք̃ն, իբրև 'ի վ̃ք եհաս՝ թէ 'ի բեթղեհեմ յուդայ լինել վկայէ մարգարէն միքիա, զոր և ժողովուրդն անգամ գիտէր՝ թէ ի̅ն գրոց 'ի բեթղեհեմ գեղջէ, ուր դաւիթն էր, գալոց է ք̃ս, ոչ կարաց ծածկել զբանն. այլ խորհեցաւ դաւել նենգանօք. զի ինքեան և որդւոց իւրոց մնասցէ թագաւորութիւնն հրէից։

Վասն որոյ կոչեաց խորամանկն զմոգսն առանձինն, և ստուգեաց 'ի նոցանէ զժամանակ աստեղն երևելոյ, զի ի̅ն այնմ գուշակեսցէ զժամանակ ծնելոյ մեսիայի, և սպանցէ զմանուկն. և եթէ ոչ գտանիցէ զնա յական յանուանէ, կոտորելով զա̅մ համահասակ մանկունս բեթղեհեմի՝ ընդ նոսին մարթասցի բառնալ 'ի կենաց և զՄեսիայն։ Նաև այսպիսի խորամանկ խորհրդով կեղծաւորեցաւ ասել առ մոգսն. գնացէք 'ի բեթղեհեմ, և ստուգեցէք վ̃ս մանկանն. և յորժամ գտանիցէք, ա՛զդ արարէք ինձ. զի և ես եկեալ երկիրպագից նմա։

Այլ խաբեցաւ չարաչար՝ ուր կարծէր խաբել. մանաւանդ թէ անձամբ զանձն խաբեաց, զի կուրացոյց զնա չարութի̃ւն իւր. և ոչ 'ի միտ եառ չո՛ւառականն, զի թէ ծնեալն

լիցէ ճշմարտապէս մեսիայ՝ որ եկն զայլս կեցուցանել, կարող է և զանձն ապրեցուցանել. և եթէ թոյլ տայ այլոց մեռանիլ 'ի պատճառս իւր, գիտէ անդրէն կենդանացուցանել՝ զանձն իւր մատնելով վն ամենեցուն, երբ և յորժամ ինքն կամի, և ոչ յորժամ սպասողքն կամիցին. զի տր է կենաց և մահու: Այլ եթէ ոչ հաւատայր զմեսիայն այսպիսի գոլ, չմա էր գիտել՝ եթէ յայ առաքեցաւ. և ոչ վրիպի բան մի 'ի բանիցն այ:

Այլ ահա ամ ինչ ը անտեսութն նորածին արքային վճարել լինէր. քանզի ազդմամբ նր մոգքն երկրպագուք 'ի բեթղեհէմ՝ հրաման առեալ 'ի տեսլեան չդառնալ անդրէն յեհէմ առ հերովդէս, ը այլ ճանապարհ գնացին յշն իւրեանց. և ինքն յս թագաւորն փառաց կամաւոր հալածանս յանձն առեալ փախչէր գիշերայն ը մօր իւրում 'ի ձեռն յովսեփայ յեգիպտոս. և անդ էր մինչև ցվախճան հերովդի:

Իսկ հերովդէս անգիտացեալ այսմ ամի, իբրև ետես՝ եթէ ոչ դարձան առ նա մոգքն, համարեցաւ՝ թէ նոքա գիտակ գոլով չարութն իւրում՝ ծածկեցին զիրսն, և խաբեցին զինքն. վն որոյ բարկացաւ յոյժ, և անագորոյն միտօք առաքեաց զօրականս դաշնամիտս և արեանարբուս, և կոտորեաց զամ ստնդիաց մանկունս՝ որ էին 'ի բեթղեհէմ և յամ սահմանս նր, խառնելով ընդ կաթն ստեանց մարց ընդ արեան անմեղ

տղայ-

տղայոց, եթէ նորածին իցեն, և եթէ քա-
նի մի ամաց կամ միամեայ՝ և ևս աւելի, յեր-
կեամենից և 'ի խոնարհ՝ ըստ ժամանակին զոր
մարթացաւ գուշակել 'ի բանից մոգուց վասն
աստեղն երևելոյ. իբրև զի և մանուկն յս
ոչ ապրեսցի 'ի կոտորածէ անտի հասակակ-
ցաց իւրոց առ հասարակ :

Անքննելին խորհրդոց վերին տեսչութեան,
եթէ որպէս թողացուցանէ առնել մարդ-
կան ըստ կամս ազատութեան իւրեանց՝ զոր կա-
մինն զբարի և զչար անխտիր. այլ ինքն ա-
մենաբարի բնութին յամի հանէ և 'ի չարէն
զբարի՝ առաւել քան զոր մեք իմանամք :
Ոի ահա և աստանօր՝ յամօթ եղև չար
բանսարկուն և գործակից նր անօրէն թա-
գաւորն հերովդէս, և ոչ կարացին ինչ
տանանել փրկչին քի, այլ միայն պատճառ-
պատակաց եղեն բազմութե հոգւոց մանկանց
տղայոց՝ այսպիսի պանծալի վկայութե վս
քի. որոց եթէ 'ի չափ հասեալ էր կենաց
քի, յոլովք արդեօք ըստ բերման ապականել
բնութեես զրկէին 'ի յաւիտենից փրկութէ.
ապա կատարեցաւ քաջ ևս 'ի վր նց այն,
թէ յափշտակեցան 'ի մատաղ տիս, զի մի
չարութի ինչ շրջեսցէ զմիտս նց. թող զի
ոչ այլ ինչ կարգօք յայնպիսի փառաւորութի
վերանային՝ ոպ սովին նախանձելի վիճա-
կաւ: Մինչ զի և գոյժ և լալումն և աշխա-
րումն հռաքելի 'ի դէմս մարց նոցա՝ յարտա-
քինն ևեթ հայի սուգ ըստ քի. ըստ որում նա
ինքն նախամայրն համարեալ ոք մանկանցն՝
այն

այն է մայրն յոմնեփայ Նահապետի , Թաղեալ էր 'ի Բեթղեհէմ. և 'ի լինել ահագին կոտորածի հազարաւոր տղայոց 'ի սահմանս նորա , այնչափ ողբ և կոծ լինէր ծնողացն , զի գոյժ նց հասանէր մինչև 'ի Հռամա ( որ Թարգմանի բարձր ) , այն էր քաղաք 'ի սահմանս գաւառայ Բենիամենի 'ի բարձրաւանդակ վայրի՝ իբր երկոտասան մղոնաւ հեռի 'ի Բեթղեհեմէ . այլ սակայն՝ և նմին իսկ հռաքէլի եղելոյ ԺԴ երամս արդարոց 'ի գոգն աբրահամու՝ ցնծութն աւետարանեցաւ մեծ՝ յիջանել անդր աղաւներամ բազմութն նոտղայոցս՝ իբրու զաւակաց իւրոց , որք եղեն նմա պարծանք յաւիտենական : (2)

Նու կարի իսկ քաջ . զի Թէ ըստ առածի գրոց՝ և սաւուղ 'ի մարգարէս , քանիօ՞ն է ասել , և մանկունք 'ի մարտիրոսս , կամ՝ և տղայք ստնդիայք 'ի վկայս . Ո՞րպիսի տղայք . անմեղք , դեռաբոյսք , նորաբողբոջք , մատաղերամք . և այն՝ Ո՞րպիսի վկայք . դերադոյնք , նորահրաշք . զի ոչ լոկ զարիւն էր հեղուլ վն անուան Քսի իբրև զայլսն 'ի հնումն և 'ի նորումս , այլև զանձինս տնել 'ի վն անձին Քսն . մեռանիլ , զի ապրեսցի կեանքն . և պարզաբար՝ տալ զանձինս փոխանակ որդւոյն Այ . զի զի՞նչ այնպէս պանծալի և փառացի 'ի քաջայաղթ մրցանս հանդիսի , ո՞ր դիմագրաւ լինել զօրականին 'ի մահ՝ 'ի փոխանդիլ անդ զօրավարին , եւ առաւել արքային՝ 'ի խաւան մարտի , և մահուամբ իւրեանց ապրեցուցանել զԹագաւորն 'ի ձե-

ռաց

ռայց թշնամեաց ։ Նաեւ ո՞ր պտուկք եւ վարձք փոխարինաց չիցեն պատրաստեալ այսպի- սեացս յերկնաւոր թագաւորէն ։ Ո՛ն որոյ բազում են բանք գեղեցիկ գովեստից առ՚ի մէջ հարց եւ 'ի վարդապետաց 'ի վերայ նո մանկանցս բեթղեհեմի ։ Այլ զի զաղէտս կատարածի նոցա ընդ մարմնոյ՝ կենդանի նկարագրէ յանդիմանն աչաց մերն գրիգոր նիւսացի 'ի ճառընտիրս մեր, զայն քաղել կամ եղեւ մեզ յայսմ վայրի՝ օրինակ զայս ։

* Արդ զիս դեռեւս տղայոցն (ասէ) հնչե-
,, ցուցանէ զոչումն. եւ տեսեալ զնա կայ-
,, ծեմ ճչել անդուշակս զարհուրելով, եւ 'ի
,, նշոյլս սրոյն կափուցեալք, եւ երկիւղիւ
,, խոնարհեալք 'ի գիրկս մարց իւրեանց իբ-
,, րեւ յապաւէնս, այլեւ 'ի ծոցս խուսափելս ։
,, Ապա եւ զմայրսն կարծեմ տեսանել,
,, այլ զոմն առ այլովս փախուցեալս 'ի քա-
,, ղաքէն այնու որոմելի եւ քաղցր բե-
,, ռամբք, եւ խնդրողս տեղի ապաստանի.
,, եւ զոմն 'ի նոցանէ՝ ոչ ծածկոյթ բարեշուք
,, զիւրեաւ առեալ 'ի զառնութէն. իսկ ոմն՝
,, եւ զոր ունէր 'ի բաց ընկեցեալ 'ի շփոթա-
,, կան փախստենէն. եւ զայլ ոմն՝ զմանու-
,, կամբն անկեալ յայնպիսի ծածկութիւն
,, զաղայն վտանգէր՝ գողանալ յուսալով. եւ
,, զմիւս եւս այլ՝ հասեալ 'ի հալածչացն (յի-
,, թանայն) ուժգնակի, եւ ապա պակասեալ
,, 'ի գնացիցն, եւ պարաւանդեալ յերկիւ-
,, ղէն, եւ արտասուալից աչօք հայեցեալ 'ի
,, փայլուածս սրոյն. եւ զհայեցուածսն՝ յի-
,, կաս

,, կուս բաժանեալս, և զանձն առաջի ե-
,, դեալ փութապէս իշխամք սորին: Նա-
,, դարձեալ միւս այլ ոմ̃ն ոչ կարացեալ շար-
,, ժել ուրեք՝ կապեալ ոտիցն ՚ի զարհուր-
,, մանցն. այլ յառաջ կորուսեալ ՚ի սպան-
,, մանէ իւրոյ զաւակին. և սպանողին՝ սուղ
,, ինչ անսացեալ հառաչմանն. և ուրեք ձե-
,, ռօքն լուծեալք և յոյժ սաստնելովք, ան-
,, գխտացեալք և զմանուկն ՚ի գիրկսն սա-
,, տակեալ, և կանխեալ զմահուճանն դիա-
,, կոյտ նախ քան զորոյն կորուստ . . . . . .
,, (Իսկ անողորմ զինուորք) զձեռս ՚ի վեր
,, ձգեալ զինալիցս՝ . . . զմատաղ գառինսն
,, խողխողէին, և յա̃մ կողմանց աղբիւրք
,, արեանց յորդաբուղխք զդէմս երկրին շա-
,, ղախէր . . . և ա̃մ ուրեք զմանկունքն իւ-
,, րև զգառն ամոլս խուզէին. և ոչ ոք ՚ի նո-
,, ցանէ թաքչէր ՚ի սորին. իւրաքանչիւր ոք
,, ՚ի նոցանէ՝ ոպ̃ զի նա է քն̃ն, իւրաքանչիւր
,, արեան խնդիր:
,, Բայց որք էին քաջ սիրտք համարձակ-
,, մարքն, ընդդէմ հաստատեալ խոցմանց
,, սորին՝ վիրաւորէին վն̃ իւրեանց տղայոցն
,, իբրև հեշտ իմն վիրօք. այլ օգուտ առ-
,, նէին և ոչինչ, բայց երկայնագոյն առ-
,, նէին իւրեանց զվտանգին ժամանակն:
,, Իսկ կէսքն բուռն հարեալ բռնաբար ՚ի
,, ձգմանէ մանկանցն՝ զո՛ր և իցէ անդամ
,, ձեռօքն պնդեալ զայն ունելով, յետ այ-
,, սորիկ երևեցան, սորին՝ մօրն՝ որոց ձգէին,
,, զմանուկն բաժանելով: Իսկ մի ոմ̃ն ըն-
,, ձեռնն,

„ Ձեռանն, և զմի մասն ոտինն, և այլ ումն
„ այլ ինչ անդամ՝ ոմն զբոլոր մանուկն ու–
„ նելով ընթանայր։ Իսկ բազումք ՚ի փա–
„ խստեանն սոյն ՚ի դիակուտեալ մարմինսն
„ գլորելով, և ՚ի կարծրութիւն երկրին բաղ–
„ խելով դեռևս մատաղ իւրեանց ման–
„ կունքն. որ սոյն ինչ ոչ պիտոյանայր ըզ–
„ մանկունսն կորուսանելոյ։
„ Իսկ մի ումն՝ հանդերձելոյ վիրաւորել
„ զտղայն առաջի անկեալ՝ բազում անգամ
„ երդմնեցուցեալ զնա մն իւրոյ զաւակին,
„ այսպիսի ինչ արտաքոյ ասելով. Ո՜ նոր
„ հեա՜ ինձ զի՞նու՞որ, որ ՚ի քէնդ գո՞րծի
„ ագիտութիւն, և նախ քան զմանուկդ՝ զիս
„ (հարջի՛ր) եղեալ ցոյց. և մի՛ տրտմեցու–
„ ցանէր այդպիսի տեսլեամբ զաչս մօրս։
„ Ո՛ ուրեք արդեօք, բայց եթէ քո մայր.
„ է՞ քո կին՝ ստացեալ մանկունս. արդ ՚ի
„ քոյոյն՝ և իմնումս ողորմեա. յիշեա՜, զի ՚ի
„ դժնդակութէ մանկանց գալարին աղիք
„ ծնողաց և խառվին։ Իսկ նա իբրև թէ բե–
„ կանէր անձնն, արտասուքն ընդ ծնօտսն
„ հեղուին. այլ սակայն կատաղութեն հե–
„ րովդի ծառայելով, մինչդեռ բանքն ՚ի
„ բերանն էր, ՚ի ձեռս ծնողացն սպանանէր
„ զմանուկն. և զտապան՝ սպանմանն ող–
„ բումն հատանէր . . . Իւ գոչումն յառնէր
„ խառնակից, և ողբաձայնս ըմպր պէս–
„ պէս. մեծագոյն մանկանցն լալով զեղ–
„ բարս. հարցն կողկողելով զոր ծնանն.
„ իսկ մարցն ձիչ բառնալով ՚ի չարչարանսն,
„ և

„ և ծերունեացն ուչինչ այնպիսի տեսեալ
„ (է մեր) աղաղակելով . . . և ամենեցուն
„ աւաղելով․ զղաւեն լոյս աւուրն այնո-
„ րիկ ‖ ։

Արդ՝ եթէ լուր պատմութեես այսչափ կսկըծագին, զի՞նչ անցք իրացն իցեն . և եթէ գուք՝ 'ի սիրտ ամ մարդոյ անկանի 'ի վերայ մանկանց անմեղաց, զի՞նչպիսի իմացուք կարեկցութի՞ ը նոցա զողբայացեալն էմմանուէլի, և ըստ նմին խոստումն աներկբայ՝ պատկել զնոսա փառօք յարքայութե իւրում, և նստուցանել ը աջմէ իւրմէ 'ի փառս ։ Հաւատամ, եթէ և ը ծնօղս նց երկ բազմօք այցելութի 'ի ոճնէ . այլ ճշմարիտ է և այն, զի պատժոց պարտական զտան բեթղեհեմացիք յոչ լինել ասպնջական ածամօր կուսի առ 'ի տալ նմ տուն մի 'ի ծնունդ ածորդւոյն, վսյ և հարկեցաւ բանն բազմիլ յանբանից մսուր ․ զի յիւրսն եկն, և իւրքն զնա ոչ ընկալան . այլ նա ընկալաւ զորդիս նոցա՝ ժողովելով իբրև հովիւ մի զգառինս իւր ։

Մամ է այսու հետև նշանակել և զարժանահաս պատուհաս եկեր՝ 'ի վր անօրէն բըռնաւորին հերովդի, ը որում մի ը միոջէ զրկ յովսեպոս եբրայեցի . զի թեպէտև զմանկանցն կոտորած ոչ ուրոյն նշանակէ, այլ յայտ առնէ զդատաստանսն այ՝ որ եկին հասին 'ի վր նր վա բազմապատիկ արեանցն՝ զոր արար ոչ միայն յօտարս, այլև յընտանիս, մինչև 'ի սպանումն կնոջ իւրոյ և որդւոց իւրոց և այլոց սիրելեաց՝ որ պատուհական էին

'ի

'ի տոհմէն անդ խորամ. Նոյն զանմեղ ման-
կանցն զկոտորած իւրև հռչակեալ մինչ 'ի
հռոմ յայտնապէս նշանակէ մակրոբիոս այր
հեթանոս ('ի կռանոսեան գիրս. Բ. գլ. 4.)
յասելն մի օգոստեայ կայսեր, թէ * յոր-
„ ժամ լուաւ, զի 'ի մէջ մանկանց՝ զորս յեր-
„ կրին ասորւոց հերովդէս արքայ հրեից հր-
„ ամայեաց սպանանել յերկեմենից և 'ի
„ խոնարհ, սպանեալ իցէ և որդին նր, ա-
„ սաց (կայսրն). լաւ է՝ հերովդի խոզ լի-
„ նել, քան որդի ‖. զի այն՝ որ ոչ զենայր
զխոզ 'ի սպանդ. և ոչ ուտէր, եա սպանանել
զանտարապարտ զորդի իւր զանդրանիկ 'ի
նոյն խակ աւուրս կոտորածի մանկանցն բեթ-
ղեհեմի։ Եւ ինքն ոչ յերկարեաց զկեանս՝
այսպիսի ընկալաւ որհաս չարաչար՝ ըստ գրե-
լոյ եւսեբի 'ի յովսեպոսէ.
* Ակտ հիւանդութիւնն հերովդի զայրանայր 'ի
„ մի նր առաւելապէս, զծածկելէ ժա հատուց-
„ ման չարաչարս խնդրէր 'ի նմանէ զանիրա-
„ ւութեն՝ զոր անօրինէր նա։ Ջ ի հուր տապա-
„ խտոն անձեղոյ վառեալ տոչորէր 'ի նմա, որ
„ արտաքս ոչ ցուցանէր զյարուցմն առաջոյն
„ իւրոյ. այլ զի 'ի ներքուստ յաճախէր հա-
„ շուիմն տանջանաց նորա. և Ը ուշնել ինչ կե-
„ րակուր ընաւ նա ոչ կանկանայր. զի ոչ լի-
„ նէր անց կերակրոյ Ը պարտ նր. և կեղ
„ չարակեղ և ցաւք անհնարինք անկեալ էին
„ զաղեօք նր. և այրումն գիջուն զոտից
„ նր. և զօգ նր աւէ տորորեցաւ և որդնա-
„ լից եղև. և 'ի թանեալ ոգւոցն՝ և նա եւս
„ տա-

„ տառապեցուցանէր զնա 'ի հոտոյ անտի
„ ժահոտն . . . . Իսկ նա թէպէտև տանջեալ
„ չարչարէր այսու ա̃մի՛ ցաւովք , սակայն
„ ջանայր նա կեալ , և ակնունէր փրկութե̃ ,
„ 'ի բժշկութե̃ անձին իւրում հնարէր . . . .
„ Հաճոյ եղև բժշկաց , զի անդ ( 'ի ջեր-
„ մուկս՝ որ յայնկոյս յորդանանու ) լու՛ա-
„ ցեն զա̃մ մարմինս նորա ձիթով . և իբրև
„ ընկլաւ նա բոլորովին անձամբն յաման
„ անդր՝ որ լի էր ձիթովն , լուծաւ ինքն ,
„ և շրջեցան աչք նր̃ . . . . Եկն յերիքով ,
„ և լի էր սրտմտութ̃բ բարկութ̃բ , և զայ-
„ րանայր և սպառնայր նա մահու . բայց
„ խստացեալ զօրանայր նա 'ի նեղութի̃ գոր-
„ ծոց չարի . եւ ժողովեաց նա յա̃մ քաղա-
„ քաց անտի յուդայ զերևելի երևելի այր՝
„ 'ի տեղի մի , որ անուանեալ կոչէին աս-
„ պարէզ . և հրամայեաց դնել զնս̃ 'ի բան-
„ տին : Կոչեաց նա զշա̃ղոմէ զքոյր իւր , և
„ զայր նր̃ զալէքսա , և ասէ ցնս̃ . գիտեմ ,
„ զի հրէից տօն մեծ լինի 'ի մահու իմում .
„ բայց կարող եմ ես սուգ մեծ առնել 'ի
„ վր̃ իմ 'ի ձեռն այլոցն , և կոծ սքանչելի լա-
„ լեաց , եթէ արասջիք զպատուէր իմ . ըզ-
„ մարդիկս զայս՝ զոր միանգամ եդեալ են 'ի
„ բանտի , նոյնժամայն իբրև մեռանիմ ես ,
„ կացուսջիք 'ի վր̃ նց̃ արս ոստիկանս 'ի ծա-
„ ռայից աստի , և կոտորեսցեն զնս̃ . զի ա̃մ
„ հրէաստան առ հասարակ և ա̃մ տուն յա-
„ կամայ կամս իւրեանց լացցեն 'ի վր̃ իմ . . .
„ Այլ իբրև ճգնեցաւ նա 'ի ցաւս անձին իւ-

„ րոյ , կամեցաւ նա զիւրովին երթալ , մինչ-
„ չև հասեալ էր օր վախճանի իւրոյ . և եառ
„ իւր խնծոր , և խնդրեաց դանակ . . . և վե-
„ րացոյց զաջ իւր , ոչ զի սպանցէ զանձն
„ իւր . . . և ապա ինքն դառն չարաչար ցա-
„ ւոք մեռաւ ։ Այսպէս եղև կատարած
„ մահուան հերովդի . զի ընկալաւ նա ըզ-
„ հատուցումն արդար դատաստանացն այ
„ (ասէ եւսեբիոս) , փոխանակ զի կոտորեաց
„ նա զմանկունսն բեթղահէմացւոց՝ նենգու-
„ թեն , զոր նենգեաց նա զփրկիչն մեր ॥ ։

Թիւ համարոյ երանելի մանկանցն կոտորե-
լոց՝ ըստ յայսմաւուրաց մերոց ասի լինել հա-
զար չորս հարիւր վաթսուն և երկու , ՚ի սահ-
մանաց անտի բեթղեհեմի առ հասարակ՝
յութսուն և չորս գիւղից . իսկ ըստ յունաց
և եթէովպացւոց կարի շատ գրի , որպէս թէ
լինել չորեքտասան հազար . ստոյգն այ է
գիտելի ։ Պատանին ցարդ ևս ՚ի զանազան
տեղիս նշխարք յանուն սր մանկանցս . բայց
և այնք ստուգութեն կարօտին . զի առաւել
՚ի մանրութե ոսկերաց գուշակեալ երևին ։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Քանզի անյայտ է սորայ ամիս և օր կոտորածի սրբ̃ մանկանցս, յոյնք և լատինք յարմարութեամբ կարգեցին զտօն նց̃ 'ի դեկտ. 28. կամ 29. ը̃ նմին և 'ի Հ. եգիպ̃տ 'ի յունվ. 8. բայց ը̃ սովորութեանց եկեղեցւոյ՝ որպ̃ ցուցանեն հին ճառընտիրք մեր, կատարիւր տօն նց̃ 'ի մայիսի. 9. ը̃ որում գնէ և տր իԷԼ. վ̃ոյ և Հ. կրկնէ միւսանգամ 'ի մայիսի 10. կամ 11: Եւ զի ամսոյն մայիսի հասարակօրէն անկանի 'ի մէջ յինանց՝ յորում ոչ կատարի 'ի մեզ տօն սրբ̃յ, վ̃ոյ որպ̃ այլ տօնք մայիսի՝ նոյնպէս և անմեղ մանկանցս՝ վերածեալ են 'ի միջոցն, որ զկնի պենտեկոստէի:

(2) 'Ի Հ. մայ. 10. կամ 11. ո՛չ գիտեմ յումմէ մուծեալ է (զի չիք առ տր իԷԼի.) նորաշուր պատմութիւն ինչ, որպ̃ թէ հասեալ ոմն այր բարեպաշտ լեալ իցէ 'ի բեթղեհէմ, զորոյ զմիամօր որդին գեղեցիկ՝ կարծեալ զինուորաց՝ թէ նա ինքն իցէ մանուկն երկրպագելի, անխնայ սպանեալ իցեն, ոչ ներելով արտասուաց հօրն և մօրն. և այլ ևս բանք մուրացածոյ՝ կէս մի 'ի բանից նիւսացւոյն, կէս մի 'ի սխալ իմացուածոյ գրոց. և զուցէ բովանդակն հիւսուածք առօրեաց:



ԳԼԱՑ.

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Ակակիոսի վկային ։

Երկոքեան են փառաւոր վկայք սորին գեղեցիկ կոչմամբ, քն ակակիոս, որ Թարգմանի անչար կամ անբիծ, վայելուչ պատկանեալ է տօնի անմեղ մանկանց ։ Եւ որպէս մին յերկուց մանուկ կոչի, զի էր պատանեակ հասակաւ, վոյ է իմիք սա կարծի եղեալն սստանօք 'ի տօնացուցի, (առեալ 'ի յունիս կամ յուլիս ամսոյ,) իբրև յարևելեան սբց տօնի. նոյնպէս և միւսն, որ հարիւրապետ կոչի, է այլուստ տեսութե առաւել 'ի դէպ գայ կարգի տօնիցս. զի յամենայն մայրս նշանակի կատարումն նց, և աւելի հռչակաւոր գտանի պանծալի վկայաբանութն ։ Յայտնապէս հայեցեալ զերկոցունց վարս եւ կամ եղև մեզ պատմել յայսմ վայրի, եթէ իբրև յիշատակելի, և եթէ իբրև տօնելի ։ (1)



# ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ

## Ակակիոսի մանկան ամասիացւոյ:

Հ. յունիս. 10. ըստ փող: 11. ըստ ֆէր: Յ. Լ. յուլ. 28: Պոլլանդեանն օրինօ. 'ի զ. հատ. յուլ. եր. 547:

ԱՐԱՆԵԼԻՍ ԱՅՍ Ա-կակիոս էր մանուկ հասակաւ, որդի հաւատացեալ ծնողաց 'ի կողմանց պոնտոսի կամ սինոպայ, ծնեալ կամ սնեալ յամասիա քաղաքի պոնտացւոց. ուր 'ի հալածանս լիկիանոսի կռապաշտ թագաւորի՝ ձերբակալ 'եղև վն քրիստոնէութեն. և յանդիման եղեալ յատենի արքային՝ աներկիւղ խոստովանեցաւ զքրիստոնէական հաւատն իւր. և ոչ էառ յանձն 'ի բաց կալ 'ի քնէ՝ ոչ աղօքանօք և ոչ սպառնալեօք: Այլ կախեցին զնա, և յայժզան հարին. (այլք ասեն, թէ քերեցին.) և կոտորեցաւ ամ մարմին նր. իսկ սբն աղօթէր առ ած. յայնժամ ձայն եղև առ նա յերկնից. զօրացի՛ր ա՛կակիէ, զի ես ընդ քեզ եմ:

Տեսեալ թագաւորին զհաստատութի մտաց պատանւոյն՝ յանձն արար զնա 'ի ձեռս տե-րէն

բենտիոսի եպարքոսի կմ պռետորի ․ և նա
գտեալ զնա անհրապուրելի՝ եւ չեռացու-
ցանել տապակ ձիթով և ճարպով ․ և ընկե-
ցին անդ զսբ վկայն ․ այլ յաղօթել նր չի-
ջաւ հուրն , և ցրտագոյն եղև տապակն ․ և
ել ոտն ամբողջ ։ Դէպ եղև եպարքոսին գը-
նալ յաւուրսն յայնոսիկ յապամիա , և յա-
պողոնիա , որ և ապողոնիադէ ( պրոպոնտո-
սի ) ․ տարաւ և զսբ վկայն զկնի ․ և անդ կա-
ցոյց առ բագինսն՝ որ էին 'ի քաղաքին , և
բռնադատէր զոհել է իւր կռոցն ։ Յայն-
ժամ յաղօթս եկաց ակակիոս ․ և անկան ամ
բագինքն և կործանեցան ։

Ապա մատնեաց զնա եպարքոսն 'ի ձեռս զի-
լիկինթոսի տրիբունի կմ դատաւորի տեղ-
ւոյն ․ և նա հարցափորձել բազմօք , և հա-
տատուն փտեալ զսբն 'ի հաւատս , գան ե-
հար զնա սաստիկ հարուածով ․ և ապա ըն-
կեցին առաջի ահաւոր առիւծու , և գա-
զանն ոչ մերձեցաւ 'ի նա ։ Հրամանն ետ դա-
տաւորն արկանել զնա 'ի բորբոքեալ հնոց ․
և հրեշտակ տն եհան զնա անարատ ․ լուաւ
զայն զիլիկինթոս , և ոչ հաւատաց ․ վսյ եկն
անձամբ , զի տեսցէ զհնոցն՝ եթէ վառեալ
կցէ ․ և ահա ել բոցն , և հրկիզեաց զե-
րեսս նորա ։

Յետ այսորիկ ետուն զսբն ակակիոս 'ի պո-
սիդոնիոս կամ պիսիդոն դուքս ոմն ․ և նա
ծանր շղթայիւք տարաւ զհետ իւր 'ի քաղաքն
մելիտիոյ , որ և գրի մելիտոն կմ մելտինէ ․
( զոր ոմանք համարին լինել նոյն՝ որ 'ի կա-

# ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ

## Ակակիոսի մանկան ամասիացւոյ :

Հ. յունիս. 10. ըստ փռ : 11. ըստ ֆէռ : Յ. Լ. յուլ. 28 : Բոլլանդեանն Պինիոս. 'ի չ. հատ. յուլ. եր. 547 :

ԵՐԱՆԵԼԻՍ ԱՅՍ Ա-կակիոս էր մանուկ հասակաւ, որդի հաւատացեալ ծնողաց 'ի կողմանց պոնտոսի կամ սինոպայ, ծնեալ կմ սնեալ յամասիա քաղաքի պոնտացւոց. ուր 'ի հալածանս լիկիանոսի կռապաշտ թագաւորի՝ ձերբակալ եղեւ վն քրիստոնէութեն. և յանդիման եղեալ յատենի արքային՝ աներկիւղ խոստովանեցաւ զքրիստոնէական հաւատն իւր. և ոչ էառ յանձն 'ի բաց կալ 'ի քնէ՝ ոչ ողոքանօք և ոչ սպառնալեօք: Այս կախեցին զնա, և յոյժ գան հարին. (այլք ասեն, թէ քերեցին.) և կոտորեցաւ ամ մարմինն նր. իսկ սքն աղօթէր առ ած. յայնժամ ձայն եղեւ առ նա յերկնից. զօրացի՛ր ա՛կակիէ, զի ես ընդ քեզ եմ:

Տեսեալ թագաւորին զհաստատութի մտաց պատանւոյն՝ յանձն արար զնա 'ի ձեռս տերէն

րենտինոսի եպարքոսի կմ պռետորի . և նա գտեալ զնա անհրապուրելի՝ ետ ջեռուցու-ցանել տապակ ձիթով և ճարպով . և ընկե-ցին անդ զսբ վկայն . այլ յաղօթել նր շի-ջաւ հուրն , և ցրտագոյն եղև տապակն . և ել ողջն ամբողջ : Դէպ եղև եպարքոսին գը-նալ յաւուրսն յայնոսիկ յապամիա , և յա-պողոնիա , որ և ապողոնիադէ ( պրոպոնտո-սի ) . տարաւ և զսբ վկայն զկնի . և անդ կա-ցոյց առ բագինսն՝ որ էին 'ի քաղաքին , և բռնադատէր զոհել ԺԲ իւր կռոցն : Յայն-ժամ յաղօթս եկաց ակակիոս . և անկան տմ բագինքն և կործանեցան :

Ապա մատնեաց զնա եպարքոսն 'ի ձեռս զի-լիկինթոսի տրիբունի կմ դատաւորի տեղ-ւոյն . և նա հարցափորձել բազմօք , և հաւ-տատուն գտեալ զսբն 'ի հաւատս , զան ե-հար զնա սաստիկ հարուածով . և ապա ըն-կեցին առաջի ահաւոր առիւծու , և գա-զանն ոչ մերձեցաւ 'ի նա : Հրաման ետ դա-տաւորն արկանել զնա 'ի բորբոքեալ հնոց . և հրեշտակ տն եհան զնա անարատ . լուաւ-ղայն զիլիկինթոս , և ոչ հաւատաց . վսյ եկն անձամբ , զի տեսցէ զհնոցն՝ եթէ վառեալ իցէ . և ահա ել բոցն , և հրկիզեաց զե-րեսս նորա :

Յետ այսորիկ եստուն զսբն ակակիոս 'ի պո-սիդոնիոս կամ պիսիդոնս որուքս ածն . և . նա ծանր շղթայիւք տարաւ զհետ իւր 'ի քաղաքն միլիտոյ , որ և գրի միլիտոն կմ միլտինէ . ( զոր ամենք համարին լինել նոյն՝ որ 'ի կա-

ակակիոսի՝ տարաւ 'ի քաղաքն օճնոտ. և եդ-
անդ 'ի ծածուկ տեղի ։ Իսկ յաւուր բարեպաշտ
թագաւորին Մօրկայ Հայկազնոյ յայտնեցան
անդ նշխարք սրբոյն ակակիոսի. զի ինքնին սրբ
վկային երեւեալ պատմեաց, Թէ իմ են նշխարքս. և շինեցին 'ի վ(երայ)ն եկեղեցի պայծառ.
և հոյակապ յանուն սրբոյն ակակիոսի, յա-
մի տեառն իբր 590. իսկ կատարումն նորա եղև յա-
մի իբր 310 ։ (2)

---

# ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ

մեծին Ակակիոսի Հարիւրապետի՝ բիւզան-
դացի կոչեցելոյ. և որոց ԷԸ նմա ։

Հ. Մայիս. 9 ։ Տէ իէլ. մայ. 8 ։ Գ. մայ. 7 ։
Լ. մայ. 8 ։ Բոլլանդեանն հեղինակներս. 'ի Բ.
հատ. մայ. եր. 291. Եա ։ Սիմոնատես, և տաճկես.
և այլք ։ (3)

ՄԵԾԱԶՕՐ ՎԿԱՅՍ
քրիստոսի ակակիոս՝ բիւզանդացի կո-
չեցեալ, էր ազգաւ կապադով-
կացի, երիտասարդ քաջ և երե-
ւելի'ի դասս զօրականաց մաքսիմիանոսի կայ-
սեր՝ փեսային դիոկղետիանոսի. մինչև եղև
հարիւրապետ ԷԸ ձեռամբ փիրմոսի հազա-

րապետի ; որ գլուխն էր գնդին անուանե-
լոյ առ Հռովմայեցիս Մարտեան կամ Մար-
սեան , որ և արէսեան՝ յանուն չայն մարտի
և պատերազմաց ։ Այլ քանզի յառաջագոյն
մարզէին զինուորք 'ի դպրոց կրթանաց , վայ
գրեն այլք՝ թէ ակակիոս էր զինուորեալ
'ի կարգի ըսքոլայց մարտի ։
Եւ եղև 'ի յարուցանել մաքսիմիանոսի հա-
լածանս ընդդէմ քրիստոնէից , եհաս հրամանն
և առ զօրագլուխս տեղեաց տեղեաց՝ քննել
զդասս զինուորաց . զի թէ գտցեն զոք քրիս-
տոնեայ , հարկեցուսցեն 'ի պաշտօն դից մա-
հուչափ տանջանօք ։ Յայնժամ փիրմոս տրի-
բունն հարցփորձ արարեալ իւրումն գնդի , յա-
րում գտանէին ոմանք 'ի քրիստոնէից, էր զոր
ողոքանօք՝ և էր զոր սպառնալեօք ձգեաց 'ի
կամս ամպարշտութե թագաւորին՝ ուրանալ
զքս , և զոհել կռոց ։ Իսկ իբրև եկն 'ի հար-
ցափորձել զքաջն ակակիոս , նա համարձակ
զայս արար պատասխանի . Ես քրիստոնեայ
ծնայ , քրիստոնեայ եմ , և եղէց՝ կամօք տն
իմոյ յսի քսի ։ Ասացեալ նմ փիրմոս . և կրկ-
նէր և երեքկնէր զհարցուածն , և ստիպէր
հաւանել օրինաց ինքնակալաց ։ Իսկ երանե-
լի վկայն քսի պնդեալ կայր 'ի բարւոք դաւա-
նութե իւրում , յոչինչ գրելով զնմ խրոխ-
տումն և զխոստմունս չարին ։ Յայնժամ հա-
զարապետն լնուլ կամեցեալ զհրամանն ար-
քունի՝ առաքեաց կապանօք զակակիոս առ
բիբիանոս դատաւոր , որ էր դուքս հրամա-
նատար նմ զօրուն , և նստէր 'ի պերինթոս

քղք

քղք Թրակիոյ՝ որ և Հերակլեա կոչի, գրեղ
առ նա և Թուղթ օրինակ զայս.

Վալերիոս Փիրմոս՝ Բիբիանու դքսի ողջոյն.
Ակակիոս հարիւրապետ՝ զզինուորեալն
ը իմով հազարապետութբ, որ բազմօք խրատեալ 'ի մէնջ՝ կէս մի օրոք բանիւք խոստմանց, և կէս մի սպառնալեօք, զի 'ի բաց կացցէ յաղանդոյն քրիստոնէից, իբրև համառօտեաց զանձնէ քրիստոնեայ գոլ, և 'ի նոյն միտս յամառեալ պնդեցաւ, եւ՝ անյաղթ և մշտայաղթ ինքնակալաց մերոց հրամանացն հնազանդեալ՝ կապեալ առաքեցի առ քեզ. որ և ոչ պարտ և արժանն է՝ տանջանաց և պատժոց ներքոյ անկցի, ոչ զի օ-րինաց մերոց զանձն ներքոյ արկանիցէ.

Իբրև առաւ Ակակիոս 'ի բնակութն Բիբիանոսի, 'ի վաղիւն անդր 'ի նստել նր յատեանն 'ի քննել զհաւատացեալս, մատեաւ առ նա Անտոնինոս կալանաւորակապ, և ասէ. Յերեկեան աւուր յղեաց առ մեզ իմ բի-բիանոս՝ Փիրմոս հազարապետ արեւելեան գն-դին զԱկակիոս հարիւրապետ կապեալ՝ վն անսասան լինելոյ նր արքունի հրամանաց, և պաշտելոյ զՔս. զայս ասացեալ՝ մատոյց և զԹուղթն գրեալ 'ի Փիրմոսէ. Իբրև ընթերցաւ դատաւորն, ասէ. ածցի՛ այսր Ակակիոս. Անտոնինոս ասէ. աւասիկ առաջի ձեր է. և մատեաւ Ակակիոս զուարթերես ուրախութբ.

Եհարց ցնա դատաւորն. զի՞նչ անուն է քո. Պատասխանի ետ երանելին. ցանկալի իմն և

և համօրէն իմումս ազգատոհմի անուն՝ է.
քրիստոնեայ, 'ի պանծալի անուանէն քո ·
այլ որ ըստ մարդկան սովորութեան իցէ, ակա-
կիոս կոչիմ ։

Ասէ այս ասէ դատաւորն, զի՞ է՝ զի անչափ
անուն առեալ քո, որպէս դուդ ասես, չար
դատար այժմիկ՝ անհնազանդեալ հրամանաց
ինքնակալաց · զի զայդ յայտ առնեն բանք
փիլիմոսի տրիբունի որ զքեզն գրեալք ։ Պա-
տասխանի ետ առաքելինն · պատրանք են 'ի
բանսդ ով դատաւոր · այլ ես զճշմարիտն
պատմեցից քեզ՝ թէ որպէս անչար ձայնիմ ·
մանաւանդ զի չկամեցայ հաղորդ լինել չարութեան
արիւնահեղ դից, և ոչ միաբանիլ ընդ հեթա-
նոսս՝ որք դիւաց հնազանդին ։ Բարկացաւ
դատաւորն, և ասէ · ուստի՞ ես դու՝ այր
դու, որ այդպէս յանդուգն պարծանօք խօ-
սիս ։ Ակակիոս ասէ · և զի՞ է քեզ հարցա-
նել զտեղի հայրենեաց իմոց ։ Դատաւորն
ասէ · քանզի մարդասէր բարս ունիմք, և
հայրենի կարգաց խելամուտ գտանիմք, կա-
միմ ստուգել՝ թէ ուստի՞ իցես · զի ըստ աստի-
ճանի պատուոյ հայրենեացդ վարեցայց ընդ
քեզ յատենիս ։ Իսկ Ակակիոս ասէ · ազգա-
եմ աքիացի, և 'ի կապադովկիա ծնեալ · և
'ի բնակիլ ծնողաց իմոց անդէն՝ եկի ես 'ի
զինուորութիւն, ուր զբազումս 'ի զինուորակ-
ցաց իմոց յառաջ քան զիս միջայս լինիլ քրի-
ստոնեայ, մանաւանդ թէ և զիմ մերձաւորս և
զհասակակիցս նովին առաքինութեամբ առաքի-
նացեալ ծանեայ · որք արհամարհեցին զան-
ցաւ

կան մարդ եղեալ, և եկեալ յԱծ յայս՝ զի տացէ մեզ զփրկութի. և այն զի ած էր ճըշմարիտ, հրաշափառ խորհրդով անօրէնութե խոնարհեցաւ կամաւ առնուլ զմերս բնութի. այլ քեզ անհնար է 'ի միտ առնուլ զխորհուրդն այ, և կմ բնաւ իսկ լսել, ցորչափ ստարանաս 'ի քրիստոնէական կարգացս:

Ապա թէ ոչ՝ այս ինչ յայտնի լիցի քեզ, զի այն՝ որ բնութբ էր ած ճշմարիտ, և բան անանջատ առ 'ի հօրէ՝ մշտնջենակից իւրումն ծնողի, 'ի սահմանեալ ժամանակի՝ յորում ինքն կամեցաւ՝ եկն 'ի կատարել զգործ փրկութե մերոյ, և ազատեաց զմեզ 'ի դատապարտութէ և 'ի գերութէ բանսարկուին, որ 'ի սկզբանէ անտի մախանօք էր ընդ մեզ:

Նաև դատաւորն հեզնելով ասէ. եթէ այդպիսի ոք էր քնն ձեր, զի՞ է՝ զի ոչ պատուհասէ զինքնակալս, որք զինեալ են ընդդէմ նր. զի գործ մի դիւրին էր վրէժ առնուլ 'ի նոցանէ, եթէ լինէր ած հզօր: 'Ի վր եած ակակիոս. և ահա ասատի յայսմանէ ունիս 'ի միտ առնուլ զամենաբարի մեր տրն, և զմարդասիրութի նր ընդ ամենակալ զօրութեն. զի ոչ փաղփաղակի պատուհաս 'ի վր ածէ՝ որոց դառնացուցանեն զնա, այլ երկայնամիտ լինի; զի դուք հեթանոսքդ՝ որք դիմեաց ընդծայէք զածավայելն պաշտօն, զղջացեալ դարձջիք առ նա. միանգամայն և զհաւատարիմ իւր ծառայից զընտրութի և զարդիւնաւէտ յառաջադիմութի 'ի գլուխ տանի սովին կարգօք: Ո՛չ թէ կամք էին նմ տրամ-

ա

նորաց պատուհասել զձեզ, դուք առ օրէն
'ի յաւիտենից կորուստն մատնեցիք, և ծա-
ռայք նոր ոչ այնպէս յայտնի լինէին. Թող
զի և զօրութիւն շնորհացն նոր անգործ երևէր ։
Քանզի զիա՞րդ փառաւոր լինէր տէրն մեր յս
արժանւոյն, եթէ ոչ ցուցանէր զհանդէս
երկայնմտութե իւրոյ՝ յոչն առնուլ փութով
զվրէժ չարեաց ձերոց ։ Բայց արդ ներէ
այսմ տէր այսպէս լինել, զի թէ ոչ զգա-
տանայցէք ցմախճան, և զերկայնմտութիւն
նորա արհամարհել անձամբ զանձինս կացուս-
ջիք արժանիս կորստեան, ձեր լիցի մեղն, և
ոչ գտանիցէք ամենևին տեղի պատասխան-
ւոյ ։ Իսկ մեք, որ ծանեաքս զտէրութիւն նորա,
յաւիտեան կեցցուք ընդ նմա. այլ փառք նորա
առաւել մեծ, ոգի 'ի նոսա, որք 'ի միտ առին
զչարն՝ զոր գործեցին, և սրբեալ զանձինս
յամ մեղաց՝ ընտանելութիւն գտին 'ի մարդա-
սիրէն այ ։

Զայս ամ լուեալ Կիբիկանոս՝ ասէ ցվկայն.
գրովք ուրեմն վարժեալ է քո. վա՞յ և այդ-
պէս զիմնորէն բարբառեցար. քանզի երդ-
ուեալ 'ի դիս, զարժանին ընդունելութե. Ճա-
ռեցեր բան՝ 'ի ցուցանել անդ, թէ մարդ-
կան փրկութի 'ի ձեռին այ է, այլ 'ի մերմէ
կատարեալ զիտուէ թերի գտանիս ։ Պա-
տասխանի ետ ականկիոս. ոչ ահա և աստուա
ունիս իմաստասիրել զզօրութիւն և զշը-
նորհս այ մերոյ և տն բոլորեցունց. զի ուր
չիք իմ ուսեալ զայս դպրութիւն՝ որք մեծ ինչ
թուին յաչս ձեր, այլ միայն ինչ ինչ 'ի կա-
րեւ

ըևորայց առ խելամտութիւն ամ՟ենեղէն տառակից, Նա ինքն ամ՟ փոխանակ մեր անպիտան ծառայիցս առնէ պատասխանի, և տայ մեզ գովել յամ՟ մարդկանէ, որպէս և 'ի ձէնջ՝ որ 'ի գլխաւորս էք դեգերել։ Քանզի և 'ի սկզբանէ անտի փրկագործ տնօրէնութեան իւրոյ՝ 'ի պէտս աւետարանական քարոզութեան ոչ առ 'ի ձեռս զարս ազնուատոհմիկս կամ զմեծատունս կամ զճարտարաբանութիւնս, այլ զձկնորսս և զմաքսաւորս և զտխմարս. զի յայտնի արասցէ զզօրութիւն իւր՝ որ 'ի վեր է քան զամ՟

միտս։

Յայս վայր ունէին զնէր Նմա դատաւորն. ապա ասէ. Թողեալ իմ զոր արժանն է առնել ընդ քեզ՝ վայրապար ժամավաճառ լինիմ 'ի պայքար բանից. արդ դու ինքնին գիտես զահագին հրաման ինքնակալաց՝ եղեալ 'ի քրիստոնէից մէ՟, կամ զոհել և պատուհաս հասանել, և կամ մատնիլ 'ի տանջանս մահուան անսաստութեան. և արդ ա՛ղէ ասա՛ ինձ. զոհես ա՟ծոց և հնազանդիս օրինացս, եթէ 'ի բաց հրաժարես։ Պատասխանի ետ վկայն Ք՟ի. զայդ բանս և 'ի փիլիմոնէ հազարապետնէ բազում անգամ հարցաքննեալ՝ խոստովան եղէ, թէ քրիստոնեայ եմ. և արդ ըզնոյն երկրորդեմ. քրիստոնեայ եմ ես, և

պիղծ դիւաց ոչ զոհեմ։

Դատաւորն ասէ. այլ ես խնայեմ յառողջ հասակդ. քանզի տեսանեմ զքեզ ոչ աւելի քան զքսան և հինգ ամօք անցեալ. և առաւել 'ի զինուորական պատուոյդ. ակն ա-

ծեալ՝

բարբառ վերամձայնէր . քո՛ հա՛ս ինձ յօգ֊
նութիւն նուաստացեալ քում ծառայի . Տէր
Աստուած իմ մի՛ թողուր զիս ։

Այլ իբրև փոխեցան դահիճքն, և արիւն
վկային ոռոգանէր զերկիր, և մարմին նորա
ողջոյն պատառոտեալ՝ լի լինէր վիրօք, հայե֊
ցաւ ի նա դատաւորն, և ասէ . արդ զոհե֊
ցե՞ս այսուհետև անկանկիրե . կա՛մ թէ լա՞ւ հա֊
մարիցիս այսպէս թշուառանալ՝ քան բարե֊
կամ լինել ինքնակալաց ։ Սակայն ասէ . քա՛ւ
ինձ զոհել երբէք դիւաց, կամ փախչել՝ ի
տանջանաց . քանզի զօրավիգն է ինձ և օգ֊
նական Տէրն իմ յս՛ քս . և դու ոչ գիտես,
թէ սովին հարուածով զօրագոյն և յօժա֊
րամիտ առնել զիս կացուցեր յա՛մ ազգս
չարչարանաց . քանզի յառաջագոյն ակնկա֊
լութիւն տանջանաց ի՞իք իրօք խռովէր զխոր֊
հուրդս իմ . այլ յորժամ սկիզբն եղև տան֊
ջելոյ, արիացեալ եղէ զօրութեամբ Տն . մինչև
զուարթամիտ բերել ինձ այսուհետև յա՛մ
չարչարանս՝ ապաւինեալ յՏն իմ 'ի յոյսն
կենդանի ։

Ասէ դատաւորն . զայդ այդպէս խօսիս, զի
չև է իմ արկեալ զքեզ ի մեծամեծ տան֊
ջանօք . այլ ես նկուն արարից զապարասա֊
նութիւդ քո . զի ո՞չ ասեսդ՝ յանդուգն ըդ֊
քեզ կացոյց չափով չարչարելն և խնայելն
իմ 'ի քեզ ։ Սակլիոս ասէ . արա՛ վաղվաղա֊
կի՝ զոր ինչ և կամիս, զի Քս յաճախուէ չար֊
չարանացդ՝ շահս ինձ առաւելաւս, յակա֊
մայս առաթելով քեզէն զմեծամեծ շնորհս

Տէն

Ս

ա̃ն իմոյ առ իս. ապա թէ ոչ՝ մի՛ համարիս-
ցիս տանջանօք զիս հաւանեցուցանել. զի
ո՛չ երբէք արարից զկամս հօր քո սատանայի։
Ասէ բէբիանոս ցդահիճս. հարէք զծնօտս
դորա ծանր ծանր կապարօք, և ձմլեալ ան-
պիտանս կացուսջիք. զի մի՛ ևս զմեր եր-
կայնմտութի̃ 'ի յանդգնութի̃ ապառուամ բա-
նից 'ի կիր արկանիցէ։ Իսկ իբրև արարին
զայն, ասէ ակակիոս. ահա եղև՝ զոր և կա-
մէիր. այլ շահեցար և ոչինչ. զի չարար-
ուեստ հնարք քո ո՛չ կարող են յաղթել սի-
րոյն իմոյ, որ առ Ք̃ն։

Դարձեալ դատաւորն յողոքանս զիջանէր,
և ասէր. զոհեա՛ ա՛յր դու. և զերծի՛ր 'ի մնա-
ցելոց քեզ պատժոց։ Պատասխանի ետ ա-
կակիոս. ասացի՝ թէ ո՛չ զոհեմ. և թէ՝ ար-
համարհեալ են յաչս իմ ա̃մ չարչարանք
քո, զորս ետուր և տալոց ես. վ̃ս զի ա̃ծն
իմ տայ ինձ ոգի զօրութե̃, և տ̃ր ամենա-
կալ է ը̃ իս. մինչև ոչինչ հոգս է ինձ զտան-
ջանաց քոց։ Զարմացեալ իշխանին ը̃ հա-
մարձակախօսութի̃ վկային՝ ասէ. զիա՞րդ դու
այր զօրական և առանց դպրութե̃՝ ճարտար
ես 'ի պատասխանատուութի̃ վ̃ս անձին քո ո̃պ փաս-
տաբան զոք։ Ակակիոս ասէ. մի՛թէ համա-
րիցի՞ս, թէ անձի՞ն ինչ զօրութե̃ բերիմք
մեք 'ի պատասխանիս ատենին. 'ի բա՛ց տար.
այլ ինքնին հոգին ա̃յ տայ իւրոց ծառայից
բան իմաստութե̃, ո̃պ և զօրութի̃ համբերութե̃,
ըստ անսուտ խոստման փրկչին մերոյ՝ որ
այսպէս ասաց. յորժամ մատնեսցեն զձեզ

յատեան մեծ անուան իմոյ, մի՛ հոգայցէք և մի՛ զմտաւ ածիցէք՝ թէ զիա՛րդ կամ զի՛նչ խօսիցիք. զի տացի ձեզ ՚ի ժամուն յայնմիկ՝ զի՛նչ ասիցէք. զի ո՛չ եթէ դուք էք՝ որ խօսիցիքն, այլ՝ հոգին հօր ձերոյ, որ խօսեսցի ՚ի ձեզ:

Յայնժամ անտանելոյս իշխանն կալանաւորաց ասէ ցվկայսն. և զի՞նչ շահ լինիցի քեզ այդ տառապելովդ, եթէ չառնուս այժմ յանձն ունկնդիր լինել խրատուս. իսկ արդ այլ ևս ծանուցից մատնեալդ տանջանաց՝ յակամայ կամս խոնարհեսցիս ՚ի հրամանս ինքնակալաց: Պատասխանի ետ սուրբն ակակիոս. երթ և խրատէ՛ն լեր անձին քո չուառականդ. զի թէ ո՛չ բանից և ո՛չ սպառնալեաց դատաւորիդ երբեք ինչ արարի, և ո՛չ ՚ի տանջանաց երկեայ ինչ՝ օգնականն ինձ ունելով զա̃ծն իմ, կարծիցես եթէ ունկն մատուցից քումդ չար հրապուրանաց:

Սպա ասէ դատաւորն ցսպասաւորս. զակակիոս զերբեմն զօրական՝ զայրն անմարդի՝ տարա՛յք արկէ՛ք ՚ի բանտ ներքին, պրկեալ ՚ի կոճղ երեքկին, և պնդեալ ՚ի ծանր շղթայս ը̃ պարանոցն և ը̃ բովանդակ մարմինն. զի պահեսցի այլովք պահու ատենի. և մի՛ թողացուսջիք ումեք ՚ի մարդկանէ ազգին իւրոյ տեսանել զդա, զի մի՛ իբրև երանելի զոմն հռչակեսցեն զնա, և ոգի առնուցուն նովիմբ պնդագոյն լինել յայլում հարցափորձի: Իբրև տարան զնա ՚ի բանտն, դահճանայքն նա ուրախութեք մեծ շնորհացն ա̃յ եղե-

լոյ առ ինքն . և մնաց անդ աւուրս եօթն անհնարին տառապանօք :

Յաւուրսն յայնոսիկ Փլակկինոս անթիհիւպատոս՝ այս է փոխանակ բդեշխի, որ նստէր յեւրոպեան մասին Թրակիոյ, կամեցեալ գալ 'ի Բիւզանդիա, յղեաց գիր առ Բիբիանոս դուքս 'ի Պերինթոս քաղաք, զի փութասցի յառաջել քան զինքն 'ի Բիւզանդիա՝ ընդ խուր ածելով զա՟մ կալանաւորսն : Իսկ եղև յորժամ յուղի անկաւ Բիբիանոս հանդերձ կապելովք, բազում նեղութիս կրեաց ընդ ձանապարհայն ս՟բ վկայն ք՟սի Ակակիոս . քանզի թո՛ղ զվէրսն այտուցեալս և խղխայթեալս, և զանհնարին աշխատուն 'ի ծանրութ՟ե շղթայից յերկայնութ՟ե ձանապարհին, զոր ա՟մ խոշտանգեալ և կոփեալ լինէր 'ի զօրականաց, և սովու և ծարաւու տանջեալ՝ յոգիս պարզել ապաստան լինէր . և ոչ գոյր ն՟ր մխիթարիչ ոք 'ի մարդկանէ՝ ոչ 'ի դահճաց, և ոչ յուղեկցաց, կամ 'ի գերեկցաց . քանզի հեթանոսք էին . և ոչ այլ ումեք 'ի քրիստոնէից թոյլ տուեալ էր մերձենալ առ նա :

Իսկ իբրև այնպ՟ս յա՟մ կողմանց վտանգեալ՝ հաղիւ ոտն յոտանէ կարէր փոխել, աղաչեաց զդահիձան յուղւոյն՝ փոքր մի թոյլ առնել նմա զտեղի առնուլ . և 'ի զիջանիլ նոցա կամօքն ա՟յ, եկաց յաղօթս երանելին, և ասէ . Փառք քեզ ա՟ծ, որ մարդասիրութ՟ք քո գթասիրեալ հայիս 'ի սիրելիս անուանդ քո . փառք քեզ ա՟ծ իմ, որ և զիս զմեղու-

ցեալ ծառայս քո կոչեցեր յայս վիճակ շնոր-
հաց քոց. փառք քեզ յ՟, որ զխոստակդ ես
տկարութե՟ մարմնոյ մերոյ, և ը՟ս նմին ետուր
ինձ համբերութի՟՝ հանդուրժել չարչարանաց
ժուժկալութե՟ ։ Այլ արդ քանզի տեսանես
տ՟ր իմ զբազմապատիկ աշխատութիւս՝ որք ե-
կին հասին ՚ի վ՟ր իմ, մինչև ստիպեն զոգիս
ելանել ՚ի մարմնոյս, դու տ՟ր ինքնին առա-
քեա՛ զհրեշտակ քո զօրացուցիչ, որ փարա-
տեսցէ յինէն զցաւս անձին իմոյ. և շնոր-
հեա՛ ինձ կատարել զընթացս իմ վկայութե՟
յատենի դատաւորաց, և վաղագոյն գալ
առ քեզ ։

Յայնժամ յանկարծակի ձայն եղև յամ-
պոյն՝ որ ունէր զերեսս երկնից. զօրացի՛ր և
քա՛ջ լեր ա՛կակլիէ ։ Այլ այնպէս յայտնա-
բարբառ հնչեաց երկնաւորք ձայնն, զի և
դահիճքն և կապեալքն ա՟մ լսէին զայն. և
պակուցեալ ՚ի զարմացմանէն՝ ասէին այր
ցընկեր. եթէ և ամպք խօսիցի՞ն երբէք.
կա՞մ ո՞յր ուրուք լուեալ իցէ այսպիսի ինչ՝ զոր
մեքս լուաք այժմիկ. և անկաւ ՚ի նո՟ մաքա-
ռումն և վարանումն, թէ զի՞նչ իցէ նշանն
այն ։ Իսկ ս՟րյն զօրացեալ յոյժ հոգւով և
մարմնով, և պատճառս առեալ ՚ի սքանչե-
լեացն տ՟յ՝ սկսաւ քարոզել նց զճանապարհն
ճշմարտութե՟ . քանզի և նց շարժեալ ՚ի վե-
րուստ՝ մտադիւրութ՟ լսէին նմա. և եկեալ
բազմաց ՚ի կապելոց անտի չարագործաց՝ ան-
կանէին յոտս ս՟րյն վկային, և հաւատային
յա՟ծ նր, և խնդրէին ցուցանել նց զճանա-
պարհ

դարձ փրկութե ։ Ս. ոչ ցնա ակակիոս զուարթութբ . եւ թէպէտեւ 'ի զինուորական եկի կարգ , այլ անդստին 'ի մանկութէ առ ոտս քահանայից եմ սնեալ , զի եւ 'ի քահանայական ցեղէ ծնեալ եմ գլխովին . արդ զոր լուայ 'ի նոցէ բանիւ Տն , զայն պատմեմ ձեզ ։ Այլ սկսեալ զճանապարհայն յարարչութէ մարդոյն եւ յանկմանէն ադամայ՝ առաջի դնէր նց զխորհուրդ մարդանալոյն Տյ մինչ փրկութե մարդկան ազգի , եւ զկենսաբեր տնօրէնութիս նր , եւ զմահ խաչի , եւ զածայինն յարութի եւ զվերանալն յերկինս , եւ զհանդերձեալ միւսանգամ գալուստն՝ առնել յատուցն տիեզերաց . զի Տր նմա կեցցուք առէ յաւիտեան յՔն կենդանեաց՝ որք 'ի նա հաւատացաք , եւ մտերմութբ պաշտեցաք զնա . քանզի կենցաղս այս առ ժամանակ մի է , աղցաւոր եւ անցաւոր ։ Ս այս Տմ լուեալ նց դարձան բոլորովլ սրտիւ առ Տր ։

Ձեռ այսորիկ 'ի ժամ գիշերոյ աւուրն երկրորդի՝ երբ ազանէին ուրեք 'ի բացի , տեսանէին որք զԾթ վկայիցն էին , արս փառաւորս եւ պայծառազգեստս 'ի ձեւ եւ 'ի զարդ զինուորութե զի խօսէին Ը ակակիոսի ։ Յայնժամ ոմանք 'ի տեսողացն համարեցան ընդ միտս , թէ զինուորակիցք եւ բարեկամք ակակիոսի իցեն նք . որոց զանգիտեալ յահէ իշխանակալաց՝ գիշերախառն եկեալ իցեն 'ի տեսս նր . իսկ այլք ասէին , եթէ ածային է տեսիլն ։

Այլ եղեւ յորժամ հասին 'ի բիւզանդիա 'ի

միւս ևս գիշերի, և կալանաւորքն նմ ար-
գելան 'ի միում տան, տեսին դարձեալ զնոյն
զուարթութիւն՝ զի խօսակից լինէին ընդ ակա-
կիոսի, և զվէրս մարմնոյն լուանային ջերմ
ջրով, և ողջացուցանէին. և իբրև գտին ըզ-
նա ողջանդամ, 'ի միւս աւուրն զսքանչելիսն
նոյ՝ որ եղեն յայցելութէ երկնային զինուո-
րութեց հրեշտակաց առ վկայն քի:

Ապա 'ի վաղիւն անդր հրամանաւ դատաւո-
րին արկաւ երանելին ակակիոս 'ի ներքսա-
գոյն բանտ՝ պնդեալ 'ի կոճեղս հանդերձ
շղթայիւք. իսկ այլք 'ի կապելոց կային յար-
տաքին բանտի: Եւ ահա 'ի մէջ գիշերին
դարձեալ տեսանէին 'ի ներքս կոյս նոր ըս-
քանչելիս. քանզի երևեցան ճրագունք բա-
զումք և ջահք վառեալք 'ի տեղին՝ ուր ա-
կակիոսն էր. և եկեալ լուսատեսիլ արանց՝
մատչէին առ վկայն. կէսք 'ի բաց լուծանէ-
ին զկապանս նր, կէսք զցաւս նր փարատէ-
ին. և այլք կերակուր ջամբէին նմա: Եւ
իբրև յերկարէր տեսիլն, գիտացին՝ թէ չէ
երազ. ազդ արարին բանտապետին, զի ինք-
նին ականատես լիցի և վկայեսցէ ստուգութե
իրացն: Եւ նր տեսեալ՝ հիացեալ պակեաւ.
և երթեալ պատմեաց բազմաց յընկերաց և
'ի բարեկամաց իւրոց:

Իսկ դատաւորն՝ որ չէր ինչ գիտակ այսմ
իրի, յեօթներորդ աւուր գալստեան իւրոյ
'ի բիւզանդիա՝ հրաման ետ բերել զառա-
ջեաւ զակակիոս. և տեսեալ զնա ողջ և կայ-
տառ լուսափայլեալ իբրև զտեսիլ հրեշտակի,
անե

անկաւ 'ի զարմացումն մեծ, և ասէ ցիւրսն. Ո՞չ ասացի ձեզ ով անլսօղ պաշտօնեայք, զի զայրդ փառաւորր միշտ 'ի խոշտանգանս և 'ի նեղութիւս բանտի պահեսջիք. և զիա՞րդ տեսանեմ ես զդա աւադիկ 'ի վՐ այնչափ հարուածոց գիրացեալ և վայելչացեալ քան զառաջինն իսկև նահատակ զօրաւոր : Պատասխանի ետ անտանելիս կալանաւորակալս. երդուեալ 'ի զօրութի՛ն քո Տր մեր և դատաւոր, եղև որդիս և հրամայեցերն. այլ թէ զիա՞րդ յետ այնչափ տառապանաց ճանապարհի և բանտի և կապանաց անմխիթարելի տեսանի, մեք ոչ գիտեմք. ասէ հա՛րց և ցբանտապետս տեղւոյս : Նաև դատաւորն. կոչեսցի՛ այսր բանտապետն : Նորև եկն, ասէ ցնա. ընդէ՞ր ով թշուառական չարաչար զոր քեզն հրամայեցաւ. այլ այնպէս զարմանեալ և պարարեալ ածեր զդա առաջի մեր, ո՛չ այն թէ զայր պատերազմօղ ախոյեան մեզ հանել :

Յայնժամ վայրի ասէ սրբն ակակիոս ցդատաւորն. մի՛ բանտապետոյդ գրեր ինչ զիմ սպառազինութի. քանզի զօրութիւս այս յերկնից 'ի ճշմարիտ զօրագլխէն իմմէ յաւէ քեզ պարգևեցաւ, այն՝ որ զօրացուցիչն է իմ և հանդիսադիր նահատակութեանս. նա ինքն առողջացոյց զիս բոլորովին. զի այսպէս բժշկէ Տր մեր զծառայս իւր բանիւ և եթ : Նա բարկացեալ բորբոքեաց դատաւորն, և ասէ. հարէք և ջարդեցէք զատամունս դորա. զի ուսցի չխօսել՝ մինչև հարցեալ յամենքէ. և ջախջախեցին

ղծնօտս սրբյն ։ Ապա անդրէն աւէր իշխանն ցբանտապետն ․ և արդ զի՞նչ պխնի տայցես ով չարագործ ։

Յայնժամ ասէ բանտապետն ․ որում անունն էր կասսիոս ․ երդուեալ յարև տն̃դ իմոյ , զի աւելի քան զոր պատուիրեցերդ՝ արարի զե̃ դա ․ և եթէ իմոց բանիցս ոչ հաւատայք , վկայ են ինձ տմ̃ կալանաւորք և արք բանտին ․ արդ եթէ այլազգ ինչ լսես 'ի նոցանէ , ոչ երկնչիմ 'ի մեռանելոյ , 'ի քո ձեռս է գլուխ իմ ․ արա՛ զոր հաճոյ թուի ․ Ապա եթէ ունկն դնիցես բանից ծառայի քո , պատմեցից տն̃ իմոյ զիրացն զարմանալութի ․ քանզի տեսանէաք բազում անգամ զօրականս նորատեսիլս եկեալս առ սա 'ի զգեստս լուսապայծառս ․ յորոց ոմանք համգոյն ճարտար բժշկաց սրբէին զվէրս դորա , և այլք բուժէին 'ի ցաւոց ․ կէսք իբրև խրատտաուք սրտապնդէին զնա , և ազգի ազգի կերակուրս ջամբէին , և ոմն սեղանակից և բարձակից զուարթացուցանէին զնա ։ Օ այս և յառաջագոյն տեսեալ է ոմանց զճանապարհայն ․ և որք միանգամ 'ի բանտի տեսին՝ նք̃ պատմէին ինձ ․ և ես քանզի ոչ հաւատայի , անձամբ երթեալ ականատես եղէ ․ ապա մտի 'ի ներքս տեսանել՝ թէ ո՞յք իցեն օտարքն այն զինուորք ․ և ոչ զոք գտի , բայց զդա միայնիկ 'ի կոճեղս պնդեալ՝ զի կայր յաղօթս առ տծ̃ իւր ։

Իսկ անամօթ դատաւորն ասէ ցբանտապետն ․ գիտեմ , զի կաշառս առեալ քո յադ-

դա

դահկանաց առնդ՝ դիւրեցեր դմա. և արդ
Հնարիս եւս խաբել զատեանս մեր բանիւք
անօտուտովք. Նմին իրի այր մահու ես դու.
և անդէն հրաման տայր հարկանել զթի-
կունս նր̄ կապարածայր ձաղկօք ։ Իսկ նա
աղաղակէր ը̄ դանիւք. աղաչեմ զքեզ ով
դատաւոր, ճշմարտեալ քննեա զիրսդ. և ե-
թէ կայցէ ինչ սուտ 'ի բանս իմ, սպա́ն զիս ։
Ասէ դատաւորն. եթէ այդպէս իցէ՝ որպէս
ասացերդ, ապա կախարդ ոք է այրդ. դու
զի՞ ասես վն̄ դորա ։ Եւ նա ասէ. ես զոր
տեսի՝ զայն ասացի և ասեմ. այլ թէ կա-
խարդ իցէ կամ ոչ, զայն ինչ ոչ գիտեմ ։
Մինչդեռ նք̄ այսպէս կադէին ը̄ միմեանս,
տախպեալ լինէր սր̄ վկայն ակակիոս 'ի ծառը
ջախջախեալ ծնօտիւք իւրովք, և ծիծաղէր
'ի վր̄ անմտութե̄ նց̄ ։ Ընդ որ առաւել մո-
լեալ դատաւորին՝ ասէ. ո́յր դու միթէ 'ի
ծա́ղր առնել զմեզ եկիր մոգուե̄ քով ։ Պա-
տասխանի ետ ակակիոս. ես ո́չ ծիծաղիմ իբր
խնդալով ը̄ չարն՝ յոր վարակիք, այլ զար-
մանալով ը̄ ապշութե̄ սրտից ձերոց. ապա
թէ ո́չ՝ ողբամ 'ի սրտէ ընդ յաւիտենից կո-
րուստն՝ յոր ունիք յուղարկիլ. այլ դուք ան-
ձամբ զանձինս ծաղրելի ցուցանէք, զի
թողեալ զճշմարիտն ա̄ծ՝ երկնի և երկրի ա-
րարիչ, անշունչ քարանց երկիր պագանէք,
և զն̄յ ծառայս՝ մոգս անուանէք ։
Դատաւորն ասէ. մի́ կարծեր յաղթել ինչ
դովին պնդուե̄ յամառութե̄դ. ո́չ թողից զ-
քեզ կենդանի, թէ ոչ երկիր պագանիցես
և

և դու ըզծոց մերոց՝ ըստ հրամանի անյաղթ ինքնակալաց : Ակակիոս ասէ. եթէ երկնչէիր 'ի սպառնալեաց քոց, կանխաւ ևս արդեօք անսայի քեզ. այլ զի միտք և խորհուրդ իմ լաւ են քան զքոյդ, ոչինչ զանգիտեմ 'ի բանից քոց. արա՛ զոր քեզ հաճոյ թուի : Յայնժամ վերստին սկսաւ բռնաւորն մատուցանել զնա 'ի տանջանս. և հարին զնա միւսանգամ արջառաջլօք ընդ լանջս և ընդ թիկունս. մինչև փոխեցան տասն արք՝ որք գանէին զնա անխնայ :

Իսկ երանելին զօրավորականն կարդայր առ փրկիչն իւր զբարբառ. Տէր օգնեա՛ նուաստացեալ ծառայի քում. և որչափ դառնանայր բռնաւորն ըստ լուր անօրէնին քոյ, նա ևս քան զևս սաստիկ երկրորդէր. Տէր Յիսուս Քրիստոս օգնեա՛ ծառայի քում Ակակիոսի : Եւ եղև առ նա ձայն յերկնից՝ որ ասէր. մի՛ երկնչիր Ակակիէ, այլ զօրացի՛ր յանձն քո և ուրախ լեր. քանզի արժան է քեզ այսուհետև երկնաքաղաքացի լինել ընդ հարս քո՝ մտանելով յանձառ ուրախութիւն Տեառն քո, փոխանակ զի արիաբար դաւանեցար զխոստովանութիւն անուան իմոյ :

Եւ իբրև եղև բարբառս այս ահաւոր հնչմամբ, թմրեալ ըզարմացան մարդիկն՝ որ հականէին զվկայն, և ոչ ևս կարէին շարժել զձեռս իւրեանց : Յայնժամ և դատաւորն գլխովին անյոյս եղեալ յաղթահարել զքաջ նահատակն՝ լաւ համարեցաւ առաքել զնա 'ի մեծ ևս ատեան անթիհիւպատոսին նկե-

ԼՍ

յինքեան անմարթ է նուաճել զնս ՚ի կամս ինքնակալին ։ Այլ առ ժամն ոչինչ յայտնի խօսեցաւ ընդ նոսա՝ կոչեաց զբանտապետն, և ասէ․ ա՛ռ զկապեալսդ, և պահեա՛ զգուշութբ մեծաւ ՚ի դիպահոջ՝ առանց նեղելոյ զնս և ոչ մի՛ով իւիք․ զի ես յորժամ ժամ առից, յատեան քննութեան մատուցից զնս ։ Իսկ արգելեալ սրբոցն ՚ի բանտի ընդ երեկս՝ յաղօթս կացին առ ած, և ասեն․ նայեա՛ց ՚ի մեզ տր ՚ի սբյ բնակութենէ քումմէ․ այս յո՛ւշ լիցի քեզ, զի թշնամին նախատեաց զտրդ, ժողովուրդ անզգամ բարկացոյց զանուն սբ քո․ մի՛ մատներ գազանացն մարդկան զանձինս՝ որք խոստովան առնին առ քեզ․ հայեա՛ց յուխտ քո, և ընկա՛լ զմեզ տր, և փըրկեա՛ զմեզ վասն անուա՛նդ քո ։ Իսկ յերկարեալ զսաղմոսերգութիս՝ իբրև հանգեան փոքր մի, և ՚ի քուն մտին, երևեցաւ նոցա անդրէն հրեշտակ տյ ՚ի մէջ գիշերի պայծառ հանդերձիւք և արեգակնափայլ դիմօք, մինչև ճառագայթք հատանէին ՚ի նմանէ․ և ասէ ցնս․ քաջալերեցարո՛ւք ծառա՛յք քսի, և մի՛ երկնչիք, այլ հաստատո՛ւն և պինդ կացէք ՚ի խոստովանութեան տն մերոյ յսի քսի․ զի նա ընդ ձեզ է՝ վերակացու լինել ձեզ ։

Իսկ սրբոցն զարթուցեալ ՚ի քնոյ լի ուրախութբ և միխթարութբ՝ պատմէին միմեանց զսքանչելի տեսիլն լու ՚ի լու այլոց կապելոց և սպասաւորաց ։ Ապա յարուցեալ կացին յաղօթս բերկրալից սաղմոսերգութբ․ ՚ի նե-

ներգործութեան կարդացի առ ձեր, և ձեր լուսաւ-
րենձ 'ի լեռնէ սրբոյ խորմէ . եւ ննջեցի և 'ի
քուն եղէ, և զարթեայ՝ և ձեր ընդունելի
իմ է . արդ՝ ձեր և փրկեալ զիս, զի քո է փրկ-
կութիւն, և 'ի վերայ ժողովրդեան քո օրհնու-
թիւն քո :

Այլ 'ի վաղիւն անդր նստեալ դքսին յաթոռ
դատաւորութեան՝ շուրջ պատեալ 'ի բազմութենէ
զինուորաց, եա բերել առաջի իւր զմեզ
կապանօք . և նախ հրաման տուեալ ընթեռ-
նուլ զարքունի հրովարտակն 'ի լուր նոցա՝
դարձաւ և առէ ցնոսա . Պարտ էր ձեզ ով
քաջք՝ անսալ ինքնակալին հրամանի, և զո-
հել դիից, և ոչ գրգռել զցասումն կայսեր 'ի
վերայ ձեր . և զի զընդդէմն գործեցիք անխոր-
հրդաբար, վասնորոյ եղև ձեզ անկանիլ 'ի պատ-
ուհաս ձերմէ մեծէ, և շահել զայս անարգու-
թիւն և զտառապանս . բայց արդ՝ եթէ խոր-
հրդակից զիս ձեզ առնուք, և խոնարհիք
կատարել զկամս արքայի, 'ի նոյն փառս
դարձջիք բազում առաւելութեամբ . և այս չէ
ինչ ծանր . զոր առանց խորհրդոյ արարիք՝
այժմ զգաստանալ ուղղել զառաջին սխա-
լանս . վասնզի թեթև իրք են սխալել յան-
գէտս, և պարծանք մեծ՝ յուղղութիւն գալ .
այն են յանցանք ծանր, եթէ ոք կամակո-
րեսցի 'ի միտս անուղղայս :

Այլ արդ ընտրեցէք ձեզէն զոր բարին է . զի
և ես զբարին ձեր կամիմ, յիշելով զառաջին
մեր բարեկամութիւն և զսէր, մանաւանդ զայն
'ի քէն ընկալեալ երախտիս առ իմ սարգիս,

 որով

որով պարտական զիս կացուցեր . այլ անգի-
տանամ, զինչ գործեցից յայսմ այլափոխու-
թեան քախտի . ուր ես նստեալ կամ իբրև դա-
տաւոր, և դուք ով պարտաւոր յոտին կայք
յանդիման ատենիս՝ հանդերձեալք հա-
մարս տալ վն առ ածն ամպարշտութեան և
առ կայսրն ստահակութեան ձերոյ :

Իսկ սրբքն լուռ եւեթ կային . և ոչ արժանի
համարէին պխնւոյ զայրն . յայնժամ 'ի վր
եած դատաւորն . ապա եթէ չկամիք անսալ
խրատու իմում, հարկ 'ի վերայ կայ ինձ 'ի
գլուխ տանել զհրամանն արքունի . և յակա-
մայս թշնամութի ցուցանել առ պատուա-
կան տեսարդ . մինչև չարաչար մահուամբ
կարճել զձեզ 'ի կենաց : Իբրև ծիծաղեցան
սրբքն ըն սպառնալիս նորա, սկսաւ անօրէնն
'ի համար արկանել զամ տեսակս տանջա-
նաց, և նոքիմբք կարծէր ահ արկանել նց .
Յայնժամ պխնի ետուն երանելիքն իբրև
ըն մի բերան, և ասեն . Որոց միանգամ հաս-
տատեալ է 'ի մտի ով դատաւոր շահել զքս
եւեթ, և զոր ըն նոցա ծածկեալ կեանս ան-
մահականս, ոչինչ փոյթ է նց վն անցաւո-
րացս ամի և կորստականաց . ոչ փառք և ոչ
իշխանութի և ոչ այլ ինչ յասպիսեաց սատա
պատրեն զնոսա, և ոչ տանջանք կամ վիշտք
և մահ իսկ գլխովին դողդուեցուցանեն զնս .
վյ զուգապէս արհամարհեալ են առաջի
մեր ողոքանք և սպառնալիք երկրորդեալ 'ի
քէն 'ի լսելիս մեր : Հապա դադարեա և
դու 'ի լինելոյ մեզ խորհրդակից չարեաց,

և

և մի՛ հեղուր զթոյնս դառնութե՟ան ոպ՟ զօձի ՚ի
բերանոյ քումմէ ․ քանզի արդարև դեղ մա-
հու կաթէ ՚ի շրթանց քոց, զոր քա՛ւ լիցի
մեզ ճաշակել և մահանալ ՚ի հոգիս ։ Այլ մի՛
խաբիր սնոտի խորհրդով որսալոյ զմեզ ՚ի
կամս քո, և մի՛ ը՟ն վայր ծախեր զժամանակ ․
զի ո՛չ տանջանօք նուաճել զմեզ կարես, և
ո՛չ խոստմամբք թակարդել ․ քանզի անհնա՛ր
է մեզ թողուլ զա՟ծ ճշմարիտ, և դիւա՛ց խու-
լից և անզգայից զոհ մատուցանել ։ Օ ի
մեզ որպէս բարի է կեալ վ՟ք՟ի, նոյնպէս և
մեռանել վ՟ նորա՝ շահ ․ զոր չէ՛ մարթ քեզ
ասել վ՟ քոյոց դիցդ ․ զի են անշունչ տա-
րերք, որ ո՛չ օգնել և ո՛չ վնասել ումեք գի-
տեն ․ վ՟յ նման նոցա եղիցին՝ ոյք պաշտենն
զնոսա, և որ յուսանն ՚ի նա ։

Լուեալ դքսին զայսպիսի բանս համարձա-
կութե՟ ՚ի բերանոյ ս՟ր՟ցն, ձեռն էարկ փոր-
ձել զնոսա տանջանօք ․ և զի ակն ածէր ա-
ռաւելապէս ՚ի սարգսէ, ետ առ ժամն տա-
նել զնա ՚ի բանտ, և զբագոս յառաջ մա-
տուցանել ՚ի տանջանս ։ Յայնժամ ը՟ն ակն-
արկելոյ բռնաւորին կապեցին դահիճքն զե-
րանելին բագոս ՚ի չորս ցիցս զձեռաց և զո-
տից, և սկսան անխնայ հարկանել զնա ար-
ջառաջլօք ․ մինչև պատառոտեալ անկանէին
մասունք մարմնոյ նորա, և արիւնն խաղայր
ը՟ն գետին ․ վ՟ զի որչափ նա անհոգ ցուցա-
նէր զանձն և սքանչելի համբերութ՟բ՟ տա-
նէր, նոյնչափ և դատաւորն կատաղեալ սաս-
տկէր զդահիճսն՝ ուժգին և չարաչար հարկա-
նել ․

նել. և այնչափ տանջեցին զնա, մինչև մաշ-
տակեալ լքան լուծանն դահճիքն, և անկան
յերկիր: Ո՛ր տեսեալ սրբոյն բագոսի՝ կըշ-
տամբեաց զբռնաւորն ասելով. ո՛վ թշուա-
ռական և 'ի զօրականաց ոչ խնայես. ո՛չ գի-
տես՝ զի զիս քս զօրացուցանէ, և տայ ինձ
համբերութիւն ած տանջանաց մինչև յել-
շնչոյ իմոյ:

Իսկ նոյնժամայն եղև ձայն յերկնից՝ որ ա-
սէր. Ե՛կ բագոս արի և քաջ զօրական իմ, և
հանգի՛ր 'ի պատրաստեալ քեզ տեղի յար-
քայութիւն: Իսկ իբրև լուաւ զձայնն 'ի վե-
րուստ, գոհացաւ զայ. և առժամայն ա-
ւանդեաց զհոգի իւր առ ած: Իսկ զմարմին
երանելւոյն հրամայեաց դատաւորն 'ի հուր
ընկենուլ. և պատմեցաւ նմա՝ թէ ոչ այրե-
ցաւ. ապա եւս արկանել 'ի բոցն, զի կերա-
կուր լիցի գազանաց. բայց գազանքն պա-
հեցին զմարմին սրբոյն, և ոչ մերձեցան 'ի
նա. և հաւատացեալքն գողացան զայն գի-
շերայն, և տարան եդին յայրի միոջ:

Իսկ սրբոյն սարգսի լուեալ 'ի բանտի զկատա-
րումն ընկերի իւրոյ բագոսի՝ աղօթէր լա-
լով առ ած՝ արժանի առնել և զինքն ցան-
կալի վիճակի նր. և ասէր. վա՛յ ինձ ընկերա-
կից իմ և եղբայր իմ բագոս, այլ ոչ սաղմո-
սեմք 'ի միասին, զի՞ բարի կամ զի՞ վայելուչ՝
զի բնակեն եղբարք 'ի միասին. որոշեցար
յինէն եղբայր. ելեր յերկինս, և զիս թո-
ղեր յերկրի միայնացեալ: Իսկ ահա յան-
կարծակի 'ի մէջ գիշերի երևեցաւ նմա սր

վկայն

վնաս ինձ առնել մեքենայէր. զոր և ոչ կա-րես առնել՝ թէպէտև կամիս։ Այլ թէ կամք են քեզ զիս բարեացապարտ համարել, եկ դու անսա ինձ, և մեծ ես բարութիւն արա-րից ընդ քեզ. թող 'ի բաց զսնոտի կուռսդ, և դարձ առ արարիչ քո և կեցուցիչ. և ես քեզ յայսմ ձեռնտու եղէց զուարթամիտ ծառայութեամբ, կորզել զանձն քո 'ի խորխո-րատէ մոլորութեան, և վերածել 'ի լոյսն ճշ-մարտութեան. մինչև թագաւորիս մերում ան-մահի ընտանի և բարեկամ զքեզ կացուցից։ Յայնժամ պապանձեալ անտիրոջսի և գու-մարեալ յանձն իւր՝ շառագունեցաւ յամօ-թոյ, և դառնացեալ սաստէր ոգւոյն իբրև հայհոյչի. և ոգին սարգիս 'ի վ̄ր եած զար-ժանի յանդիմանութիւս ընդդէմ մոլորութեան հեթանոսաց։ Իսկ դատաւորն անպատաս-խանի եղեալ՝ ասէ. մեծապէս հեզութիւս իմ և երկայնամիտ մարդասիրութիւս յառա-ւել յանդգնութիւն զքեզ կրթեաց՝ բերանա-բաց բերել ընդդէմ մեր և աստուծոց մերոց. այլ ես ուսուցից քեզ 'ի բաց դնել զամբարտա-ւանութիւնդ. և զայս գիտեա՛, զի այսուհետև ոչ ևս ես պատրիկ և իշխան հռովմայեցի, և ոչ բան ինչ կայ քո յայսմհետէ առ արքայի. այլ իբրև անարգ ոք գերի՝ և ծառայ ան-խրատ՝ տանջանաց և մահու մնասջիր։

Զայս ասացեալ՝ հրաման ետ ծառայից իւ-րոց չու առնել յամրէ անտի սուրացող 'ի ռուծափ քաղաք, տանելով ընդ իւր և զսար-գիս կապանօք և չարաչար խոշտանգանօք. և

եւ նախ յորժամ դէմ եդեալ գնայի՛ն 'ի տե-
ղին կոչեցեալ յունարէն տետրապիւրգիա
( այն է քառաբուրգն , կամ չորեքաշտարա-
կեան ) , որ հեռի էր 'ի սուրբն՛է իբրեւ եօ-
թանասուն ասպարիզօք (4) , ետ ագուցանել
սարգսի կօշիկս երկաթիս՝ բեւեռեալս յոտս
նո՟ր սուր բեւեռօք . եւ այնպէս ընթացուցա-
նէին զնա առաջի երիվարաց կառացն դա-
տաւորի ՟ը այնչափ երկայնութի՛ն ճանապար-
հի՛ն ։ Իսկ ս՟բն նահատակն արիաբար ընթա-
ցեալ՝ սաղմոս 'ի բերան ունելով . համբերե-
լով համբերի տ՟ն , եւ նայեցաւ առ ի՛ս , եւ
լուաւ աղօթից իմոց . եհան զի՛ս 'ի գբոյ տա-
ռապանաց՝ 'ի կաւոյ եւ 'ի տղմոյ . հաստա-
տեաց 'ի վերայ վիմի զոտս իմ , եւ ուղղեաց
զգնացս իմ ։ Այլ որք տեսանէինն զարիւնն
հոսեալ 'ի թաթից նորա , զարմանային ընդ
զուարթութի՛ սրտին եւ երեսացն . եւ ոչ 'ի միտ
առնուին՝ եթէ յերկնից էր այցելութի՛ մխի-
թարութե՛ նո՟ր ։

Իբրեւ հասին 'ի տետրապիւրգիա , արկին
զնա խոնջ եւ վաստակ 'ի բանտ . եւ 'ի սաղմո-
սել ս՟բյն 'ի գիշերի՝ երեւեցաւ նմա յայտնա-
պէս հրեշտակ ՟տյ , եւ քաջալերեաց զնա սփո-
փանաց բանիւք՝ համբերոյց զորդի նո՟ր յաշխա-
տութե՛ ճանապարհին , եւ փարատեաց զվէրս
ոտից նո՟ր եւ զ՟ամ ցաւս անձին նորա . եւ ողջա-
գուրեալ զնա ողջունիւ՛ սրբոյ եւ խաղաղութե՛
իբրեւ ընտանի բարեկամ ոք՝ զուարթացոյց
զնա յառաջիկայ նահատակութի՛ն . եւ եղե-
[illegible] նմանէ աներեւոյթ ։

Իսկ

Իսկ դատաւորն 'ի վաղիւ անդր կամեցեալ վերստին դատել զնա, և համարեալ զնա յոգիս ապաստան 'ի ցաւոց և 'ի վաստակոց՝ մինչև չկարել գալ յատեան, հրամայեաց բառնալ շալակաւ կամ պատգարակօք, և այնպէս ածել առաջի իւր: Իսկ դատաւորքն եկեալ գտին զնա ողջ և կայտառ. և ինքն յարուցեալ նոյնժամայն եկն զուարթութբ 'ի տուն ատենին: Տեսեալ դատաւորին զնա այնպէս՝ յիմարեցաւ 'ի միտս իւր, և սկսաւ աղաղակել. երդնում 'ի դիս՝ զի կախարդութին է ամ գործ քրիստոնէից. քանզի ուստի՞ իցէ սմա առաջին համարձակութիւն ըդէմ ինքնակալի, և այժմու վիճակ՝ յանկարծակի թօթափել յանձնէ զամ վէրս և զցաւս, եթէ ոչ՝ յայտնի մոգութբ, զոր առնէ մրմնջանօք բանից 'ի ձև աղօթակացուն:

Իսկ դարձեալ առ վկայն ողոք բանիւք ասէ. զարմացեալ եմ ընդ քեզ ով Սարգիս, եթէ զիա՞րդ այր փափկասուն և ազնուական կարող եղեր տանել այսչափ դառն վշտաց և տանջանաց: Սարգիս ասէ. ո՛չ տանջանք են համարելի ով դատաւոր՝ զոր ինչ և հասանէ ինձ կրել առ սէրն Քի, այլ՝ ամենեղէն հանդերձ յաղթութեան և տօն ցնծութեան, առիթ անմահութեան և ճանապարհ երկնից արքայութեան: Դարձեալ ափիբերան եղև դատաւորն, և ետ հանել զնա յերեսաց իւրոց. և ինքն յուղղի անկեալ գնալ 'ի Բուծափ՝ որ ինն մղոնաւ հեռի էր 'ի տեառնապիւրգեայ, դարձեալ հրամայեաց բևեռել զերկաթի կօշիկս

յոտս

յոտս սարգսի, և այնպէս խաղացուցանել զնա 'ի դէմ եդեալ տեղլին ։

Որդ. իբրև հասին 'ի ուռծափ, ոչ յերկարեաց անտիոքոս զդատապարտեան սարգսի. այլ 'ի վերջին հարցափորձի ես դնեալ զնա իբրև զառաջինն հաստատուն 'ի հաւատս և 'ի սէրն քի՝ հրաման ետ գլխատել զնա արտաքոյ քաղաքին ։ Իբրև տարան զնա 'ի տեղի կատարմանն, գնացին ը՟ նմա և ժողովուրդք բազում յարանց և 'ի կանանց. յորս ոչ սակաւք էին քրիստոնեայք ։ Յայնժամ հրաման առեալ ոքյն 'ի դահճաց՝ յաղօթս եկաց, և ասէ. Տր բարերար և մարդասէր՝ ած մեր և տր յս քս, որ անբաւ գթութբ քոյ արարեր զմեզ 'ի պատկեր բարերարութեդ քո, և գթացեալ 'ի կործանեալս մեղօք՝ յարուցեր 'ի գլորմանէ դալստեամբ քո յս և զգենլով զմերս. նովին գթութբ գթա տր և ներեա որոց ոչն գիտեն զինչ գործեն, և վերածեա 'ի խաւարէ անգիտութե 'ի լոյս ածգիտութե ։ Եւ յիս հայեաց աղաչեմ մարդասիրապէս, և ընկալ տր զկամաւոր պատարագս մարմնոյ իմոյ 'ի հաճոյս քո, և զհոգիս խառնեա 'ի թիւ սբց քոց. և որք կատարեն զյիշատակս ծառայից քոց, դու տր կատարեա զկամս հայցմանց նց ։

Եւ եկն առ նա բարբառ յերկնից, որ՚ ասէր. Եկ և հանգի՛ր քաջ զօրական իմ սարգիս 'ի պատրաստեալ քեզ արքայութի երկնից. և որք կատարեն զյիշատակս անուան ձերոյ, կատարին 'ի բարի խնդրուածք նց ։ Եւ սբյն

ասացեալ զամէնն՝ մատոյց ուրախութբ զպա-
րանոց իւր 'ի բերան սրոյ ։ Այս եղեւ իբրեւ հա-
տաւ գլուխ սրբոյն, պատառեցաւ տեղին՝ ուր
հեղաւ պատուական արիւն նորա, և բացաւ
յանկարծակի վիհ մեծ. յորմէ զարհուրեալ
դահճացն՝ թողին զնա և փախեան. և հաւա-
տացեալքն՝ որք զկնի եկեալ էին, բարձին
զնշխ մարմինն, և թաղեցին սաղմոսիւք և
օրհնութբ անդէն արտաքոյ քաղաքին ռու-
ծափայ՝ մօտ 'ի տեղի վկայութեանն ։

Իսկ զկնի տարւոյ՝ 'ի մեկնիլ անտիոքոսի բռ-
նաւոր դքսի 'ի կողմանց անտի, եկին նա-
խանձաւոր քրիստոնեայք 'ի քաղաքէն սուրայ
'ի ռուծափ, և կամէին յափշտակել զմար-
մին սրբոյն սարգսի ։ Այլ զի չէին կամք տն՝
զի հասարակաց պարգեւն սեպհականեսցի
ումանց, խափանեաց զխորհուրդս նց. վս զի
էր մերձենալ նց գաղտագողի 'ի տապան սբյ
վկային՝ հուր սաստիկ ցոլացաւ 'ի նշխարաց
սրբոյն, և յետս նահանջեաց զարսն. և 'ի տա-
րածիլ համբաւոյն՝ 'ի վրայ հասին բնակիչք
քաղաքին ռուծափայ հանդերձ զինուք, և
ոչ թոյլ ետուն նոցա մերձենալ յածային
գանձն ։ Ապա միաբանեալ 'ի մի խորհուրդ՝
շինեցին 'ի վրայ նր մատուռն. զի հանդիսա-
պէս կատարեսցի յիշատակ սրբոյն յամենե-
ցունց 'ի վկայարանի անդ նր ամ ըստ ամէ՝ յա-
ւուր նահատակութեան նորին, որ էր եօթնե-
րորդ օր հոկտեմբերի՝ յամի տն իբր 300.
քանի մի ամսով յետ կատարման սրբոյն բա-
գոսի ։

Իսկ յանցանել քանի մի ամաց՝ 'ի փայլել քրիստոնէութե առ մեծն կոստանդիանոսիւ , առաւել ևս հռչակեցաւ անուն սրբոյն սարգսի 'ի ձեռն սքանչելեաց՝ զոր առնէր ած բարեխօսութբ նր . ապա ժողովեցան երկոտասան կամ հնգետասան եպսունք , և հիմնարկեալ 'ի ռուծափ քաղաքի զմեծավայելուչ եկեղեցի՝ անդր փոխեցին զնշխարս սրբոյն սարգսի . անդ կարծի փոխադրեալ և մարմին սրբոյն բագոսի ընկերի նր . որ թաղեալն էր 'ի վառավառիսոն ։ Արդ քանզի 'ի նմին դարու առ յուլիանոսիւ կատարեցաւ և սբ սարգիս զօրավար 'ի պարսս , և բազում սքանչելեօք փայլեաց յարևելս , յետ ժամանակաց 'ի կարգալ հաւատացելոց անխտիր զնք սարգիս յօգնութի , զայս և զայն անխտիր իմանայցեն՝ զը տեղեկութե իւրաքանչիւրոց զպատմութե միոյն և միւսոյն . զը նմին և առ պատմագիրս է զի միում , և է զի միւսում ընծայցին պէսպէս սքանչելիք (5) . և արդարև երկոքեանն իսկ են սքանչելագործ վկայք , 'ի չնորհաց ամենազօր փրկչին և պսակողին զնս . որում փառք յաւիտեանս . ամէն ։ (6)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Այնչափ միաձայն տեսանին բանք Հ. և մետափրաստեսի 'ի բոլանդեանց յայս վկայաբանութեան , մինչև ակն յայտնի ցուցանել՝ թէ երկոքին ևս 'ի միոյ աղբերէ են առեալ , թող զդոյզն տարբերութիւս ոճոյ և զհամառօտագրութի Հ. ը կերպի քաղուածոյ . մեք յերկոցունց

(5) Տուրինոս հաւատալից մետափրաստեսի և այլոց գրչաց՝ առ չունելոյ զբաւականն տեղեկութ զսրբոյն սարգսէ զօրավարէ կոչեցելոյ անյայտ մերոյ պարսից. զվասն նորա գրեալսն 'ի Թեոփիլակտոսէ և յեւագրիոսէ յաւուրս խոսրովու պարսից արքայի՝ ընդօրինակէ առանձնօր 'ի վարս սրբոյն սարգսի և բագոսի ։ Այլ զոր գրէ նիկեփորոս կալլիստոս. ծէ. 23. առաւել 'ի դէպ գայ սրբոյն սարգսի հռովմայեցւոյ. քանզի ասէ, թէ 'ի ժամանակս կայսերութեան լեւոնի յաղթողին մարկիանոսի՝ ժողովրդապետ ոմն հրէից հանդերձ երկու որդւովքն ամբաստանեալ եղև յառնեն հրէից իբրև պատճառ խռովութե երից եղելոյ 'ի քաղաքի ; և մատնեցաւ 'ի չարաչար տանջանս առաջի հրէական ամբոխին ։ Եւ իբրև վասնդեցաւ՝ սկսաւ աղաղակել այրն. ով տէր սրբոյն սարգսի օգնեա ինձ. սրբ սարգիս նայեա և ողորմեա ինձ ։ Յայն ժամ առաւել սրտմտեալ հրէից՝ առին ընկեցին զնա կենդանւոյն 'ի մէջ հրոյ բորբոքելոյ. և ահա յանկարծակի երևեցան 'ի մէջ բոցոյն երկու ասպետք հեծեալք յերիվարս՝ զարդարեալ 'ի զէնս և 'ի զգեստս պայծառս. և 'ի բաց գարշեցուցեալ զհուրն՝ ոչ թողուին մերձիլ 'ի հրէայն. և այնպէս զօգուտ ժամս եկաց մնաց այրն անվնաս. մի որոյ և ժողովուրդն զինեալ 'ի վր արձակեցին զնա իբրև անպարտ ։ իսկ նա զնացեալ առ առաջնորդս եկեղեցւոյ՝ հաւատաց 'ի քս և մկրտեցաւ, և կոչեցաւ 'ի նր աւազանէն սարգիս. և ապա վախճանեալ զնմ աստուածածին իւր՝ շինեաց տաճար մեծ յանուն սրբոյն սարգսի 'ի տեղւոջ անդ պաշտելեաց հրոյն. և անդ առանձնացաւ 'ի ծառայութե տն. զնոյն արարին և երկոքեան որդիքն նր, որք անուանեցան սարգիս և բագոս ։

(6) Զայս ձեռագիր ճաշոցք մեր՝ համաձայն վկայաբանութեան զնեն զտօն սրբոյն սարգսի և բագոսի 'ի կարգի հոկտեմբերի ամսոյ, 'ի է (կմ Ն), կմ սահմի. Լ. զխորգ 'ի տօնացուցի վերածեալ է յայս միջոց սրբց ամսեանն մայիսի, կրկին պատճառք մեզ երևին. մի՝ զի կարի հոծեալ է յայն միջոց հոկտեմբերի բազմութի անուանց է աշակերտացն պօղոսի. և երկրորդ՝ զի յայս միջոց սակաւաթիւ են անուանք. յորս որպէս հռիփսիմեանք, և նոյնէ և մանէ հռովմայեցիք յարևելս վկայեալք՝ 'ի միջոցէ հռոփ և սահմի ամսոյն և կմ հոկտեմբերի են ածեալ այսր, նովին աւթիւ և խորհրդով փոխադրեալ երևին նաև սարգիս և բագոս. աւելի ինչ քան զայս ասել ոչ ունիմք առ այժմ ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Մովկիմայ Քահանայի։

Հ. Մայիս. 12։ Յ. մայ. 11։ Լ. մայ. 13։
Ճառընտիր Ա. երես. 22ա=22բ։ Բոլլանդեանն
Հենշենիոս. Է. հատ. մայ. եր. 620=624։ (1)



ԵՐԱՆԵԼԻՆ ՄՈՎԿԻմոս, որ ընդ այլոց Մովկիոս՝ կամ Մուտիոս, հայրենեօք 'ի հռովմայ և յազնուական զարմէ՝ հաւատացեալ ծնողաց որդի եւփրատու և Եւստաթիայ, էր 'ի ժամանակս դիոկղետիանոսի կայսեր՝ քահանայ աւագ եկեղեցւոյն ամփիպօլիս քաղաքի, որ 'ի մակեդոնիա գաւառի՝ շուրջ պատեալ 'ի ստրիմոն գետոյ. ( զի և ամփիբօլիսն թարգմանի շրջաքաղաք. ռամկօրէն՝ էմպօլի. կոչի և քրիստապօլիս։) Նա էր աւագերէցն մովկիմոս այր իմաստուն և հոգելից, կատարեալ վարդապետ ճշմարտութեան և նախանձաւոր քրիստոնէական հաւատոց. վասն որոյ և հանապազօրդ արթնութեամբ խրատիչ լինէր զասուց հաւատացելոց, և անխոնջ ուսուցանէր նոցա զբանն փրկական՝ զգուշացուցանելով 'ի հեթանոսական խաբէութենէ։

Զայ

Օ՜ այնու ժամանակաւ կարգեալ էր ՚ի կայ-
սերէ անթիպատոս, այս է փոխանակ բդեշ-
խի՝ յեւրոպեան մասին յունաստանի ղաւ-
դիկոս ոմն անուն, որ նստէր յապողոնիա,
և ընդ իշխանութբ նորա էր և քաղաքն ամ-
փիպօլիս: Եւ եղև ՚ի չորրորդ ամի անթի-
պատուէ նորա՝ յորժամ հասին աւուրք հե-
թանոսական բարեկենդանութե ՚ի պատիւ
սպանդարամետական չաստուծոյն դիոնիսեայ՝ որ և
բաքոս առաջնորդ արբեցութեց և անառա-
կութեց (յորմէ և պաքքանալիա աւուրք տօ-
նից նորա), յանձախեցին մոլեգնութիք կռա-
պաշտից յամ քաղաքս և ՚ի գիւղս ՚ի կատա-
րել զտօն պղծոյն այնորիկ. և զի կայր ե-
րևելի արձան նորին ՚ի նշանաւոր մեհենի
ամփիպօլիս քաղաքի, առաւելապէս անդ խե-
նեշացեալ պարէին հեթանոսք, և կատա-
րէին զպաշտօն դիւական մոլորութե:

Օ՜ այն տեսեալ երանելոյն մովկիմեայ երի-
ցու՝ ստիպէր խրատէր զքրիստոնեայս բացէ
՚ի բաց հեռանալ ՚ի տեսուէ պիղծ կաքաւ-
մանց և հանդիսի սպանդից և խնջոյից նց.
և ոչ այսչափ միայն, այլև առ հեթանոսս
խօսէր վս ուղղութե և զգաստութե. նայե-
ցարուք ասէ յանձինս ձեր, և փախերուք յա-
նարժան գնացից և ՚ի կռոցն մոլեգնութէ.
փարատեցէք յանձանց զխաւար մոլորութե,
և առ ոտն հարէք զանզգայիցն տօնս. և ե-
կայք դարձարուք առ տր ած, որ միածնիւ
որդւով իւրով ծագեաց զլոյս արդարութե
և լուսաւորեաց զմեզ: Եւ իբրև այսպիսի

բանիւք քարոզէր զօրհանապազ, դարձոյց զբազումս 'ի կռապաշտութենէ 'ի սրբ հաւատս

քի։

Իսկ յամնեանն հինգերորդի եկն անձամբ և զաւոդիկոս անթիպատոսն յապողոնեայ յամփիպօլիս. և 'ի վաղիւ անդր գգացուցին նմա ոմանք 'ի քրմաց վն մովկիմայ պաշտօնէին քի, եթէ դարձուցանէ 'ի բաց զբազումս 'ի պաշտամանէն դիոնիսեայ ընդունայն և խաբօղ վարդապետութբ իւրով՝ ուսուցանելով դառնալ յած ոմն խաչեալ և թաղեալ. որում լսօղ լեալ բազմաց՝ խոտորեցան զկնի քարոզութե նորա. արդ եթէ թողացուսցես դմա, ամենեքեան հաւատան 'ի նա, և ընդունայն արասցեն զմեր ողջակէզմն և զպաշտօնս տօնից։

Իբրև լուաւ զայս անթիպատոսն՝ հրամայեաց զկնուորացն, զի կալցին զմովկիմոս, և կացուսցեն յատենի, ուր ինքն նստէր 'ի բարձր բեմի. և եկն եկաց կատարեալ զկնուորն քի առաջի իշխանին զուարթ դիմօք։ Ըսէ ցնա անթիպատոսն զաւոդիկոս. ընդէ՞ր ոչ զոհես դիցն, և զորս զոհենն՝ դարձուցանես ընդունայն խաբէութբ։ Ետ պատասխանի սրբ քահանայն մովկիմոս, և ասէ. անգիտութբ մի հարցաներ, այլ զգիտութիւն 'ի խորհուրդս քո հաստատեա, և ուսիր զճշմարտութին. զի իմ կեալս քի՛ է ո՛վ անթիպատոս. վն որոյ փութամ զամենեսեան ածել 'ի գիտութի ճշմարտութե. վն զի ուսեալ 'ի սքանչելի գրոց խրատեցայ՝ եթէ

կամք

կուռք հեթանոսաց դևք են, և զօրութիւն նց
է մոլեգնութիւն ։ Իշխանն ասէ ․ շատախօսութիւն
ուսեալ ես ։ Ս՝ովկիմոս ասէ ․ ո՛չ շատախօ֊
սեմ, այլ զճշմարիտն ասեմ քեզ, զի դիք
ձեր դևք են, և պատկերք նոցա կուռք ան֊
շունչք ։ Սաստեաց նմա անթիպատոսն, և
ասէ ․ ոչինչ օգտեսցեն քեզ բանքդ այդ հայ֊
հոյութե, այլ մեծապէս վնասեսցեն ․ զի տան֊
ջանաց և մահու պարտական առնեն զքեզ ․
այլ շահ արասցես քեզ, եթէ զոհես, զի
զերծցիս 'ի տանջանաց, և փառաց հասցես ։
Ասէ երանելին ․ 'ի տանջանացն Ա̃յ զերծա֊
նիմ և 'ի դատաստանաց, եթէ ոչ զոհեմ ։
Պռոկղիկոս ասէ ․ քե՛զ ասեմ, շահեա՛ զանձն
քո, և զոհեա՛ ։ Ս՝ովկիմոս ասէ ․ ո՛չ զոհեմ ․
վ̃ն զի մահաբեր է ինձ այդ յաւիտեան ա֊
ռաջի Ա̃յ ։
Յայնժամ զայրացեալ դաւոդիկեայ՝ ասէ
ցսպասաւորս ատենին ․ կախեցէք զդա, և
քերեցէք յականողաց մինչև 'ի ծնօտս դորա,
և 'ի կողից մինչև ցոտս ․ մինչև մերկացի
ոսկրն 'ի մարմնոյն ․ զի խրատեսցին ամենե֊
քեան զովլա՝ ոչ հայհոյել զդ̃ս, այլ զո֊
հել յօժարակամութ̃բ ։
Իսկ նահատակն ք̃ի աղօթէր 'ի տանջանսն,
և ասէր ․ որ թագաւորդ ես յաւիտեան Ա̃ծ,
որ արդարութե ճառագայթիւքդ լուսաւո֊
րեցեր զտիեզերս, որ անգողանալի գանձուց
և անմահութեց տուօղդ ես, ծանո՛ փութա֊
պէս զզօրութի ա̃ծութեդ քո, և ծանիր ըզ֊
ծառայս քո ․ հայեա՛ց յընթացս՝ զոր վ̃ն քո

ճշմարտութեանդ կատարեմ. և տուր ինձ անխափան հանդիպել հանդիսի քումդ խոստովանութեան։

Արդ յորժամ քերեցին զնա չարաչար, հրամայեաց դաւոդիկոս իջուցանել զնա ՚ի կախաղանէն, և ասէ. զոհեա՛ այսուհետև ծ՟յն դիոնիսեայ, և փրկեա՛ զքեզ յայլ ևս տանջանաց բազմաց։ Բայց սր՟ն Մովկիմոս՝ որ առաւելագոյն զգեցաւ զօրութիւն ՚ի չարչարանաց, արար քաջութեամբ պնդնի, և ասէ. ա՟ծք՝ որ արուեստիւ մարդկան լեալ են, փայտք և քարինք անձայնք և անշարժք, նո՟յ ասես թէ զոհեա՛. ո՛չ կարես երբէք հաւանեցուցանել զիս դոցա՝ որ ոչ են ա՟ծ. այլ դու անամօթ և ամենևին հնազանդեալ բանսարկուին՝ ո՞չ տեսանես, զի ամենևին ոչ այլագունեցաւ մարմին իմ ՚ի տանջանացդ, ո՟չ թէ ոչինչ ազդեալ իցէ յիս ցաւ չարչարանաց. վ՟ս զի զօրութիւն փրկչին իմոյ և ա՟յ անդորր արար զա՟մ տանջանս քո։

Իսկ դաւոդիկոս ասէ. ո՛չ եթէ օգնութիւն ինչ եհաս քեզ յա՟յ քումմէ, այլ կախարդութեամբ զամենեսեան խաբես. բայց արդ հրամայեմ հրոյ ծախել զքեզ, զի ա՟մ մարմին քո ցաւօք խմորեալ հալեսցի, և ոսկերք քո ՚ի հող լուծեալ՝ հողմով ցրուեսցին։ Եւ անդէն հրաման տայր հնոց լուցանել ձիթով և որթով և վշով ևս ՚ի տոչորել զնա. և այնպէս սաստիկ բորբոքեցին, մինչև ելանէր բոցն շուրջ զհնոցաւն իբրև կանգունս վաթսուն։ Ապա յառաջ կոչէր բանաւորն զՄովկիմոս, և կըր-

կին

կին հարցանէր ․ զոհեմս դիոնիսեայ, եթէ ոչ ։ Իսկ նա լուռ կայր՝ արհամարհեալ զբանիւք նորա ։

Պարձեալ ասէ ղաւոդիկոս ․ եթէ 'ի նոյն միտս պնդեալ կաս, ահա տեսանես զչորս չար խորհրդոյդ զպատրաստեալ տանջանս ․ այլ խնայեմ 'ի քեզ, և ծանիր զմեծին ածոյ դիոնիսեայ զպայծառութիւնն ․ և վաղվաղակի դարձցես զօգնականութի նր, և ապրեալ 'ի տանջանաց՝ 'ի փառս հասանիցես ․ արդ զոհեա դիոնիսեայ ։ Պատասխանի ետ մոլկիմոս ․ ասացի անթիպատէ, եթէ ոչ զոհեմ խլից և կուրից և համերց, որ կորուսանեն զոգիս մտաւորս մարդկան ․ բայց դու կամիս արդեօք ճանաչել, զի զոր դու ած անուանես՝ չէ ած, այլ՝ կռածոյ և քերածոյ ․ անսա ինձ և ցուցից քեզ ։

Բարկացաւ իշխանն, և ասէ ․ ո՛վ չարագըլուխ և զխա՛րդ քերածոյ իցէ այն, որ իւրով զօրութեամբ (կենդանաքնութեամբ) ած լեալ է ․ զի որ 'ի դիս զօրութիւքն ընակեալ են՝ զաւ 'ի մէնջ ողջակեզս ընդունին, և կեանս մեզ շնորհեն ։ Այնժամ ասէ ցնա սուրբ քահանայն մոլկիմոս ․ կամիս դու պայծառ և վայելուչ անթիպատոս, զի ես մտից 'ի տաճարն, և որպէս և զխա՛րդ դիտեմ, զոհեցից իմով ողջակիզօք, և ճանաչիցէք ամենեքին զզօրութի դիոնիսեայ ։ Իսկ ղաւոդիկոս ոչ իմացաւ զմիտս նր ․ վ՞նյ ասէ ․ ա՛րդ մուտ և զոհեա ․ զի թէ՛ մեք և եթէ դու առհասարակ ծանիցուք զզօրութի մեծ ածոյն դիոնիսեայ ։

Այս

Օ այս հրաման առեալ Մովսիսեայ՝ դիմեաց ՚ի մեհեան անդր. և արարեալ զնշանն ք̃ի ՚ի ճակատ իւր, և այնպէս զզէնն յոր ը̃դէմ բանսարկուին զգեցեալ՝ վազեաց ՚ի ներքս ՚ի տաճարն. և կացեալ առ դրօշէն պատկերին դիոնիսեայ՝ սկսաւ ասել յերկինս ՚ի վեր. Ո՞վ ամենակալ՝ որ զա̃մ լինչ փառօք ք̃ի ըս-տեղծեր. որ զբանսարկուն զօտարացեալն ՚ի քումմէ ա̃ծութենէդ յամօթ արարեր, և պատկեշտ երկիւղիւ պատուիրանացդ զծառայսն քո փառւեցեր. որ զանշունչ և զանշարժ կուռսն բարբառեցուցեր ՚ի ձեռն դանիէլի փշրեցեր, և զերից մանկանցն զբարձրացեալ բոցն ցրուեցեր. որ զփարաւոն յանդունդս ընկղմեցեր, և կեանս ժողովրդեանն՝ որ զքեզ ճանաչէին՝ շնորհեցեր. և յայսմ զանուն քո ըս-քանչելի մեծացուցեր. Օ քեզ՝ որ եսդ յառաջ քան զյաւիտեանս, վասն փառաց թագաւորին և ա̃ն մերոյ յոր ք̃ի ապաշխեմ և պաղատիմ, լո՛ւր և ներկրին յօգնականութե̃. և ցո՛յց զզօրութի̃ քո այսմիկ՝ որ զճշմարտութի̃ն իբրև զստութի̃ համարին. զի դու ես տ̃ր ամենազօր և մշտնջենաւոր, և՚ի ձեռն քո լոյս անթառամ ծագեաց առ ՚ի փարատել զխաւար մեղաց, և հալածել զմոլորութի̃ դիւաց և զպիղծ կուոցս հեթանոսաց ։

Եւ զայս ասացեալ ՚ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. անպատուք և անպիտան, կորի՛ր և խաւ՝ անշա՛րժ դիմիսեաց, քե̃զ ասեմ ես անուանն ա̃յ ահաւորի և փառաւորի՝ որ ՚ի բարձունս բնակեալ է, անկի՛ր ՚ի մեհենէդ

՚ի

՚ի գետոյն . վա՛յ զի ՚ի պատճառս ծածուկ մո-
լորութե՛ն կաս այսր , և ՚ի գայթակղութիւն
անմտաց : Նաև աւաժամեայն եղև որոտումն և
Թնդիւն մեծ , և անկաւ դիոնիսոս ՚ի գե-
տոյն , և մանրեալ՝ եղև իբրև զփոշի . մինչև
ամենեքեան՝ որ տեսին ; փախեան՝ զահի
հարեալք ՟Է՟ եղեալ իրքն : Ապա ասէ երա-
նելին մովկիմոս ցղաւաղիկոս , տեսե՞ր զմո-
լորութիդ , որով զամենեցուն զխորհուրդս ար-
գելեալ ՚ի կենաց՝ ՚ի մահ ածէիր . արդ եկ
ժողովեա՛ զմոխիր ուծոյ քո , և իմացի՛ր թէ
յո՛րպիսի չարիս էք մոլորեալ դու և ժողո-
վուրդ քո :

Յայնժամ խռովեալ անհնարինաւ , և ոչ
կարացեալ պատասխանի տալ նմա և ոչ
բան մի , հրամայեաց սպասաւորաց արկանել
զմովկիմոս ՚ի հնոցն կանխագոյն բորբոքեալ :
Եւ անդ էր տեսանել զսքանչելիս երից մանկ-
անցն բաբելոնի . քանզի իբրև եմուտ երա-
նելին մովկիմոս ՚ի մէջ հնոյին , Թուէր նմա
իբրև ՚ի զով դաշտի գնալ . և տեսանէր անդ
զայլ երիս արս փառաւորս , և զինքն՝ չորրորդ .
այլ միոյն՝ ՚ի նոցանէ կերպարանքն էին իբրև
զտեսիլ արեգականն՝ գեղեցիկ ձառագայ-
թեալ քան զնոցայն պայծառութիւն : Նորա
զձեռան իւր ս՟Է՟ քահանայն մովկիմոս , և
սկսաւ օրհնել զա՛ծ և ասել . փա՛ռք քեզ ա՛ծ ,
փա՛ռք քեզ Թագաւոր յաւիտենական , փա՛ռք
քեզ լուսաւորիչ անապականն՝ պայծառութ
օրհնեա[illegible]եանս : Որոհանեամ զքեզ տէր
ած հ[illegible]ց , զի բանիւ քո ա՛մ իւրինչ հնա-
զանդ

զանդեալ է ։ Օրհնեալ ես տր ած հարցն մերոց , որ 'ի զօրաց քոց երկնաւորաց երկր-պագիս , գովիս օրհնիս և փառաւորիս 'ի բնե-րանոյ սրբոց քոց հրեշտակապետացս՝ որ են Է իս 'ի հնոցի աստ ։ Զօրհնեա́ տր զբոց հրոյս այսօրիկ արտաքոյ հնոցիս , և երևեցո́ ըզ-փառս քո , և շրջափակեա́ սովին բոցով զայ-նոսիկ՝ որք յանզգայութե են Է անթիպա-տոսին , և խորհեցան յանձողոպրելին մատ-նել 'ի պատուհաս զծառայս քո ․ զի ամենե-քեան ծանիցեն , թե դու միայն ես ճշմա-րիտ ած յաւիտեանս ․ ամէն ։

Իսկ Է ասել նորա զայս՝ ցրուեցաւ բոցն յան-թիպատոսն կոյս , և այրեաց զնա համդերձ իւն արամբք 'ի համախոհ ընկերաց նր և 'ի պաշտօնէից չարին դիոնիսեայ ․ մինչև չմնալոյ և ոսկերաց մարմնոց նոցա առ 'ի ժողովել ։ Յայնժամ դողումն կալաւ զամ հեթանոսս , և երկեան յայ ճշմարտէ ․ իսկ երանելին մով-կիմոս ելանէր գայր 'ի հնոցէն ողջանդամ , ոչինչ ամենևին կարացեալ տիրել 'ի վր նր հրոյն ։ Իսկ թալասսիոս ոմն զօրագլուխ ան-թիպատոսին ( կամ թաղաղիոս քրմապետ ) ձեռն արկեալ 'ի կենդանի նահատակն քրի՝ էարկ զնա 'ի բանտ առ ժամանակ մի ․ ուր անտրտում ուրախութբ համբերէր երանե-լին ամ նեղութեանց՝ փառաւորելով զած ։

Իսկ իբրև անցին աւուրք քսան և վեց , եկն 'ի տեղի կորուսելոյն ղաւոդիկոսի այլ անթի-պատոս մաքսիմոս կմ մաքսիմիանոս անուն ․ և լուեալ նր 'ի զինուորացն վս սքանչելի ան-

ցիցն

ցեղն մովկիմեայ՝ զայրացաւ ՟Է՟ այն դառնա-
պետ . և զառաջին օրն խորհուրդ արարեալ
՟Է՟ իւրոմն՝ թէ որպիսի օրինակաւ զարդարն
կորուսցէն , ապա յերկրորդ կամ յերրորդ
աւուրն եկն նստաւ անթիպատոսն մաքսի-
միանոս 'ի բարձր տեղւոջ ուրեմն , որ կոչէր
փորոս ( այն է ատեան բեմական 'ի հրապա-
րակի ) . և հրամայն տուեալ ածել զմովկի-
մոս՝ ասէ ցնա . զի՞նչ է անուն քո , և ծնո-
ղաց քոց :

Պատասխանի ետ երանելին . եթէ զանուա-
նէ իմմէ հարցանես անթիպատէ , պատուա-
կան հայրն իմ եփրատէս , և զովելի մայրն
իմ եւստաթիա ընծայեցուցին զիս քնի , և
մաքրեալ աւազանին սրբութ՟ե՟՝ կոչեցին ինձ
անուն մովկիմոս . և աճեցեալ մնայ 'ի նոցա-
նէ իբրև ճշմարիտ որդի երկիւղին ՟այ , մին-
չև հասի յայր կատարեալ , և լցեալ զաւուրս
երկայնս՝ 'ի ծերութ՟ն՟ խոնարհեցայ կորայցեալ
անձամբ : Անթիպատոսն ասէ . յորմէ՞ ազգէ
ես , և կամ զի՞նչ էին կեանք քո և քոյոցդ :
Մովկիմոս ասէ . հայրն իմ 'ի զինուորական
կարգի նշանաւոր գտաւ 'ի մեծն հռովմ , և
կանդիդատոս եղև ( որ է պայծառազգեաց
և յառաջադէմ ) և գլուխ գնդի , և ցուցաւ
սիրելի յաչս ամենեցուն . և 'ի թագաւորա-
կան քաղաքի անդ վախճանեցաւ իբրև քա-
ղաքացի . որպէս և մայրն իմ էր դուստր դամ-
պատիոսի անթիպատոսին որդւոյ կղարոյ :
Յայնժամ ասէ անթիպատոսն . իսկ զիա՞րդ
յայդպիսի ազգէ գոլով օտարացեալ է քո 'ի
հռով-

հաւաքմայեցուած . և կէս որպէս ասնհարդեալ ըն-
նելով օրհնացս՝ յարձակեալ մանրեցեր զքաջն
զիրմնիսաս , և զղաւադիկոս անթիպատն զսի-
րելին ինքնակալաց հրոյ մաշեցեր , և զօ-
րհնադրուն ողջակիզացն խափանեցեր : Ո՞վ-
կիմոս ասէ . ես ով անթիպատէ՝ կարծեմ թէ
ածս ոչ մանրեցի , և ոչ զսիրելի ինքնակալին
հրով այրեցի , և ոչ զպարկեշտ ողջակէզս
թշնամանեալ այպանեցի , այլ՝ երկիւղիւ մե-
ծին այ յերկինս նայեցեալ՝ զկուռս խուլս և
զքերածոյս և զանակուտս սատանայի խոր-
տակեցի , և զսիրելին բանսարկուին զթշնա-
մին արդարութեան հրով ծախեցի . և զպիղծ
ողջակէզս մարդասպանին ցրուեցի և ծաղր
արարի , և զծոց բարխատեաց չարին պար-
կեշտ աղօթիւք ամենայն երևեցուցի , բոլորով
սրտիւ կացեալ ՚ի խոստովանութիւն մկայուէ
Ճշմարտութեան :

Ասէ մաքսիմիանոս . ապա քաջ զքեզ կար-
ծես մի այդպիսի չարաբարոյութեամբ : Ո՞վ-
կիմոս ասէ . վասն երկիւղին՝ զոր ունիմ առ
այծ , քաջ երևեցայ ՚ի կործանումն կռոց ձե-
րոց : Աստեաց ՚ի նա իշխանն , և ասէ . մա-
տուցի՛ր զքաղցում յիմարութեան քո , և մատու-
ցեալ զոհեա՛ աստուածն , զի մի չարաչար կո-
րիցես : Պատասխանի ետ մկայն . չարաչար
մեռանիմ ով անթիպատէ , եթէ մոռացայց
զբարերարութիւն այ Ճշմարտի և զօգնակա-
նութիւնն , և մերժեցայց ՚ի դոսա՝ որք ոչ-
են , և ոչ լեալ են երբեք : Պատասխանի ասէ
մաքսիմիանոս . արդ թէպէտև մի մոլեգ-
նա

նութեանդ . քո զանձն ըստ գիտնականս մանրակերտ.
անզգամութե՛ , և անմիտս պահեցար՝ զաւել
զթողութի՛ 'ի նմ՛ համբերելոյն , բայց առել
միտս զիցաղանական մարդոյ՝ զոհեան ապրո-
ղանի : Մովսիսեան ասէ . մի՛ դու մոլեգնակից
լինիր բանսարկուին ով անթիպատէ , և մի՛
յիշեր զվատամտութի՛ ղաւոդիկոսի . որ զօ-
րութի՛ն ոչ վաստնեցաւ մ՛ն բարկացուցանե-
լոյն իւրոյ զնա , այլ՝ յիշեալ և նայեալ յօգնա-
կանութի՛ն ոչ՝ որ յիս կատարեցաւ . և փա-
խի՛ր յայսպիսի պատուհասէ , զի մի և դու
չարաչար պատուհասեալ եղիցես 'ի կենացս
յայսցանէ :

Ի երկս ուսումնութե՛ մաքսիմիանոս , և հրա-
մայեաց պրկել զառաքինի նահատակն 'ի վ՛ր
երկուց անուոց , զի 'ի հոլովիլ նց՛ քակտես-
ցին անդամք ն՛ր . իսկ մովկիմայ ոչինչ զան-
գիտեալ՝ ասէր . տանջանքդ քո և չարախառ
հուրդ հնարքդ ինձ փրկութի՛ հոգւոյ գոր-
ծեն առ ա՛ծ . արդ փութա՛ զկարօտութիւս
իմ լնուլ՝ կատարել կարծելով զկամս հօրն
քո սատանայի . զի ինձ կեանք ք՛ն է , և մե-
ռանել շահ 'ի խոստովանութի՛ս յայս : Արդ
'ի հոլովել անուոցն ջախջախեսցին մարմինք
ն՛յն . այլ նա զօրութ կայր , ո՛չ թէ ոչինչ
աշխեցին նմ՛ տանջանքն . և յորժամ արիւնն
իջանէր 'ի մարմնոյն , և ցայտեր 'ի վ՛ր ա-
նուոցն , և Է անիւն 'ի բաց հոսէր , բացել
ն՛յն զգերան իւր՝ ասէր . Որ պարկեշտ գի-
տութե՛ տուօղ ես ա՛ծ՝ օգնական ապաւէն և
փրկիչ , գոհանամ զքէն՝ զի զիս զանարժանս
ար-

արժանի արարեր մտանելոյ 'ի հանդէս յաղ-
թութեան ըղձելի բանսարկուին . վս զի դու ես
մծ , որ քակես զխորհուրդս չարարուեստ
իմաստութեան նորա . մի՛ տիրեսցեն ինձ խոր-
հուրդք անարժանք՝ որ 'ի քէն ոչ սիրեցան .
վս զի մեծ է անուն քո 'ի վր երկիւղածաց
քոց :

Եւ մինչդեռ աղօթէր սրբն , յանկարծակի
ինքնին քակտեալ խորտակեր անիւն , և ել
արդարն ողջանդամ ապրեալ զօրութբ տն .
և տեսեալ ամենեցուն զնոր հանդէս վկայ-
ին՝ սքանչացեալ սոսկացան : Եւ մաքսիմիա-
նոսի ընկղմեալ 'ի տրտմութիւն՝ զի և ինքն
յաղթեցաւ 'ի սրբյն , քան եթէ յաղթեաց ,
ետ հանել զնա յերեսաց իւրոց , և արկանել
'ի բանտ . ուր նա գոհանայր անդադար զտէ:
Իսկ յետ երից աւուրց հրամայեաց բռնա-
ւորն , զի արկցեն զմովկիմոս առաջի վայրե-
նի գազանաց : Եւ իբրև ժողովեցան ամ
բազմութին 'ի թէատրոնն հանդերձ անթիւ
պատոսիւն , գայր մտանէր և զինուորն քի
մովկիմոս 'ի տեսարան անդր առողջ մարմ
նով և զուարթ . մինչև ամենեցուն զարմա-
նալ և ասել ընդմանէ , թէ չէ՞ սա այն՝ որ է
տանջանօք և է լլկանօք անկեալ : Արդ յաւ-
նարկել մաքսիմիանոսի առ պարմանիչն գա-
զանաց՝ վերացոյց նա զթև մի գառագղին .
յորմէ ելանէր մատակ առիւծ մի մեծ և ա-
հագին . և ընթացեալ փաղփաղակի՝ գայր
անկանէր առաջի ոտից մովկիմոսի , և լիզոյր
զոտնատեղիս սրբյն . և ժողովուրդն հայե-

ցեղ զարմանայր՝ թէ զի՞նչ լինիցի այն ։ Իսկ առիւծն յետ նստելոյ հանդարտիկ պահ մի՝ յարուցեալ գիրկս արկանէր զերանելեաւն , և լիզոյր զքիրտն մարմնոյ նր ։ Յայնժամ ելին երկու գազանաբոյծք , և շողոքորթելին գազանին՝ զի մտցէ անդրէն 'ի գառագեղն . վն զի ոչ ոք կարծէին՝ իւրքն վճարեցան . իսկ գազանն 'ի վր յարձակեալ՝ սպան զմի 'ի նոցանէ . և դարձ արարեալ առ սրբն՝ համբուրեաց զնա , և ապա եմուտ ինքնին 'ի գառագեղն ։

Յետ այսորիկ վերացուցին զթև այլոյ գառագղի , ուր կայր առիւծ մի քաղցեալ՝ անճաշակ յերկուց և յերից աւուրց հետէ . և սա 'ի դուրս ոստուցեալ՝ նոյնպէս գիրկս արկանէր երանելոյն մովկիմեայ , և զագին տատանէր և քծնէր , ոչ թէ ողորմութի խնդրելով 'ի նմանէ . և համբուրելով հեզիկ ըզմարմին սրբյն՝ այսր անդր հայէր ըստ բազմութին . և անկեալ առ ոտս երանելւոյն թաւալէր ։ Յայնժամ վայրի միաբան աղաղակեաց ամ բազմութին . արձակեա՛ զարդարդ , զոր և գազանք սիրեն , և ած բարեպաշտութե նր ողորմի ։ Եւ մաքսիմիանոսի զահի հարեալ յիրացն , և ակնածեալ ձայնի ամբոխին՝ ետ հանել զսրբն 'ի թէատրոնէ անտի . և առաքեաց զնա առ եպարքոսն փիլիպպոս ( ըստ այլոց՝ փիլիպպիկոս , կամ փիլիսիպոն ) , որ նստէր 'ի հերակլիա պերինթացւոց , գրեալ վն անցից նր մի ըստ միոջէ ։

Իբրև ածաւ մովկիմոս 'ի հերակլիա , արգե-

արժանի արարեր մտանելոյ 'ի հանդէս յաղ-
թութեան ընդդէմ բանսարկուին • վասն զի դու ես
Աստուած, որ քակես զխորհուրդս չարարուեստ
իմաստութեան նորա • մի տիրեսցեն ինձ խոր-
հուրդք անարժանք՝ որ 'ի քէն ոչ սիրեսցան •
վասն զի մեծ է անուն քո 'ի վերայ երկիւղածաց
քոց :

Եւ մինչդեռ աղօթէր սուրբն, յանկարծակի
ինքնին քակտեալ խորտակեր անիւն, և ել
արդարն ողջանդամ ապրեալ զօրութեամբ Աստուծոյ •
և տեսեալ ամենեցուն զնոր հանդէս վկայ-
ին՝ սքանչացեալ սոսկային : Եւ մաքսիմիա-
նոսի ընկղմեալ 'ի տրտմութիւն՝ զի և ինքն
յաղթեցաւ 'ի սրբոյն, քան եթէ յաղթեաց,
եւ հանեալ զնա յերեսաց իւրոց, և արկանել
'ի բանտ. ուր նա գոհանայր անդադար զԱստուած:
Իսկ յետ երից աւուրց հրամայեաց բռնա-
ւորն, զի արկցեն զմովկիմոս առաջի վայրե-
նի գազանաց : Եւ իբրև ժողովեցան ամենայն
բազմութիւն 'ի թէատրոնն հանդերձ անթի-
պատոսիւն, գայր մտանէր և զինուորն Քրիստոսի
մովկիմոս 'ի տեսարան անդր առողջ մարմ-
նով և զուարթ • մինչև ամենեցուն զարմա-
նալ և ասել զնմանէ, թէ չէ՞ սա այն՝ որ ընդ
տանջանօք և ընդ լլկանօք անկեալ: Արդ յաւե-
նարկել մաքսիմիանոսի առ դարմանիչն գա-
զանաց՝ վերացոյց նա զթև մի գառադղին •
յորմէ ելանէր մատակ առիւծ մի մեծ և ա-
հագին • և ընթացեալ վաղվաղակի՝ գայր
անկանէր առաջի ոտից մովկիմոսի, և լիզոյր
զոտնատեղիս սրբոյն • և ժողովուրդն հայե-
ցեալ

ցեղ զարմանայր՝ թէ զի՞նչ լինիցի այն : Իսկ առիւծն յետ նստելոյ հանդարտիկ պահ մի՝ յարուցեալ գիրկս արկանէր զերանելեաւն , և լիզոյր զքիրտն մարմնոյ նորա : Յայնժամ ելին երկու գազանաբոյծք , և շողոքորթէին գազանին՝ զի մտցէ անդրէն 'ի գառագեղն . վն զի ոչ ոք կարծէին՝ իւրքն վճարեցան . իսկ գազանն 'ի վր յարձակեալ՝ սպան զմի 'ի նոցանէ . և դարձ արարեալ առ սրբն՝ համբուրեաց զնա , և ապա եմուտ ինքնին

'ի գառագեղն :

Յետ այսորիկ վերացուցին զԹև այլոյ գառագղի , ուր կայր առիւծ մի քաղցեալ՝ անճաշակ յերկուց և յերից աւուրց հետէ . և սա 'ի դուրս ոստուցեալ՝ նոյնպէս գիրկս արկանէր երանելւոյն մովկիմեայ , և զագին տատանէր և քծնէր , ոչ թէ ողորմութի խնդրելով 'ի նմանէ . և համբուրելով հեզիկ ըզմարմին սրբյն՝ այսր անդր հայէր ըն բազմութին . և անկեալ առ ոտս երանելւոյն թաւալէր : Յայնմ վայրի միաբան աղաղակեաց ամ բազմութին . արձակեա՛ զարդարդ , զոր և գազանք սիրեն , և ած բարեպաշտութն նր ողորմի : Այլ մաքսիմիանոսի զահի հարեալ յիրացն , և ակնածեալ ձայնի ամբոխին՝ ետ հանել զսրբն 'ի թէատրոնէ անտի . և առաքեաց զնա առ եպարքոսն փիլիպպոս ( որ այլոց՝ փիլիպպիկոս , կամ փիլիսիպոն ) , որ նստէր 'ի հերակլիա պերինթացւոց , գրեալ

վն անցից նր մի ըն միոջէ :

Իբրև ածաւ մովկիմոս 'ի հերակլիա , արգե-

արժանի արարեր մտանելոյ 'ի հանգիստ յաղթութե̃ ը̃դէմ բանսարկուին . վ̃ս զի դու ես ա̃ծ , որ քակես զխորհուրդս չարարուեստ իմաստութե̃ նորա . մի՛ տիրեսցեն ինձ խորհուրդք անարժանք՝ որ 'ի քէն ոչ սիրեցան . վ̃ս զի մեծ է անուն քո 'ի վ̃ր երկիւղածաց քոց :

Իսկ մինչդեռ աղօթէր ս̃բն , յանկարծակի ինքնին քակտեալ խորտակեր անիւ̃ն , և ել արդարն ողջանդամ ապրեալ զօրութ̃բ ա̃ծ . և տեսեալ ամենեցուն զնոր հանդէս վկային՝ սքանչացեալ սոսկացան : Իսկ մաքսիմիանոսի ընկղմեալ 'ի տրտմութիւն՝ զի և ինքն յաղթեցաւ 'ի ս̃բյն , քան եթէ յաղթեաց , ետ հանել զնա յերեսաց իւրոց , և արկանել 'ի բանտ . ուր նա գոհանայր անդադար զա̃ծ : Իսկ յետ երից աւուրց հրամայեաց բռնաւորն , զի արկցեն զմովկիմոս առաջի վայրենի գազանաց : Իսկ իբրև ժողովեցան ա̃մ բազմութ̃ն 'ի թէատրոնն հանդերձ անթիւ պատոսիւ̃ն , գայր մտանէր և զինուորն ք̃սի մովկիմոս 'ի տեսարան անդր առողջ մարմնով և զուարթ . մինչև ամենեցուն զարմանալ և ասել զնմանէ , թէ չէ՞ սա այն՝ որ ը̃ տանջանօք և ը̃ լլկանօք անկեալ : Իսկ յաւնարկել մաքսիմիանոսի առ պարմանիչն գազանաց՝ վերացոյց նա զթև մի գառադղին . յորմէ ելանէր մատակ առիւծ մի մեծ և ահագին . և ընթացեալ վաղվաղակի՝ գայր անկանէր առաջի ոտից մովկիմոսի , և լիզոյր զոտնատեղիս ս̃բյն . և ժողովուրդն հայե-

ցեղ զարմանայր՝ թէ զի՞նչ լինիցի այն ։ Իսկ առիւծն յետ նստելոյ հանդարտիկ պահ մի՝ յարուցեալ գիրկս արկանէր զերանելեաւն, և լիզոյր զքիրտն մարմնոյ նր ։ Յայնժամ ելին երկու գազանաբոյծք, և շողոքորթէին գազանին՝ զի մտցէ անդրէն 'ի գառագեղն. վն զի ոչ ոք կարծէինն՝ իրքն վճարեցան. իսկ գազանն 'ի վր յարձակեալ՝ սպան զմի 'ի նոցանէ. և դարձ արարեալ առ սբն՝ համբուրեաց զնա, և ապա եմուտ ինքնին 'ի գառագեղն ։

Յետ այսորիկ վերացուցին զթև այլոյ գառագղի, ուր կայր առիւծ մի քաղցեալ՝ անճաշակ յերկուց և յերից աւուրց հետէ. և սա 'ի դուրս ոստուցեալ՝ նոյնպէս գիրկս արկանէր երանելոյն մովկիմեայ, և զագին տատանէր և քծնէր, ոչ թէ ողորմութի խնդրելով 'ի նմանէ. և համբուրելով հեզիկ ըզմարմին սբյն՝ այսր անդր հայէր ը բազմութին. և անկեալ առ ոտս երանելոյն թաւալէր ։ Յայնմ վայրի միաբան աղաղակեաց ամ բազմութին. արձակեա՛ զարդարդ, զոր և գազանք սիրեն, և ամ բարեպաշտութի նր ողորմի ։ Այլ մաքսիմիանոսի զահի հարեալ յիրացն, և ակնածեալ ձայնի ամբոխին՝ ետ հանել զսբն 'ի թէատրոնէ անտի. և առաքեաց զնա առ եպարքոսն փիլիպպոս (ը այլոց՝ փիլիպպիկոս, կամ փիլիսիպոն), որ նստէր 'ի հերակլիա պերինթացւոց, գրել վն անցից նր մի ը միոջէ ։

Իսկ և ածաւ մովկիմոս 'ի հերակլիա, արգե-

լաւ 'ի բանտի զաւուրս ութ. ապա հրամայ-
եաց եպարքոսն տանել զնա 'ի բիւզանդիոն,
և անդ հարցափորձել յատենի: Այլ հասեալ
'ի բիւզանդիա՝ մուծին զնա առաջի խորհր-
դական դատաւորացն, և պատմեցին նոցա
զա̃մ անցս. և զոր ինչ արար մովկիմոս ան-
ուամբն յ̃նի ք̃նի՝ վկայելով յատենի երկուց
անթիպատոսաց ղաւոդիկոսի և մաքսիմիա-
նոսի: Այլ իբրև հարցեալ լինէր երանելին
'ի դատաւորացն, պատմէր նմ̃ համարձակ
զսքանչելիսն ա̃յ՝ մեծացուցանելով զճշմա-
րիտն ա̃ծ, և արհամարհելով զսնոտի յոյս
կռապաշտից: Արդ յորժամ լուեալն զայն ա̃մ
'ի բերանոյ վկային ք̃նի, արարին նմա վճիռ՝
զի հատցի գլուխ նր̃ սրով:

Այլ մինչդեռ հանդերձեալ էր զկատարումն
վկայութ̃են ընդունել, համբարձ զձեռս իւր,
յաղօթս եկաց և ասէ. Տ̃յսդ 'ի քեզ հաւա-
տացելոց ա̃ծ, օրհնեալ ես տ̃ր՝ որ զյաւի-
տեանս հաստատեցեր, որ փառաւորեալդ
ես 'ի սրբս, և հրեշտակաց տ̃րդ ես. մի՛ թա-
քուցաներ զխորհուրդ 'ի սրբ̃ց, և ընկալ զիս
խաղաղութ̃բ. զի քեզ վայելէ փառք յաւի-
տեանս, ամէն: Այլ ընդ ասել նր̃ զայս՝ հա-
տին զգլուխ երանելւոյն. և առժամայն ձայն
եղև յերկնից. Երանի լեր բարեյաղթ մով-
կիմոս նահատակ ք̃նի և ս̃ր քահանայ, քան-
զի արիաբար յաղթեցեր բռնաւորին, և զզօ-
րութի̃ թշնամւոյն կոխան արարեր. Եկ հա-
մարձակ, և մուտ յարքայութ̃ի երկնից. և
ուրախ լեր ը̃ հարսն՝ որք իբրև զքեզ աշխա-
տե-

տեցան յերկրի . արդ վայելեա՛ և դու ըստ
Ճգանացդ յարքայութեան :

Այսպիսի ցանկալի հրաւիրանաւ կոչման ընկալաւ սբն մովկիմոս զյաղթականն ըզպսակ 'ի մետասաներորդ աւուր մայիս ամսոյ յամի տն իբր 303 : Զորոյ զվայելուչ և զսբ նշխարսն ամփոփեալ թաղեցին պատուով փիլիպպոս և դադմատիոս և կիւրակոս եպիսկոպոսունք հանդերձ ուխտիւ եկեղեցւոյն բիւզանդացւոց՝ իբր մղոնաւ միով արտաքոյ բիւզանդիոյ : Իսկ յետ քանի մի ամաց 'ի դալ մեծին կոստանդիանոսի 'ի բիւզանդիա՝ որ յանուն նր կոստանդինուպօլիս կոչեցաւ , շինեաց նա 'ի վր տապանի սբյն եկեղեցի մեծ և վայելուչ . կամ փոխադրեաց զմարմին նր 'ի տաճարն՝ զոր կանգնեաց յանուն նորա մերձ 'ի տեղի կատարման սբյն , ուր էր նախ մեհեան կռոց . այլ զնոյն եկեղեցի կրկին ևս յօրինուածով նորոգեցին և առաւել զարդարեցին զկնի ժամանակաց՝ նախ մեծն յուստինիանոս , և ապա վասիլ արշակունի : Իսկ նշխարք սբյն մովկիմայ ասին այժմ լինել յարևմուտս 'ի քոլոնիա քաղաքի իտալիոյ : (2)

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) [illegible]ին և հարազատ այս վկայաբանութեան որպէս գտանի 'ի մեծ և յառաջին ճառընտրի մերում Թարգմանեալ 'ի յոյն բնագրէ, նոյնպէս գտանի Թարգմանեալ 'ի վաղուց և առ լատինս, ըստ որում յառաջ բերեն բովանդակեանք՝ բաղդատութեամբ այլ և այլ ձեռագրաց. յորս առաւել համաձայն տեսանի մերումս օրինակն կոչեցեալ համբուրգեան. որպէս երբեմն և սուկեանն. և զի չկայր երևելի տարբերութիւն ըստ իմին, նմին իրի ոչինչ հարկ համարեցաք ծանուցանել ղղուլնաքեայ զանազանութիս. այլ համեմատութեամբ իւրեանց անցուցաք 'ի կարգ պատմութեան. զորոյ և զքաղուածն պէսպէս համառօտեալ ունին այլ և այլ յայսմաւուրք: Իսկ անունն սրբոյն մովկիմեայ առ յոյնս գրի մօգիոս, և առ հռովմայեցիս մուցիուս, կամ մուցիոս:

(2) Յայսմաւուրք Հ. և Յ. միօրինակ պատմեն զայս, թէ մեծն կոստանդիանոս շինեաց եկեղեցի յանուն սրբոյն մովկիմոսի. միայն Հ. ասէ՝ թէ 'ի վերայ տապանի նորա շինեաց, որով նշանակի տեղի թաղման սրբոյն. իսկ Յ. գրէ՝ թէ զնշխարս սրբոյն ամփոփեաց յեկեղեցին, զոր շինեաց յանուն նորա՝ իբր 'ի բուն տեղւոջ կատարման: Յիշէ և գէորգ կոդինոս 'ի գիրսն յաղագս ծագման կոստանդնուպօլսոյ. երես. 37. զտաճարս սրբոյն մովկիմոսի և մինասայ՝ զնուիրեալս յանուն նոցա 'ի մեծէն կոստանդիանոսէ, զի յառաջն ասէ տաճարք էին կռոց. և 'ի վերայ բերէ. * Զտաճարն սրբոյն մովկիմոսի, որ երբեմն կրկին
,, մեծութիւն ունէր՝ քան զոր յայժմուս, ըստ կիսոյն որո-
,, շեաց մեծն կոստանդիանոս, և կանգնեաց անդ խա-
,, րան. և զի անդանօր էր սպանեալ սուրբն մովկիմոս,
,, նմին իրի զտաճարս զայս յանուն նորա նուիրեաց, և
,, անդր փոխադրեաց զմարմին նորա: 'ի ժամանակս մե-
,, ծին թէոդոսի արտաքսեցան արիանոսք 'ի մեծ եկե-
,, ղեցւոյն, և ապա դարձ արարեալ ուղղափառութեամբ
,, կային կալեալ զտաճար սրբոյն մովկիմեայ. այլ յեօթ-
,, ներորդ ամի տիրելոյ արիանոսաց այնմ տաճարի՝ 'ի
,, ժամու պաշտաման կործանեցաւ և ճմլեաց 'ի ներքոյ
,, զբազումս 'ի նոցանէ: Իսկ յաւուրս մեծին յուստի-
,, նիանոսի վերստին կանգնեցաւ տաճարն այն. և կայ

,, մինչ

,, Կայ ամբողջ մինչեւ ցօրս ցայս ||։

Եւ Թ այսմ պրոկոպիոս 'ի ա̃ գիրս շինուածոց յուստինիանոսի. Գլ. 4. Նշանակէ զայն եկեղեցի եւս, եւ վկայէ լինել տաճար մեծ քան զայլ ամ վկայարանս մեծի քաղաքին ։ Այլ յետ միւսանգամ կործանմանն՝ ասէ կեդրենոս, * Վասիլ կայսր զմեծ տաճարն մոկիմայ վկայ-
,, րին, եւ զմուտս նր հարթայատակեալ, եւ զնք սեղանն
,, խարխալեալ՝ որմովքն հանդերձ նորոգեալ՝ կանգ-
,, նեաց ||։ Յեղի այս տաճար ըստ աւանդին միճակին 'ի գործս սբ ժողովոյն եփեսոսի, որ եղեւ յամի 431. քանզի յորժամ եղեւ մերձ զատապարտութն Յեդեմ Նեստորի, հրամայեաց կայսրն Թէոդոս փոքր՝ զի ամ արշամանորիւք ժողովեցին 'ի տաճար սբյն մոկիմայ, եւ անդ վերծանեցաւ աւանդին նզ սահմանադրութն եւ միճիւ սբյ ժողովոյն ։

Մասինա ամ 'ի քննչաց ցուցանէ, Թէ նշխարք սբյն մոկիմոսի կան այժմ 'ի բոլոնիա յեկեղեցւոջ ամ սբյ՝ որ 'ի բրենա, եւս եւ 'ի տաճար նք ածածնի՝ որ մն աղաւութն ։ Այլ Թէ սորին վկայի իցեն այն նշխարք, չէ դիւրին ցուցանել՝ ասէ հենսքեննիոս բոլլանդեան ։





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Կոդրատոսի կմ՝ կոտրատիոսի, և ընկերաց նորա։

Հ. Յայսմ. 2. կճ 1. ըստ յետ.։ Լուս. փոք. ապրիլ. 21։ Յ. Ճառ. 9։ Լ. Ճառ. 7։ Բոլլանդեանն հենշփէնիոս. Է. հատ. Ճառ. 9. եր. 362։ Սուրիոս. Ա. 2Է. և Բ. Ճեղ։ (1)






















ԲԱՐԵՅԱՂԹ ԶԻՆուորն ք՟սի (2) երանելին կոդրատոս կմ՝ կոտրատիոս (ըստ Հռովմայեցւոց տառադրութեան, որ Թարգմանի չորեքկուսի կմ՝ քառանկիւնի, և բարեչափ,) էր 'ի Նիկոմիդեայ մայրաքաղաքէ բիւթանացւոց՝ յաւուրս Հալածանաց Դեկոսի և Վաղերիանոսի (3), ոչ աննշան ոք 'ի քաղաքի, վայելուչ յամենեսեան երևեալ հասակաւ և գեղեցկութե՟բ, և զօրաւոր բանիւ, և որ գլուխն է ամի՝ ամպարշտութ՟ դադարեալ և եռանդնոտ հաւատով։ 'Ի ժամանակին յայնմիկ պաշտօնեայք կռքնակալաց յափշտակէին 'ի տեղւոջ տեղւոյ զքրիստոնեայս, և ածեալ 'ի Նիկոմիդիա՝ արկանէին 'ի բանտ, և քարշէին յատեան դատաւորաց. զի եթէ հաւանեցին հաղորդ լինել զոհից, և

և ուտել 'ի պիղծ կերակրոց կռոցն , առանց
տանջանաց արձակեսցեն յիւրաքանչիւր զա-
ւառ . ապա թէ ոչ՝ մահու սպանցեն ։
Իսկ հաւատացեալքն՝ որ 'ի քաղաքի անդ
էին , ոմանք 'ի լերինս , և ոմանք յագարակս
թաքչէին , և առ հասարակ 'ի տագնապ մա-
հու կային ։ Այլ ոմանք նահատակք առաքի-
նիք և պիտանի ծառայք ք͞նի քաջալերութ͞բ
'ի քաղաքին շրջէին , և մեծաւ ուրախութ͞բ
սպասէին՝ թէ զիա՛րդ արժանի լինիցին փա-
ռաւորել զա͞ծ վկայական խոստովանութ͞բ ։
Այսպիսի ոգւով առաւելա͞պս եռայր քաջն
կոդրատոս . վ͞ն որոյ մատուցեալ առ բանտա-
պետսն և առ զինուորս՝ ետ ն͞ց ինչս բ͞զմս ,
զի թոյլ տացեն նմա դարման տանել կալա-
նաւորաց եղբարցն՝ որք 'ի բանտին էին . և ա-
ռեալ համարձակութի՝ ստէպ մտանէր առ
ն͞ս , և խնամէր զա͞մ պէտս ն͞ց . և ը͞ լուսաւոր
մտացն հանապազ խրատատու լինէր կապե-
լոցն վ͞ն անուանն տ͞ն . զքաջասիրտսն և զյա-
ժարսն յորդորամիտս առնէր 'ի վկայու͞թն տ͞ն ,
աղաչելով յիշել և զինքն անպակաս . իսկ
զվատասիրտսն և զվհատեալսն քաջալերէր
և մխիթարէր՝ մի՛ երկնչել , այլ առաւել ու-
րախ լինել . և ասէր , եթէ բազումք 'ի մարդ-
կանէ ո՛չ հեշտեաւ ինչ , այլ՝ մեծաւ տառա-
պանօք և աշխատութ͞բ ելին 'ի կենացս յայս-
ցանէ . ո՛չ ասա 'ի ժամանակեան կեանքս
հանգստեան ինչ պատահեցին , և ո՛չ անդ
հանդերձելոց բարեացն եղեն արժանի . իսկ
վ͞ն մեր ձգնել՝ բազում և մեծամեծ բարեաց

առիթ լինի եթէ 'ի ժամանակիս, և եթէ 'ի
հանդերձելումն ։

Որդ՝ եղև օր, զի պերճնիոս բդեաշխ Նա-
հանգին Նստեալ յատեան հրապարակաւ 'ի
Նիկոմիդիա՝ հրամայեաց ածել զառաջեաւ
զըմբռնեալսն վն անուանն քի ․ և իբրև ե-
կին յանդիման եղեն, ասէ ցնո բդեաշխն ․
ասասցէ իւրաքանչիւրոք 'ի ձէնջ զանուն իւր
և զազգ իւր և զպատիւ իւր և զն ։ Այն-
ժամ երանելին կոդրատոս՝ որ յետոյ ամենե-
ցուն կայր, զի չէր 'ի կապելոց կարգի, վա-
ռեալ անյագ ածպաշտութն և ծարաւի ցան-
կութն առ երկնաւոր արքայութին՝ ձեղ-
քեալ զբազմութին և յառաջ մատեաւ քան
զամ եղբարսն, երկուցեալ՝ թէ գուցէ ոք 'ի
նոցանէ տկարանայցէ 'ի պնդատութն, և
վստաարտեալ 'ի տանջանացն՝ ուրանայցէ ․
վասն զի և տեսանէր իսկ զոմանս յեղբարցն
գունատեալս և ընդարմացեալս 'ի նեղութե
բանտին, և 'ի տեսլենէ բազմապատիկ տան-
ջանարանացն՝ որք պատրաստեալ կային ․
ամին իրի զինքն յառաջ մատուցանէր յօգնա-
կանութի ոմ զքաջ նահատակ և զսպառա-
զէն քի, և նախ քան զամենեսեան որպէս
ախոյեան 'ի դիմաց բոլորից պնդի առնէր առ
բդեաշխն մեծաւ ձայնիւ, ասելով ․ Քրիս-
տոնեայք կոչիմք, այս է անուն մեր ․ իսկ
պատիւ և ազատութի մեր ամենեցուն մի է,
ծառայք եմք քի յոի երկնաւոր թագաւո-
րին և աներևութին այ ․ և քաղաք մեր է
երկնաւորն եդեմ, յորում բնակեցուցանէ քս

ըն-

զմտերիմ զօրինականս իւր. ահա լուծար զա-
մենայն. այս է մեր լիապէս պատասխանի
տեառն հարցուածոցդ ։

Ընդ այս ցասուցեալ սպասաւորաց ատենին՝ յետս մղէին զկոդրատոս, և ԺԲ զուգն սրահից արտաքս ձգէին. զի ոչ զքեզ ասեն հարցանէ իշխանդ, այլ զդոսա՝ որք կան առաջի նր ։ Իսկ բդեշխին զարմացեալ ԺԲ առն համարձակութի՝ ասէ ցդռնապանսն, յառաջ ածէք զամբարհաւաճն զայն. Թող տեսցուք, թէ զինչ արդեօք օգտեսցէ նմա յանդգնութի ժպրհութեն ։ Յայնժամ կոդրատոս կրկին ևս յայսկոյս յայնկոյս արարեալ ինքնին զամբոխն և զեղբարսն՝ յօժարութբ եկաց առաջի, և կնքեալ զինքն նշանաւ խաչի՝ ասէ ցբդեշխն. Ինքնակամ յօժարութբ կամ առաջի քո ո բդեշխ, յառաջամարտիկ լեալ ԺԲ դէմ բանսարկուին՝ որ քև մարտնչի ընդ ծառայս քո. պատրաստ եմ առ տեառ հնարս տանջանաց՝ որք գան 'ի վերայ իմ 'ի քէն. արդ արա զինչ կամիս. զի գիտասցես իսկ 'ի նմին 'ի փորձոյն, եթէ քո զինուորքն անյաղթք են. քանզի առեալ մեր զկնիք նորա՝ կամք աւասիկ պատրաստք պատերազմել ընդ մենքենայս քո ։

Զայրացեալ բդեշխին՝ ասէ ցնա բանիւք նախատանաց. ասա ինձ աղաջուր դու (այս է՝ սէգ և ժանտ) նախ զանուն քո և ըզբախտ (4)։ Պինի ես կոդրատոս. լուծար յառաջագոյն զանուն մեր՝ թէ քրիստոնեայք եմք. այլ զբախտն մեք ոչ գիտեմք, քանզի

ծա

ծառայ եմք Տ̃ն մերոյ Յ̃ի Ք̃ի : Բդեաշխն ա-
սէ . չէ՛ արժան քեզ քրիստոնեայ զանձն քո
անուանել . վ̃ն զի սպանանէ զքեզ հրաման
թագաւորաց . այլ զի տեսանեմ զքեզ այր
իմաստուն և գեղեցիկ , ուստի և կարծեմ՝
թէ 'ի մեծամեծաց տոհմէ իցես , հաւանեա՛
ինձ , և ես գրեցից առ թագաւորն , և տաց
քեզ բերել զիշխանութի̃ դատաւորական .
միայն թէ զոհացօղ լինիցիր զա̃ծոցն :
Կոդրատոս ասէ . մի՛ խաբիր և խծաբաներ
ով բդեաշխ , չե՛ն բազում ա̃ծք , այլ մի ա̃ծ
հայր՝ յորմէ ա̃մ ինչ . և մի տ̃ր Յ̃ս Ք̃ս , որով
ա̃մ , և մեք նովաւ : Բդեշխն ասէ . ե՛ն և բա-
զում ա̃ծք , այլ թագաւորք ա̃մի երկոտասան
ա̃ծքն են , որոց հաւանել պարտիս և երկիր
պագանել : Իսկ կոդրատոս 'ի դէմս եած նմ̃
զհոմերականն առած , թէ չէ՛ բարիոք բազ-
մաթագաւորութի̃ն , մի թագաւոր լիցի : Ասէ
բդեշխն . զայդ և եթ ընթերցեալ է քո ա-
դեօք , և ոչ ակնարկեալ յայլ ևս տունս բա-
նիցն հոմերոսի , զոր վ̃ն պոսիդոնի ասէ , թէ
ժողովեաց զամպս , խռովեցոյց զծով ա̃մ
հողմովք , ամպովք ծածկեաց , ահագին որո-
տաց հայր ա̃ծոց 'ի վերուստ . եկն պոսիդոն
և շարժեաց զերկիր , զտորովացուց քաղաքն
և զնաւս աքայեցւոց : Ճոխագոյնս և վ̃ն ա-
բամադղայ գրէ , թէ ո՛րչափ քաջութիս արար .
որովք իմանաս զմեծութի̃ ա̃ծոցն :
Ասէ երանելին կոդրատոս . ո՛րչափ ինչ ա-
սաց հոմերոս զդից ձերոց , ճշմարիտ ասաց՝
թէ սուտ : Բդեշխն ասէ . ճշմարիտ : Կոդ-
րա-

բատտոս ասէ . ապա ուրեմն ճշմարիտ են ա-
ռացեալքն նր մր անառակութեանց և դարձ-
պղծութեանց նոցին , որ ոչ մծոց վայելեն , այլ՝
մոլլի և պղծագործ մարդկան ։ Այս մր ձեր
ամաչեմ , զի թողեալ զմծ՝ նմանուէ պղ-
ծոց դիմ՛աց երկիր պագանէք . և եթէ կա-
միս , 'ի ձերոց իսկ քերթողաց հաւանեցու-
ցանեմ քեզ՝ թէ դեւք են դարշելիք՝ դիքն
ձեր ։ Զասեաւ բդեշխն և ասէ . դու լուաւ
ոկսար՝ համարձակութե առեալ յերկայն-
մտութեէ իմմէ . և երկնչիմ թէ գուցէ յա-
նուցու ինձ թագաւորն , մր զի թոյլ տաու
քեզ՝ արհամարհելով զիմով իշխանութե՛ս
այսմիկ բաբբանել . այլ արդ բառնամ վաղ-
վաղակի զայդպիսի համարձակութի քո ։ Ասէ
վկայն . զիմ համարձակութիս ոչ դու և ոչ
թագաւորն քո և ոչ այլ ոք կարասցէ բառ-
նալ յինէն ։

Զայնժամ հրամայեաց բռնաւորն մերկա-
ցուցանել զնահատակն քրի , և պրկել 'ի վր
տախտակի , և հարկանել զնա քրքովք . մին-
չև տոխպեսցի ասել զանուն իւր և զրախտ ։
Նա իբրև ոչ կարաց բդեշխն ածանել պինդ
'ի բերանոյ նր , սպասաւորքն՝ որոց լուեալ
էր յառաջագոյն զնմանէ , ասացին՝ թէ կող-
բատոս կոչի , և 'ի մեծ 'ի տոհմէ է ։ Ապա
բդեշխն կամելով տոսալ զնա քաղցրութե .
և նմա զայլս , ասէ ցհարկանողսն . խնա-
յեցէք 'ի դա , և 'ի վեր առէք 'ի փայտէ այ-
տի ։ Նա ցկողբատոս ասէ . ա՛յր դու զի՞նչ
արարեր դու զայդ . թշնամանել ետուր ըզ-

պա

պատուի՞դ քո։ Կոչեաց զնա հուպ առ ինքն, և ասէ ցնա. կամեա՞ց հաւանել մեզ. մի՛ ըզ-պատիւ քո և զազգն անարգեր՝ կրօնիւք քրիստոնէից, յոր պատրեալ ես։ Ասէ երա-նելին. ընտրեցի ընկեցիկ լինել՝ ի տան այ մանաւանդ՝ քան զբնակել՝ ի յարկս մեղա-ւորաց։

Ադեշխին ասէ. հաւանեա՛ և զոհեա՛ աստուածոցն, մանաւանդ զի պատուհակից ես ես մեծի հը-ռովմայեցւոց ծերակուտին. զի մի՛ իբրև զմի ոք՝ ի չարագործաց մեռցիս. զհրամանս թա-գաւորաց և զմեծ սինկղիտոսին գիտես, թէ քանի՛ բիւրք են արանց քաջաց՝ որ հաստա-տեցին մի՛ ումեք կեալ՝ ի քրիստոնէիցն։ Իսկ սբն Կոդրատոս փոխանակ պատասխանւոյ զգլուխ սաղմոսացն երկրորդեաց. երանելի՛ է այր՝ որ ոչ գնաց ՝ի խորհուրդս ամպարշ-տաց, և ՝ի ճանապարհս մեղաւորաց ոչ եկաց, և յաթոռս ժանտից ոչ նստաւ։ Ադեաշխին ասէ. մի՛ այլաբաներ՝ զքեզ խաբելով ով կոդրատիէ. քանզի միապէս ՝ի վերայ ամե-նայն քրիստոնէից կայ հրամանս այս, թէ՛ աղքատ ոք իցէ՝ և եթէ մեծատուն, եթէ՛ գձուձ՝ և եթէ պատուհական. ո՛չ յոք խնայէ ատեանս։

Կոդրատոս ասէ. ա՛յդ այդպէ՛ս է. քանզի և աստուծեղէն գիրն ասէ. ո՛չ ծառայ և ո՛չ ազատ, ո՛չ մեծատուն և ոչ տնանկ, ո՛չ խուժ և ոչ սկիւթացի, ո՛չ հելլենացի և ոչ յուդայեան. քանզի ամենեքեան մի եմք ՝ի քր։ Արդ ա-ղաչեմ զքեզ, զհրաման թագաւորացն քոց
և

և զսինկղիտոսին կատարեա՛ յիս. քանզի ես
քրիստոնեայ եմ. և ազգ իմ և պատի՛ւ առ
ա՛ծն իմում է, որ ողջամբ պահէ զպայծա-
ռութիւն իմ. և ո՛չ առ մարդկան, որ այսօր
է, և վաղի՛ն ոչ ևս: Յայնժամ թղթեշխն խռ-
ռովեալ յանձն՝ սկսաւ գոռովանօք խօսել
խնայելով՝ ՚ի վ՛ր վայելչութե՛ հասակի նորա.
հաւանեա՛ ինձ ասէ և զոհեա՛, և վայելեա՛
՚ի քաղցրութե՛ կենացս և ՚ի պայծառութե՛ լուսոյս
այսորիկ. և զայս ասացեալ արտասուեաց
թղեշխն աղուեսաբարոյ՝ հանդերձ մեծաւ
հառաչանօք, և վարշամակաւ զերեսն ջըն-
ջէր: Իսկ քաջն Կոդրատոս յանդիմանեաց
զխարդախութիւն չարին՝ ասելով. մի՛ ինձ
զդժնդակ վիշապին զխորամանկութիւն, և
զբելիարայ մարդասպանի առաջի արկաներ
զարտասուս. զա՛յլ յափշտակող ո՛չ կարաս-
ցես յափշտակել զծառայս ա՛յ:
Յայնմ վայրի մի ոմն ՚ի դատաւորաց՝ որ կայր
անդ, Մաքսիմոս կամ Մաքսիմիանոս անուն,
սաստեաց սմին, և ասէ. ո՛վ չա՛ր այր, ո՛ր իմ
մեծափայլելուչ ողորմի քեզ, և դու թշնամա-
նես զնա: Կոդրատոս ասէ. զինքն լացցէ և
զօր ծննդեան իւրոյ. քանզի ես չեմ լալոյ
արժանի. այլ դու ո՛վ ես՝ որ առաջի նո՛ր բար-
բառիս. չա՛տ է մեզ թղեաշխդ. ապա եթէ
և դու կամիս դատել, ո՛ր խափանեսցէ ըզ-
քեզ: Յայնժամ և աստերիոս վաճառապետն
ասէ. ՚ի բախտ քո երդուեալ տէ՛ր իմ թըղ-
թաշխ, եթէ զդա այդպէս թողուս, ո՛չ ակն
ածէ և զինքնակալ թագաւորն թշնամա-
նել,

նել, և զոչծան հայհոյել, և ածել՝ի վն մեր վտանգ մեծ ։ Տեսեալ վկային քոյ՝ եթէ բազմացան դատախազք իւր և դատաւորք՝ ասէ ․ բարուք ասաց ծնծեղէն գիրն ․ ընդէր ամբարհաւաճեցան հեթանոսք, և ժողովուրդք խորհեցան 'ի սնոտիս ․ յանդիման եղեն թագաւորք երկրի, և իշխանք ժողովեցան 'ի միասին զտնէ և զօծելոյ նր ․ քանզի և ահա այժմ յամպարիշտ և 'ի սնոտի իշխանացս դատի քո ։

Հրաման ետ բդեշխն և ասէ ․ մերկացուցէք զամպարհաւաճդ զայդ, և դարձեալ հարէք չոր արջառաջլօք, զի հնազանդեսցի տրանց մերոց թագաւորաց ։ Իսկ երանելին 'ի տանջանսն գոհանայր զտնէ, և ասէր ․ Փառք քեզ տր ած իմ յս քո, զի արժանի արարեր զիս զչնարժանս և զմեղաւորս՝ վն քո սրբ անուանդ զայս չարչարանս կրել ․ զի և ես թուակից եղէց ծառայից քոց ։ Գոհանամ զքէն տր, և առաջի անկեալ աղաչեմ զքեզ ած իմ, կատարեա զընթացս իմ անուամբ քով սբվ, և կնքեա զխոստովանութիւս իմ շնորհօք սր հոգւոյդ ․ պարգևեա ինձ միտս հանճարեղս և անխոստորնակ հաւատս ․ և մասնանացո զիս անչափ իմաստութե քով ․ պահեա զիս ա՛ջով քով բա՛րձրեալ ․ ա՛յժմ է ժամանակ փրկութե և օգնութե ․ ա՛յժմ է ժամանակ խոստմանց քոց ․ ընկա՛լ զաղաչանս իմ ․ զի և յիս փառաւորեսցի սուրբ անուանդ քո ․ կատարեա զանձն ոգւոյս, յանձնձեա զյօժարութիւս իմ, մատո զիս առ հայրն

քո,

քո, և խոստովանեա՛ զիս առաջի հ̃ր տ̃ր իմ
յ̃ս ք̃ս ։

Եւ այնչափ հարկին զթիկունս երանելւոյն, զի յոգնեալ դահճացն՝ հինգ անգամ փոխեցան. և ողն ո̃յն 'ի վեր քան զթիկզ ուռուցեալ բարձրացաւ. և արիւնն իբրև զգետ իջանէր հանդերձ պատառօքն մարմնոյն։ Եոեցնայ թղթեչին. հաւատամս գոնեա այժմ յանձարն։ Իսկ երանելի վկայն ք̃ի ասէ. կուռք հեթանոսաց ոսկի և արծաթ են՝ գործք ձեռաց մարդկան. բերան ունին, և ոչ խօսին. աչս ունին, և ոչ տեսանեն. ականջս ունին, և ոչ լսիցեն. ունչս ունին, և ոչ հոտոտեսցին. ձեռս ունին, և ոչ շօշափեսցեն. ոտս ունին, և ոչ գնասցեն. և ոչ բարբառեսցին կոկորդք ն̃ց. նման ն̃ց եղիցին արարիչք ն̃ց, և ա̃մ յուսացեալքն 'ի ն̃ս ։

Եւ այս ասէ թղթեչին. կարծեմ, խաբել զմեզ խորհիս, զի այդպէս խաւարային բանս խօսիս. հաւանեա՛ ինձ, և զոհեա՛ դ̃ցն. Ս̃բն ասաց. որովհետև լոյսն քեզ խաւար թուի, և ճշմարտութի՛ն՝ մոլորութի, պայծառ և յայտնի բանիւ լուր. գիտութի՛ լիցի քեզ, զի զդ̃ցն քո ես ոչ պաշտեմ, և հրամանի կայսեր և սիւնկղիտոսին ո՛չ հաւանիմ. արդ զոր ինչ կամիս առնել՝ արա՛ փաղփաղակէ, և յուղարկեա՛ զիս առ երկնաւոր թագաւորն։ Թղթեչին ասէ. մեծ անամօթութի՛ է արկ 'ի քեզ ճակատագիրն քո (օրհասականն). ընծայեա՛ (երդուեալ), զի ոչ խնայեցից 'ի քեզ. այլ նորոգինակ տանջանօք և դառն մահ-

նել, և զղջման հայհոյել, և ածել 'ի վր̃ մեր վտանգ մեծ ։ Տեսեալ վկային քո՝ եթէ բազմացան դատախազք իւր և դատաւորք՝ ասէ․ բարուք ասաց մեծեղէն գիրն․ ընդէ՞ր ամբարհաւաճեցան հեթանոսք, և ժողովուրդք խորհեցան 'ի ունոտիս․ յանդիման եղեն թագաւորք երկրի, և իշխանք ժողովեցան 'ի միասին զՏեառնէ և զօծելոյ նր̃․ քանզի և ահա այժմ յամպարիշտ և 'ի ունոտի իշխանացս դատի քո ։

Հրաման ետ բդեշխին և ասէ․ մերկացուցէ՛ք զամպարհաւաճդ զայդ, և դարձեալ հարէ՛ք չոր արջառաջլօք, զի հնազանդեսցի մերանց մերոց թագաւորաց ։ Իսկ երանելին 'ի տանջանսն գոհանայր զՏեառնէ, և ասէր․ Փա՛ռք քեզ Տէր մեծ իմ յոյս քո, զի արժանի արարեր զիս զանարժանս և զմեղաւորս՝ վն̃ քո սր̃ անուա՛նդ զայս չարչարանս կրել․ զի և ես թուա՛կից եղէց ծառայից քոց ։ Գոհանամ զքէն Տէր, և առաջի անկեալ աղաչեմ զքեզ մեծ իմ, կատարեա՛ զընթացս իմ անուա՛մբ քով սրբով, և կնքեա՛ զխոստովանութիւս իմ շնորհօք սր̃ հոգւոյդ․ պարգևեա՛ ինձ միտս հանճարեղս և անխոտորնակ հաւատս․ և մատնեացո՛ զիս անչափ իմաստութե̃ քով․ պահեա՛ զիս աջով քով բարձրեալ․ այժմ է ժամանակ փրկութե̃ և օգնութե̃․ այժմ է ժամանակ խոստմանց քոց․ ընկա՛լ զաղաչանս իմ․ զի և յիս փառաւորեսցի սուրբ անուանդ քո․ կատարեա՛ զանէշ ոգւոյս, յաջողեա՛ զյօժարութիւս իմ, մատո՛ զիս առ հայրն

քո,

քո, և խոստովանեսցի զիս առաջի նր Հր իմ
յմ քմ։
Նաւ այնչափ հարկին զԹիկունս երանելւոյն, զի յոգնեալ դաշճացն՝ հինգ անգամ փոխեցան. և ողն ոճյն 'ի վեր քան զԹիզ ուռուցեալ բարձրացաւ. և արիւնն իբրև զգետ իջանէր հանդերձ պատառօք մարմնոյն։ Նստեալ բդեշխն. հաւատամս գոհեա այժմ յանձարն։ Իսկ երանելի վկայն քմի ասէ. կուռք հեթանոսաց ոսկի և արծաթ են՝ գործք ձեռաց մարդկան. բերան ունին, և ոչ խօսին. աչս ունին, և ոչ տեսանեն. ականջս ունին, և ոչ լսիցեն. ունչս ունին, և ոչ հոտոտեսցին. ձեռս ունին, և ոչ շօշափեսցեն. ոտս ունին, և ոչ գնասցեն. և ոչ բարբառեսցին կոկորդք նց. նման նց եղիցին արարիչք նց, և ամ յուսացեալք 'ի նս։
Նա այս ասէ բդեշխն. կարծեմ, խաբել զմեզ խորհիս, զի այդպէս խաւարայինն բանս խօսիս. հաւանեաւ ինձ, և զոհեաւ ղծոցն. Սն ասաց. որովհետև լցան քեզ խաւարԹան, և ճշմարտուԹին՝ մոլորուԹի, պայծառ և յայտնի բանին լուր. գիտուԹի լիցի քեզ, զի զդծսն քո ես ոչ պաշտեմ, և հրամանի կայսեր և սուինկղիտոսին ոչ հաւանիմ. արդ զոր ինչ կամիս առնել՝ արա փաղփաղակի, և յուղարկեա զիս առ երկնաւոր Թագաւորն։ Բդեշխն ասէ. մեծ անամօԹուԹի էարկ 'ի քեզ ճանկատագիրն քո (օրհասականն). ղծոյքն (երդուեալ), զի ոչ խնայեցից 'ի քեզ. այլ նորօրինակ տանջանօք և դառն
մահ-

մահուա̃մբ սատակեցից զ․քեզ ։
Եւ ք̃զի տարաժամեալ էր օրն , հրամայեաց
զն̃մ կալանաւոր քրիստոնեայսն անդրէն ՚ի
բանտ արկանել․ տարա՛յք ասէ ը̃ նոսա և
զկոդրատոս , և մանր խեցի տարածեալ ՚ի
գետին՝ արկեցէք զնա ՚ի վերայ․ և վէմ մի
մեծ ՚ի վ̃ր լանջացն եդեալ , և զոտս ՚ի կո-
ճեղ պնդեալ ը̃ չորս ծակս՝ հանդերձ շղ-
թայիւք ՚ի պարանոցն , թողէք անխնամ ։
Եւ յայս անքերելի տանջանս եկաց երանե-
լին կոդրատոս զբազում աւուրս , իբրև ար-
դարև քաջ նահատակ բարեպաշտութեան՝
ժուժկալութ̃բ համբերեալ , և ոչ ի՛իք փո-
խեալ ՚ի հաստատութենէն՝ որ ՚ի ք̃ս ։ Իսկ եղեն
ոմանք ՚ի վատասրտաց , որք յառաջին տան-
ջանսն անկան ՚ի հաւատոց․ վ̃յ ակնունէր
բդեշխն ձգել ՚ի կամս իւր և զկոդրատոս և
զորս ը̃ նմա՝ ողոքանօք և լլկանօք ։
Յետ այսորիկ չու արար պերինիոս բդեշխն ՚ի
նիկիա , հրամանն տու̃եալ և զկապեալսն զկնի
տանել․ և մտեալ ՚ի քաղաքն՝ կարգեաց և
անդ ատեան ահարկու , և ետ ածել զկալա-
նաւորսն զառաջեաւ ։ Նախ սր̃ վկայքն գային
մեծաւ ուրախութ̃բ՝ ունելով յառաջընթաց
զերանելին զկոդրատոս զպանծալի նահա-
տակ․ քանզի զո՛ր օրինակ առաջինի զօրավար
պանծացեալ յիւր զօրութիւն , և ՚ի ճակա-
տամարտ մտեալ փայլուն սպառազինօք , խռ-
ժոռ հայիցի և ահագին երեսս ցուցանիցէ՝
պակուցանելով զգունդս թշնամեաց , այս-
պէս և նա տեսողացն երևէր յասպարիզի

նահատակութեան, և իբրև զգեղեցիկ ինչ և պատուական զարդ զկապանսն զինքեամբ արկեալ՝ հրճուէր և ուրախութեամբ կայր 'ի մէջ ատենին. մինչև զարմանալ հելլենացւոց փիլիսոփայիցն ընդ քրիստոնէիցն արութիւն ժուժկալութեան և ընդ առաքինի համբերութիւն, և ասել ցմիմեանս. արդարև մեծ են հաւատք քրիստոնէից, և առաջինի յոյժ նոցա. վասն որոյ և զայս չարչարանս հեշտեաւ տանին. և 'ի հաստատել բազմաց յայս խորհուրդ 'ի վերջին տուչութեան՝ հաւատացին 'ի Քրիստոս, և յաւելան 'ի խումբն կոդրատոսի՝ փոխանակ ուրացելոցն ։

Ապա սկսաւ բդեշխն միւսանգամ հարցափորձել զպարագլուխն առաքինեաց զկոդրատոս. զոհեա՛ ասէ աստուածոց՝ կոդրատէ ։ Պատասխանի ետ վկայն, ծառայ եմ Քրիստոսի՝ որ ասաց մարգարէիւն, աստուածք՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն ։ Բդեշխն ասէ. քանզի հաւանել պարտ է հրամանաց թագաւորաց, և ո՛չ Քրիստոսին՝ որ աստուած կոչեն ։ Կոդրատոս ասէ. ես թագաւորին իմում Քրիստոսի հաւանիմ, և ո՛չ մարդկան՝ որ ոչ գիտեն զԱստուած. աղօթս վասն նոցա առնել գրեալ է մեզ, այլ զոհել դից նոցա ամենևին ո՛չ. և զինչ օգուտ առնէք դուք կայսեր՝ զոհելով պիղծ կռոց. այլև բազում ևս վնասէք, և նախ զանձինս ։ Ասէ բդեշխն. եթէ աղօթս առնես վասն թագաւորի, պա՛րտ է և հրամանաց նորա լսել և հնազանդ լինել. քանզի և գրեալ է ասէք յօրէնս ձեր հնազանդել զկայսերն՝ կայ-

սէր, և զայն՝ մեզ ։ Կոդրատոս ասէ․ զնոյն պատուհասական պարտսն՝ որ յերկրէ, որ ինչ պարտ էր՝ լցի կայսեր․ փութամ և զայն ի-մումս լնուլ զնմ բարեպաշտութի․ այլ արդ մեզ քրիստոնէից հրամայեաց թագաւորն ձեր կամ զոհել կամ մեռանել․ և մեք պատ-րաստ եմք վն խոստովանութեան որ ՚ի քս՝ մչ միանգամ մեռանել, այլ բնաւ անգամ։

Բդեշխն ասէ․ տեառնեաս, որչափ բազմութէ քրիստոնէից զոհեաց ըմբոշն․ միթէ դու ես զնոսա լաւագոյն ինչ իցես ։ Պատասխանի ետ քաջ նահատակն․ և՛ առաւել լաւագոյն քան զնոսա ամենեսին, և՛ իմաստնագոյն եմ, եթէ ոչ զոհեմ․ բայց սակայն ո՛ւր են՝ որ զոհեցին, կամիցի տեսանել ։ Յայնժամ ետ կոչել բդեշխն ՚ի մի վայր զուրացեալսն, զի թերևս տեսցէ զնա կոդրատոս և հաւա-սարեսցի ընդ նոսա ։

Իսկ սրբյն հայեցեալ ընդ նա և պշուցեալ զայ-րագինն յասմանս՝ ասէ․ հեգք և անհնաթշ-ուառք վն որոյ անցից այդչափ փափկագեղի սստանեայի մատնեցիք զձեզ, լքէք զկարգն ձեր, և ուրացեալք զտէրն քս, որ վն մերոյ փրկութե փրկանք եղեալ՝ գնեաց զմեզ ա-րեամբն իւրով․ ոչ ուսայք զմեռելոց յարու-թին, և զմիանգամ գալստեան քրի հան-դերձ փառօք և հրեշտակականն զինուորու-թբ՝ դատել զտիեզերս, և տանել զարդարսն ՚ի կեանսն յաւիտենից, և զմեղաւորսն մատ-նել ՚ի հուրն յաւիտենից և ՚ի խաւարին ար-տաքին․ ուր որդն նոցա ոչ վախճանի, և լա-

լումն

լուծման և կրճուման ատամանց անանցանելի ։ Օ զի՞նչ պիտի տայցէք 'ի վտանգի աւուրն այնորիկ , յորժամ զօրք հրեշտակաց երկնի- ցին և դողուն կայցեն առաջի ․ և եթէ նոքա սոսկան տեսանել զմեծ և զահագին ատ- եանն , զի՞նչ գործիցեն դևք և որք հաղորդ- են դիւաց ։ Լացէք զաչս սրտից ձերոց , և տեսէք՝ թէ ուստի՞ անկայք ․ զյաւիտենից թագաւորն թողէք , և անպիտան ծառայի վաճառեցայք՝ գերի եղեալ բանսարկուին , որ բնակէ յանձին իշխանին ․ և սա որդի ծա- ռայ՝ որ զտէրն իւր արտաքոյ գտեալ՝ հարկա- նէ զծառայակիցն իւր և սպանանէ ․ բայց տէրն եկեալ կտրեսցէ զնա ընդ մէջ , և զմասն նորա ընդ անհաւատս դիցէ ։ Գիտացէք թէ զի՞նչ գործեցիք ․ զի յառժամանակեայ տան- ջանացն երկուցեալք՝ 'ի յաւիտենից տան- ջանս զանձինս մատնեցիք ․ դուք ձեզէն տես- ջիք զլինելոցն ձեզ յարդար դատաւորէն ։ Ո՞չ լուայք ձայնի նորա՝ որ ասաց , եթէ մի՛ երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին , և զոգի ոչ կարեն սպանանել ․ այլ երկերուք մանաւանդ յայնմանէ՝ որ կարող է զոգի և զմարմին կորուսանել 'ի գեհենի ։

Յայն բարբառ երանելւոյն՝ 'ի սոսկումն և 'ի զեղջ եկեալ ուրացելոցն առ հասարակ , միաբան սկսան աղաղակել և ասել հանդերձ արտասուօք ․ երկեաք տէր 'ի տանջանաց , և խաբեցաք իբրև զանբան անասունս ․ և իբրև զոչխարս 'ի մէջ գայլոց օգտեալ վարատե- ցաք ․ ածին փակեցին զմեզ մեղքն մեր յորո-

գայթ չարեաց . կամեցեալ մեր կեալ գժա-
մանակեայ կեանս՝ մեռաք յաւիտենակա-
նին . և զի՞նչ գործեսցուք այսուհետև թըշ-
ուառականքս , ո՛չ գիտեմք :

Յայնժամ երանելին կոդրատոս լցեալ մե-
ծաւ ուրախութեամբ 'ի վերայ դարձի նոցա , և
տեսեալ զարտասուս նց՝ ասաց ցնոսա . քա-
ջալերեցարո՛ւք եղբարք , քանզի ազնուա-
գութ է և ողորմած տրն մեր յս քս , անոխա-
կալ է և գթած . անկերո՛ւք առաջի նորա
հանդերձ բազում արտասուօք , և հաստա-
տո՛ւն կացէք այսուհետև 'ի խոստովանութե
քնի , և իւրով արեամբ իւրաքանչիւր ոք 'ի
ձէնջ սրբեսցի 'ի մեղաց . թէև տկարութե
մարմնոյ երբեմն հերքեցայք 'ի պատերազ-
մի , այլ այժմ արի խորհրդովք յաղթեցէք
առաքինաբար : Իսկ նոցա կական բարձեալ՝
լային մեծաձայն , և ընկեցեալ զինքեանս
յերեսս 'ի վերայ երկրին , և հող 'ի գլուխ
եղեալ՝ ծեծէին բարամբք զկուրծս իւրեանց .
և այնչափ եղև տեսիլն աշխարելի , մինչև
քաղաքն ամ ընթացաւ 'ի տեղին . և առ հա-
սարակ ողբակից լինէին նց , ոչ միայն քրիս-
տոնեայք , այլև հեթանոսք և հրէայք , արք
և կանայք , 'ի փոքունց մինչև ցմեծն . մինչև
լնուլ բազմութե զհրապարակս և զփողոցսն
և զտանիսն : (5)

Յայնժամ դառնացեալ բդեշխին՝ հրամայ-
եաց կախել զկոդրատոս 'ի տեսիլ ամենե-
ցուն , և քերել , և ջահս մատուցանել 'ի
կողս նորա : Իսկ քաջն կոդրատոս անփոյթ
արա

արարեալ զտանջանսն՝ մեծաւ համարձա-
կութեամբ քաջալերէր զզղջացեալսն, և ասէր.
այդպէս բարիոք է եղբարք, աղօթեցէք յեր-
կար առ Տ՟ր. քանզի ողորմած է, լսէ ձեզ։
Եւ յասել նոցա, թէ չեմք արժանի անուա-
նել զՏ՟ր անունն ք՟ի, վ՟ն զի թշնամանեցաք
զնա, անդրէն զօրացուցանէր զն՟ս Տ՟ր վկայն,
և ասէր. կարդացէք եղբարք կարդացէք.
բարերար է Տ՟րն մեր և Ա՟ծն. մերձ է առ
այնոսիկ՝ որ կարդան զնա յօգնականութի՟ն.
մի՟ յուսահատիք եղբարք. մօտ առ իս եկայք,
և քաջալերեցարուք, և յուսացարուք ՚ի Տ՟ր։
Եւ նոցա ընթացեալ անկանէին առաջի նո-
րա ուժգին հառաչանօք, մինչև յարտասուս
շարժել և զանողորմ զզինուորս և զԴ՟մ սիրտս
քարեղէնս։

Իսկ ս՟բն Կոդրատոս ՚ի կախաղանէ անտի
համբարձեալ զերեսս իւր յերկինս՝ գոչէր
ասելով. Տ՟ր Ա՟ծ մեծ և ահաւոր, բարերար
և ազնուագութ, որ զմիածին որդին քո զՏ՟ր
մեր յ՟ս ք՟ս ծագեցեր մեզ արեգակն արդա-
րութե, և լուսաւորեցեր զմեզ զխաւարեալքս
յառաջագոյն, և նովաւ զքեզ հաշտեցուցեր
ընդ մեզ, և նովաւ կոչեցեր զմեզ՚ի կոչումն
Տ՟ր՝ ողորմած գթած երկայնամիտ բազումո-
ղորմ և ճշմարիտ, որ զանց առնես զմեղօք,
և ջնջես զամպարշտութի՟ս մեր. վ՟ն առա-
ւել մարդասիրութե՟դ քո Տ՟ր արտասահմա՛ն
արա զնախաչարն և զմարդասպանն, զբա-
րիատեացն և զնախանձոտն սատանայ, ըղ-
հայրն կռոց և զառաջնորդն խաւարի. և

ընկա՛լ զզօրականս քո՝ որք սակաւ մի գԹե-
ցին որոգայթիւքն սատանայի, և այժմ ա-
պաւինեցան ՚ի քո ամենազօր բարերարու-
Թ՟իդ. մի՛ բարկանար նց՟ ո՛չ ապստամբաց,
այլ՝ հաշտ ակամբ ընկալցիս զնս՟, ո՛չ և զիս
զմեղաւորս ՚ի պատարագ քեզ ընդունելի։
Արժանի՛ արա զնս՟ խառնիլ յերկնաւոր և՚ի
ճշմարիտ գունդն քո, և ցոյց նց՟ նշան բա-
րութե՟, թէ ոչ գարշեցար, այլ ողորմեցար
և ընկալար զապաշխարողսն։ Տ՟ր յ՟ս ք՟ս լո՛ւր
ինձ ծառայի քում, և փոխանակ ընդ նոցա
ա՛ռ զիմ զհոգիս. զի փառաւորեսցի ս՟բ ա-
նուն քո յաւիտեան։

Եւ ՚ի կատարել ս՟բյն զաղօթս, և ՚ի վերա-
ռաքել զա՟մ եղբարց միանգամայն ձայնիւ՛ մե-
ծաւ զամէնն, երևեցան անդ սքանչելիքն
ա՟յ. քանզի յանկարծակի շիջան զամբարքն՝
որովք այրէին զկողս երանելւոյն կոդրատո-
սի, և ձեռք դահճացն լուծան. և ամպ լու-
սոյ ՚ի վերայ դասու ս՟ցն երևեալ լինէր.
իսկ ը՟ հակառակն խաւար սաստիկ և ծուխ
դժնեայ ՚ի վերայ բդեշխին և հեթանոսացն
տարածեցաւ. մինչև յահէ անտի տագնա-
պիլ անհաւատից, և կարծել՝ եթէ քաղաքն
կործանելոց իցէ։ Եւ յետ բազում լռութե՟
եղելոյ՝ լսելի լինէր ձայն հրեշտակաց, որք
օրհնէին և փառաւորէին զա՟ծ. յորմէ ՚ի միտ
առին ա՟մ հաւատացեալք, եթէ մեծ ուրա-
խութի՟ եղև յերկինս ՚ի վերայ դարձելոցն
յապաշխարութի՟։

Եւ յետ երկուց ժամուց անցելոյ՝ առ սա-

կաւ

կաւ տակաւ խաւարն լուծանէր . և տեսա-
նէին հեթանոսք զլոյսն՝ որ տակաւին կայր
զոճվէքն . և որք միանգամ ցայն վայր գտա-
նէին անդարձ յուրացութե̃ , սկսան և նոքա
մեծաւ ձայնիւ՛ և լալով գոչել առ ած̃ . մե-
ղաք ծ̃ր , քաւեա՛ զմեղս մեր . անօրինեցաք ,
հաշտեա՛ ը̃ մեզ : Երկուցեալ բդեշխին՝ թէ
զուցէ և հեթանոսք առհասարակ դարձցին
'ի քրիստոնէութի̃ , փութացոյց վաղվաղակի
զդահիճսն , զի զամենեսին՝ որք յարեցան 'ի
կոդրատոս , տարցին 'ի բանտ հանդերձ նո-
վաւ . և բազմութի̃ քաղաքին զհետ երթայր
նց̃ մինչև 'ի դուռն բանտին . և ապա հազիւ՛
ուրեմն քակեցաւ ցրուեցին բռնութե̃ :
'Ի վաղիւն՛ անդր նստեալ բդեշխին յատեանն՝
հրամայեաց ածել առաջի իւր զծ̃մ բան-
տարկեալ քրիստոնեայս . և հարցեալ և
քննեալ ստուգութբ̃ զմիտս նց̃ , եթէ պատ-
րաստ են մեռանել վս̃ անուանն քի̃ , հրա-
մանս ետ կապել զամենեսեան , և յիւրաքան-
չիւր գաւառս տանել , և անդ այրել կեն-
դանւոյն յահաբեկութի̃ գաւառականացն առ-
հասարակ : Իսկ սր̃ք վկայքն երթային մեծաւ
ուրախութբ̃՝ սրտապնդեալք յերանելւոյն
կոդրատոսէ , և փառաւոր ածէին զած̃՝ զո-
հանալով 'ի վե̃ անակնկալ փրկութեն . և
այնպէս հասեալ յիւրաքանչիւր հայրենիսն՝
կատարեցան հրով 'ի քս̃ . որոց անուանք
գրեալ են 'ի դպրութե̃ կենաց :
Իսկ զքաջ նահատակն զկոդրատոս հան-
դերձ այլ եւս թուով առաքելոյ ընկերօքն

Հրամայեաց տանել առաջի իւր 'ի կողմն Հեղ-
լեսպոնտեայ՝ ուր ինքն երթալոց էր. և Հա-
սեալ բղեշխին 'ի քաղաքն ապամիոյ բիւթա-
նացւոց՝ զոհս մատուցանէր դարշելի կռոցն.
և բռնադատէր անդրէն զկոդրատոս 'ի կամս
իւր. զոհեա՛ ասէ այսուհետև դ̅ծոցն, զի
ապրեսցիս 'ի տանջանաց՝ որ մնան քեզ և ա-
րոց ընդ քեզ: Կոդրատոս ասէ. քրիստոնեայ
եմ, և ո՛չ զոհեմ դիւա՛ց: Հայեցեալ բղեշ-
խին յա̅մ մասունս մարմնոյ նր̅ խանձոտեալս
և քանցեալս իբրև զպատառատուն ինչ ըզ-
գեստ՝ զարմանալով ասէր ցիւրսն. այլ զի՞նչ
ևս տանջանս մատուցից բռնամահիս այս-
միկ, որ ինքնին 'ի մեռելոց համարի է. և
զօրականքն տարակուսեալ կային, և ոչ գի-
տէին տալ պ̅խնի. քանզի տեսանէին՝ եթէ
ոչ ևս գոյր 'ի մարմնի նորա տեղի ողջ առ. 'ի
ներքոյ արկանել տանջանաց:

Յայնժամ բռնաւորն խրատու դիւ՛ին հնա-
րեցաւ նորատեսիլ չարչարանս. հրամայեաց
բերել քուրձ, և արկանել 'ի ներքս զկոդրա-
տոս. ապա եւ բառնալ խորափիտ մի իբրև
զսանդ, և անդ ընկենուլ զմկայն, և սանդի-
տոռամբք ծեծել զնա: Եւ իբրև սանդահա-
րեցին զնա ցժամ մի, ետ հանել զմարմին
նր̅ 'ի քրձէն. քանզի համարէր՝ թէ մեռաւ:
Իսկ կենդանին նահատակն՝ որ անմռունչ տա-
րաւ այնմ քստմնելի հարուածոց, իբրև ոչ-
ինչ զգացեալ ցաւոցն՝ կանգնեցաւ եկաց ա-
ռաջի իշխանին (6): Ասէ ցնա բղեշխն. և
'ո՞չ զգացեր տանջանացդ: Իսկ սրբն ոչ ետ նմ̅
պ̅խնի

պղծնի . այլ ասէր . փառք քեզ տ՟ր յ՟ս ք՟ս .
քանզի նետք տղայոց եղեն վէրք ն՟ց , և տկա-
րացաւ 'ի ն՟ս զօրութիւն ն՟ց . դու ես՝ որ զօրա-
ցուցեր զիս ա՟ծ իմ 'ի փառս քոյոյ զօրութեանդ :
Բարկացաւ բդեշխն և ասէ . զիմ անդամս
քո յօշ յօշ կոտորեցից թ'շուառական , թէև
'ի կախարդութիւնդ քո վստահ ես : Իսկ վկայն
դարձեալ ասէր . օրհնեա՛լ է ա՟ծ իմ :
Յետ այսորիկ չու արար բդեշխն 'ի կեսա-
րիա բիւթանացւոց , որ և կոչիւր ապողոնիա
( համդոյն կեսարեայ պաղեստինու ) , յառա-
ջոյ իւրմէ յղեալ զկոդրատոս (7) , և անդ ևս
յետ զոհելոյ կռոց իւրոց գարշելեաց՝ կո-
չեաց զվկայն , և ասէ ցնա . շատացե՛ր այսու-
հետև տանջանօքդ՝ զոր կրեցեր . և մատու-
ցե՛ զոհեա՛ ա՟ծոցն : Կոդրատոս ասէ . վ՟ն զի
խաղացեր ը՟ն իս տանջանօք , կարծիցես ար-
դեօք՝ եթէ հաւանիցիմ քեզ . արա՛ զոր առ-
նես . թո՛ղ տեսցուք , դո՞ւ յաղթեսցես , ե-
թէ անյաղթելի հաւատք ճշմարտութեան :
Յայնժամ հրամայեաց բդեշխն պրկել զնա
'ի վ՟ր քարանց , և դնել 'ի վ՟ր ձեռաց և ո-
տից ն՟ր վէմս մեծամեծս , և հարկանել զնա
քքօվք յերկար : Իսկ երանելին սաղմոսէր
'ի տանջանսն և ասէր . բազում անգամ մար-
տեան ը՟ն իս 'ի մանկութէ իմմէ , և ինձ ոչ
զօրեցին . 'ի վ՟ր ողին իմոյ հարկանէին մե-
ղաւորք , այլովքն համդերձ : Իսկ իբրև կա-
տարեաց զսաղմոսն , ասէ բդեշխն . ծեծեա-
ցի՛ յերկար , վ՟ն զի ոչ զգայ : Իսկ պղծնի տ՟ն
կոդրատոս . հա՛ր հա՛ր զմարմինս , զոր համա-

րիս

բիս տանջել ․ քանզի զոգիս ուրախ առնէին յոյժ, որպէս դու ոչ կարծես ։ Բդեշխն ասէ ․ չարի դիւի՞ն տիրեցե՞ր արդեօք ով թշուառական ։ Սբն ասէ ․ 'ի փրկչէն իմ քս̄ երդուեալ, և առաւե՛լ չարի, և ո՛չ միոյ միայն, այլ՝ ամ̄ զօրութեն չարադիւի՛ն, որ եղէ յսի՛ քսի՛ տն̄ մերով ․ Նմա փառք յաւիտեանս ։

Այլ իբրև զամենն ազդակեցին եղբարքն՝ որ կցորդ էին կապանաց սոցին, բարկացեալ յոյժ բդեշխին, և թողեալ զերանելին կաղ-բանտս՝ հրամայեաց զերկուս ոմանս 'ի նո-ցանէ ունել, որոց անուանք էին Սատոռնի-նոս և Ռուփինոս, և մատնեալ 'ի տանջանս քերանաց ։ Յայնժամ կախեցին զերկոսին զնս̄ զմիոջէ փայտէ և քերեցին եղնգամբք և դղեցին զմարմինս նց̄, մինչև ոսկեան անդամք նոցա փայլէին ։ Իսկ երանելիքն 'ի տանջանս անդ աղաչէին զսբն Կոդրատոս և զամ̄ մօ-տակաց եղբարսն՝ աղօթս առնել վս̄ նց̄ ․ և խնդրեանք 'ի կախաղանէ անտի կարդային յերկինս, և ասէին ․ Տր̄ յս̄ քս̄ որդի ած̄յ բարձրելոյ՝ առաքեա՛ և մեզ զօր 'ի քէն օգ-նականութիւնդ, և պաշտպան լեր խոնարհ ծառայից քոց ած̄ մեր, և տո՛ւր մեզ զհամբե-րութիւն և զյաղթութիւն մինչև իսպառ ։

Այլ յետ բազում ժամուց՝ իբրև ոչինչ եսատն ախինի ; քանզի 'ի սաստիկ տանջանացն խօ-սել իսկ ոչ կարէին, յայնժամ բդեշխն հրա-մայեաց առնուլ և տանել զնս̄ 'ի պողոտայն՝ որ հանէր յեղէգնապատսն, և անդ սրով սպա-նանել ․ և այնուհետև կատարեցան 'ի քս̄ երկո-

քեն

չիմ, և յամենազօր ա̄ծութե̄ն նր̄ և եթ սար-
սեմ. և ո՛չ ուրանամ զանուն անճառ զօրութե̄
նր̄. մեռանելոտի կուոց ո՛չ հաւանիմ, և 'ի դի-
ւաց ո՛չ երկնչիմ. զգործս ձեռաց մարդկանս
արհամարհեմ, այլև զքեզ իսկ՝ որ զիշխա-
նութիդ ունիս 'ի վր̄ իմ. քանզի ես յետ ա-
ւուրց սակաւուց երթամ առ տր̄ն իմ. և դու
չարաչար դառնութե̄ վախճանեսցիս վատ-
թարագոյն քան զանբանս. զի ոչ ծանեար
զճշմարիտն ա̄ծ՝ որ զկեանսդ շնորհեաց քեզ.
որդի՛ սատանի, և եղբայր բելիարայ, հա-
ղորդ գարշելի դիւաց, անմտագոյն քան ըղ-
խոզ, մոլեկան շուն, արիւնարբու վիշապ,
վայրենագոյն քան զգազանս մարդակերս.
ո՞չ ամաչես զոհ մատուցանել այդչափ բազ-
մութեան սնոտեաց, որք ոչինչ ճաշակեն. խո-
հակերք ձեր պարկեշտագոյն են քան զձեզ,
զի նոքա առ տնին կենաւն պարկեշտութե̄ 'ի
վայելել մարդկան՝ և ո՛չ դիւաց. դուք քա-
րանց զոհէք, և դուք ձեզէն երգիծանիք.
արդ եկեսցէ՛ 'ի մէջ ընդունելիչ զոհին ձերոյ,
երևեսցի՛ երբէք և խնդրեսցէ իւրքնին, ըն-
կալցի՛ և կերիցէ. թո՛ղ ասասցէ քարեղէն
ա̄ծդ քո՝ զի՞նչ կամի թէ զոհեսցէ ոք նմա.
ա՞յծ, եթէ արջառ, եթէ հաւ. ամաչեցէ՛ք
որդի՛ք ամօթոյ, զի դուք մոլեկանք էք, և
կարծէք զմեզ մոլեկանս լինել:

Առ այս կարկեցաւ իշխանն, և առ դառնութե̄
սրտին ո՛չ գիտէր թէ զի՛ գործեսցէ. ապա
անդրէն զառածանէր՝ կարծելով տանջանօք
նուաճել զանյաղթ վկայն քն̄ի. հրամանս ետ

զահ-

դահճաց քացախ և աղ ցանել 'ի վ՟ վիրաց սրբոյն, և մազեղէն խորգով շփել. և շողացուցեալ երկաթս կ՟մ շամփուրս մատուցանել 'ի կողս նր՟: Իսկ երանելւոյն Կոդրատոս քաջութբ՟ համբերէր ցաւոցն, և կայր յաղօթս հեզիկ. շրթունքն միայն շարժէին, և զձայն ոչ ոք լսէր 'ի նմանէ ամենեւին. և իբրև փաստակեցան դահիճքն, յակնարկել բդեշխին իջուցին զս՟ն 'ի տանջանարանէ: Այլ 'ի փաղփիլ անդր դարձեալ յուղի անկել բդեշխին գնալ 'ի յելլեսպոնտոս՝ ետ տանել յառաջոյ զկոդրատոս անգօթի ամենեւին՝ բարձել 'ի վ՟ սայլի: Այլ իբրև հասին 'ի գետն ռիւնդակ ('ի սահմանս միւսիայ), եւ ընդառաջ բդեշխին իշխան կողմանցն այնոցիկ բազում ամբոխիւ իբրև 'ի պատճառս պատուոյ, այլ ճշմարտութբ՟ առ 'ի հանդիպումն ծառայիւն տ՟յ կոդրատոսի. զի ցանկային տեսանել զառաքինի նահատակն, որոյ համբաւ վկայութն հասեալ էր յասիա, և սփռեալ ի՟ բազում տեղիս:

Արդ եկեալ բդեշխին՝ ագաւ այն օր 'ի տաճարագիւղ անուանեալ աւանի (այն է ըստ յունաց երմուպօլիս, կ՟մ յերապօլիս). և ի՟ առաւօտն նստեալ յատենի՝ հրամայեաց ածել զառաջնեաւ զկոդրատոս առ 'ի դատել զնա առաջի ամբոխին, և ահ արկանել ամենեցուն. և ահա բարձեալ բերէին զնա դահիճք, քանզի ոչ ևս էր 'ի նմա զօրութի գնալոյ. և ժողովուրդն ա՟մ շուրջ հայէր տեսանել զանյաղթ վկայն: Այլ էր երանելւոյն յարեան

չիմ, և յամենազօր ածութենէ նր և եթ սար-
սեմ. և ոչ ուրանամ զանուն անձառ զօրութե
նր. մեռեալ լոտի կուոց ոչ հաւանիմ, և 'ի դի-
ւաց ոչ երկնչիմ. զգործս ձեռաց մարդկան
արհամարհեմ, այլև զքեզ իսկ՝ որ զիշխա-
նութիւդ ունիս 'ի վր իմ. քանզի ես յետ ա-
ւուրց տասանց երթամ առ տր իմ. և դու
չարաչար դառնութե փախձանեսցիս վատ-
թարագոյն քան զանբանս. զի ոչ ծանեար
զճշմարիտն ած՝ որ զկեանսդ շնորհեաց քեզ.
որդւ սատանի, և եղբայր բելիարայ, հա-
ղորդ գարշելի դիւաց, անմտագոյն քան ըղ-
խոզ, մոլեկան շուն, արիւնարբու վիշապ,
վայրենագոյն քան զգազանս մարդակերս.
ոչ ամաչես զոհ մատուցանել այդչափ բազ-
մութեդ սնոտեաց, որք ոչինչ ճաշակեն. խո-
հակերք ձեր պարկեշտագոյն են քան զձեզ,
զի նոքա առ տնին գտանեն պարկեշտութե 'ի
վայելել մարդկան՝ և ոչ դիւաց. դուք քա-
րանց զոհէք, և դուք ձեզէն երգիծանիք.
արդ եկեսցէ 'ի մէջ ընդունելիչ զոհին ձերոյ,
երևեսցի երբէք և խնդրեսցէ ինքնին, ըն-
կալցի և կերիցէ. թող ասասցէ քարեղէն
անծդ քո՝ զի՞նչ կամի թէ զոհեսցէ ոք նմա.
այծ, եթէ արջառ, եթէ հաւ. ամաչեսցէք
որդիք ամօթոյ, զի դուք մոլեկանք էք, և
կարծէք զմեզ մոլեկանս լինել:

Րու այս կարկեցաւ իշխանն, և առ դառնութե
սրտին ոչ գիտէր թէ զի՞ գործեսցէ. այլա
անդրէն զառածանէր՝ կարծելով տանջանօք
նուաճել զանյաղթ վկայն քի. հրամանս ետ

դահ-

դաՀճաց քացախ և աղ ցանել 'ի վերայ վիրաց սրբոյն, և մաղեղէն խորգով շփել․ և շաղացուցեալ երկաթս կիզս շամփուրս մատուցանել 'ի կողս նորա : Իսկ երանելոյն կոդրատոս քաջութեամբ համբերելէ ցաւոցն, և կայր յաղօթս հեզիկ․ շրթունքն միայն շարժէին, և զձայն ոչ ոք լսէր 'ի նմանէ ամենևին․ և իբրև վաստակեցան դաՀիճքն, յակնարկել բդեշխին իջուցին զնա 'ի տանջանարանէ : Եւ 'ի վաղիւն անդր դարձեալ յուղի անկեալ բդեշխին գնայ 'ի յելլեսպոնտոս՝ եւ տանել յառաջոյ զկոդրատոս անօթի ամենևին՝ բարձել 'ի վերայ սայլի : Եւ իբրև հասին 'ի գետն ռինդակ ('ի սաՀմանս միւսիայ), եւ ընդառաջ բդեշխին իշխան կողմանցն այնոցիկ բազում ամբոխիւ իբրև 'ի պատիւ պատուոյ, այլ Ճշմարտութեամբ առ 'ի Հանդիպումն ծառային Քրիստոսի կոդրատոսի․ զի ցանկային տեսանել զառաքինի նաՀատակն, որոյ Համբաւ վկայութեան Հասեալ էր յասիա, և սփռեալ ընդ բազում տեղիս :

Որդ եկեալ բդեշխին՝ ագաւ այն օր 'ի տաՃարագիւղ անուանեալ աւանի (այն է ըստ յունաց երմուպօլիս, կամ յերապօլիս). և ընդ առաւօտն նստեալ յատենի՝ Հրամայեաց ածել զառաջեաւ զկոդրատոս առ 'ի դատել զնա առաջի ամբոխին, և աՀ արկանել ամենեցուն․ և աՀա բարձեալ բերէին զնա դաՀիճք, քանզի ոչ ևս էր 'ի նմա զօրութիւն գնալոյ․ և ժողովուրդն ամենայն շուրջ Հայէր տեսանել զանյաղթ վկայն : Եւ էր երանելոյն յա-

րեան

բեան թաթաւեալ և մրրօք լի . այլ նորքին տարախութիւն ոգւոյն զուարթ երեսս ցուցանէր ամ բազմութեն, ըստ գրեցելումն՝ թէ սրտի բերկրեցելոյ երեսք զուարթ են : Այլ իբրև եկաց առաջի, ասէ ցնա բդեշխն . իմաստնացայր ով կողպատիչ, եթէ չէ ևս բուժեալ ես 'ի փոխելութենէդ (այս է 'ի խելագարութենէդ) : Ասէ երանելին մեծաձայն . 'ի մանկութենէ իմմէ զգաստ գտանիմ, և յարովայնէ մօր իմոյ՝ քոյ ծառայ եմ : Յայնժամ հրամայեաց բռնաւորն բերել երկաթի կրակարան իբրև կասկարայ, և դնել 'ի վ՟ր հրատի, մինչև եղև հանգոյն հրոյ . ապա հրամանս ետ դահճաց հանել զկողպատս 'ի վ՟ր հրացեալ անկողնոյն այնորիկ : Ապա քաջ նահատակն ասէ ցդահիճս . 'ի բաց կացէք յինէն արբանեակք սատանայի, ես ինձէն իսկ ելանեմ : Այլ արարեալ յինքեան զք՟ի կնիքն՝ ել արիաբար 'ի վեր . և դահիճքն տուկէին 'ի վ՟ր կրակարանին ձիւթ և ձէթ : Ապա ս՟բն կողպատոս սաղմոսէր և ասէր . ա՟ծ յօգնականութի իմ նայեաց, և տ՟ր յօգնել ինձ փութա՛ . ամաչեսցեն և պատկառեսցեն՝ որք խնդրեն զհոգի իմ . դարձցին յետս և ամաչեսցեն՝ որք կամին ինձ չար : Այլ կատարեալ զսաղմոսն՝ ասէ ցբռնաւորն ուրախութ՟բ . հուրս քո այս լոյծ է, և երկաթ կրակարանիս կակղագոյն է քան զսփռոց քո . զայս բարոզ արարեր, զի անկողինն ինձ պատրաստեցեր, և յաղթանակաց հանգուցեր զիս : Ապա բդեշխն զարմացեալ էր Է ժամն . զի բազում

ժամք

և իրօք (զօրք) ։ Այլ բուն առումն բառին առ յոյնս է
ձայն Նախատառական, իբր անձնանախատառ, գիւտողութիւն,
ժամանակուոր, խմոր չարութե, որոմնացան, մանկապարտ
ել. ըստ որոյ 'ի Ե. Ծաղ. Է. Գ. փոխանակ միոյ ալմուտօր
ձայնի եդեալ է, այ, ուէփ, հղարփ, և ամէարփառան ։ Եւ որ
'ի վերոյ բառսոյ. Ծառընտ. Բ. գնի, * անօրէն և չար
„ խմաց հոգւովդ, և աղաղակր բարիւք ||, 'ի Ծ. Ա. գրի.
* անօրէն և չարխմաց խորհրդովք և ամպարիշտ վա-
„ րուք || ։ Եւ դարձեալ 'ի նոյն Ծ. Ա. 'ի վերոյ եւստ-
առախեալ գրեալ կայ, * ով աղաղակուր դու, և չարի բանս-
„ ատի հանդիպեալ, և Թմբրեալդ արբեցութե չարին
. „ 'ի նանիր խորհրդոցդ ||։
(5) 'Ի Հ. պատմի, Թէ սքն կոգրաստս նախ քան զդար-
ձուցանել զուրացեալն յապաշխարութի՝ * եկեալ ('ի
;, բանակ) կործանեաց զբագինսն || ։ Զնոյն գտանեմք և
'ի ձեռագիր ժամագիրս յն. * իսկ սքն բունի ձգեալ և
„ մուծեալ 'ի տաճար կուոց՝ զամ գործեալս որ անդ՝
„ փշրեաց || . և վա այսր տանջեցին աստ զնա քրմանք ։
Այլ 'ի Ծառընտիրս մեր պակասի այս հատուած՝ Թե-
րևս յակամայ զանցառութէ գրչաց ։ Նոյն զի փոքր մի
զնի պակասի Թուղթ մի 'ի Ծ. Ա. զորոյ զԹերութե
լնու Ծ. Բ.։
(6) Միաձայնի Է վկայաբանութե գրեալն 'ի ժամագր.
յն. ձեռ. * 'ի քուրձ փակեալ՝ սատակագոյնս հարաւ ||։
իսկ Հ. ոչ այնպէս. զի ասէ, * արկին 'ի գուբ, և քար-
„ կոծ ածնէին զնա, և քարինքն 'ի նա ոչ հասանէին ||.
կմ Ը որ իէլի, * ոչ դիպչէին ||։
(7) Անուանս կեսարիա, եռ առաւել պալողոնիա՝ այլ
և այլ քաղաքաց ընծայի 'ի զանազան գաւառս . յորմէ
շփոԹուԹի իմն գրեալ էր աստ կեսարիա պադեստի-
նացւոց, 'ի Ծ. Բ. (զի Ա. պակասի). յայտ է Թէ
հոյեւով զի և այն քաղաք կոչի ապողոնիա Ը հին մա-
տենագրաց. բայց առաջիկայս պատմուԹի հայի 'ի կե-
սարիա բիւԹանացւոց, ուր կայր և այլ ապողոնիա կմ
ապողոնիդա. կմ Թէ նաև այս կեսարիա կոչիւր ապողո-
նիա ։ Հենաքէնիոս համաձայնի Է մեզ յասել՝ի. * ապամիա,
„ կեսարիա, և ապողոնիա (էին) քաղաքք եմպանիոսք
„ 'ի նոյն բիւԹանիա || ։ Միոյն սա և զանուանս ախնդակ
. կմ հաւանդակ կարծէ քաղաք լինել. բայց ըստ վկայաբա-
նուԹե մեր՝ նոյնպէս և աշխարհագիրք ասանդեն, Թէ
ախնդակ է անուն գետոյ, յոր մերձ էր ապողոնիա քա-
ղաք 'ի վիճակին նիկոմիդեայ՝ սահմանակից միւսիոյ ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ

Եպիփանու Հայրապետին Կիպրացւոյ, այն է եպիսկոպոսի Սաղամինայ կմ Կոստանդեայ քաղաքի՝ որ 'ի Կիպրոս կղզւոջ:

Հ. Մայիս. 13: Յ. Լ. Մայ. 12: Ճառընտ. Ր. չծդ. և Օ. ճծբ: Նա ենթի եղեւման 'ի գերս եւր: Աստղիկնոս. Է. 27: Մուհրապ. Զ. 14: Մարտոս. հատ. Գ. եր. 229: Նախշաւորեանն Բուբեռրոտ. հատ. Գ. Մայ. 12. եր. 36 = 49:



ՀԱՆԴԵՐՁԵԱԼՔ զմեծին Եպիփանու տիեզերահռչակ վարդապետին եկեղեցւոյ գրել զմբ քաղաքավարութի՝ զարմանամք, զի ոչ ոք ըստ արժանւոյն գրեաց զարժանաւոր վարս նր. զի թէպէտ և առաջին գրիչք ճանաչելի են երկուքին աշակերտք նորա ձեռնասունք՝ Յովհաննէս և Պողիբիոս, բայց անոճ գրուած սոցա սոսնէրածս իմն արկանէ 'ի վերայ աչաց ընթերցանելեաց՝ անտառնեալ նկարագրութբ մանկութեան իւրոց խառն ընդ մեծամեծաց, հանդերձ տարապայմանս կուսակցութբ, մինչև 'ի շիջանել զմի կողմն՝ զմիւսն քակել՝ առանց ընտրութեան ստոյգ և անստոյգ համբաւոյ. սակայն և այնչափ անմարթ

մարթ է առանց գրուն սոցա բովանդակել զպատմութին սոցին։ վն որոյ հաւաքեմք զաւանդս նշյ քաղուածով՝ զոյգ ըն աւանդելոցն յայլոց մատենագրաց, ցորչափ անհակառակելի երեւին ըն ինքեան։ (1)

Արդ սքանչելին Եպիփան կամ Եպիփանիոս (որ թարգմանի երեւելի կմ յայտնի) աւանդի լինել ազգաւ հրէայ, և հայրենեօք փիւնիկեցի, ծնեալ յաղքատ և 'ի հողավաստակ ծնողաց 'ի գեղջ միում, որ երեք մղոնաւ հեռի էր յԵլեւթերոպոլիս քաղաքէ։ Եւ յորժամ էր Եպիփան տասնամեայ, մեռանի հայր նր, և մնայ մանուկն ըն քեռ իւրում Կալիտրոբեայ 'ի տան այրեացեալ մօրն։ որոյ նեղեալ յաղքատութէ առաքէ զեպիփան վաճառել զէշ մի, զոր ունէին։ Եւ Եպիփան յերթալն իւրում հանդիպեցաւ միայնակեցի միում 'ի քրիստոնէից, որում անուն էր Կղէոբիոս։ և հարցեալ 'ի նմանէ՝ թէ վաճառե՞ս զէշդ, ասէ մանուկն պարզմտութբ։ այո՛ վաճառեմ։ բայց կարի սատամբակ է։ վն որոյ երկնչիմ, գուցէ մխասեսցէ զնողին, և ես եղէց պարտական առաջի այ։ Եւ յայն բան 'ի վեր վազեալ խշոյն՝ ընկեց զեպիփան յերկիր, և թափեաց զկուռն բարձիցն, և խեղագնաց նուա́ղեցաւ պատառանին։ Իսկ աբեղայն բժշկեաց զնա անուամբն քսի, և զէշն առատակեաց։ յայնժամ եհարց Եպիփան ցաբեղայն, թէ ո՞ ոք իցէ քսն այն։ և նա ասէ։ այն է յս որդին այ՝ զոր հրէայքն խաչեցին։ և Ե[illegible] պատմեաց 'ի տունն, և 'ի մօր

ունէր զիւրանն զայն ։

Իսկ սմ՟ն 'ի հրէից որիփոն անուն եւեթե-
րուպօլսեցի՝ օրէնսագէտ և մեծատուն, արար
զեպիփան իւր յորդեգիր. և ուսոյց նմա զա-
մենայն եբրայական գիրս և զա՟մ աւանդու-
թիւնս հրէից. և խոստացաւ տալ նմա ըզ-
դուստր իւր. այլ փութով մեռաւ աղջիկն.
և 'ի մեռանիլ նաև որիփոնի՝ եպիփան եղև
ժառանգ ընչից նորա ։ Դէպ եղև եպիփա-
նու տեսանել աղքատ զոմն՝ որ խնդրէր զո-
ղորմութի՟ 'ի ղուկիանոսէ միայնակեցէ, և
ասէր. ա՟յրդ ՟այ ողորմեա՛ ինձ, զի այս երեք
աւուրք են, զի սովեալ կամ. և նա եհան
զպարեգօտն և ետ նմա՝ վաճառել և գնել
հաց. և նոյնժամայն անկաւ 'ի վերուստ յերկ-
նից սպիտակ հանդերձ, և ծածկեաց զղու-
կիանոս ։ Յայնժամ ահ կալաւ զեպիփան.
և գնացեալ զհետ ղուկիանոսի՝ ուսաւ ըզ-
կարգ քրիստոնէութե՟ և զմիայնակեցութե՟.
և ապա եկն յեմ՟սարանն հանդերձ քերբ իւ-
րով՝ ը՟ունել զմկրտութիւն. քանզի մայրն
վախճանեալ էր ։

Ու ը՟ մտանել եպիփանու ընդ դուռն եկե-
ղեցւոյ՝ անկան հողաթափքն յոտից նր՟, և
մնացին արտաքոյ դրան. յայնժամ ուխտեաց
բոկոտն շրջիլ յայնմհետէ և առ յապայ։ Ու
եպ՟սն 'ի մկրտելն զնա տեսանէր զերեսս նր՟
փառաւորեալ, և պսակ զարմանալի 'ի գլուխ
նր՟ ։ Ապա եղ եպիփան զքոյր իւր 'ի վանս
կուսանաց. և ինքն միայնացաւ 'ի վանս հօրն
ղուկիանոսի, ուր կային տասն կրօնաւորք,
և

և ձեռագործ նոցա էր դրչութիւն. յորոց մի էր Հիւլարիոն ոք հայրն, և կղոդիոս այլ երևելի առաքինութեամբ. որոց նմանօղ լինել ցանկայր եպիփան. և էր ինքն ամաց վեշտասանից 'ի կրօնաւորիլ իւրում:

Յայսմ միջոցի թուի լինել այն՝ զոր պատմէ զանձնէ նա ինքն սրբն եպիփան 'ի գիրսն ընդդէմ հերձուածոց. իբր զի մինչդեռ 'ի տիս պատանեկութեան էր, և շրջէր վ՜ն ուխտի 'ի վանորայս պաղեստինու մինչև յեգիպտոս՝ առնուլ 'ի նոցանէ օրինակ բարի, բարիատեացն սատանայ դրդուեաց զգնոստիկեան չար աղանդաւորս մարմնապաշտս՝ որք էին յ՜ին եգիպտացւոց, յինքեանս կորզել ըզպատանին. զոր և արարին իսկ առ ժամանակ մի. զի հիւրընկալեալ զնա 'ի կաղանս իւրեանց՝ ետուն 'ի ձեռս նորա գիրս մոլորութեան իւրեանց. զոր ընթերցեալ եպիփանու՝ ողջամիտ կարծէր զգրեանն. մինչև համարձակեալ ժանտիցն՝ թելադիր եղեն չար կանանց գործակցաց իւրեանց փորձել զեպիփան. և նոքա սկսան յառնել 'ի վերայ պատանւոյն պէսպէս պատրանօք: Յայնժամ 'ի միտ առեալ եպիփանու զխորխորատն չարուէ աղանդոյ նոցա՝ դիմեաց 'ի բոլոր սրտէ աղօթիւք առ ած, և հազիւ ուրեմն զերծոյց զանձն 'ի ձեռաց կանանց՝ անարատ պահեալ շնորհօքն այ. և հնարիւք խոյս տուեալ 'ի բնակութենէ գնոստիկեանց՝ գնաց պատմեաց եպսացն եգիպտոսի զանարժան ընթացս նոցա. և եպսունքն 'ի վերայ հասեալ իրացն

ստուգութեան աքսորեցին 'ի սահմանաց անտի իւրեանց զգլխաւորս աղանդոյն ոգիս ութ-սուն. իսկ եպիփան փութացեալ դարձաւ յառաջին վանս իւր, և ետ զանձն յառաւել ճգնութի: (2)

Իբրև մեռաւ հայրն ղուկիանոս, և եղև հայր վանաց հիլարիոն, տեսեալ եպիփանու զքաղաքավարութի նր՝ սովորութի կալաւ և ինքն հանգոյն նմին հաց և աղ միայն ճաշակել յերկուս և յերիս աւուրս միանգամ, և զայն ոչ յագ. ոռք և ջուր չափով ըմպէր: Եւ զամ աշխատութիւն վանաց խնամով 'ի գլուխ տարեալ՝ ոչ պակասէր և յաղօթից և 'ի մբ ընթերցուածոց: Տեսեալ քանսարկուին զյառաջադիմութի եպիփանու՝ սկսաւ նե-ղել զնա 'ի գիշերային աղօթս պէսպէս ցնո-րիւք ահարկու տեսլեանց. և իբրև ոչ կա-րաց խախտել զմիտս նորա, եհաս 'ի վերայ նորա բազմութբ գիւաց, և գան եհար զնա սաստիկ. այլ նորա յմծ ապաւինեալ՝ անվը-նաս պահեցաւ յամ արկածից չարին: Եւ տուաւ եպիփանու յայ շնորհք նախագիտու-թե և նշանագործութե. և այն՝ ըստ անչեղելի խոնարհութբ հանդերձ:

Եւ էր այսմ պատմի, թէ միանգամ 'ի պա-կասել ջրոյ 'ի պէտս հիւրից և գրաստուց նոցա՝ զտիկ մի գինւոյ նոցին փոխարկեաց 'ի ջուր: Եւ 'ի փախչել եպիփանու 'ի գովութե մարդկան 'ի խորագոյն անապատ, գտին զնա քառասուն աւազակք սարակինոսաց. և մին 'ի նոցանէ՝ որ էր միականի, յարձակեցաւ

սաւ

սուսերամերկ 'ի վերայ նորա. այլ 'ի վերա-
ցուցանել զսուրն՝ բացաւ խաւարեալ ակն
նորա։ Յայնժամ անկան առ ոտս սր̃յն, եւ
կոչէին զնա նոր ա̃ծ ոմն. մինչեւ բռնի ձգեալ
տարան զնա ընդ իւրեանս՝ պահել զնոսա 'ի
փորձանաց ճանապարհին. եւ զերիս աւուրս
շրջեցուցեալ զնա՝ իբրեւ տեսին թէ նա խրա-
տէ զնոսա 'ի բաց կալ յաւազակութ̃է, թո-
ղին 'ի բաց. բայց մին 'ի նոցանէ աշակեր-
տեալ եպիփանու՝ մկրտեցաւ, եւ կոչեցաւ
յովհաննէս. եւ կրօնաւորեցաւ 'ի վանս հե-
ղարիոնի։ Եւ սա ինքն յովհաննէս է առա-
ջին գրիչ վարուց եպիփանու. որ եւ յերկար
գրէ, թէ զիա՞րդ բժշկեաց նա զգիճահար
զոմն յանապատի. եւ դեռ գնացեալ եմուտ
'ի դուստր թագաւորին պարսից. եւ աղաղա-
կէր, չելանեմ աստի՝ մինչեւ եկեսցէ եպի-
փան՝ որ 'ի սպանիտրիոն բնակէ. (այն էր ա-
նուն վանաց նորա՝ անջրդի կամ նուաղաջուր
կոչեցեալ՝ 'ի փիւնիկէ)։ Եւ եկեալ արանց
'ի դրանէն պարսից՝ գտին զնա փակեալ 'ի
խցի. եւ յերկարել նորա զաղօթս իւր՝ կա-
մէին զդուռն խորտակել. եւ 'ի ձգել ու-
րումն զդաշոյն ճեղքել զդուռն՝ ցօսացաւ
ձեռն նորա. ապա եւ եպիփան եւ ողջացոյց
զձեռն նր̃. եւ առեալ զաշակերտ իւր զյով-
հաննէս՝ գնաց ը̃ արանցն, եւ բժշկեաց ըղ-
դուստր արքային։ Ընդ որ զարմացեալ մոգ-
պետին՝ կոչէր զեպիփան գլուխ մոգաց. եւ 'ի
սաստել սր̃յն՝ համրացաւ մոգպետն. եւ ան-
դրէն առողջացաւ աղօթիւք նորա։ Յարոյց

անդ և զերիտասարդ մի՝ զոր սպանեալ էր մոգուց կախարդանօք. և այնպէս բազում պատուով հրաժարեալ 'ի Թագաւորէն՝ եկն 'ի փիւնիկէ յանապատ իւր սպանիտրիոն. ուր աղօթիւք ջուր բղխեցոյց, և հալածեաց զգազանս վայրի, և սատակեաց զառիւծ մի։ Աշակերտեցան անդ Եպիփանու իբր յիսուն թուով եղբարք, զորս կրթէր 'ի վարս միակեցութե. այլ 'ի գնալ նորա երբեմն 'ի տես վանացն հիլարիոնի, և 'ի յամել աւուրս բազումս, սատանայ կերպարանեալ զանձն 'ի ձև Եպիփանու՝ եկն 'ի սպանիտրիոն. յայն ժամ խաբեցաւ ոմն յաբեղայից՝ որ էր պղերգ և ծոյլ, և Է աւուր ելեալ դիւին՝ երկիրպագ. նմա. և դևն համարձակութիւն առեալ՝ բնակեցաւ 'ի նմա. և եղև խռովութի բազում 'ի կրօնաւորսն յերևսաց դիւաբնակ աբեղային. զոր իմացեալ Եպիփանու ազդմամբ նն՝ փութացաւ դառնալ 'ի վանս իւր. և Է մտանել նորա Է դուռն՝ հալածեցաւ դևն և փախեաւ։

Սա էր 'ի հռովմ երևելի 'ի ծերակուտի այետիոս ոմն. որոյ որդին կալլիստոս հարեալ 'ի դիւէ՝ տեսանէր յերազի զոմն միայնակեաց պատկառելի, որ ասէր ցնա. կամի՞ս կալլիստէ՝ զի հանից 'ի քէն զայսն չար. և 'ի հարցանել նորա՝ թէ ո՞ ես դու, ասէ. ես եմ եպիփան փիւնիկեցի. արդ տո՛ւր ինձ բան, զի թէ ազատեմ զքեզ՝ աշակերտեսցիս ինձ 'ի սպանիտրիոն անապատի։ Սա 'ի խոստանալ պատանւոյն՝ զարթուցեալ 'ի քնոյ, եգիտ

զանձն

զանձն ողջացեալ․ և պատմեաց հօր իւրում
զամ̃ն․ և յետ երից ամսոց անկաւ 'ի ճանա-
պարհ հրամանաւ հօրն․ և եկեալ յաւելաւ
'ի լծին աշակերտացն եպիփանու ։

Ապա յինքն այրն ա̃յ եպիփան տուեալ զանձն. հանապազորդ աղօթից և ընթերցուածոց և գրութեանց բազմապատիկ պիտառնութեանց, ստէպ առնոյր 'ի ձեռս զս̃բ գիրս, և մեկնէր աշակերտաց իւրոց զխմաստս ա̃ծայինն տա-ռից, և լնոյր զամենեսին հոգևոր ուրախու-թեամբ․ և եղ լուր նորա ը̃ ա̃մ տեղիս․ և գային բազումք 'ի տեսանել զնա և օրհնիլ 'ի նմանէ ։

Եւ էր ոմն հռետոր ճարտար և մեծանուն փիլիսոփայ հեթանոս բնակեալ յեդեսիա․ և անուն նորա եպիփան․ սա լուաւ վ̃ս երա-նելւոյն եպիփանու՝ եթէ այր իմաստուն է․ վ̃ս որոյ ցանկացաւ երթալ տեսանել զնա․ և եկեալ 'ի ժամու պաշտաման աղօթից՝ ե-կաց պահ մի լռիկ, և հայեցեալ 'ի միտ էառ զայրն ա̃յ, և ընթացեալ երկիր եպագ նմա ։ Ասէ ցնա ս̃բն․ զի՞ է քեզ մեծդ հռետոր և իմաստասէր ականաւոր՝ պարծանքդ եդե-սացւոց, առ ի՞նչ աշխատեցար գալ առ ան-պիտանս և մեղաւոր եպիփանս․ զիա՞րդ պեր-ճացեալդ գիտութ̃բ եկիր յոտս առն միոյ տխմարի․ և վ̃ս որո՞ց իրաց արդեօք ։ Ասէ իմաստասէրն․ մ̃ծ է̃ այդ զարմանար բաքու-նէ՛դ ցանկալի, զի է̃ս գեղեցիկ առածի դիո-նեսեայ աղիկառնացւոյ, եթէ գովելիք առ-գովելիս եկեալ կշռեսցին՝ ընտիրք առաւել

երևեցին. լաւքն ը̃ վարժարս խառնեալ՝ 'ի մի փայտ տարածեցին. ոչ ոք միով պատմուճանաւ շատանայ, գուցէ պատառեսցի. ստէպ տեսութի̃ն ծնանի զբանիցն առատութի̃ն, և յաճախութի̃ն գիտնաւոր բանից՝ փորձ առնէ զիմաստասէրս բազմապատիկ գիտութեանց:

Այսպիսեօք հրմն եղեալ բանից՝ փորձէր իմաստասէրն եպիփան զը̃ն̃յ իմաստունն զեպիփան. և նորա բացեալ զբերան իւր 'ի գրոց ս̃բց՝ անդստին 'ի մովսիսապատում ծագործութէ̃, դնէր առաջի նր̃, եթէ այս է ճշմարիտ իմաստութիւն՝ ճանաչել զաներևոյթ արարիչն երևելի արարածովքս. և իմաստասէրն յատակ միտք ոչ դնէր ն̃մ բանից առն ն̃յ: Այլ զերիս աւուրս խօսակից լեալ ընդ նմա՝ ոչ յաղթէր 'ի քաղցրաբուղխ վարդապետութէ̃ նորա. էր՝ զի հաւանէր ասացելոցն, և էր՝ զի զը̃դէմն առաջի արկանէր. և առեալ զլուծումն տարակուսանացն՝ հիանայր յոյժ. և ևս առաւել 'ի քաղցր բանից և յառաջինն քաղաքավարութէ̃ սր̃յն զմայլեալ՝ սիրեաց զնա ը̃ անձին իւրում, և կապեցաւ ոգի նորա ընդ նմա. և ոչ կարէր մեկնիլ 'ի նմանէ:

Ապա յաւուրն չորրորդի ասէ ցմ̃ն. ըմբունի՝ վայելուչ է բնակութի̃ տեղւոյս. եթէ հրամայես, կամ է և ինձ աստ բնականալ: Ս̃բն ասէ. այդ 'ի կամս իւրաքանչիւր է ապաստան: Եւ նա ասէ. եթէ այդպէս իցէ, ես ոչ ելից աստի. այլ աստ բերել այսր և

զմա

զմատեանսն իմ 'ի դիւանէն եդեսիոյ. և խօ-
սեցուք ընդ քեզ 'ի գրոց։ Եւ 'ի հասանել
սէթին՝ առաքեաց իմաստասէրն զկալիստո
հանդերձ երկու ծառայիւք նստեալ յուղտս
'ի քաղաքն եդեսացւոց. և առեալ կալիստո-
սի 'ի դիւանէն եդեսիոյ զգիրս իմաստասի-
րին՝ եբարձ 'ի վերայ ուղտուց, և եբեր յա-
նապատն եպիփանու ։

Յայնժամ ասէ սուրբն եպիփան ցիմաստասէրն
եպիփան. գրեալ է, ասեն նստաւ, և դպ-
րութիւնք բացան. և եդ սուրբն յաջմէ իւրմէ
զամենայն գիրս բացեալ, և վերծանէր
զսկիզբն գրոցն ծննդոց տուն առ տուն. և
իմաստասէրն եդ զիւր գիրս 'ի ձախմէ իւր-
մէ. և նախ եբաց զգիրս հեսիոդոսի քեր-
թողի. և սկսան քննել զգիրս, և վիճէին
սիրով ընդ միմեանս։ Եւ յերկարեալ 'ի բանս՝
ոչինչ վճարէին զբազում ժամանակս մինչև
ցտարի մի. զի կարծէր իմաստասէրն կամ
մարդկային ճարտարութեամբ յաղթող հանդի-
սանալ, և կամ մարդկային փաստիւք հա-
սանել ճշմարտութեան. և ոչ գիտէր՝ թէ հե-
ռի են խորհուրդք այ 'ի մարդկանէ, որչափ
երկինք յերկրէ. վա որոյ և սուրբն եպիփան
յորդորէր զնա 'ի վերուստ խնդրել զպար-
գևս ածային հաւատոց ։

Պէտք եղև կամօքն այ, զի ածէին առ սուրբն ե-
պիփան զդիւահար մի չար յոյժ, զոր վաթ-
սուն արք հազիւ կարէին սանձել երկաթի
կապանօք. յայնժամ ասէ սուրբն ցիմաստա-
սէրն. կամ դու բժշկեա զդա 'ի ձեռն դից

հեթանոսաց, և կամ յանձն առ. հաւատալ 'ի խաչելեալն՝ եթէ անուն նորա տացէ նմա զբժշկութիւն: Այլ 'ի հրաժարել իմաստասէրին՝ մատեաւ սրբն, և սկսաւ քակել զշղթայս դիւահարին. և 'ի փախչիլ իմաստասիրին զարհուրանօք՝ կնքեաց սրբն երիցս 'ի վերայ այսահարին զնշանն փրկական խաչին, և ասէ ցայսն պիղծ. հրամայէ քեզ Եպիփանիոս մեղաւոր ծառայ այ յանուն յսի քսի խաչեցելոյ որդւոյն այ, ե՛լ 'ի մարդոյ այտի, և մի ևս մտանիցես 'ի դա. և ել վաղվաղակի դևն. և այրն հանդարտեցաւ, և գտաւ զգաստացեալ բոլորովին:

Զայն իբրև ետես իմաստասէրն, վազեաց ներկիր եպարզ առն այ, և ասէ. ով Եպիփանէ պսակեա՛լդ փառօք յաղթութեան, հաւատամ և հաւատացի՝ որոց բանիւք ասիս, և արդեամբք կատարես. զի բանք ցնդելիք յօդս անարգասաւոր մնան, այլ գործք արդիւնացուցանեն զպտուղ. արդ կամիմ և ես լինել մի 'ի ծառայից խաչեցելոյն. և յայնմ օրէ ստիպէր զնա տալ ինքեան զկնիքն քսի: Այլ Եպիփան տարաւ զնա առ սբ հայրն Հիլարիոն, և ետ մկրտել զիմաստասէրն. և երևեցան 'ի վերայ նր շնորհքն այ, զի սօղոսն պօղոս եղև. վն որոյ յետ աւուրց քանից առաքեցին զնա առ եպսն Ելևթերուպօլսոյ, և ետուն ձեռնադրել զնա քահանայ. և այնպէս դարձաւ յանապատն եպիփանու օծմամբ սբ հոգւոյն. և եղև ուրախութիւն մեծ ամն եղբարց, և ամենայն հաւատացելոց՝ որք

լուան

լուծանն զայն . զի էր այրն անուանի ընդ ամե-
նայն Տն եղեսացւոց և ասորւոց և փիւնի-
կեցւոց : (3)

Նոյա կացուցեալ սրբոյն Եպիփանու զքահա-
նայն Եպիփան 'ի մէջ եղբարց՝ ասէ . սա այն
է՝ որ երբեմն թուէր լինել ինչ, և չէր . և
ասէր զանձնէ լինել իմաստասէր , և չէր .
այլ այժմ շնորհօքն այ եղև ճշմարիտ իմաս-
տասէր և իմաստուն ըստ այ : Իսկ յայնմհետէ
մեծարեալ պատուեաց զնա Եպիփան՝ իբրև
հայր հոգևոր և առաջնորդ եղբարց եղելոց
ընդ ձեռամբ իւրով 'ի սպանիտորիոն . ուր ե-
կաց երանելին այն ընտիր քաղաքավարութ
մինչև ցմահ իւր . և ստացաւ աշակերտս բա-
զումս 'ի հոգևոր և յարտաքին իմաստութե .
յորոց մի եղև և երանելին հռուփանոս միայ-
նացեալ 'ի սամոս՝ ձեռնտու սրբյն մեսրոպայ
յաւուրս գիւտի հայերէն գրոյն , ըստ պատ-
մելոյ խորենացւոյն :

Իսկ անուն մեծին Եպիփանու ևս քան զևս
քարոզեցաւ յետ դարձուցանելոյ նր զեպի-
փան իմաստասէրն . և գային առ նա յանա-
պատ նր յամ կողմանց . վն նյ ձանձրացեալ
յամբոխէ մարդկան՝ էառ ըստ իւր զիշերայն
զյովհաննէս զաշակերտ իւր , և խոյս ետ յա-
նապատէն սպանիտորից : Իսկ եկեալ նախ յեղէմ,
և երկրպագեալ սբ տեղեաց՝ էջ 'ի յոպպէ , և
նաւեաց յաղեքսանդրիա եգիպտացւոց : Անդ
վիճեալ ըստ ակիւղասայ հրէի՝ առն օրինագի-
տի , դարձոյց զնա 'ի քրիստոնէութիւն , և
յղեաց առ սբն աթանաս հայրապետ քաղա-
քին՝

քրին՝ մերտել զնա . և ինքն դիմեաց յանա_պատն կոյս՝ գնալ 'ի կողմանս վերին Թեբայի_դոյ : Եւ հանդիպեցաւ երանելւոյն պափ_նուտիոսի՝ որ էր մի յաշակերտաց մեծին ան_տոնի, եհարց վ՟ս սր՟յն անտոնի և գործոց նր՟ . և պափնուտի պատմեաց նմ՟ զա՟մ : Ապա ասէ եպիփան . կամիմ և ես հանդարտել 'ի նիտրիա : Ասէ ցնա պափնուտի մարգարէութ՟բ . ողջամբ երթիցես, և վայելեսցես 'ի շնորհս հարանց՝ ժողովեալ քեզ դալարիս յամարայ_նի, երթալ 'ի կղզին կիպրացւոց և դարմա_նել զխաշինս . զի եղիցին քեզ ոչխարք ծոր_ծարերք . և դարմանեալ զմատաղս, զի եղի_ցին քեզ գառինք :

Եւ հասեալ եպիփանու 'ի կողմանս դէոն_դաւպօլսոյ՝ գնաց 'ի տես հերակեսի ուրուեմն աբեղայի, որոյ անուանն մեծ համբաւէր, և ասէին զնմանէ ունել զշնորհս կանխագի_տութ՟ն . և հանդիպեցաւ 'ի ժամուն՝ յորում հերակէս խօսէր առ բազմութ՟ի ամբոխին եկե_ղեցւոյ առ նա վ՟ս յարութ՟ն մեռելոց, այլ ար_տաքոյ ողջամիտ վ՟դպութ՟ն, (զհետ երթեալ որոգինեան վ՟դպութ՟ն) . քանզի ասէր, թէ ոչ այս մարմին յառնիցէ, որում ասացաւ, 'ի հող դառնալ՝ ուստի առաւ, այլ՝ այլ մար_մին 'ի տեղի նր՟ . և այն ը՟ս չափու հասակին՝ յորում որք վախճանին . ոչ թէ տղայոց՝ մանկ_կահասակ յառնել, և ծերոց՝ ծեր : Յայնժամ յանդիմանեաց զնա եպիփան, և ասէ . դիր փական բերանոյ քո, և ունիր չհայ_հոյել զյոյսն մեր ամենեցուն . և նոյնժա_

մայն

մայն կապեցաւ լեզու հերաքսի, և մնաց պա-պանձեալ ։ Եւ երբև զահի հարան ամենե-քեան՝ որ անդն կային, սկսաւ ինքնին եպի-փան ուսուցանել նոցա զճշմարտութիւն հաւա-տոյ յարութեան մերոյ սովին հողացեալ մարմ-նոյ՝ 'ի չափ հասակի կատարմանն Քի ։ և այպս ասէ ցհերաքս ։ արդ խօսեաց զբանն ճշմարտութեան, և լեր լսող ուղիղ վճպունն ։ յայնժամ բացաւ անդրէն լեզու նր, և խոս-տովանեալ զտգիտութիւն իւր՝ ուղղեաց զխա-լանսն ։

Իսկ եպիփանու գնացեալ 'ի վերին թեբայիդ-ար հայրն յովհաննէս՝ եկն հանդարտեցաւ 'ի տեղին կոչեցեալ բուբիղ հանդերձ յով-հաննու աշակերտաւ իւրով զամս եօթն ։ մինչև սկսան և անդ նեղել զնա մարդիկն, որք դիմէին 'ի լուր համբաւոյ նր ։ Եկն առ նա և փիլիսոփոս ումն եւդեմոն անուն ։ և յետ միջելոյ ԺԷ ամս՝ եբաց եպիփան զխա-ւարեալ աչսն միականի որդւոյ նր ։ և նոյն-ժամայն հաւատաց փիլիսոփայն ։ և եկեալ յաղեքսանդրիա մկրտեցաւ ։

Այնուհետև 'ի տարածիլ համբաւոյ եպի-փանու ԻԷ ամ եգիպտոս՝ խնդրէին զնա ձեռ-նադրել եպս ։ վյ դարձաւ յառաջին վանս իւր 'ի փիւնիկէ ։ և ոչ եգիտ անդ զհիլարիոն ։ քանզի և նա փախուցեալ 'ի բազմութենէ՝ ա-ռանձնացեալ էր 'ի պափոս կիպրոսի ։ Այց արար եպիփան և եղբարց իւրոց 'ի սպանիտա-րիոն ։ և ուրախ եղեն նքա յոյժ ընդ երջանիկ առաջնորդի իւրեանց եպիփանու եղեւսաց-ւոյ ։

ւոյ. և ը՟ խնդրոյ ն՟ց արար աղօթս յերաշ-տի, և ետ Ա՟ծ անձրև զերիս աւուրս. մինչև ի լինել հեղեղաց՝ յաղօթս եկաց, և դադա-րեաց յորդութ՟ն ջուրց:

Յաւուրսն յայնոսիկ ժողովեալ էին եպիս-կոպոսունք ի փիւնիկէ՝ վասն ընտրելոյ զոք յեպ՟սութ՟ն գաւառին. և իբրև հաստատե-ցին զբանն ի վ՟ր եպիփանու, և առաքեցին առ նա պատգամաւոր զառաքինի միայնա-կեացն պորփիւրիոս, կանխեաց ս՟ն եպիփան, և ասէ ցնա. անսա՛ ինձ որդեակ, մնասջի՛ր դու առ իս, և զերիվարդ դարձո՛ ի տեղի իւր ը՟ ուղևորս. թո՛ղ առաջնորդք եկեղեց-ւոյ ընտրեսցեն զայլ ոք հովիւ արժանա-ւոր. զի այր մեղաւոր եմ ես, և դողամ հա-մարս տալ Ա՟յ վ՟ս անձին, թո՛ղ թէ վ՟ս հօ-տին: Իսկ իբրև լուա՛ւ նմա պորփիւրիոս, ա-ռեալ զնա եպիփանու ը՟ յոհաննու աշակեր-տի իւրում՝ խոյս ետ միւսանգամ յե՟է՟մ. և եկեալ ի կեսարիա պաղեստինոյ՝ նաւեաց ի պափոս ծովեզերեայ քաղաք կիպրոսի. և անդ գտեալ զհիլարիոն՝ ուրախ եղև յոյժ. և խնդրէր տեղի առանձնութե՟:

Իսկ հայրն հիլարիոն խրատ ետ նմա՝ երթալ ի սաղամինա քաղաք կիպրացւոց. զի անդ հաճոյ է ասէ ա՟ն բնակել քեզ յօգուտ ժողո-վրդեան. այլ նա չէառ յանձն, զի մի՛ փա-ռաւորեսցի ի մարդկանէ. և յորժամ եմուտ ի նաւ՝ երթալ յասկաղոն, բռնութ՟ը հող-մոյն հարկեցաւ ելանել ի սաղամինա, և սպասել նորոգման նաւուն վտանգելոյ յա-լեաց:

լեաց : Եւ ահա 'ի նոյն աւուրս ժողովեալ էին ամ̅ եպիսկոպոսք կղզւոյն կիպրոսի՝ ընտրել զոք յեպիսկոպոսութի̅ քաղաքին Սաղամինոյ, որ և Կոստանդիա կիպրացւոց, փոխանակ Գելասիոսի խոստովանող եպիսկոպոսին վախճանելոյ. և խորհէին կացուցանել զպապ անուն ոմն՝ նշանաւոր սրբութ̅ և մկայութ̅ քնական անուան 'ի հալածանս ը̅ Գելասիոսի : Յայնժամ նա ինքն երանելին պապ՝ որ մի էր 'ի հարց անտի ժողովելոց, զի էր եպ̅ս աննշան քաղաքին կիւթրիայ՝ որ հինգ մղոնաւ հեռի 'ի Սաղամինոյ, յոտն եկաց յատենի, և ասէ. եցոյց ինձ տ̅ր արժանաւոր հովիւ Սաղամինայ քաղաքիս զհայրն Եպիփան՝ զայրն սքանչելի. որ և այժմ 'ի քաղաքի աստ է. տուք ինձ հրաման, և ես ածից զնա. և նստուցից յաթոռ եպիսկոպոսութե̅ :

Եւ 'ի հաւանիլ ժողովոյն՝ գնաց պապ եպիսկոպոսն երկու սարկաւագօք. և գտեալ զԵպիփան 'ի շուկայն՝ զի գնէր խաղող մ̅ո ընկերաց իւրոց, ասէ ցնա. Թող հայր զողկոյզդ, և եկ զկնի մեր յեկեղեցի մ̅յ. և նա գնաց ուրախութ̅ առանց ը̅ բանս ինչ ածելոյ՝ յիշելով զգրեալն. ուրախ եղէ ը̅ այնոսիկ՝ ոյք ասէին ցիս, 'ի տուն տ̅ն երթիցուք մեք : Եւ իբրև մտին յեկեղեցին, ասէ պապ ցԵպիփան, որպ̅ս օրէն էր ասել ցեկեղեցականս. աղօթեա հայր : Պնէի ես Եպիփան. ներեա հայր, զի չեմ ժառանգաւոր եկեղեցւոյ : Եւ իբրև որսացաւ 'ի բերանոյ նորա, թէ չև է առեալ և զաստիճան սարկաւա-

դի, ետ նմա զխաղաղութ՟ի, և ձգեալ յան-
դիման ս՟ր սեղանոյն՝ ձեռնադրեաց զնա
սարկաւագ. և դարձեալ տուեալ նմա խա-
ղաղութիւն՝ ձեռնադրեաց քահանայ. ապա
միաբանեալ ա՟մ ե՟պս՟ց՝ ձեռնադրեցին զնա
յե՟պս՟ութ՟ի սաղամինոյ։

Իսկ իբրև տարան զնա յեպիսկոպարանն, լայր ն՟ր
հայրն եպիփան դառնապէս. զի կորոյս զա-
ւանձնութ՟ի իւր։ Իսկ երանելին պապ մխի-
թարեաց զնա, և պատմեաց զոր եցոյց նմա
ա՟ծ վ՟ս եպս՟ութ՟ե ն՟ր. և քեզ չէ պարտ ա-
ը՟դդէմ կալ կամացն ա՟յ։ Այնուհետև բուռն
հարեալ եպիփանու՝ թէպէտև ծերացեալ
անձամբ, բայց ժիր հոգւով, 'ի հոգևոր աշ-
խատութիս վ՟ս հօտին՝ որ հաւատացաւ նմա
'ի ա՟ծ, առնէր արթնութ՟ք զցայգ և զցերեկ,
և քարոզէր անդադար զբանն կենաց՝ ունե-
լով սովորութ՟ի միշտ 'ի ձեռին կրել զաւե-
տարանն ս՟ր. խրատէր զստահակս, և ուսու-
ցանէր զտգէտս. և բազում այն էր՝ զի աքան-
չելեօք հաստատէր զոր ասէր։ Հաստատեաց
և բազում վանորայս 'ի կղզւոջն կիպրոսի, և
զարդարեաց զեկեղեցիս բարեկարգութ՟ք.
իսկ գութ ն՟ր առ աղքատս էր անչափ. մին-
չև վաճառել երբեմն և զսպասս եկեղեցւոյ
'ի բաշխել կարօտելոց։

Յորժամ եւ զառաջինն 'ի ս՟ր սեղան երանե-
լի հայրապետն եպիփան, ետես յայտնապէս
զնշանակ շնորհաց հոգւոյն ս՟բյ 'ի վ՟ր ս՟ր խոր-
հրդոյն. և նոյն սովորութ՟ի հանապազորդէր
յա՟մ նուագի պատարագելոյ ն՟ր. Ք՟զի յաղ-
թել

թել նր՟ 'ի սկզբանն 'ի ծածուկ , իսկոյն լինէր նմ՟ յայտնութի : Բայց յաւուր միում իբրև երից կրկնեաց զնոյն բան աղօթից , և ոչ ետես զտեսիլն , անկաւ յերկիւղ մեծ , և խնդրէր յայ՟ արտասուօք տալ նմա գիտել զպատճառս իրացն : Յայնմ վայրի հայեցեալ 'ի ձախակողմն սեղանոյն՝ ետես զմի 'ի սարկաւագաց , որ կայր 'ի սպասու և ունէր զքշոցն 'ի ձեռին , բորոտեալ 'ի ճակատուն . և ասէ ցնա . տուր ցիս որդեակ զքշոցդ , և դու գնա 'ի տուն քո . և նա ել գնաց . և ոչ ոք իմացաւ զպատճառս գործոյն . իսկ եպիփան ետ զքշոցն 'ի ձեռս այլոյ սարկաւագի . և նոյն ժամայն ետես զնշանն : Եւ յարձակման պատարագի կոչեալ առանձինն զսարկաւագն զայն՝ եհարց զնա սաստիւ , թէ զի՞նչ ինչ անարժան գործեալ է քո . և նա անկեալ յոտս սրբոյն՝ խոստովան եղև , զի չէր սր՟ յայնմ գիշերի 'ի լծակցէ իւրմէ : Եւ յայնմ հետէ պատուիրեաց սրբն եպիփան՝ ոչ քահանայից , նոյնպէս և սարկաւագաց՝ զգուշանալ սրբութե , և ապա մտանել 'ի սրբն սրբց 'ի ներքոյ վարագուրին կմանջրպետի քեմին : ( Զայս վայր գրեալ էր զպատմութի եպիփանու յովհաննէս աշակերտ նր . և յանկանիլ նորա 'ի մահիճս մահու՝ յանձնեաց ըզգրեալսն իւր 'ի ձեռս աշակերտակցին իւրոյ պօղիբիոսի՝ գաղտ 'ի սրբյն , գրել և զոր զկնի զգործս նր մինչև 'ի վախճան նորին . և նա արար այնպէս ; զի որում նշանակէ 'ի կարգի պատմութես նա ինքն պօղիբիոս , որ և յետոյ

եղև եպիսկոպոս ։ )

Յետ ը՟ ամաց վկայելոյ՝ այս սովորութի՟ էր սբ. հայրապետին եպիփանու, զի յա՟մ իւր դժուարինս անկանէր ՚ի վ՟ր երեսաց իւրոց յերկիր, և խնդրէր յա՟յ զեւս իւրաց. և լուեալ բարբառ, Եպիփանէ արա՛ զայս ինչ կա՟մ զայն, յառնէր և կատարէր ուրախութ՟բ. և այսպէս հրաման առեալ յա՟յ՝ շինեաց եկեղեցի մեծ ՚ի սաղամինա. զի առաջինն փոքր էր և անբաւական բազմութե՟ ։ Իսկ իշխան ոմն հեթանոս դրակոն անուն ՚ի կղզւոջն՝ որ խառտորնակի գնայր ը՟ հայրապետին, տեսեալ զսքանչելիս ս՟բյն ՚ի բժշկել նո՟ր զմանուկ նորին ՚ի հրակէզ ախտէ կողիցն, ա՟ծ և զինքն գլխովին ՚ի խօթութե՟, դարձաւ և մկրտեցաւ յեպիփանէ ա՟մ տամբ իւրով. նոյնպէս ասի դարձեալ և սինեսիոս իշխանն՝ ՚ի տեսանել զորդին իւր յարուցեալ ՚ի կեանս աղօթիւք ս՟բյն ։ Գորի ՚ի բուն վարս եպիփանու և ՚ի գիրս սողոմենեայ և այլ ինչ հանգոյն հրաշից ս՟բյն յակոբայ մծբնացւոյ. իբր զի յանցանել եպիփանու ը՟ տեղի ուրեք՝ տեսին զնա երկու միմոսք. և ասէ մին ՚ի նոցանէ ընկեր իւր. ես անկանիմ իբրև զմեռեալ, և դու խնդրեա՛ յեպսէն պատանս վ՟ր իմ, և նա արար այնպէս. և ս՟բն ընկեցեալ զվերարկու իւր ՚ի վ՟ր անկելոյն՝ գնայ. և ահա գտաւ այրն իսկապէս մեռեալ. ընթացաւ ընկերն նո՟ր անդրէն զհետ ս՟բյն, և արտասուօք ասէր. ա՛ռ աղաչեմ զզգեստ քո, և տուր կեանս՝ մեռելոյն ՚ի պատիժ անզգամութե՟

մե-

մերոյ ։ Իսկ եպիփան առէ ցնա ․ Երթ որդեակ և թաղեա՛ զնա ․ զի նա յառաջագոյն մեռեալ էր՝ մինչև խնդրել էր քո ողորմութիւն յինէն ․ և ես գիտէի՝ զի մեռաւ, վասն այն ետու զպատասխանդ ։ (4)

Դարձոյց եպիփան և զիսահակ ոմն հրէայ դիտնաւոր ․ և մկրտեալ զնա կարգեաց ընդ պաշտօնեայս եկեղեցւոյ ։ Պատմի, թէ գնացեալ իցէ սրբոյն եպիփանու և 'ի հռովմ, և բժշկեալ զանբուժելի ցաւս դստեր մեծին թէոդոսի ․ և մկրտեալ զարքայորդիսն զարկադէոս և զոնորիոս ․ և թէ 'ի դարձին բժշկեալ իցէ և 'ի կոստանդինուպօլիս զթէոդոս զհայրն նոցա 'ի հիւանդութենէ ․ և արքայորդիքն եկեալ 'ի հռովմայ՝ գտեալ իցեն զեպիփան 'ի կոստանդինուպօլիս ․ այլ այս ինչ ստոյգ է՝ զի արկադէոս, որ թագաւորեաց անդ, մեծապէս ակնածէր 'ի սրբոյն եպիփանէ ։ Իսկ այս ընտանութիւն նորա ընդ դուռն արքունի՝ ետ համարձակութիւն եւդոքսիայ թագուհւոյն կոչել 'ի խորհուրդ ընդդէմ ոսկեբերանի տիեզերալոյս պատրիարգի քաղաքին և զեպիփան ․ Եւ առաւել՝ զի սրբոյն եպիփան էր կարի բարեկամութեամբ ընդ թէոփիլոսի պատրիարգին աղեքսանդրու, որ էր գլուխ թշնամեացն ոսկեբերանի ․ և դարձեալ գժտութիւն էր ընդ մէջ եպիփանու և յովհաննու հայրապետին երուսաղեմի՝ սերտ բարեկամին ոսկեբերանի ։ Արդ յայս ժամանակս այնու ևեթ արդարանայ եպիփան, զի ոչ գոյր 'ի նմա ատելութիւն ընդդէմ սրբոյ, այլ պարզմտութիւն՝ որով

րորդ եղև առ ժամանակ մի Թէոփիլեանց . որք պատրուճակ ունէին անկարգութեանց առի զվրէժխնդրութի ընդդէմ որոգինեան վրդպութե , ոչ թէ 'ի նոյն հակամիտեալ իցեն և երկոքին նք հայրապետք՝ ոսկեբերանն և յովհան երմի . և քզի եպիփան մի էր 'ի գլխաւորաց՝ որք բնաջինջ առնել խորհէին զաղանդ որոգինեան , նմին իրի խաբեցաւ 'ի չարախօսութեանց Թէոփիլեանց . և եկեալ 'ի կոչ եւդոքսիայ թագուհւոյն՝ կուսակից երևեցաւ նց :

Չու եղև եպիփանու օթևանել 'ի վանս ուրեք՝ որ էր ընդ ձեռամբ թագուհւոյն , զի կեայր 'ի հասից նորա . և վանականքն՝ որք ստորացեալ էին յոսկեբերանէ , աղաչեցին զեպիփան առնել ձեռնադրութի . և ծերունին կատարեաց զխնդրուածս նոցա : Զայն լուեալ ոսկեբերանին՝ գիր մեղադրանաց յղեաց առ եպիփան , թէ չէր օրէն քեզ ձեռնադրութի առնել յայլում թեմի . (ոչ արարեալ էր նորա զայն և 'ի թեմս երմի) . և եպիփան պատճառս ետ զթախանձանս այլոց և զկարծեցեալ հարկ իրացն :

Ե.րդ եղև եւդոքսեայ գժտութիւն եղեալ 'ի մէջ սրբոցն . և ուրախ լեալ յոյժ՝ կոչեաց առ ինքն զեպիփան . և ասէ . հայր եպիփան տեսանեմս , զի համօրէն տէրութի հռովմայեցւոց վեր 'ի վայր լինի յերեսաց եպսին յովհաննու . արդ զոր օրինակ իմ է մարմնաւոր իշխանութիւն , նոյնպէս և հոգևորն քո՛ լիցի յամ տէրութեն . զի յանձնանձեա փառն իւրոց

հերձ

հերձուածող ոչ ևս է արժանի կալ յաթոռ
թղթականն քաղաքիս․ ա՛ղէ զոր ա՟ծ յայտնեա-
ցէ քեզ, զնա դի՛ր մեզ երկս․ և զսա 'ի բա՛ց
արտաքսեա։ Օ այս ասէր եւդոքսիա, և փըր-
փրէր 'ի սաստիկ բարկութի՟ ընդդէմ յովհան-
նու՝ իբրև անարգուհի իւրումն մեծութեան։
Պատասխանի ետ եպիփան հեզաբար․ լո՛ւր
ինձ դո՛ւստր երկայնմտու՟թ իբրև հօր․ եթէ
պարտաւոր գտցի յովհաննէս հերձուածոյն՝
զոր ասես զնմանէ, և ոչ զղջասցի, անարժան
է քահանայութե՟․ և յայնժամ զոր ինչ հրա-
մայէ ինձ մեծու՟թի ձեր, արարից․ ապա եթէ
վասն թշնամութե՟ ինչ եղելոյ կամիցիս հա-
նել զյովհան յեկեղեցւոյ, յայդմ ոչ լիցի
քեզ խորհրդակից ծառայ ա՟ծ եպիփան։ Նա-
զայս գիտեա՛, զի ինքնակալութիւն առաւել
անկ է ներող լինել անիրաւութեց․ քանզի
և ձեր տէր գոյ յերկինս՝ թագաւոր թագաւորաց
և տէր տերանց․ որում զօրհանապազ մեղանչ-
չէք․ այլ նա երկայնամիտ լինի առ ձեզ․ որ
և տացէ յաւիտենականի անուն 'ի յուրում․ եղե-
րո՛ւք գթածք, որպէս և հայրն ձեր երկնաւոր
գթած է։

Յայնժամ ասէ թագուհին մոլեգին․ եթէ
խափան ինչ լինիցիս հա՛յր եպիփան աքսորա-
նացն յովհաննու, բանամ զտաճարս կռոց, և
առնեմ զյետոյինն չար քան զառաջինն։ Իբրև
լուաւ զայս այրն ա՟յ եպիփան, եթող զա-
կանմջս և թօթափեաց զոտիսն՝ ասելով․ ան-
պարտ եմ ես յայսմ գատաստանէ․ և ել ար-
տաքս վաղվաղակի 'ի պալատանէն․ և փութայր

մեկնիլ և 'ի քաղաքէն ։ Բայց եւդոքսիա եդ բանս 'ի բերանս ներքինեաց իւրոց՝ հատուցանել յունկն յովհաննու, թէ եպիփան ես ձեռնադրեաց 'ի տոմար աքսորանաց քոց ։ Այս և ոսկեբերան գրեաց առ եպիփան այսպէս ․ ով սքանչելիդ եպիփան՝ որ յօժարեցար յանկումն իմ, և ետուր ձեռնագիր վճ իմոցս աքսորանաց, մի՛ նստցիս և դու յայսմ հետէ յաթոռ քո ։ Գրեաց և եպիփան պատասխանի առ նա այսպէս ․ ով նահատակդ քրիստոսի յովհան՝ վկայդ ճշմարտութե, յաղթեցեր և յաղթեսցիս ․ զի որպէս ես ոչ հասից յաթոռն իմ, նոյնպէս և դու ոչ հասցես 'ի տեղի աքսորանաց քոց ։ Եւ 'ի կամացն այ կատարեցան գուշակութիւնք երկոցունց սրբոցն, որք առժամանակ մի մարդկօրէն գժտեալ էին ընդ միմեանս, այլ տեսութ հոգւոյն ծանեան զանմեղութիւն իւրերաց և զօրինակ փախճանի միմեանց ․ Ըստ որում սբ ոսկեբերանն յերկրորդ նուագի անդ արտասահմանութե իւրոյ մեռաւ 'ի ճանապարհի աքսորանացն, և թաղեցաւ 'ի կոմանա ․ և սբն եպիփան մեռաւ 'ի նաւի՝ 'ի դարձին իւրում 'ի կիպրոս ։

Քանզի յետ տեսանելոյ եպիփանու՝ թէ չիք հնար խաղաղել զթագուհին զցասուցեալն ընդդէմ ոսկեբերանի, գնաց տալ ողջոյն հրաժարական արկադեայ կայսեր ․ եհարց զնա կայսրն՝ թէ քանի՞ ամք են քո ․ և նա ասէ ․ 'ի վաթսուն ամաց հասակի եղէ եպկս ․ և ունիմ արդ յեպսութե ամս յիսուն և հինգ, և ամիս երիս ։ Եւ ապա մեռաւ 'ի նաւ 'ի նմին

ժամ

քակ տաւսր՝ երթալ 'ի Կիպրոս, հիւանդացաւ 'ի նաւին. և կոչեալ զերկոսին աշակերտսն իւր՝ որ ը̅ նմա էին, խօսեցաւ նոցա խրատս հոգեշահս, և ետ պատուէր զոր ինչ ունէին առնել զկնի վախճանի իւրոյ։ Եւ ցնաւավարսն ասէ. աղօթս արարէք որդեակք, զի 'ի սոյն աւուրս լինելոց է մրրիկ մեծ 'ի ծովուս. այլ մի երկնչիք. զի ոչ ումեք 'ի ձէնջ հասցէ ինչ վնաս։ Եւ ահա ը̅ մտանել արեգականն յարեաւ մրրիկ յոյժ, մինչև մերձ յընկղմիլ նաւուն. և տևեաց ալեկոծութիւն զերկուս և զերիս աւուրս։ Յայնժամ ասէ սբ̅ հայրապետն Եպիփան. եթէ ոչ կատարեսցի բանն ա̅ծ̅ն [illegible], խաղաղութիւն ծովուս ոչ դադարէ. և ինքն հասեալ 'ի հոգեվարս՝ համբուրեաց զաւետարանն սբ̅, զոր միշտ կրէր 'ի գրկի. և հրամայեաց արկանել խունկ 'ի կրակն, և յաղօթս կալ. ետ փառս ա̅ծ̅յ, և օրհնեաց զթագաւորն Արկադէոս հանդերձ ամ̅ քրիստոնէիւք, և զնա՛ որ 'ի նաւին էին. և ողջունեաց զամենսին՝ աւանդեաց զհոգին իւր առ ա̅ծ̅. և առժամայն դադարեաց ծովն, և եղև խաղաղութիւն. և էր սբ̅ն Եպիփան Ճ̅ և ժե ամաց։

Արդ յորժամ եհաս նաւն 'ի նաւահանգիստ Կիպրոսի, լու եղև 'ի Կոստանդիա քաղաք՝ որ և Սաղամինա աթոռն Եպիփանու, և յամ̅ կղզին՝ փոխումն սբ̅յն. և հորդան տուեալ անհամար բազմութիւն ելին ը̅ առաջ խնկօք և մոմեղինօք. և հանեալ զերանելին 'ի ցամաք՝ արարին կոծ մեծ 'ի վերայ նորա։ Ասի՝ թէ

Թէ երեք կայրք կարդացին զանուն նր̃՝ աւետե-
լով ․ ո՜վ ս̃րբ ա̃յ այր , զի և մեք արժանի լի-
ցուք երկրպագել ս̃րբ նշխարաց քոց ․ և նոյն-
ժամայն բացան աչք նոցա ։ Նոքա աւետաւ
ածին հանդիսապէս զմարմին սրբոյն 'ի մեծ
եկեղեցին՝ զոր ինքն շինեալ էր ․ և ամփոփե-
ցին զնա 'ի տապանակ մի՝ ցանեալ 'ի վերայ
մեղր հանդերձ օծանելեօք ․ և պատրաստե-
ցին տեղի գերեզմանի նորա 'ի մէջ տաճա-
րին ։

Այլ եղև յայնժամ հակառակութիւն ․ քանզի
սրբ̃ հայրապետն 'ի կենդանութեան իւրում պա-
տուհասեալ էր զայետիոս եպ̃ս՝ որ յաղան-
դոյն վաղենտիանոսաց ․ և տարագրեալ էր
արքունի հրամանաւ 'ի կղզւոյն կիպրոսի ըղ-
համախոհս նորա , որպէս և զայլ աղանդա-
ւորս՝ որք կոչէին սիմոնեանք , նիկողայիտք ,
ափիտեանք կիւօձայիտք , բասիլիդեանք , սա-
բէլեանք , կարպոկրատեանք ․ և զաւազումս
եւս 'ի նոցանէ ձգեալ էր նորա 'ի հօտէ ուղ-
ղափառաց ։ Արդ 'ի ժամու թաղման սրբոյն՝
արք երկու , ղոնգինոս և պետրոնիոս՝ որք
առ երեսս դարձեալ էին յաղանդոյն վաղեն-
տինեայ , ընդդէմ կացեալ պնդէին՝ թէ չէ՛
օրէն թաղել զդա յեկեղեցւոջ ․ որպէս և ինք-
նակալքն արգելին աւետն զայս ․ իսկ ուխտ
եկեղեցւոյն վիճէր ը̃ նոսա՝ թէ այդ օրէնք
ոչ են 'ի վր̃ սրբոց ա̃յ ․ և գիտեմք ասեն՝ զի
և ինքնակալն արկադէոս հաւանի է ընդ այս ։
Այլ յետ տասնօրեայ հակառակութեան՝ իբրև
հանդերձեալ էին թաղել զսրբ̃ն , յայնժամ
եր-

երկու այն արք բուռն հարին լրբութեան զատա-
պանակէն , և ոչ կամէին թողուլ . յայնժամ
'ի կարդալ սարխինոսի սարկաւագի զաղ̃ն 'ի
վրէժխնդրուն , պատժեցան արքն չարաչար
հարուածովք, և արագ ապախաձան եղեն ։ Իսկ
քահանայք հանդուցին զատապանակ սրբոյն 'ի
պատրաստեալ տեղւոջ սաղմոսիւք և երգովք
հոգևորօք . և գրեալ ծանուցին զայս ամ̃
արկածեալ կայսեր . և նա սուգ եառ վասն
մահուան մեծին եպիփանու աւուրս խ . և
գրեալ հրովարտակ առ ուխտ եկեղեցւոյն
սաղամինայ՝ եցոյց զիւր զկատարեալ հաճու-
թի̃ է̃ թաղումն սրբոյն 'ի տաճարի ն̃յ . աւէ .
զոր եկեաց՝ 'ի վեր քան զօրէնս մեր՝ ոչ կա-
միմք ներքոյ արկանել օրինաց մերոց . մանա-
ւանդ թէ կարեմք իսկ ոչ օրինօք զայդ առ-
նել ։

Արդ եղև՝ փախձան սրբոյն եպիփանու, որ կիպ-
րացի կոչի յանուն աթոռոյն , յամի տ̃ն 403 .
'ի մայիսի . 12 ։ Իսկ զաթոռն կոստանդեայ
քաղաքի կիպրացւոց կալաւ յետ նորա սաբի-
նիոս . որ և գրեաց զօրինակ թաղմանն նորին
'ի թուղթն , որ առ պողիքրիոս եմ̃ս աշակերտ
եպիփանու յեգիպտոս ։ Եթող մի̃ հայրն ե-
պիփան յիշատակ անմոռաց յեկեղեցւոջ ըղ-
լուսաւոր վ̃յ պուլթիւս իւր . քանզի գրեաց նա
բազմապատիկ ճառս ներբողեանս 'ի վերայ
տնօրինական տօնից փրկչին , և բանս խրա-
տականս բազումս յաղագս ողորմածութե̃ և
այլոց առաքինութե̃ց . որպէս և մեկնութի̃
սաղմոսաց . գրեաց և գիրս յաղագս ուղիղ
հա

հաւատոց և վարուց՝ անքոռաղոն կոչեցեալ, որ թէ խարիսխ կենաց մարդկան. և գիրս ընդդէմ ամ՟ հերձուածոց և աղանդոց եղելոց 'ի սկզբանէ մինչև ցաւուրս իւր. և այլ բազում ինչ պիտանի և օգտաշահ. յորոց բազումք կան մինչև ցայսօր. և իրաւամբք դասեցաւ 'ի կարգս ժ՟ը վրդպաց եկեղեցւոյ.

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Ի խաչատար վարք սրբոյն Եպիփանու, որ աստ գրեցեալ 'ի յոմն հանէ և 'ի պողիբիոսէ յաշակերտաց նորա, գտանի ցարդ յունարէն 'ի հին մատենանս վատիկանեան. որ և տպագրեալ է 'ի կարգի գործոց Եպիփանու 'ի պետաւիոսէ յիսեան. և այն է՝ զոր 'ի մետափրաստեսէ առեալ 'ի մէջ բերէն լատիներէն լիպոմանոս և սուրիոս: Եւ նոյն պատմութիւն համառօտիք են հին թարգմանութի 'ի Ճառընտիրն մեր Զ. ուր գրի՝ * վն վախճանին ոք և երանեալ հայրապետին Եպիփանու կիպրացւոյ, 'ի նորին պատմութենէն ||. որպէս և 'ի Ճ. Բ. գրի բովանդակութի պատմութեն՝ համգոյն Հ. Ց. և Լ. և 'ի վճ՟ բերի. * և այլ բազում նշանս արար սբն եպիփան, զոր գրեալ է 'ի կատարել՟ պատմուե վարուցն նր ||: Եւ զի այս այսպէս. յերկուց ծայրայեղ խոտորմանց զգուշ կալ պիտի իմաստուն քննողաց՝ որոց զբօսն զայն ընդարձակ պատմութի յակին արկանեն. զի ոչ զամենայն բանս իբրև անստեղի ստուգութե պաշտել, այլ թօթափել զ'ի բանից կուսակցութե և 'ի շատախօսութենց՝ զկարգ պատմութեն զի կարի պահել. և ոչ յանարժեմառձն հայեցեալ և 'ի կուսակութի հրաշից՝ խապառ ընդունելու, և զողջոյն իսկ զպատմութիւնն յերկբայս արկանել. ուզ յանիրաւի արար բարեպաշտ բոլլանդեան. շատ է մեզ առ այժմ, զի և ինքն ասէ, թէ հին է յոյժ այն ընդարձակ վարք Եպիփանու:

(2) Որչափ ստոյգ է այս անցք գնոստիկեանց, զոր ինքնին սբն եպիփան պատմէ, նոյնչափ և 'ի դէպ գայ ընթացից վարուցն զի մերուսն տեսութե: Այլ զարմանալին այն է, զի տարապայման կշռուն քաղին բարեպ-

բու-

„ ռու՝ վարդապետս իւր լեալ յառաքելոցոյն, և ապա ա֊
„ ռեալ զԾարտարարոյն գրեան 'ի նոյն դիւանէն եղե֊
„ ալոյ, և զնացեալ քրիստոնէութե հաւատոյ. որոյ
„ անուն եպիփանոս. զոր խնդրեալ զացես լցուցանել
„ զփափաքս քո: Յայնժամ մեսրովպայ օգնականութե
„ 'ի բարեխնամ եպիսկոպոսէ գտեալ. և անցեալ ընդ
„ փիւնիկէ ('ի խնդիր եպիփանու). 'ի սամոս գիւտ.
„ քանզի եպիփանու վճարելով զկենցաղս՝ թողեալ լի֊
„ նի աշակերտ մի՝ անուանեալ հռուփանոս՝ հրաշալի
„ արուեստիւ հելլէն գրչութբ. որ 'ի սամոս էր միայ֊
„ նացեալ. առ սա երթեալ մեսրովպայ ||, եւն: Թող
այժմ առասցէ բարեպաշտ, թէ ոչինչ ընթերցեալ լինի
այլուր զայսմ եպիփանէ. և թէ ծաղրական է վճռելն
նր զրօվք Ծարտարարաց ՟Է ս͞ին եպիփանու, և ապա հա֊
ւատայն 'ի ձեռն սքանչելեաց: Այսպէս սուտ լինի
ծաղրելի, որ ծաղրէ զճշմարտութբ վարուց ս͞րց:

(4) Զինչ և ասիցէ բարեպաշտ, քաջ միաբանի և սոզո֊
մենոս մերձաւոր ժամանակաւ ՟Է նախկին գրչաց վա֊
րուց եպիփանու՝ 'ի պատմել անդ զայս անցս միմեանս
մեռելոյ. որպէս և զայլ հրաշս ս͞րն հաստատէ աանէ
՟Էհանեալ բանիւս յաւելն. Է. 27. * Զսա՛ն եպիփան
„ ոչ միայն առաքինի քաղաքավարութ նր պայծառ քա֊
„ ղեաց, այլև սքանչելեօք՝ զորս արար ած 'ի պատ֊
„ ուել զնա, եթէ 'ի կենդանութե նր, և եթէ զկնի
„ մահուանն: (Եւ յարէ) Քանզի ասի, թէ յետ վախ֊
„ ճանելոյ նորա՝ որ 'ի կենդանութեն չէր գիտեալ.
„ դեւք հալածին առընթեր գերեզմանի նր, և ցաւք ո֊
„ մանք բժշկին ||: Զինչ պանծալի քան զայս. այլ ան՞ս
զինչ ձեռնարկէ քաջն բարեպաշտ. ուրեմն 'ի կենդա֊
նութե նր չեն լեալ բժշկութիւք դիւահարաց և ախտա֊
ժետաց, որք գրին 'ի վարս նորա: Այլ եթէ անպատշա֊
հայեր այլն երբեմն, այդ բան սոզոմենեայ հայի 'ի մե֊
ծացուցանել զնշանսն յետինս քան զառաջինս, և ոչ 'ի
ժխտել. զի սովորութի է մարդկան զսքանչելիսն եղեալս
յաւուրս իւրեանց մեծ եւս համարել քան զորս յառա֊
ջագոյն: Ուր թողից զայն, զի քս ասաց զաշակերտաց
իւրոց՝ թէ մեծամեծս եւս քան զայնս գործեսցեն. և
միթէ սովաւ փոքրկացուցանէ՞ր զիւր աճագործ նշանս.
քաւ լիցի. այլ զի եւ նոցա առնել և զայնպիսիս՝ զոր
ինքն ոչ արար. զորօրինակ հովանեաւ և թաշկինակաւ
բժշկել զհիւանդս. եւն:

ՎԱՐՔ

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Կոստանդիանոսի Թագաւորին, և մօրն նորա սրբոյ դշխոյին Հեղինեայ ։

Հ. ՋՅ. Մայիս. 21 ։ Լ. (Վասն հարց". առ Անտոն. Մայիսի. 2.) Վասն Հեղինեայ. Օգոստ. 18 ։ Բոլլանդեանք. Հատ. Է. Մայ. 21. Եր. 12 = 27. և Հատ. Դ. Օգոստ. 18. Եր. 548 = 654 ։ Նաւեէ. ՚ի Վարս հարց. և այլ պատմիչք յն. և լտ ։ Եւսեբն. Է. 80 = 85. և այլ պատմագիրք Հյ ։ (1)

ՊԱՐԾԱՆՔ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ և սիւն հաւատոյ՝ առաջին հաւատացեալ ինքնակալ, մեծասէր և բարեպաշտ կայսր Հռովմայեցւոց՝ և հիմնադիր Նորոյն Հռովմայ Կոստանդինուպօլսի, մեծն Կոստանդիանոս Թագաւոր՝ որդի էր Կոստասայ կմ Կոստանդեայ կայսեր՝ Քլոռոս կոչեցելոյ ՚ի դեղնադալար գունոյ հերացն, ծնեալ յառաջ քան զկայսերութիւն հօր իւրոյ ՚ի Հեղինեայ բիւթանացւոյ, զոր ոմանք բրիտանացի ասացին (2) ։ Քանզի որպէս գրեն միաբանս սբն Ամբրոսիոս և սբն Մովսէս Խորենացի և այլք յոլովք՝ զոյգ Բ բանից սբյ վկային Եւսեբիոսի որ առ Յուլիանոսիւ (3), ՚ի ժամանա-

նա

նակին՝ յորում առաքեցաւ կոստաս զօրավա-
րութ՚ք ՚ի հրամանէ ինքնակալաց ՚ի կողմանս
արևելից, յանցանել իւրում իե բիւթանիա
ասխացւոց՝ արար իջավանս ՚ի գիւղն դրեպա-
նայ (որ յետոյ հեղինուպօլիս կոչեցաւ). և
անդ տեսեալ զկին մի գեղեցիկ պանդոկա-
պան, կին դուստր պանդոկապետի՝ հեղինէ
անուն, մերձեցաւ ՚ի նա, բանս եդեալ ընդ
նմա՝ և նշանս իմն տուեալ, զի թէ ծնցի որ-
դի, ընդ ժամանակին ժողովեսցէ զնա հան-
դերձ որդւով առ ինքն իբրև օրինաւոր ա-
մուսին իւր, և ՚ի մեծ փառս հասուսցէ. քան-
զի և ինքն իսկ ակն ունէր կայսերութե։ Եւ
եղև յորժամ ծնաւ հեղինէ զաւակ արու,
անուն եդ նմա կոստանդիանոս, ընդ կոստան-
դեան կամ որդի կոստայ. զի յայտնի լիցի՝
թէ ո՛յր որդի է։

Իսկ հայր նորա կոստաս դարձ արարեալ
յաղթութ՚ք ՚ի հռովմ, որքան զօր մեծանայր
և սիրելի լինէր յաչս ինքնակալաց դիոկղե-
տիանոսի և մաքսիմիանոսի. մինչև յետ քա-
նի մի տարւոյ՝ յամի տէն. 292. ընտրեցաւ ՚ի
պատիւ կեսարութե իբր որդեգիր և գա-
հակից կայսերաց, հանդերձ մաքսիմիանո-
սիւ գաղերիոսիւ՝ որ մականուանեալ էր ար-
մենտարիոս, ընդ է անդէորդ։ Այլ առ հա-
ճանելոյ սոցա յայս պատիւ՝ կամեցան ինք-
նակալքն փեսայացուցանել զնոսա ինքեանց.
և առ այս՝ ստիպեցին ՚ի բաց արձակել զա-
ռաջին կանայս իւրեանց, և առնուլ զդըս-
տերս իւրեանց. և ըստ յանձն առեալ զկին՝

 զկի

փեսայացան ինքնակալաց : Կն զի արմենտարիոս եթող զիւրն, և եառ 'ի կնութի զգաղերիա վաղերիա զդուստր դիոկղետիանոսի. և կոստաս լռեաց առ ժամն զհեղինեայ՝ որ չէր առ նմա, և թողեալ զմիւս այլ զառաջին կին իւր՝ յորմէ կային նորա այլ զաւակք, եառ իւր 'ի կնութի զթէոդորա ըզխորթ դուստր մաքսիմիանոսի հերակլեայ կայսերակցին դիոկղետիանոսի :

Յետ ամաց՝ յորժամ երկոքին կայսերքն դիոկղետիանոս և մաքսիմիանոս յարուցին ահագին հալածանս 'ի վերայ քրիստոնէից, և ինչ ոչ օգտեցան, ձանձրացեալ 'ի գործոց իւրեանց անտի և յայլևայլ զբաղմանց, և 'ի ծերութեն մերձեալ՝ կամեցան հրաժարել յինքնակալութէ (որ էր սքանչելի տեսչութի ողորմութենն այ). այլ զի մի 'ի թողուլ միայն զտրութեն միւսն առանձին սեպհականեսցէ ինքեան, միաբան դաշն եդեալ՝ 'ի միում աւուր մերկացան 'ի ծիրանեաց իւրեանց, և զգեցուցին զայնս երկոցունց կեսարացն՝ յն արմենտարիոսի և կոստայ, կացուցեալ զնս թագաւորս հռովմայեցւոց և կայսերս ինքնակալս, յամի տն 304 : Եւ էր բաժին տրութե կոստայ յառաջնմէ իսկ ծն բրիտանացւոց, գաղղիացւոց և սպանիացւոց, հանդերձ ջերմակայ սահմանօքն արևմտեայց. որ և յետ զօրանալոյ յիշխանութեն ետ բերել առ ինքն զհեղինէ. ուր յառաջագոյն կոչեալ էր զորդին ևեթ զկոստանդիանոս 'ի բրիտանիա. վյ և կարծեցաւ յոմանց,

թէ կոստանդիանոս որդի կոստայ իցէ հայրե-
նեաց բրիտանացի կամ անգղիացի. նոյնպէս և
զհեղինէ յայնմ ազգէ ասացին լինել:

Բայց ունէր կոստաս առ իւր և զայլ վեց զա-
ւակս յայլմէ կնոջէ, այս են համահայրք և
ոչ համամայր եղբարք կոստանդիանոսի.
յորս չորեքին ոչ քաջ յանուանէ յիշատակին.
մի կոստանդոս հայր յուլիանոսի ուրացողի,
անաբաղդղիանոս, դաղղոս, և կոստանդիա
քոյր նց՝ որ եղև կին լիկիանոսի կեսարու:
Սոյն իբրև ետես կոստաս զորդի իւր զկոս-
տանդիանոս, ուրախ եղև յոյժ, և սիրեաց
զնա առաւել քան զամ որդիս իւր. զի էր
պատանի առոյգ և անձնեայ, աջողակ և կո-
րովի, իմաստուն և զուարթամիտ. վյ ըն-
տրեաց զնա իբրև անդրանիկ և ժառանգ
առանձինն տէրութե իւրոյ՝ յառաջ քան զկայ-
սերութիւնն, որդիացուցեալ զնա և դիոկ-
ղետիանոսի: Սա նախ՝ որպէս զի արդեամբք
ստասցի զգահ հայրենի, զգեցոյց նմա տէր-
բունական իշխանութի, և արձակեաց որպէս
զօրավար եօթն բիւր հեծելոց ըդդէմ բար-
բարոսաց. և նորա քաջութբ մղեալ զպա-
տերազմ՝ վանեաց զթշնամիս, և դարձաւ
մեծաւ յաղթութբ ՚ի հռովմ: Յայնժամ ա-
պա խրատամբք կացոյց զնա յաջորդ իշխա-
նութե իւրոյ, յամի տն իբր 298. և յետ լի-
նելոյ իւրոյ կայսր՝ պսակեաց զկոստանդիա-
նոս կեսար, և արար իւր զգահակից՝ յամի
304 կմ 305. վյ ասեն ոմանք, թէ՝ և զմայր
նր զհեղինէ՝ դշխոյ անուանեաց: Սա քան-

զի

զի ինքն Կոստաս էր այր բարեսէր և զգօն , և հասու փոքր 'ի շատէ սնոտութեան հեթանոսութեան , խնամ ունէր 'ի վերայ քրիստոնէից եղելոց ընդ ձեռամբ իւրով՝ վասն պաշտելոյ նոցա զմի միայն Աստուած ճշմարիտ , և ոչ զբազմութիւն դից . և ընդ նմին խրատէր զորդի իւր զԿոստանդիանոս՝ յանդորրու պահել զԱստուածապաշտս , և մի նմանել անագորոյն բարուց կայսերաց ժամանակին՝ նախորդաց և գահակցաց , որք դառն հալածիչք եղեն քրիստոնէից . միանգամայն և աւանդէր նմա քաղցր լինել առ Աստուած հպատակս , և արդարակորով յոյժ :

Սա եղև Կոստայ սակաւակեաց լինել 'ի կայսերութեան . և 'ի մեռանել նորա Թագաւորեաց փոխանակ նորա որդի նորա Կոստանդիանոս յամի Տեառն 306. 'ի 25. յուլիսի , հաւանութեամբ իշխանաց և զօրաց՝ ընդ պատուիրելոյ հօր նորա . բայց տակաւին ոչ կոչէր Թագաւոր Հռովմայ և ինքնակալ , այլ սոսկ կեսար կամ Թագաւոր միոյ մասին կայսերական իշխանութեան . զի տակաւին կենդանի էին կայսերք հրաժարեալք Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս . և ունէին զայլևայլ կեսարս 'ի դիմաց իւրեանց յայլևայլ բաժինս տէրութեան յարեւելս և յարեւմուտս : Սա յառաջորդելն իսկ Կոստանդիանոսի յաթոռ հօր իւրոյ՝ եղև կամակցութեամբ նոյն ինքնակալաց . զի սիրելի էր յաչս նոցա Կոստանդիանոս , և որդեգիր և փեսայ անուանեալ նոցա առ կենդանութեամբ հօր իւրոյ . վասն զի յետ վաղամեռիկ

լինելոյ առաջին կնոջ իւրոյ մեռելոյ կամ աթենայ՝ յորմէ ծնաւ զկիրիապոս, էառ ըզ-մաքսիմինա, որ և փլաքիանէ մաքսիմիանէ փաւստա՝ դուստր մաքսիմիանոսի, նոյն և իւր որդեգրութ̃ զորգցես դուստր կոչեցեալ դիոկ-ղետիանոսի. սորին մի և կոստանդիանոս երկոցունցն եւս փեսայ կոչի առ մատենա-գիրս: Իսկ 'ի լինել այսր հարսանեաց կայ-սերական շքով 'ի նիկոմիդիա քաղաք բիւթա-նացւոց՝ անդ գտաւ և մերս տրդատ որդի խոսրովու արքայի հայոց. և յայնմ ժամա-նակէ հետէ եղև ընտանութի և սերտ բա-րեկամութի 'ի մէջ կոստանդիանոսի և տրդա-տայ:

Արդ յորժամ նստաւ կոստանդիանոս կեսար փոխանակ հօր իւրոյ կոստայ կայսեր՝ եւ շրջիւր զսահմանօք հայրենի իշխանութե իւրոյ 'ի բրիտանիա, 'ի գաղղիա և 'ի սպանիա. և զնոյն մարդասէր կամս ցուցեալ առ հպատակս իւր՝ սիրելի և գովելի եղև յաչս ամենեցուն: Իսկ ժողովեալ զզօրս իւր՝ խաղաց 'ի վր̃ գեր-մանացւոց և 'ի վր̃ մասին ինչ գաղղիացւոց վտարանջելոց յիւրմէ, և այլոց եւս բարբա-րոսաց՝ որք առ հռենոսի́ և որք առ արև-մտեան ովկիանու. և նուաճեալ զապստամ-բութի նոցա՝ դարձոյց զնս 'ի վայրենի բա-րոյից յընտանութի. և դարձ արարեալ յաղ-թութ̃ և փառօք՝ ընկալաւ զշուք կայսերա-կան անուան օգոստոս կմ̃ սեբաստոս՝ յամի տն̃ 308:

Այնուհետև դարձոյց զմիտսն յայլ կողմանս

ինք,

ինքնակալութեան ընդարձակել զաւազուկ տէրութեան իւրոյ և յաղթահարել զայլ կեսարս, որք բռնաւորութեամբ վարէին զիշխանութիւն հռովմայեցւոց յայլևայլ սահմանս տիեզերականութեան ։ Քանզի մաքսենտիոս որդի մաքսիմիանոսի հերակլեայ բռնացեալ 'ի կողմանս հռովմայ՝ դարձոյց զհայր իւր յառաջին պատիւ ինքնակալութեան , զի ինքեան հասցէ բովանդակ տէրութիւն կայսերութեան . և արար իւր համախոհ նաև զմաքսիմիանոս արմենտարիոս զկեսարակիցն կոստայ և կոստանդիանոսի ։ Նաև քեռորդի նորին արմենտարիոսի միւս այլ մաքսիմիանոս՝ կամ մաքսիմինոս դաժ կոչեցեալ՝ բռնացեալ էր յարևելս , և հալածէր զքրիստոնեայս 'ի կողմանս Ասին եգիպտոսի . Թող զլիկինիանոս՝ որ կացուցեալ էր կեսար յարմենտարիոսէ , և էր բռնաւոր դժնեայ՝ թշնամի քրիստոնէից ։ Նաև սևերոս այլ ոմն կեսար՝ որ կեսարակիցն էր մաքսիմիանոսի դաժայ , թէպէտև յարձակեցաւ ընդդէմ մաքսենտիոսի բռնակալին ; այլ չարաչար խորտակեալ՝ սպանաւ 'ի կողմանս հռովմայ մօտ երիցն կրպակաց ։
Զայս ամ լուեալ կոստանդիանոսի՝ վառեցաւ պատրաստեցաւ բառնալ զբռնակալութիւն մաքսենտիոսի 'ի հռովմայ . զի այնուհետև դիւրացի նմա նուաճել զայլսն ։ Այլ մտախոհ լեալ 'ի սրտի իւրում , թէ չարաչար վախճանեցան գործք մաքսիմիանոսի արմենտարիոսի կայսեր և սևերոսի կեսարու , որք բազմութեամբ զօրաց երթայքն 'ի պատերազմ ,

բարուոք համարեցաւ զմի ա̃ծ երկնից պաշ-
տել ը̃ն խրատու հօր իւր կոստայ ։ Ս̃ոյ ըս-
կսաւ աղաչել զմի ա̃ծ ճշմարիտ՝ տալ ինքեան
լոյս ճանաչելոյ զնա , միանգամայն և յաջո-
ղութիւն առաջիկայ մարտին . քանզի երկիւղ
մեծ ունէր ՚ի թշնամեաց , և բեկեալ իսկ էր
սիրտ նր̃ ՚ի խորտակմանէն սևերոսի . որպ̃ս
և ինքն փոքր մի յառաջ վտանգեալ էր ՚ի յու-
սալ իւրում ՚ի սնոտիս ։

Այն ինչ այսպիսեաւ վարանէր խորհրդով
զճանապարհայն , յանկարծակի ՚ի տեղւոջ
ուրեք ՚ի լոյս տուընջեան եղև նմա յայտնու-
թիւն մեծ ՚ի վերուստ . քանզի իբրև սկսեալ
էր արևն զմիջօրէիւ̂ անցանել և յարևմուտս
կողմ խոնարհիլ , ետես յայտնապէս նշան խա-
չի լուսեղէն յօրինուածով երևութացեալ
յերկինս , աստղանիշ գրով պարունակեալ ,
այսու յաղթեա ։ Զայն նշան ահեղ և սքան-
չելի տեսեալ կոստանդիանոսի կեսարու և
ա̃մ զօրաց նորա՝ որք գնային ը̃ն նմա , զահի
հարեալ առհասարակ յապուշ կրթեցան ։
Յայնժամ սկսաւ կոստանդիանոս ևս քան
զևս խռովիլ ընդ միտս իւր և վարանիլ , թէ
զի՞նչ խորհուրդ իցէ նորատեսիլ այն երև-
ութի յերկնից . և մինչև ցերեկոյ ՚ի նոյն
մտածութիւն յուզեալ՝ ոչ կարէր ՚ի մ̃ր հասա-
նել իրացն ստուգութե̃ ։

Ապա ՚ի ժամանել գիշերոյ՝ իբրև ՚ի քուն ե-
մուտ ալեկոծ մտօք և տխուր սրտիւ̂ , երևե-
ցաւ նմա ք̃ս ՚ի տեսլեան հանդերձ նովին աւ-
տեղեայ նշանաւ խաչի երևելոյ ՚ի ցերեկի .
և

և պատուիրեաց նմա, զի զդրօշակն զխնուէր-
բութեան կազմեալ ՚ի նոյն ձեւ նմանութեան խա-
չի՝ զայն ՚ի կիր արկանիցէ ՚ի պատերազմունս
իւրև նշան յաղթութեան և զէն ամրութեան ան-
վանելի : Յայնժամ զարթուցեալ կոստան-
դիանոսի ուրախութե՛ ՚ի հրաշալի տեսլեանն
անտի՝ հաստատեաց ՚ի միտս իւր ոչ պաշտել
զայլ ա՛ծ, բայց միայն զոր երեւեցաւն նմա :
Նա հրաման տուեալ կոչել առ ինքն ՚ի քրիս-
տոնէից զքահանայս ա՛յ զխորհրդազգածս
զազգ՛նի խորհրդոյս՝ հարցանէր ՚ի նոցանէ,
թէ ո՞ իցէ ա՛ծն այն քն՞ անուն. և զի՞նչ ցու-
ցանիցէ նշան նշ՛, որ երեւեցաւ նմա և՛ յաղթ-
նութե, և՛ ՚ի քուն գիշերոյ :

Նոքա ասեն. նա ինքն է ա՛ծ ճշմարիտ՝
միոյ և միայնոյն ա՛յ միածին որդի. իսկ նշանն
երեւութացեալ՝ կնիք է անմահութե և նշանակ
յաղթութեն, զոր արար նա տէ՛ր մահու
յերեւիլ իւրում մարմնով ՚ի վ՛ երկրի. և
սկսեալ ՚ի բանիցս յայսցանէ՝ քարոզեցին նմա
զփրկական խորհուրդ տնօրէնութե բանին :
Նա թագաւորն ա՛մ փափաքմամբ ունկն դնէր
վ՛պութե քրիստոնէից. և ՚ի միտ առեալ
զվերնական այցելութի՛ն՝ եթէ բարձրեալն
ինքնին եկաւ զնա յա՛ծգիտուհ, սքանչանայր
և զգուշաբերութեանայր յանձն իւր :

Նա ՚ի հաւանել իւրում ՚ի մի ՚ի քաղաքաց՝
յորժամ պատահեաց թագաւորն առանձինն
խորհրդակից բարեկամաց իւրոց զտեսիլն՝
զոր ետես, եւ կոչել առ ինքն փութանակի
զճարտարս յարհեստի ոսկեգործութեան և

ակնագործութեն . և բազմեալ ՚ի մէջ նոցա՝ բացադրեաց նմ մի ըստ միօջէ զձև և զօրինակ խաչանիշ դրօշակի , և հրամայեաց կազմել զայն յոսկւոյ և յականց պատուականաց . և նոքա անյապաղ կատարեցին զնմ : Իսկ էր յօրինուած նորին՝ ըստ գրելոյ Եւսեբի Կեսարացւոյ , որ արժանի եղէ անել տեսանել յետ ամաց ինչ զդրօշակն զայն , օրինակ զայս :

Նուն խաչանշանիս էր զաւազան ոսկւով պատեալ իբրև զերդարդն երկայն . նոյնպէս և Թևք խաչին ձևացեալք յոսկեպատ ձողոյ ձգելոյ ընդ մէջ բնոյն : ՚Ի գագաթան խաչին հաստատեալ էր պսակ փառացի՝ ոսկեկուռ և ականակապ : ՚Ի չորեցունց անկեանց միջակի խաչին՝ ուր չորեքին Թևք միաւորին , ՚ի դուրս ցայտէին շառաւիղք չորեքկին ոսկեճաճանչք՝ ՚ի ձև յունական տառիս խի X , կմ հայերէն տառիս Ք . որ է սկզբնատառ անուանս Խրիստոս , Քս : Իսկ որ ՚ի գագաթան զարդ պսակին՝ ՚ի կողմն մի վայրաբերեալ՝ ձևացուցանէր զկիսաբոլոր . որ միացեալ ընդ բնոյն՝ կազմէր զյունական տառն րօ՝ P , կմ զհայերէնն Ր . որ է երկրորդ տառ անուանս Քրիստոս . և զայս երկտառ նշանակ կրէր յետոյ Կոստանդիանոս նաև ՚ի գլուխ սաղաւարտի իւրոյ : Իսկ ՚ի միջակէ խաչին և ՚ի վայր՝ կախեալ էր պաստառ դրօշակի ՚ի ծիրանւոյ՝ քառակուսի հաւասար ընդ լայն և ընդ երկայն՝ ոսկեԹել ականակապ զարդու փողփողեալ . և ՚ի մնացուածն խաչի ՚ի ստորին կողմն բնոյն ( ուր այժմ սովոր

են

նն զենել բազումք զնշանակ մահու , կմ ըզ-
գլուխն ադամայ , ) դրոշմեալ էին ոսկենկար
պատկերք նորին մծասէր թագաւորին կոս-
տանդիանոսի և որդւոց նորա՝ կիսարձան , ըն
միջով չափ մինչև 'ի լանջս :

Մերձ գայր սիկնում , որ է նշան և դրօշակ՝
իւրն խաչվառ յառաջաբերեալ կոստանդիա-
նոսի առաջի բանակին իւրոյ , խաղաց գնաց
ընդդէմ բռնաւորին մաքսենտեայ և գործակ-
ցաց նորա , հաստատուն յուսով ապաւինեալ
'ի զօրութին երևեցելոյն նմա՝ վանել խռպու-
զթշնամին : 'Ի նոյն միտս վառեալ և զօրքն
նմ՝ արարին և նոքա այր իւրաքանչիւր նշա-
նակս խնչ խաչի 'ի վր սաղաւարտից կմ զրա-
հից և զինուց՝ յայլ և այլ նիւթոց , զոր առ-
ձեռն պատրաստ գտին 'ի ժամուն . և զնմա-
թամիս յառաջեցին 'ի պատերազմ :

Այս սովին օգնով և զօրութբ ամենայաղթ
նշանին միջամուխ լեալ կոստանդիանոսի յե-
տալիա՝ յամի տն . 312 . երիցս 'ի դիմի հարաւ
սակաւաձեռն գնդաւ բազմամբոխ զօրացն
մաքսենտեայ . և երիցս վանեալ խորտակեաց
զնոսա : Իսկ 'ի չորրորդումն նուագի , որ օր
իը էր հոկտեմբեր ամսոյ ( զոր սմանք նոյնա-
ցուցանեն ընդ իդ . աւուր սեպտեմբերի՝ յա-
րուցմունս զխաչն , ուստի սկսանի և ընդդէկ-
տիոնն յունաց , ) 'ի գլուխ տարաւ զկատա-
րեալ յաղթութն յանդիման բնակչաց հռով-
մայ առ միլվիան կամրջաւ . յորում 'ի վայր
գլորեալ մաքսենտեայ 'ի գետն տիբերիս՝ կո-
րեաւ . և այնպէս տիրեաց մեծն կոստան-
դիա

դիանոս կայսերական քաղաքին Հռովմայ և
բովանդակ իտալիոյ մինչև ցափրիկէ և ցե-
գիպտոս. և անուանեցաւ 'ի ծերակուտէն
միահեծան իշխանակալ Հռովմայեցւոց, բար-
ձեալ հեռահեռէ զամ բռնաւորս, և տիեզե-
րապետեալ արևմտից և արևելից։

Յայնմ ժամանակի՝ յամի տն 315. զկնի
մեղքիադեայ Հռովմայ հայրապետի՝ նստաւ
յաթոռ սրբյն պետրոսի մեծն սեղբեստրոս՝
եւսեբիոս (որ բարեպաշտ) կոչեցեալ, լու-
սաւորիչ արևմտեան ազգաց. զի որպէս սրբն
գրիգոր 'ի Հայաստան Ց գործակցութեամբ
տրդատայ՝ լոյս ծագեաց արևելեայց իբր եր-
կոտասան կմ չորեքտասան ամօք յառաջ քան
զդարձ կոստանդիանոսի, նոյնպէս և սրբն
սեղբեստրոս գործակցութբ կայսերն կոստան-
դիանոսի լուսաւորեաց զծերակոյտն Հռով-
մայ և զամ արևմտակողմն. տեղի ետ այնու-
հետև խաւար կռապաշտութե, և պայծա-
ցան եկեղեցիք քի։

Իսկ թէ կոստանդիանոս եւ յայնժամ ընդ-
կալաւ զսբ մկրտութի 'ի սեղբեստրոսէ, ոմն
աւանդեն յիշատակարանք պահին Հռովմայ,
եթէ մօտ 'ի վախճան իւր մկրտեցաւ, որպէս
ցուցանէ կեսարացին եւսեբիոս և այլք զնորա
բանից զհետ երթան, չէ ինչ։ Այս ինչ բա-
ստյգ է, զի խորենացին՝ որ քաջ գիտէր զմիտս
բանից եւսեբեայ, և չէր ինչ հեռի ժամա-
նակաւ, ոչ ըստ նորա խօսի, այլ հանդերձ
վկայութբ ագաթանգեղոսի ժմկակից և ա-
կանատես մատենագրի՝ զՀռովմայեցւոցն
ա-

ւանդս երկրորդէ առանց ՟Ը բանս ինչ ածե-
լոյ , ունելով բանին այսպէս . ( Գիրք . ՟Է . Գլ.
80 . ) * Բայս կոստանդիանոս . . . յառաջքան
,, զթագաւորելն ( ՟յն զինքնակալելն ) , մինչ-
,, դեռ կեսար էր , պարտեալ 'ի մարտս , և
,, տրտմու՟ք մեծաւ ննջեալ , երևութացաւ
,, 'ի քունն նմա խաչ աստեղեայ յերկնից՝ պա-
,, րունակեալ գրով , ասէ , այսու յաղթեա՛ .
,, զոր արարեալ սիգնոն ( ՟յն նշան ) և յառաջա-
,, բերեալ պատերազմացն յաղթեաց : Բայց
,, յետոյ հրապուրեալ 'ի կնոջէ իւրմէ 'ի մաք-
,, սիմինայ դստերէն դիոկղետիանոսի ( կմ՟
մաքսիմիանոսի դահակցին դիոկղետիանո-
,, սի , ) յարոյց հալածանս եկեղեցւոյ . և
,, զբազումս վկայեալ՝ ինքն ելեփանդական
,, բորոտու՟ն ՟Ը բոլոր ընկալեալ մարմնոյն
,, ապականեցաւ վասն յանդգնութ՟ն . զոր
,, ոչ կարացին բուժել արիովկեան կախարդ-
,, քըն և մարսիկեան բժիշկքն . յաղագս որոյ
,, յղեաց առ տրդատ՝ առաքել նմա դիւթս
,, 'ի պարսից և 'ի հնդկաց . սակայն և այնք
,, ոչ հասին նմա յօգուտ : Ո որ և քուրմք
,, ոմանք հրամայեցին 'ի դիւցն խրատուէ՝
,, բազմութ՟ն տղայոց զենուլ յաւազանս , և
,, ջերմ լուանալ արեամբ , և ողջանալ . որոյ
,, լուեալ զլալիւն մանկանցն՝ հանդերձ մարցն
,, կականմամբք , գթացեալ մարդասիրեաց
,, նոցա , լաւ քան զիւրն վարկուցեալ փրկու-
,, թ՟ն : Յաղագս որոյ զփոխարէնն ընդունի
,, յ՟յ յանրջական տեսութ՟ց , յառաքելոցն
,, առեալ հրաման՝ սրբիլ լուացմամբ կեն-

,, [illegible]

,, սատար աւագանոյն 'ի ձեռն սեղբեստրոսի
,, եպիսի հռովմայ · որ 'ի նմանէ հալածա֊
,, նացն թաքուցեալ էր 'ի սերապտիոն (կմ
,, 'ի սորակտէ) լերինն · յորմէ և աշակեր֊
,, տեալ հաւատայ, զբազմաւորսն մկրտանա
,, լով ընդ յերեսաց նորա · որպէս համառօտ
,, ուսուցանէ քեզ ագաթանգեղոս ։

Յայտնի է և յայլոց մատենագրաց մեւս ևս չարուն մաքսիմինայ փաւստայի, որ ետ առն իւրում կոստանդիանոսի սպանանել զորդի իւր զկրիսպոս զհաւատացեալն 'ի քս · քանզի կինն անզգամ տռփեալ 'ի խորթ զաւակ իւր կրիսպոս 'ի ծնեալն 'ի մինեռվայէ, և ոչ կարացեալ որսալ զնա 'ի կամս չարութե իւրոյ՝ չարախօս եղև առաջի հօրն, որպս թէ մանուկն բռնաբարեալ իցէ զնա 'ի պղծութի · և հայրն բարկացեալ՝ ետ կարճել զնա 'ի կենաց · այլ յետոյ 'ի վր հասեալ՝ թէ անպարտ էր մանուկն, սրբջացաւ յոյժ, և զնա կինքն զչարեացապարտն զմաքսիմինա չարաչար պատուհասեաց · մինչև սատակեցաւ նա տանջանօք ։

Բայց 'ի դառնալ կոստանդիանոսի բոլորովին և 'ի լուսաւորիլ ածպաշտութբ 'ի սբյն սեղբեստրոսէ, ուրախութի մեծ եղև մտերիմ բարեկամի նր տրդատայ արքայիս մերոյ · վսյ առեալ զէ իւր զսբ լուսաւորիչն մեր՝ գնաց 'ի հռովմ յողջոյն կոստանդիանոսի և սեղբեստրոսի ։ Իսկ ո՞ կարէ պատմել զհոգևոր ուրախակցութի ածասէր թագաւորաց և սբ հայրապետաց զէ միմեանս վս տիեզերական լու֊

լուսաւորութե և պայծառութե եկեղեցեացն քի , և զսէր նց միաբանական . զոր և ուխտիւք հաստատեցին . ոչ պատմէ ագաթանգեղոս՝ որ էր առաջինկայ եղելոցն ամի . ըղնոյն յիշատակէ և խորհեցին այլովքն համդերձ ։

Իսկ մայրն կոստանդիանոսի բարեյիշատակ և ժրագլուխ դշխոյն Հեղինէ՝ կարծի յոմանց վաղ քան զորդին եկեալ յածգիտութի , և պատճառ լեռնիկք դարձի նր . այլ ոչ այլոց՝ յետոյ լուսաւորեցաւ , և որդին եղև ոչ իմիք պատճառ դարձի մօրն (4) . քանզի ասի՝ թէ 'ի ժամանակս լուսաւորութե կոստանդիանոսի՝ Հեղինէ ոչ էր 'ի Հռովմ , այլ՝ 'ի բիւթանիա արևելից , կամ 'ի բրիտանիա արևմտից . և իբրև լուաւ զնմ անցս որդւոյն , զարմացաւ . զի թէպէտև ծանուցեալ էր նր զստութի հեթանոսական բազմածութե , այլ ոչ խրատու հրէից կարծէր՝ թէ ճշմարիտ ածպաշտութին խնդրելի իցէ յազգէն եբրայեցւոց , և թէ չիցէ արժան հաւատալ 'ի մեսիայն եկեալ , այլ՝ որ գալոցն է ։ Բայց իբրև եկն դշխոյն 'ի Հռովմ , ստուգագոյն քննեալ զճանապարհն ճշմարտութե լուսաւորեցաւ և ինքն 'ի սբյն սեղբեստրոսէ , և մկրտեալ՝ ջերմ հաւատով պաշտէր զքս . և այնպէս ածասէր կայսրն և ածասէր դշխոյն որ ժէ զօր յաւելլուլին 'ի հանդէս բարեպաշտութե , և բանիւ և օրինակաւ ձգէին զամենեսին առաքելաբար 'ի սբ հաւատս քի ։ Կոստանդիանոս արքունի հրովարտակօք խափա-

փա

փախնէր զն̃մ պաշտամանս դից , և զտաճարս կռոց՝ էր զոր կործանէր , և էր զոր փակէր , և զարձանս դրօշելոյն տայր պատել և աներևոյթ առնել . և զոմանս 'ի մեհենից տայր սրբել և տաճարացուցանել ա̃յ ճշմարտի , և զայլ ևս եկեղեցիս 'ի հիմանց շինել , և համարձակ պաշտել զքրիստոնէութի̃ն ը̃ն ա̃մ տեղիս : Նա և հեղինէ յա̃մի յորդորիչ և ձեռնտու լինէր որդւոյն . և ինքն ևս բազում եկեղեցիս և վկայարանս կանգնէր յարևմուտս և 'յարևելս : Նա որ մեծն է , ը̃ն տեսանել զօրդին գործել ինչ տիրաբար արքունի իշխանութ̃բ արտաքոյ քան զօրէնս՝ մայրենի համարձակութ̃բ 'ի լաւ անդր յեղափոխէր . և ոչ թողոյր զնա խոտորիլ յաջ կմ̃ յահեակ , այլ զարքունական զնաւ ուղղոտայն . և 'ի տեսանել զառաքինի վաստակս նր̃՝ ևս քան

զևս յորդորամիտ առնէր զնա :

Իսկ հպատակութ̃ն ինքնակալին առ մայր իւր , և յարգութ̃ն՝ զոր ընծայէր նմա , ոչ գոյր չափ . մինչև գեղեցիկ և անթերի լնուլ զա̃ծային պատուիրանն պատուելոյ զծնօղս . վ̃ն զի ա̃մ խոնարհութ̃բ լսօղ լինէր բարի բարի խրատուց մօրն , և ոչ թողոյր անկանիլ միոյ 'ի բանից նր̃ 'ի գետին : Միանգամայն և արքունի փառացի շքով մեծարանաց պատուաւորեալ զդշխոյ մայր իւր՝ հրամանն ետ , զի ոսկի դրամ հատցի յանուն նր̃ . 'ի մի կողմ̃ն եդեալ , * փլաբիա հեղինէ օգոստա տիրուհի || . և 'ի միւս կողմանն , * ապահովութիւն հասարակապետութ̃ն || . և պատուիրէր , զի 'ի

'ի բերանոյ ամ դասուց զօրացն արքունի՝ որ 'ի քրիստոնէից և որ 'ի հեթանոսաց , օգոստափառուհի և ինքնակալուհի՝ ( այս է աւգուստա և իմբերատրիքս ) վերաձայնեցի դշխոյն Հեղինէ ։ Եւ ոչ այսչափ միայն, այլև զիշխանութիւն արքունի զանձուն գլխովին յանձն արար 'ի ձեռս մօրն ․ զի քս գթասէր բարոյիցն առատապէս բաշխեսցէ 'ի պէտս կարօտելոց և 'ի շինութի եկեղեցեաց , և յամի՝ զիա՛րդ և կամք իցեն նմա ։

Բազում ինչ արար ածասէր թագաւորն կոստանդիանոս նաև յօգնականութի հովուապետութե սրբյն սեղբեստրոսի , և պանծալի հանդիսացոյց զգահն հռովմայ ․ զի զամ պէտս եկեղեցեաց լնոյր ամ խնամով ․ և 'ի լինել խնդրոյ վն բանի հերեսիովտաց ժամանակին՝ 'ի գործ դնէր զարքունի իշխանութի իւր՝ սանձել զանուղղայս ըստ խրատու սեղբեստրոսի , զոր պատուէր ամ հպատակութե իբրև հայր հոգւոյ իւրոյ ։

Եւ պանծալի ևս ցուցաւ այս հանդէս բարեպաշտութե կոստանդիանոսի 'ի տիեզերական ժողովն նիկիոյ՝ ձեռնարկութբ սեղբեստրոսի յամի ․ 325 ․ ուր հարկեալ 'ի փոխանորդացն քի և յամ հայրապետաց սրբոց՝ նստաւ 'ի մէջ հարց , այլ ընտրելով անձին տեղի ստորին , և ոչ զբարձրագահն՝ զոր ընծայէին նմ ․ և քս սահմանելոյ սրբյ ժողովոյն բոլորով սրտիւ ընկալեալ զուղղափառ դաւանութի արտաասահման արար զհերեսիովտապետն զարիոս և զգործակիցս նորա զգլխաւորս ։

Բայց

Բայց քանզի աղուէսաբարոյն արիոս եցոյց
զղջումն յոյժ , և միջնորդ կալաւ զբազումս
յեպիսկոպոսաց համախոհից իւրոց , անդէ-
տացեալ թագաւորին զչարութի խորհրդոց
նց՝ յետս դարձոյց զարիոս կրկին զղջացեալ .
և յայս պատճառանաց բազումն նեղութի և
ալեկոծութի կրեաց ածասէր թագաւորն ։
Սն զի առ առաւել երկիւղածութեն՝ յար-
գութի մեծ ցուցանէր առ ամ քահանայս այ
և պաշտօնեայս եկեղեցւոյ . իսկ 'ի հակա-
ռակիլ եպսայ ը̃ եպսուն և երիցանց ը̃ ե-
րիցունս՝ ոչ գիտէր , թէ որում կողմանն
ունկն մատուցանիցէ ։ Նաև թէպէտև սխա-
լել սխալեաց երբեմն՝ եղեալ 'ի բանս արիո-
սեան և կիսարիոսեան արանց , այլ ոչինչ են
զարմանք . զի և երևելի եպսունք ոչ սակաւ
նաւակոծեցան յալեկոծութե անդ մեծի ,
զոր կրեաց եկեղեցին յայնմ ժամանակի .
բայց յայսր ամի վր բարեպաշտ թագաւորն
ոչ երբէք երկմտեաց յուղղափառ վկյութէ ,
այլ զնիկիականն հաւատամատուն պահեաց հա-
ւատս ուղղափառութե մինչև 'ի մահ ։

Օ այնու ժամանակաւ փոխադրեաց կոս-
տանդիանոս ինքնակալն և զաթոռ իւր 'ի
հռովմայ 'ի բիւզանդիոն՝ 'ի գեղեցկագոյն
սահմանս կիտի արևելից և արևմտից՝ 'ի ծագ-
սահմանաց ասիոյ և եւրոպիոյ . զոր մեծա-
ցոյց և ամրացոյց պարսպօք , և զարդարեաց
ազգի ազգի շինութեք , եկեղեցեօք և վկայ-
արանօք . և անուանեաց նոր հռոմ . այլ
բնակիչքն և ամ կոչեցին զայն՝ կոստան-

Ժ.Օ. [illegible]։

դինու պոլիս , որ կոստանդիանոսի քաղաք , և պարզանկս՝ պալատ կմ արքունիք , և Թագաւորեալ քաղաք ։ Արար շինուածս բազումս զամ աւուրս իւր և 'ի բազում այլ քաղաքս . Եւ շինել և եկեղեցիս ոչ սակաւ յայլևայլ տեղիս յարքունի գանձուց . ոպ և յԵրմ 'ի
ձեռն մօր իւրոյ 'ի գնալ նր անդր ։

Քանզի ամենայն դշխոյն Հեղինէ մեծապէս տենչմամբ փափաքեալ գիւտի պատուական խաչափայտին քի Թաղելոյ 'ի գողգոԹայ լերին , և հրաման առեալ յայ 'ի տեսլեան վն այնր բանի , եւ գնաց 'ի սբ քաղաքն Երմ . և խնդիր արարեալ՝ եգիտ սքանչելեօք զփափաքելին . որպս է տեսանել 'ի կատարեալ պատմուԹե տօնի գիւտի սբ խաչին . ըստ որոյ ասէ և խորենացին . ( Է . 84 . ) * Քանզի
,, շապուհ ( երկայնակեաց՝ արքայ պարսից )
,, աղաչեաց զյաղԹօղն կոստանդիանոս՝ խնդ-
,, րել զհաշտուԹիւն և զխաղաղուԹիւն մշանջե-
,, նաւոր . զոր արար իսկ սբն կոստանդիա-
,, նոս ։ Յետ այսորիկ առաքեաց զհեղինէ
,, զմայր իւր յԵրմ 'ի խնդիր պատուական
,, խաչին . զոր և եգիտ իսկ զփրկական
,, փայտն հանդերձ հինգ բևեռօք 'ի ձեռն
,, յուդայի հրէի , որ ապա եկաց եպս յե-
,, րուսաղէմ ॥ ։

'Ի շրջիլ ապա հեղինեայ 'ի տնօրինական ուխտս սբյ քաղաքին՝ շինեաց եկեղեցիս և մատուռս բազումս 'ի պատիւ սբ ծննդեան և չարչարանաց և յարուԹե և համբարձման փրկչին 'ի տեղիս անդ ածային տնօրէնուԹե .

յորս երևելի էր հոյակապ տաճարն կանգ-
նեալ 'ի տեղի գիւտի խաչին՝ իբրև շինուած
նորին հեղինեայ . և առաւել մեծավայե-
լուչ եկեղեցին ս̃բ յարութե̃ն՝ իբրև 'ի կոստան-
դիանոսէ շինեալ . զի դշխոյն հեղինէ ոչ ե-
հաս տեսանել զկատարումն նորա . այլ յետ
մահուան նորա կոստանդիանոս կատարեաց
զայն , և արար մեծաւ փառօք զնաւակատիս
այնր տաճարի՝ 'ի ձեռն մեծահանդէս ժողո-
վոյ եպիսկոպոսաց :

Բայց ա̃ծասէր դշխոյն շինեաց և զեկեղե-
ցին՝ որ 'ի բեթղեհէմ , 'ի մէջ առեալ զտեղի
ծննդեանն ք̃ի 'ի յայրին . նոյնպէս և զմիւս
այլ՝ որ 'ի լերինն ձիթենեաց 'ի տեղւոջ համ-
բարձման տ̃ն . ուր և յայտնի սքանչելիք ցու-
ցան . զի 'ի սալայատակ առնել անդ զտա-
ճարն՝ անհնար եղև շինողաց ծածկել քա-
րամբ զերկու ոտնաչափ տեղիս , որպէս և ոչ
զմիջնայարկն գմբեթին զուգահայեաց 'ի
նոյն վայր կարացին ծածկել . որով յայտ-
նի եղև ոտնատեղին և ճանապարհ վերելից
փրկչին 'ի պահու համբարձման : Հեղինեայ
ընծայլին և այլ եկեղեցիք վաղուց շինեալք
'ի պաղեստին . զոր 'ի գեթսեմանի 'ի վ̃ր գե-
րեզմանի ս̃բ ա̃ծածնի , և ծնողաց ն̃ր յովակի-
մայ և աննայի . և 'ի տեղւոջ անդ պարտիզի՝
ուր զարեան քրտունս եհեղ տ̃րն . և 'ի բեթ-
ղեհէմ յանուն անմեղ մանկանց . և 'ի տեղ-
ւոջն՝ ուր հրեշտակն աւետարանեաց հով-
ուաց , այլովքն հանդերձ :

Տեսեալ հեղինեայ դշխոյի յե̃մ զբազում

կուսանս նուիրեալս այ՝ եցոյց նոցա գութ և մարդասիրութի յոյժ. կոչէր զնս ՚ի ճաշ իւր. և այնչափ ջերմ սիրով խանդաղատէր զնոքօք, մինչև դժպատեհ համարել զոք յիւրոց աղախնայց կարգել ՚ի սպաս նոցա, այլ ինքնին սփածեալ զենջակ՝ պաշտէր զնս ՚ի մատակարարել զկերակուր, և ՚ի մատուցանել զբաժակ, և ՚ի լնուլ ջուր ՚ի ձեռս նց. և այնպէս դշխոյն տիեզերական՝ աղախին աղախնայցն քնի զանձն առնէր: Նաև զի բազումք այն էին ՚ի կուսանաց, որոց ոչ էր մենարան առանձնութե, այլ ՚ի տան հանդարտէին, շինեաց նոր կուսաստանս առ եկեղեցեօքն՝ զորս կառոյց, և նշանակեալ զանուանս նց ՚ի գիր՝ կարգեաց ռոճիկս արքունուստ ըստ բաւականի իւրաքանչիւր մենաստանաց, եղեւ իբր մայր կմ մայրապետ կուսանացն պաղեստինոյ. նորոգեաց և շինեաց և զայլ բազում վանորայս միանձանց՝ արանց և կանանց յայլևայլ տեղիս:

Նաև ոչ ՚ի պաղեստին միայն այսպս բարեգործեաց ածասէր դշխոյն, այլև ըս գրելոյ Եւսեբեայ, ըն ամ արևելս յածեալ արքայավայել մեծագործութբ՝ անթիւ բարիս եցոյց յաճախութբ՝ քաղաքաց քաղաքաց և անձանց առանձնականաց. և գանձս բազումս առատաձեռնեաց զինուորական դասուն. իսկ աղքատաց և տառապելոց՝ է զի ինչս և է զի զգեստս բաշխէր առատապէս. զբազումս ՚ի բանտարկելոց արձակեաց, զայլս յաքսորանաց յետս դարձոյց. և զհարստահարեալս

՚ի բռնութենէ հզօրաց ազատեցոյց : Մենե-
ցուն բարերարել փութայր , և առ ամենե-
սին մարդասէր և հեզ ցուցեալ լինէր • առա-
ւելագոյն խոնարհութիւն սէր և պատկառանս
յարգութեան ընծայէր դասուց միայնակեցաց
և եկեղեցականաց :

Նաև ջերմեռանդն աղօթասիրութիւն նորա և
ստէպ կանխել յեկեղեցիս՝ օրինակ բարէ
տուաւ ամենեցուն • հանապազօրդ կանխէր
( ասէ Եւսեբիոս ) ՚ի տաճարն յանդիման ա-
մենեցուն , և ազնիւ սպասուք զարդարեալ
պայծառացուցանէր զեկեղեցիս և զվկայա-
րանս , ոչ անտես առնելով և զմատռունս իսկ
փոքրիկ քաղաքաց : Նա էր տեսանել զսքան-
չելի դշխոյն , զի պարկեշտ և վայելուչ ձևով
կայր յեկեղեցւոջ ընդ այլ բազմութեան ՚ի կար-
գի անդ կանանց , ոչինչ խտրելով զտեղի
շքեղ կմ՛ անշուք • և կայր յաղօթս անմռունչ
խոնարհական ցածութեամբ՝ օտար յիշխանաւո-
րութենէ և ՚ի փառաւորութենէ • և այնպէս զիւր
առ ած կրօնասիրութիւն ամ՛ կարգօք բարե-
պաշտութեան յայտնի կացուցանէր • վյ և ած
փառաւորեաց զնա աստ և ՚ի հանդերձե-
լումն : Եկաց [illegible] անցաւ կենօք , և կատա-
րեալ առողջութե՛ հոգւոյ և մարմնոյ • և հա-
սեալ ՚ի հասակ ութսունամեայ՝ խաղաղութե՛
վճարեաց զկեանս : Նա ՚ի ժամ աւանդմանն
հոգւոյն բազմապատիկ խրատս բարեպաշտ
և ածասէր վարուց իբրև կտակ թողոյր որդ-
ւոյ իւրում , օրհնելով զնա ամ՛ հոգևոր
օրհնութե՛ • զի այս է ասէ իմ փափաք ո՛վ որ-
դեակ

դեակ իմ, զի ածսիրութբ և մարդասիրութբ
նշանաւոր եղիցիս. զհոգիդ զարդարեսցես
ած առաքինութբ անմահն յամբարտաւա-
նութե, և զմրութիդ խնամով տնտեսես-
ցես. և զլուխ ամի՝ ան ծառայեսցես ահիւ
և դողութբ։ Եւ ապա ողջունեալ զամենե-
սին՝ աւանդեաց զհոգին 'ի ձեռս այ։

Յայնժամ մեծն կոստանդիանոս սուգ առեալ
'ի վերայ մօր իւրոյ՝ արար նմա յուղարկաւորու-
թին կայսերական, և թաղեաց պատուով 'ի
փառաւոր շիրմի. զոր ոմանք ասեն լինել 'ի
կոստանդինուպօլիս 'ի նորն հռովմ 'ի տա-
ճարի առաքելոց, ուր պատրաստեալ էր և
զիւր գերեզման. և այլք 'ի հինն հռովմ 'ի
ճանապարհին լաւիկանայ 'ի վկայարանի սրբոյն
մարկեղինոսի և պետրոսի (5)։ Իսկ առաջ-
նոյն իբրև սոսոյգ աւանդի, թէ յետ ժամա-
նակաց փոխադրեցաւ մարմին նորա 'ի կոս-
տանդնուպօլսոյ 'ի վենետիկ, և եդաւ 'ի
կղզւոջն՝ որ յանուն նր կոչի սրբ հեղինէ. ուր
ընդ երկրորդին դնեն ոմանք փոխադրեալ ըզ-
մարմին նր 'ի հռովմայ 'ի գաղղիա. բայց
յայտ է թէ այլևայլ մասունք նշխարաց նր
սփռեալ կան ընդ ամ եւրոպիա. և յիշատակ
նր պաշտի յամ եկեղեցիս. և բազում սքան-
չելիք պատմին 'ի յիշատակագիրս և նշանք
բժշկութե՝ բարեխօսութբ նր։ Ասի՝ թէ
ածասէր դշխոյն էր նաև գրասէր և ընթեր-
ցասէր յոյժ. մինչև ընծայել նմա ոմանց և
գրուածս ինչ բարեպաշտականս։ Վախճան
նր եղև յամի ան իբր. 330։

Իսկ բարեպաշտ ինքնակալն Կոստանդիանոս հետեւօղ գտեալ յամի մայրենի առաքինութեանց և խրատուց՝ փայլէր գեղեցիկ հանդիսիւ՝ ածպաշտութե և արդարադատ իշխանութե․ մինչև համբաւ բարեպաշտութե նր և երախտիք մարդասիրութեն ծաւալեցաւ ընդ ամ եկեղեցիս քրիստոնէից․ թող զբազմութի եկեղեցեացն՝ զոր շինեաց և պայծառացոյց․ ուր և լսէր զնշխարաց սրբց մարտիրոսաց՝ տայր շինել վկայարանս 'ի վերայ գերեզմանի նց, կամ 'ի տեղւոջ կատարման նոցա․ բաշխեաց և գանձս յոլովս 'ի պէտս աղքատաց և յայլ գործս բարեպաշտութե․ որք և իւրումն առատաձեռնութե էր գործ՝ զոր ինչ արար մայր նորա յամ տեղիս արքունի ծախիւք։

Իսկ 'ի վերայ այսր ամի՝ զարքունի իշխանութի իւր, որով մեծացաւ քան զամ թագաւորս իւրոյ ժամանակի, ոչ անձին ինչ ընծայէր, այլ՝ այ․ նմին իրի և յը բանից ագաթանգեղոսի ականատես վկայի՝ ածակարգ թագաւորութի զիւր թգւորութին անուանէր․ և ինքն այնչափ ածասէր եղև և այ սիրելի, մինչ զի հրեշտակ յերկնից երևեալ ը առաւօտս առաւօտս, այն՝ որ պահապանն էր նր, զորհանապազ սպասաւորէր նմա․ և զքնեան նշան թագին առեալ՝ 'ի նորին գլուխ դնէր․ և այսպէս տեսեալ զերկնաւոր հրեշտակն յիւրում սպասաւորութե երանելին և ցանկալին ամ թագաւորաց Կոստանդիանոս՝ զիւր թագաւորութե զծիրանիսն քնի աւանդէր

ածա

ածատէրն . և աստուածպաշտութիւն գեր 'ի վերոյ ամենեցուն գտեալ՝ հաւատովք հաստատէր զթագաւորութիւն իւր , և յամենեկեղեցիս հաստատէր զնոյն հաւատս ճշմարտութեան ։ Դարձեալ արժանացաւ երանելին Կոստանդիանոս տեսանել յայտնապէս զՀրեշտակն՝ որ սպասաւորէր անձին յանկողնայ մեծքնայ հայրապետի . ոչ տեսցես 'ի վարս նորա ։

Աստանօր գրէ և Եւսեբիոս ականատես վկայ վասն Կոստանդիանոսի , թէ սա միայն գտաւ յինքնակալս հռովմայ՝ որ զԱստուած զթագաւորն ամենեցուն գերագոյն բարեկրօնութեամբ պաշտեաց , և սա միայն զվճպութիւն Քրիստոսի ազատաբերան քարոզեաց ամենեցուն ; և զեկեղեցի նորայ այնպիսի պատուով և փառօք պայծառացոյց ։ Այլ ոչ յայտ է յելից իրացն , եւ ոչ ընմանն նմա գտաւ և 'ի յաջորդ կայսերս հաւատացեալս 'ի Քրիստոս . և որք բարեպաշտ գտան 'ի նմանէ , ( որոց գլուխ մեծն Թէոդոս Ծանաշէր , ) զսա կալան օրինակ , և զսա ծանեան գլուխ աստուածպաշտութեան ինքնակալաց , և պատճառ դարձի ամենայն հռովմայեցւոց 'ի քրիստոնեական հաւատս ։

Արդ այսպիսի կարգօք աստուածպաշտութեան լցեալ զաւուրս իւր առ թագաւորն կոստանդիանոս , յերեսներորդի երկրորդի ամի թագաւորութեան իւրոյ փոխեցաւ յաստեացս յերկնից թագաւորութիւն , 'ի հասակի իւր վաթսուն , կամ վաթսուն և հինգ ամաց՝ յամի տեառն 337 . 'ի մայիսի . 22 . յաւուր հանդիսի սրբոյ պենտեկոստէին՝ զհասարակ աւուրբ , յաջ-


րան

րան աւանի՝ որ յարուարձանս Նիկոմիդեայ, մահկանացուաց թողեալ (առ Եւսեբի) զմահկանացու նշխարս իւր, և զանմահական մտանս զհոգին զզարդարեալն ա̃ծգիտութ̃բ և ա̃ծսիրութ̃բ միաւորեալ ընդ ա̃յ իւրում։

Այս եղև հանգիստ նո̃ր պատուով, որպիսի ոչ ումեք լեալ էր 'ի կայսերաց. քանզի զառաջինն սուրբ մեծ աւուրն 'ի վ̃ր մարմնոյ նո̃ր աւագանին հանդերձ ազատագունդ զօրօք 'ի տեղւոջն՝ ուր վախճանեցաւ. և ապա բարձեալ զպատուական մարմինն 'ի մահճաց՝ եդին յոսկեղէն տապանակ պատեալ արքունի ծիրանեօք, և ընթերէշքով մեծաւ 'ի թագաւորեալ քաղաքն 'ի կոստանդինուպօլիս՝ հանգուցին 'ի գլխաւոր սենեակն արքունեաց 'ի բարձրագահ տեղւոջ. վառեցին շուրջանակի ջահս և մոմեղէնս 'ի վ̃ր ոսկի աշտանակաց. և բազմեցուցեալ զմարմինն 'ի մէջ նոյն տապանակին՝ զմուսեալ ազնիւ խնկենեօք, ծիրանազգեստ՝ թագապսակ՝ կայսերաշուք, զցայգ և զցերեկ հսկէին պահէին բազմութ̃բ արանց պատուականաց. մինչև՝ եկեալ հասանիցեն և արքայորդիքն կոստանդին, կոստանդ, և կոստաս։ Յայնմ վայրի գայլին ժողովէին զօրավարք և հազարապետք, կուսակալք և դատաւորք, և ա̃մ պաշտօնեայք թագաւորութ̃ե. և մատուցեալ առաջի տապանակին՝ ո̃ղջ օրէն էր յանդիման լինել ինքնակալի, ծնրադրական երկրպագութ̃բ ողջունէին զնա իբրև կենդա

դանի . յետ նոցա ծերակոյտն և ա̃մ աւագա-
նի պալատանն նոյնօրինակ երկրպագութ̃
մեծարէին . ապա և այլք 'ի մեծամեծաց քա-
ղաքին, և գլխի ժողովրդականք՝ արք և կա-
նայք անհամար բազմութ̃ :

Եւ ուր և լաւելի լինէր մահ բարեպաշտ ինք-
նակալին՝ առ հասարակ ազազգեաց լինէին .
և ես առաւել 'ի մեծն հռովմ մնացեալ ծե-
րակոյտն ա̃մ ժողովրդեամբ ազգի ազգի նը-
շանակս ազոյ և յարգութե առ վախճանել
կայսրն յանձինս բերէին . երանելի և ա̃մծա-
ւէր զնա կարդային, և միակ արժանաւոր
ինքնակալ հռովմայեցւոց զնա ձայնէին . և
արձանս և պատկերս յանուն նորա կանգ-
նէին՝ ոչ միայն իբրև թ̃գւորի, այլ իբրև
առն ա̃յ և ս̃բյ . մինչև նկարեալ երկնային
կամարս՝ 'ի խորանս երկնից փառօք բազ-
մեալ զնա ձևացուցանէին . և ձայն բար-
ձեալ բողոքէին, զի մարթասցին 'ի հռովմ
տալ բերել զմարմին նորա՝ 'ի պարծանս
ըստ հոգւոյ և մարմնոյ . որում անհնար
էր լինել . քանզի ա̃մծաւէր թագաւորն ըզ-
հռովմ պատուհեաց հոգևորապէս, և զկոս-
տանդինուպօլիս զձեռակերտ իւր մարմնա-
ւորապէս . նմին իրի և խորհրդով պատրաս-
տեալ էր զտեղի գերեզմանի իւրոյ անդ 'ի
կոստանդինուպօլսի ք̃ղք 'ի տաճարի ս̃բց առա-
քելոցն, որ յիւրմէ շինեալ . և անդ թա-
ղել զինքն պատուիրեալ էր 'ի կտակի իւ-
րում :

Արդ՝ է̃ հասանել միջին որդւոյ ինքնակալին
'ի

'ի Ճըղք անդր , որ այն ինքն է կոստանդ. կմ կոստանդնու՝ սահմանեալ 'ի հօրէն կայսր արևելեան 'ի կոստանդինուպօլիս , բարձին յարքունեաց զմարմին սբ Թադէոսի , և տարան հանդիսապէս 'ի տաճար առաքելոց՝ ուրաջի գնալով կոստանդեայ մեծամեծօք և գունդագունդ դասուք ոսկեղէն փառելոց , և զհետ ընթանալով գրեթէ ամ քաղաքին : Այլ զկնի արձակման արքայական հանդիսի՝ մատուցեալ ուխտի եկեղեցւոյն կատարեցին զամ կարգ պաշտամանց , և սաղմոսիւք և օրհնուք հանգուցին զմարմինն 'ի պատրաստեալ շիրմի , որ էր վէմ կափածոյ 'ի պորփիւր քարէ՝ հն 'ի ծիրանւոյ , ագուցանելով 'ի մէջ նր զոսկի տապանակ մարմնոյն : Այլ էր տեղի շիրմին 'ի միջավայրի երկոտասան մահարձանաց կամ տապանաձև շինուածոց կանգնելոց 'ի կոստանդիանոսէ 'ի յիշատակ երկոտասան առաքելոց , վեց աստի , և վեց անտի , և արքայն 'ի միջի , իբր յառաջադիր խորհրդոյ մասնակից լինելոյ շնորհաց սբ առաքելոց , և կցորդ աթոռից մատուցելոց յուրակերտ տաճարի անդ . և Ամ փառաւորեաց զնա առաքելանման պատուով . զի զործեցան ընդ ժամանակս ժամանակս նշանք 'ի տապանէ սբ. Թադէոսին՝ իբր աւանդելոյ յայսմաւուրացն յունաց :

Նալ յետ քանի մի ամաց՝ անարժան պատրիարգն կոստանդինուպօլսոյ հոգեմաքրան մակեդոն պատճառելով զհնութի տաճարի առաքելոց՝ փոխադրեաց անտի զմարմինն

սըջն

սրբոյն Կոստանդիանոսի 'ի տաճար սրբոյն առա-
քելոցն : Մինչ որ բարկացաւ յոյժ կայսրն
Կոստանդ. զի առանց գիտութեան իւրոյ փո-
խեալ էր նշխարս զտապան հօր իւրոյ, և այն ընդ-
դէմ կամաց ժողովրդեան՝ արիւնհեղութիւն
հանդերձ. որոյ վասն իսկ ընկէց զնա ասեն
յաթոռոյ պատրիարգութեան. ուստի երևի՝
թէ դարձուցաւ տապանն յառաջին տեղին
յետ նորոգման եկեղեցւոյ առաքելոց. զոր
և կրկին նորոգութիւն կանգնեաց զկնի յուս-
տինիանոս մեծն 'ի վեցերորդ դարու, և
զարդարեաց զդամբարանս թագաւորաց՝ որք
կային յարտաքին գաւթի տաճարին. իսկ շի-
րիմն Կոստանդիանոսի էր 'ի մէջ եկեղեց-
ւոյ (6) :

Յետ ժամանակաց յառման Կոստանդնու-
պօլսոյ յայլազգեաց՝ բարձան յիշատակք թա-
գաւորաց. բայց ոսկերք սրբոյն Կոստանդիա-
նոսի գէթ ըստ մասին փոխադրեցան յարե-
մուտս 'ի Կաղաբրիա, որ և կոչի մեծ յունա-
տան հանդէպ սիկիլիոյ, և եդան 'ի գիւղն՝
որ կոչի սուրբ Կոստանդիանոս 'ի թեմին միլե-
տեան. ուր կատարի տօն նորա 'ի մայիսի ա-
ւուր երկրորդի. թող և զեղբայրութիւն բա-
րեպաշտից 'ի սիկիլիա յանուն սրբոյն Կոստան-
դիանոսի. սոյնպէս և յայլ տեղիս տեղիս
Եւրոպիոյ ասին լինել նշխարք նորա, յորս կա-
տարի առանձին յիշատակ անուան նորա: Այլին
երբեմն և 'ի բրիտանիա կամ յանգղիա ոչ
սակաւ եկեղեցիք և խորանք յանուն սրբոյն
Կոստանդիանոսի թագաւորի, զոր հայրե-
նեօք

նոքա համարէին լինել յետ իւրեանց . և մի յեկեղեցեաց անտի գեղեցկաշէն կայ մնայ տաճն մինչև ցարդ :

Մ.ՅԼԼայսր տեղի վ՟ր լատինք առաւել զհեղինեայ դշխոյի ունին զհանդիսական յիշատակ մինչև ցայսօր , որպ ոչ ունին զկոստանդիանոսին . իսկ յարևելս միօրինակ պահի տօն յիշատակի երկոցունց . և Ճանաչի մեծն կոստանդիանոս փառք պարծանաց տանն յունաց , զի ոչ միայն պայծառացոյց զեկեղեցիս նց , այլև հռովմէական կայսերութբ և անուամբ բարձրացոյց զազգ և զանուն նց . զի յետ նր երթալով երթայր և նուազէր թագաւորութի հռովմայ , որ աճեաց և մեծացաւ յարևելս 'ի մէջ յունաց 'ի նորին հռովմ 'ի կոստանդինուպօլիս . ուստի և կոչեցք՝ որ յոյնք՝ յայնմ հետէ կոչեցան հռովմէի , կամ հոռոմք , որ հռովմայեցիք . և մնաց անունն այն 'ի վ՟ր նոցա մինչև ցայսօր յարդեանց կոստանդիանոսի յաւերժայիշատակ սբ թագաւորի :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ :

(1) Երկին է առ մեզ յիշատակ տօնի սրբոյն կոստանդիանոսի . մի՝ 'ի կարգի ապայից ընդ սեղբեստրոսի , և միւս ևս առ Է հեղինեայ . այլ երկրորդս այս է սեպհական տեղի տօնի փոխման նր , զի որում փոխադրեալ 'ի միջոցէ մայիս ամսոյ 'ի կարգէ յինանց . որպ և 'ի Հ. և Ց. դնի 'ի մայիսի 21 : Իսկ առաջինն այն է ըստ յի-

շա-

Թաղեցաւ 'ի տապանի անդ,

Արդ ոչ այլազգ միաբանին այս աւանդք երբեմն և հորբեքին, եթէ ոչ ասասցուք Է անաչառ քննիչս, թէ յիւրաքանչիւր տեղիս էին մասն մասն նշխարաց Հեղինեայ՝ կարծեցեալք ամբողջ. զի որովհետև ամբողջ երեւեցուցանեն զմարմինս պաշտուճապատանօք, կարծին բովանդակ մարմինք. Թող զի գուցէ հեղինէ անուն կուսանք կամ վկայուհիք գտեալք 'ի վաղ ժամանակաց՝ շփոթեալ են Է նշխարաց Հեղինեայ դշխոյի: Այս ինչ առոյգ է, զի ուր և գտանին մասունք յանուն նորին սրբոյ՝ լուս հաւատոյ ջերմեռանդից անպակաս եղեն և լինին օգնականք նոյ. որ յայտ է 'ի յիշատակարանաց իւրաքանչիւր տեղեաց, առաւել 'ի նախայիշատակեալ վանս գաղղիոյ:

(6) Իսկ վն տապանի մեծին կոստանդիանոսի գրէ գիլլիոս կմ ճիլլիոս 'ի տեղագրութեն կոստ. Գ. 2. յետ նշանակելոյ զտեղի տաճարի առաքելոց, թէ մօտ յայն տեղին * առ ճանապարհաւն՝ որ ձգի Է Թիկունս եկե-
" ղեցւոյն գէպ 'ի տաճարն այս սոփիայ առ ադրիա-
" նուպօլեան դրամբ՝ ցուցանի յաւուր յայսմիկ տապա-
" նաքար 'ի պորփիւր մարմարիոնէ, այլ Թափուր և ա-
" ռանց կափարչի, տասն ոտնաչափ յերկայնութիւն, և
" հինգ և կէս ոտնաչափ 'ի բարձրութի. զոր յոյնք և այ-
" լազգիք՝ասեն լինել մեծին կոստանդիանոսի ||. յայտ
է թէ ը գուշակելոյ բաբեալորդայ՝ այն է, յորում ա-
ռուցեալ էր ոսկի տապանակ մարմնոյն, որ յետոյ առե փոխադրեալ 'ի կաղաքրիս: Նոյն ինքն գիլլիոս ցուցանէ; թէ ֆէթիհ մէհէմմէտ՝ որ էառ զկոստանդինուպօլիս, կործանեալ զտաճարն առաքելոց, և անհետ արարեալ զյիշատակս Թագաւորացն յունաց, 'ի նոյն 'ի նիւթոյ տաճարի առաքելոց և այլոց մերձակայ եկեղեցեաց կանգնեաց զհոյակապ մզկիթն կոչեցեալ յանուն իւր սուլթան մէհէմմէտ, 'ի մօտաւոր վայրի անդ՝ 'ի վն աւազանին, որ մատակարարէր զջուր տաճարի առաքելոց. անկեաց և գրախտ պատեալ պատնշաւ, և 'ի միջավայրի եռ շինել իւրեան շիրիմ մեծակառոյց (այսինքն՝ Թիւրպէ), առ շիրմելոյ ընդհատ 'ի մեծէն կոստանդիանոսէ:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Թալիլեայ բժշկին, և որոց ը̅ նմա։

Հ. Յ. Լ. · Մայիս · 20 ։ Ի Աքթեայքոց Բոլլանդեան ·
Է · Հատ · Մայիսի · եր · 639=654 ·

ՆՇԱՆԱՒՈՐՆ ՎԿԱՅՆ ք̅ի Թալիլէոս կամ Թալելէոս բժիշկ հոգւոց և մարմնոց, էր 'ի ժամանակս Նումերիանոսի կայսեր՝ հայրենեօք 'ի կողմանցն Լիբանանու. զոր ոմանք համարին 'ի բուն Լիբանան լեռնէ՝ որ 'ի փիւնիկէ, և այլք յեմ̅է՝ ուր էր տուն անտառին Լիբանանու շինեալ 'ի Սողոմոնէ։ Սա էր Թալիլէոս երիտասարդ վայելչադիտակ և առոյգահասակ՝ դեռաբոյս մօրուօք, յազնիւ տոհմէ՝ որդի առաքրիստոնէի, խելամուտ բժշկականին, և զարդարեալ ա̅ծապաշտ վարուք առաքինութե։ Սա հանդարտեալ 'ի տան իւրում ոչինչ հեռի յանտառէն՝ դարմանս տանէր բժշկութե հիւանդաց, զորս բերէին առ նա. յորոց և զբազումս հիւրընկալեալ պահէր 'ի տան, և ոչ արձակէր՝ մինչև առողջացին. և այնպէս. սիրելի լինէր մեծի և փոքու, զի ամենեցուն բարերարէր. այլ առաւել խանդաղատէր 'ի վ̅Ճ

աղ-

աղքատաց, և որպէս թէ իւր համարեալ
զցաւս նց՝ բազում սիրով և փութով ձգնէր
'ի փարատումն ախտից նոցա. դէպ լինէր եր-
բեմն և շալակել զնա անձամբ՝ տանել տեղ-
ւոջէ 'ի տեղի. և յՃամի գուն գործէր գտա-
նել զկարօտեալս, և տանել նոցա հնարս
բժշկութեան:

Այլ ևս նմա ած շնորհս բժշկութեան 'ի վեր
քան զզօրութի արուեստին; մինչ զի բազում
անգամ փոխանակ դեղոց յաղօթս ապա-
տան լինէր, և բանիւ լոկով կմ ձեռն դնե-
լով յանուն ձն՝ բժշկէր զհիւանդս և զախ-
տաժէտս: Եւ քանզի առ մեծի գթոյն անխը-
տիր դարմանէր և զաղքատս հեթանոսաց.
և աղօթիւք փարատէր զցաւս նոցա, տեսեալ
զոմանս 'ի քրիստոնէից դժկամակեալս ընդ
այն՝ զայրանայր 'ի վր անդթութեան այնպի-
սեաց: Ետես երբեմն, զի քրիստոնեայ ոք
ախտացեալ ընդդէմ հեթանոսի՝ ուրախանայր
ըն չարաչար մահ նորա. յայնժամ սաստեաց
նմա Թալիլէոս, և ասէ. մի խնդար ըն չար
թշնամւոյ քո, այլ յայնժամ առաւելապէս
խնդասցես՝ եթէ յաձպաշտութի զնա դարձու-
ցանիցես: Ասէ այլն. իրաւացի էր նմա սա-
տակումն արագահաս. զի զինչ շահ իցէ
կեալ՝ որոց ծերանանն 'ի մեղս: Մինի ես
սէտն լու 'ի լու այլոց հաւատացելոց. աղօթել
'ի վերայ թշնամեաց հրաման ընկալաք եղ-
բարք, և ոչ եթէ խնդալ ըն չարիս նոցա. և
եթէ մարդասիրութբ գնամք ըն նոսա, դիւ-
րաւ մեղմեմք զխստասրտութիւն նոցա, և

զանհաւատութիւն նոցա վերածեմք 'ի հաւ-
ատս ։

Յետ այսորիկ բժշկեաց Թալիլէոս զօձահար ոմն հեթանոս զանյոյսն 'ի կենաց՝ անուանմբն քի, և դարձոյց զնա 'ի կռապաշտութենէ ։ Ներքին առաջի նորա և զայլ ոք 'ի կռապաշտից, որ ունէր փողացաւ անբուժելի յամ̃ բժշկաց ։ և սրբոյն եդեալ բանս ընդ նմա վ̃ դառնալոյ 'ի հաւատս քի՝ առժամայն բժշկեաց զնա նշանաւ խաչի ։ Եւ յելանել երբեմն 'ի տանէ՝ հանդիպեցաւ ումեմն յաղքատաց հեթանոսաց, որոյ խորտակեալ էին ոտք, և անպիտանացեալ 'ի սահեցմանէ ճանապարհին ։ և իբրև սկսաւ աղաչել զԹալիլէոս օգնել նմա՝ ասէ Թալիլէոս ։ միայն հաւատա՛ և կեցցես ։ և 'ի խոստովան լինել նորա զզօրութիւն քի՝ առողջացոյց զնա, և էած 'ի սրբ̃ հաւատս ։ Ազատեաց 'ի դիւէն և զաղջիկ մի այսահար ։ եբաց և զաչս աղքատի միոյ կուրի, և արար քրիստոնեայ ։

Իսկ բարիատեացն սատանայ մախացեալ ը̃ գործս սրբոյն՝ գրգռեաց զկռապաշտս ։ որոց կալեալ զնա՝ տարան յատեան տիեզերիոսի կմ̃ տիեզերիանոսի դատաւորի, որ դատէր զքրիստոնեայս յեդեսիա հրամանաւ ինքնակալին նումերիանոսի, և եղբօր նորա կարինոսի ։ և ամբաստան եղեն, թէ այրս այս մոգութ̃բ պատրեաց զբազումս, և դարձոյց յօրէնս նազովրացւոց ։ Եհատ գիշերի լռելեայն և զփարսաւոր ծառս անտառին լիբանանու, և խափանեաց զպաշտամունս և զպատգամս դից ։

և

և զխաղս արանց և կանանց ։ Յայնժամ դա-
տաւորն զան եհար զսբ͞ն իբրև ծառայ ստա-
հակ . և տեսեալ զնա՝ զի լուռ կայր , հա-
մարեցաւ զնա մտաթափ ոք , և հալածեաց
՚ի գաւառէ անտի ։

Ապա ել գնաց Թալիլէոս ՚ի կիլիկիա . և
անդ ևս շրջէր և առնէր բժշկութիւնս անուամբն
Քսի ։ Այլ չոքան կռապաշտք առ Թէոդորոս
անթիհիպատոս՝ որ նստէր յեգէա ծովեզե-
րեայ քաղաք երկրորդ կիլիկիոյ իբրև յիսուն
ասպարիզաւ հեռի յանարզաբայ . և ասեն .
զալիլեացի ոմն անծանօթ եկեալ յարևելից
կողմանէ՝ կեղծաւորի զբժշկականն , և կա-
խարդանօք ձգէ զբազումս ՚ի պաշտօն խա-
չեցելոյն . և իշխանն առաքեաց խնդրակս .
և կալան ածին յապարանս դատաւորին . և
ազդ արարին՝ եթէ գտաք զայրն ։ Ասէ դա-
տաւորն . կոչեցէք առ իս զչարագլուխն զայն ,
զորմէ լսեմ՝ թէ գլուխ է աղանդոյն քրիս-
տոնէից , յորոց զբազումս ծախեցի սրով և
հրով և ջրով ։ Իբրև կացուցին զնա յատենի ,
տեսեալ զնա դատաւորին երիտասարդ կայ-
տառ և ոսկեհեր՝ ասէ ցիւրսն . Ո՞ւր կալայք
զպատանիդ գեղեցիկ ։ Նոքա ասեն . մինչ-
դեռ գնայաք յանարզաբա , տեսաք զդա զճա-
նապարհայն . և նորա գիտացեալ զմէնջ՝
թաքեաւ ՚ի մէջ տնկախիտ մայրեաց . մինչև
յետ աւուրց գտաք զնա ը͞դ ձիթենեաւ միով ,
և ածաք առաջի իշխանութեդ ձերոյ ։ Եհարց
զնա իշխանն . ա՛յր դու ասա՛ ինձ յի՞նչ օրէնս
իցես , և յորմէ՛ քաղաքէ . և զի՞նչ է բախտ

շաղափով զպձղունս ոտից դորա ։ Եւ նորա թագուհին աշխատ եղեալ՝ ոչինչ կարաց ներգործել 'ի մարմին վկային. եկին սպասաւորքն և պատմեցին դատաւորին, և ասեն. աղաչեմք զքեզ տէր, յերրորդ ժամէ աւուրն մինչև ցվեցերորդս աշխատ եղեաք 'ի ծակել զպձղունս նորա. և ոչինչ կարացաք առնել, Բարկացաւ դատաւորն և ասէ. միթէ ծա՞ղր առնել եկիք ով անզգամք, դարձարուք անդրէն և ծակեցէք՝ ոտս սորայ ։ Եւ նք շուարել և 'ի խելաց ցնորեալ՝ առին 'ի մէջ փայտեայ կոճ մի, և ծակեցին զծայրս նր. եկն այնուհետև աստերիոս, և ասէ. տէր իմ ծակեցաք զպձղունս առն, ոտ և հրամայեցեր ։ Յայնժամ ասէ դատաւորն. ա՛ռէք արկէք լարս և պարանս, և կախեցէք զնա գլխիվայր ոտ զոչխար. և նոքա յանզգայս եղեալ՝ կախեցին զփայտն, և համարէին՝ եթէ զԹալիլէոս կախեն ։ Զայն իբրև ետես Թէոտիմոս (որ և տիմոթէոս) աշակերտն Թալիլեայ, զի կայր մօտ, ասէ ցսոսն. տեսանես, զինչ առնեն դոքա ։ Եւ Թալիլէոս ասէ. լուա լեր եղբայր, զի մերձ է առ իս զօրացուցիչն իմ քս ։

Իսկ դտւորն իբրև 'ի վր եհաս եղելոցն, ասէ զայրագին ցդահիճս. զի՞ գործեցիք անմիտք. ես մարդ հրամայեցի ձեզ կախել, և դուք զփայտդ կախեցիք ։ Եւ զի գլխաւորք դործոյն էին երկոքին 'ի դահճաց անտի՝ աստերիոս և գործակից նորա աղեքսանդրոս, հրամանն ետ բռնաւորն պատուհասել զնս չարա-

չար . տարածեցէք ասէ զդոսա 'ի գետին , և տանջեցէք անխնայ . զի մի ևս իշխեսցեն առնել ինչ այդպիսի յանարգութիւն աստուծոյ իմոյ : Իսկ աստերիոս և աղեքսանդրոս 'ի միտ առեալ՝ զոր գործեցին ապշութիւն , և լուսաւորեալ առ յոյս՝ աղաղակեցին իբրև ընդ մի բերան . կենդանի՛ է տէր , զի և մեք քրիստոնեայ եմք : Ընդ որ սրտմտեալ յոյժ դատաւորին՝ հրամայեաց ունել զնոսա , և բերել առաջի իւր . և յայնմ վայրի աղօթէր սուրբն Թալիլէոս վասն նոցա :

Իսկ նոքա քանզի բուռն էին և զօրաւոր քան զայլ դահիճս , կորզեցին զանձինս 'ի ձեռաց ունելեացն , և ելեալ խոյս ետուն յապարանից և 'ի քաղաքէն : Հրաման ետ դատաւորն մոտխոսի դահճապետի առնուլ արս և պնդել զհետ նոցա . և եթէ չկամիցին դառնալ . սպանէք ասէ զնոսա՝ ուր և գտանիցէք : Իսկ երթեալ արանցն՝ կալան զնոսա 'ի լերին անդ , ուր ըմբռնեալ էր նոցա զԹալիլէոս իբր յիսուն ասպարիզաւ հեռի 'ի քաղաքէն . և գտեալ զնոսա հաստատուն 'ի քրիստոս՝ նոյնժամայն հատին զգլուխս նոցա . և եկեալ պատմեցին տեառն իւրեանց . և ուրախ եղև սուրբն Թալիլէոս ընդ կատարումն նոցա վասն անուանն քրիստոսի :

Յետ այսորիկ կոչեալ միւսանգամ դատաւորին զվկայն յատեան՝ ասէ ցնա . զի՞նչ ասես Թա՛լիլիէ , հաւանի՞ս բանից իմոց՝ եթէ ոչ . քեզ ասեմ , զոհեա՛ դից , և կեա՛ց , և վայելեսցես 'ի լոյս արևուն : Պատասխանի ետ քաջ նահատակն . ո՛չ իմիք կարասցես հաւանեցու-

ցա

ցանել զծառայս քո՝ զոհել դիւաց պղծոց.
քանզի ա՟ծք քո կուռք են դիւականք., զորս
անարգեմ և թքանեմ՛ ի նոսա ։ Ս՛ուլեալ դա-
տաւորին ցասմամբ՝ ասէ ցծառայս իւր. ար-
կէք ինձ աթոռ. և ես ինքնին յարուցեալ
ծակեցից զպճղունս դորա ։ Եւ ս՟րն թալի-
լէոս ասէ. արդ՝ ով դատաւոր, և ե՛կ առնել
զոր կամիս, եթէ կարող ես. քանզի մերձ է՝
որ պահէն զիս, և ես ոչ երկնչիմ՛ ի սպառ-
նալեաց մարդոյ.

Ա.յն ինչ կամէր դատաւորն 'ի վեր յառնել
յաթոռոյ անտի ատենին՝ յոր բազմեալն էր,
մնաց կաշկանդեալ անդ աներևոյթ զօրու-
թ՟ք. ո՟չ թէ մածեալ յետոյ կողմանէ յա-
թոռն ։ Յայնժամ ա՟մ բազմութիւն՝ որ կային
յատենի՝ 'ի տաճարն կոչեցեալ ադրիանու,
մեծաձայն աղաղակեցին. մե՛ծ է ա՟ծն քրիս-
տոնէից, որ առնէ զնշանս ։ Իսկ դատաւորն
զամօթի հարեալ ասէ. աղաչեմ զա՟ծ քո ով
թալիլէէ, զի 'ի բաց զերծցի յինէն աթոռս,
և զի մի՛ արդեօք պատուհաս այլ եկեսցէ յիմ
վ՟րա. քանզի արդարև մեծ է ա՟ծն քո ։
Յայնժամ յաղօթս եկաց երանելին, և ար-
ձակեցաւ իշխանն. բայց ո՛չ եթէ 'ի միտ էառ
զզօրութիւն ա՟յ, այլ առաւել ևս խստացեալ,
և կրճտեալ զատամունս իւր՝ էառ զշաղափ,
և սկսաւ ծակել զպճղունս ս՟րյն. և ահա
անդէն դօսացան ձեռք անօրինին ։ Եւ յա-
ղաչել նորա վերստին զթալիլէոս՝ աղօթիւք
բժշկեաց զնա ։ Յայնժամ երկուցեալ բռնա-
ւորին այլ ևս խաղալ ը՟ նմա, ասէ ցպաշտօ-

նեայս

Նեռայս ատենին . բարձէք զդա յերեսաց ի-
մոց, և տարայք ընկեցէք 'ի խորս ծովու . զի
անդ սուզեալ կորիցէ, և մի 'ի ձեռս իմ ։

Սա այս ասէ սրբն Թալիլէոս . դու ինքնին սկսար դատել զիս, և քեզ անկ է 'ի գլուխ հանել զիրսդ ։ Դատաւորն ասէ . 'ի բաց գնա այր դու, և մեռջիր հեռագոյն յինէն . զի թէ մինչև իմ տանջել զքեզ, զայդ ամ կախարդանս գործեցեր, զի՞նչ լինիցի՝ եթէ 'ի չարչարանս մատուցից զքեզ . որպէս և արժան իսկ էր, մինչև դարձցիս 'ի պաշտօն կռոցս, փոխանակ զի պարտ էր քեզ կամաւ հնազանդել նց ։ Թալիլէոս ասէ . արդ ո՞վ բանաւոր՝ որ ինչ հաճոյ թուի յաչս քո . և մի համարիցիս տանջանօք և սպառնալեօք որոշել զիս յայ իմմէ կենդանւոյ . այլ զայդ քաջ գիտեա, զի զդիս քո ես ոչ պաշտեմ, և դիւացդ՝ որոց ծառայես՝ երկիր ոչ պագանեմ.

Նա մինչդեռ բանքն 'ի բերանն էին, ձգեցին զնա դահիճքն ըստ ակնարկելոյ դատաւորին, և տարեալ 'ի ծովեզրն՝ եդին 'ի մակոյկ մի, և խաղացուցին 'ի խորս ծովու ։ Յայնժամ յաղօթս եկաց երանելին, և ասէ . տր ած իմ մի թողուր զիս մեռանիլ յայս նուագ . որպէս զի զկատարեալ հանդէս նահատակութե 'ի գլուխ տարեալ՝ ընկալայց զանմահութե զպսակն ։ Իսկ դահճաց կապեալ քար մի մեծ 'ի պարանոց վկային՝ ընկղմեցին զնա 'ի խորս ծովու . և եկեալ պատմեցին դատաւորին . որպէս և հրաման եառ ասեն մեծութե ձեր, ըն-

կե-

կեցայք զԹաւլիլէոս 'ի ծով. և անդէն առաջի
աչաց մերոց սուզաւ և կորեաւ :

Մինչդեռ նք խօսէին ը իշխանին, յանկար֊
ծակի եկն եհաս զկնի նց կենդանի մկայն֊
քն Թաւլիլէոս՝ զգեցեալ պատմուճան սպի֊
տակ. իբրև տեսին զնա զաւհիճքն, զաւհի հա֊
րան, և ձայն բարձեալ աւէին ցիշխանն. տե֊
սանե՞ս տր, զի և 'ի ծովէ ապրեալ գայ իւղ֊
նին Թաւլիլէոս : Զարմացաւ դատաւորն ը
միտս իւր. և կոչեալ զնա՝ ասէ. ո՛յ կախարդ
դատաւոր դու՝ այդչա՞փ զօրացաւ դիւթութի
քո, մինչև ծովու սնդամ յաղթել : Ասէ նա
երանելին. ո՞ւր է արդ զօրութի մծացդ,
ո՞ւր սնոտի պարծանք քո. ահա տրն իմ յն
քս ունայնացոյց և քակեաց զխորհուրդս ձեր,
և ոչ թոյլ ետ ինձ մեռանիլ, զի եւս քան զեւ
յաղթեցից հօր քում սատանայի :

Ասէ դատաւորն ցխորհրդակիցս իւր. տե֊
սանէ՞ք, թէ զիա՞րդ կախարդեաց զծով, և
զմեզ թշնամանէ անխիծանօք. եթէ թողումք
զդա այդպէս, զօրանայ 'ի վր մեր ամենե֊
ցուն, և սպանանէ զմեզ դեղատուճութբ չարա֊
րուեստ մոգութե իւրոյ : Խորհուրդ 'ի մէջ
առնուլ սկսաւ ը գէտս իւր՝ թէ զի՞նչ արաս֊
ցեն ը նա. յաւելեալ ուրբիկկիոս մոգն ասէ.
հրամայեսցէ՛ տրութի ձեր հանել զդա 'ի
թէատրոն, և գազանաց առաջի արկանել :
Կոչեաց իշխանն զպահապան գազանաց, և
ասէ. պատրաստեա՛ զտեղի ասպարիզին, և
ա՛ծ անդր զամեհիս 'ի գազանաց : Եւ իբրև
արար այրն ըստ հրամանի նր, ասէ բռնաւորն
ցմն.

ցածէն. զի՞նչ ասես Թա՛լիլէ, զո՞հես զանձն
այժմիկ. ապա թէ ոչ՝ ահա մատնեմ զքեզ
գազանաց 'ի կերակուր: Թալիլէոս ասէ.
տակաւին անգիտանա՞լ եղեր զշնորհս և ըզ-
փառս Տն իմոյ Յսի Քսի. այլ ես զԴաւթեանն
երգեմ զօրհնութի. ոչ մեռայց, այլ կեցից,
և պատմեցից զգործս Տն. խրատելով խրա-
տեաց զիս Տր, և 'ի մահ ոչ մատնեաց. աջ
Տն արար զզօրութի. աջ Տն բարձր արար զիս:
Նոյնժամ տարան զնահատակն, և արկին 'ի
մէջ թատրոնին կապեալ. և արձակեցին 'ի
վր նր մատակ արջ մի ահագին. իսկ գազանն
իբրև ընթացաւ առ սբն, խոնարհեալ ըզ-
գլուխն՝ լեզուլ սկսաւ զոտս նր. և չարար
ինչ նմա չար: Զայն տեսեալ Թէոդորոս
բռնաւորին՝ գոչէր զայրագնեալ սրտմտութբ,
զի արձակեսցեն 'ի վր նր առիւծս երկու.
սակայն և նք հեզաբար մատեան առ նահա-
տակն, և իբրև ընդել քծնէին առաջի նր:
Նոյնժամ վայրի պատառեաց իշխանն զքղամիդ-
իւր. և ամբոխն առհասարակ աղաղակէր.
մեծ Ած քրիստոնէից՝ Ած Թալիլեայ օգ-
նեա՛ մեզ. և դղրդեցաւ տեսարանն ամ.
մինչև բռնադատիլ իշխանին հանել զԹալի-
լէոս 'ի թատրոնէ. և ամբոխն սաստիկ, զի
Ուրբիկիոս մոգն՝ որ զայն խրատ ետ, մուծցի
'ի գազանամարտ. և իբրև ոչ կարաց դատա-
ւորն ընդդէմ դառնալ, կալան և արկին զմոգն
առաջի գազանաց. և նոքա նոյնժամայն
դէշ դէշ պատառեցին զայրն, և ոչ թողին
զնշխարս նր:

Զա

Օահի հարաւ դատաւորն , և դարձեալ կա-
թանկոր յապարանս իւր՝ կամէր հրով ծախել զնահատակն . այլ երկեաւ 'ի ժողովրդենէ . և եհատ վճիռ գլխատման : Նա առեալ դահճաց՝ տարան զնա յեղեսիա աննուն կողմն մի քաղաքին եգեացուոց . ուր ընթացան և բազումք յամբոխէն : Նոյն յաղօթս եկաց սրբն Թալիլէոս . և եղև շարժումն մեծ 'ի տեղւոջն . յորմէ զահի հարեալ ժողովելոցն՝ դայլին անկանէին առ ոտս երանելւոյն աղելով . ողորմեա՛ մեզ , և կնքեա՛ զմեզ նշանաւն քո : Իսկ երբև խաչակնքեաց 'ի վր նոցա , եհատ դահիճն զպարանոց սրբյն . և այնպէս կատարեցաւ նշանագործ վկայն քնի սբ բժիշկն Թալիլէոս յամի տն իբր 284 . 'ի մայիսի . 20 . յորում աւուր կատարի յամ եկեղեցիս յիշատակ նր : (1)

'Ի նոյն աւուրս նահատակեցան և քանի մի վկայք՝ որք դարձան 'ի քս 'ի ձեռն սրբյն Թալիլէոսի . յորոց սակի համարին , Թէող զերկուս 'ի դահճաց զաստերիոս և զալեքսանդրոս զնախանշանակեալս , մակարիոս բժշկապետ վարժապետն Թալիլեայ , աստերոն , փիլագրիոս , տիմոթէոս ( որ Թուի աշակերտ սրբյն ) , Թէոդուլոս , մակարիա . և այլք՝ որոց անուանք գրեալ են 'ի դպրութե կենաց :

Իսկ մարմին փառաւորեալ վկային Թալիլեայ բժշկի Թաղեցաւ զառաջինն ընդ հատեալ գլխոյն՝ մօտ 'ի տեղի կատարման նր 'ի ձեռն արանց երկիւղածաց կամ նորադարձ հաւա-

տաւ

տացելոց. և քանզի եղեն ազգի ազգի նշանք 'ի տապանէ ս՟բյն, բազումք ընթանային առ նա՝ նշանագործ վկայ զնա կարդալով : Եւ յորժամ թագաւորեաց մեծն Կոստանդիանոս, շինեաց վկայարան յանուն ս՟բյն Թալէլեայ բժշկի 'ի Կոստանդինուպօլիս. և անդ բերեալ հանգոյց զպատուական նշխարս նր՟ : Այս մատուռն ասի լինել 'ի մէջ տաճարի ս՟բյն Ագաթոնիկոսի. և 'ի նմին եկեղեցւոջ կատարէին Կոստանդինուպօլսեցիք զյիշատակ ս՟բյն Թալիլէայ. զոր և նորոգեալ մեծացոյց կայսրն Յուստինիանոս. և զի մերձ էր տաճարն այն արքունի պալատան, տիբեր կայսր անէր մօրկայ էառ զայն 'ի մէջ պատնշի պալատանն : Թող զվանսն՝ զոր յանուն ս՟բյն Թալիլէայ կառոյց Յուստինիանոս յԵրուսաղէմ. ուր և եդաւ ասեն մասն 'ի նշխարաց ս՟բյն : Իսկ այժմ երևելի նշխարք ս՟բյն Թալիլէայ ասին լինել 'ի Վերոնա քաղաք Իտալիոյ յեկեղեցւոջ ս՟բյն Նիկողայոսի, գտեալք անդանօր յամի տ՟ն. 1519. յապրիլի 29. Է՟ այլ նշխարս ս՟բց, իբր 'ի վաղ ժամանակաց բերեալք անդր յարևելից :

xxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxx

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Քանզի սակաւաժամանակեայ եղեն աւուրք Թագաւորութեան Նումերիանոսի, և յաջորդին նը Կարինոսի, վա որոյ Թէպէտև Նումերիանոս՝ որ եհան զհրովարտակ հալածանաց, յամի 284. յամսեանն սեպտեմբերի (ըստ ոմանց), չիցէ ապրեալ մինչև ՚ի կատարումն սրբոյն Թալելեայ. չէ ինչ. նմին իրի ՚ի զուր խօսել փորձէ բաբեպրօքիոս զօր կատարման սրբոյն՝ որ առ ի լինել ՚ի մայիսի. 20. առ Թէ ՚ի յետնոց մուծեալ իցէ՝ վա յայնմ աւուր լինելոյ յիշատակի նր. ուր և ինքն քննիչն խոստովան լինի, Թէ * Թէպէտև զկնի հրովարտակին ոչ յեր-
,, կարեաց նա ՚ի կեանս, բայց սակայն ամենեքին նոքա՝
,, որք ը այնմ հրամանի ընկալան զվճիռ մահու՝ նաև
,, զկնի նորին իսկ մահուան, առին նահատակեալ յա-
,, ւուրս ինքնակալութե Նումերիանոսի||:

Զերկուս յաւնական վկայաբանութիւս ՚ի մէջ բերէ բաբեպրոք բոլլանդեանն՝ հանդերձ լատին Թարգմանութ։ Զառաջինն կոչէ հին, որ է հանեալ ՚ի լաւրենտինեան գրատանէ փլորենտիոյ, պարզ ոճով և համառօտաձև բանիւք (պակասեալ ՚ի նախընթաց քաղաքավարութե սրբոյն). է որ յոյժ հաւանի քննիչս, և համարի հարազատ գործ գիտնոցդպրաց՝ որք գրոշմեցին զգործս վըկայից. և մեք իսկ այնպէս ճանաչելով՝ զնոյն բաղեցաք Թարգմանաբար ը մասին բուն վկայաբանութե, գ ը առենախօսութե և ը հարցափորձի և նահատակուե. այլ և նորուն քաղուածս երեւին նաև գրեալքն այլ և այլ ոճով ՚ի Հ. Ց. և Լ։ Զերկրորդն կոչէ նոր, որ է հանեալ ՚ի վատիկանեան գրատանէ հռոմայ. ուր կայ նախ՝ նախընթաց քաղաքավարութի սրբոյն, և ապա գրի վկայաբանութիւն ը գոյացութե նոյն է առաջնոյն, բայց ը ոճոյն ընդարձակեալ. վա որոյ և պախարակէ զայն քըննիչն իբրև ՚ի յետնոց յօդեալ. մանաւանդ վասն յաճախութե նշանաց՝ զորս եդաք և մեք ը վկայութե նոյն օրինակին. վա զի զինչ և ասիցէ բաբեպրոք, ընդունեալ է խորագէտն ՚ի խորագիտութե իւրում. և առ չկամելոյ ընդունել զբաղմութի հրաշից՝ ընկալեալ է զստակաւն, որ ը ինքեան էր գծուծայալուր. զի է կաչկան-

դուածն



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ.

## Սրբոյն Թէոդիտոսի գաղատացւոյն, և Եօթն Կուսանաց անկիւրիոյ։

Հ. Մայիս. 22 ։ Յ. Մայիս. 18. և յունիս. 7։ Լ. Մայ. 18։ Բոլլանդեանն Պապեպրոք. ամս.։ Նեղոս պատմիչ ականատես։ (1)

ՎԱՅԵԼՉԱԶԱՐԴ ՊՍակք պարծանաց յօրինեալ վարդիւք և շուշանօք՝ դասք սրբոց գաղատացւոց, եւս յանկիւրիայ քաղաքէ՝ յաւուրս հալածանաց կռապաշտ կայսերաց (2). որ երևելի լինել ՚ի մեզ առ յուլիանոսիւ, ՚ի այլոց՝ յաւուրս դիոկղետիանոսի և մաքսիմիանոսի։ Սրբն Թէոդոտոս՝ որ և Թէոդոտոս, էր այր ծիկ, բայց առաքինութեամբ սքանչելի, և օրինակ բարի ամ հաւատացելոց. քանզի անդստին ՚ի մանկութենէ ունէր անարատ վարուք, և զարդարեալ ջերմ սիրով ածպաշտութեամբ կենայր յաշխարհի իբրև յանապատի. պահեցող և աղօթասէր, զուարթամիտ և համբերող. որ և փափկութիւն առն քրիստոնէի համարէր ընդ չարչարանս և զվիշտս՝ որ վս ած։
Եւ վս հալածանաց ժամանակին հնար

իմացաւ Թէոդիտոն հաւանութիւն կնոջ իւ-րոյ. քանզի եղեւ գինեծախ, եւ արար զտուն իւր իբրեւ զպանդոկ գինեվաճառաց. եւ սո-վորն պատճառանօք ընդունէր ը յարկաւ իւ-րով զփախուցեալ քրիստոնեայսն, եւ կերա-կրէր զնոսա. եւ առ մեծի աղքատսիրութեան զոր ինչ եւ շահէր 'ի գործոյ իւրմէ՝ բաշխէր աղքատաց: Այլ որ մեծն է, բազմաց 'ի խառ-նակեցիկ մարդկանէ՝ եղեւ պատճառ դար-ձի 'ի վարս պարկեշտութեան եւ զգաստութեան, եթէ խրատուք, եւ եթէ աղօթիւք օգնական լինելով նոցա. ոչ եւ զբազումս 'ի հեթա-նոսաց եւ 'ի հերէից ձգեաց 'ի սուրբ հաւատս ազ-դու յորդորանօք 'ի տուչութէ շնորհաց հոգ-ւոյն: Այլ էր տեսանել զտուն նր եւ զպան-դոկն իբրեւ կրթարան առաքինութեան. եւ ըզ-Թէոդիտոն իբրեւ վարժապետ հոգւոց եւ տնտես եւ այցելու, բարերար ամենեցուն եւ փարելի:

Այլ ընկալեալ յայ զշնորհս բժշկութեան՝ լոկ ձեռս դնելով եւ աղօթելով փարատէր զցաւս եւ զհիւանդութիւնս, եղեալ ոչ բժիշկ հոգ-ւոց եւ մարմնոց. եւ որք գոհանային զերախ-տեաց նր գովութբ, ուսուցանէր նց խոնար-հութբ՝ զայ եւեթ գոհանալ, եւ զնա միայն փառաւորել բերանով եւ գործով:

Ընդ աւուրսն ը այնոսիկ առաքեցաւ 'ի կայ-սերաց 'ի կուսակալութի [illegible] գաղատացւոց եւ 'ի վերակացութի քաղաքին անկիւրիոյ այր ոմն ժանտ եւ արեանարբու Թէոդեկնոս ա-նուն, խստութեամբ տալով ինքնակալաց քաջ 'ի

գլուխ տանել զկամս նր՟՝ որ մի՛ դարձուցա-
նելոյ զնմ՟ քրիստոնեայս 'ի պաշտօն դիւց :
Իսկ մինչև էր հասեալ նր՟ յանկիւրիա, որ-
ձակեր յառաջ քան զինքն պատուիրակս մի
զկնի միոյ՝ քանդել զնմ՟ եկեղեցիս գաղա-
տիոյ, և զքահանայս նոցա ստիպել գնալ 'ի
մեհեանս և լինել քուրմս և զոհարարս, որպ՟
և զժողովուրդն բռնադատել յերկրպագու-
թի և 'ի զոհ լծոց հեթանոսաց. և որ ոչն
հնազանդէին, պատուիրեաց մատնել 'ի գանս
և 'ի կապանս բանտից. զի 'ի գալ իւրում
կամ սպանցէ զնոսա, և կամ ազատեսցէ ըղ-
խրատեալսն :

'Ի ժամանակի այսր համբաւոյ՝ եղև ժողով
հաւատացելոցն իբրև նաւ ալեկոծեալ յե-
րեսաց ահագին մրրկաց, զոր յարուցին պաշ-
տօնեայք չարին. զի 'ի տունս տունս մտեալ՝
քարշէին զքրիստոնեայս 'ի բանտ, և զնմ՟
ինչս նոցա յաւարի առնուին, և իբրև զգա-
զանս վայրենիս կեղեքէին զկեանս անմե-
ղաց : Իսկ ոչ ևս էր տեսանել զոք 'ի քրիստո-
նէից 'ի հրապարակի. զի կէսք ըմբռնեցան,
կէսք զօղեցան 'ի թաքստի. և շատք ևս 'ի
լերինս և 'ի դաշտս վայրավատնեալք՝ յետին
աղքատութե՟ և սովալլուկ տառապանութե՟
մաշէին :

Իսկ 'ի գալ հասանել բռնաւորին Թէոդեկ-
նոսի 'ի քաղաքն անկիւրիա, այնուհետև բա-
զումք 'ի բանտարկելոց 'ի մահ մատնէին մի՛
անուանմն քնք. և 'ի մնացելոցն ոչ ոք իշխէր
զանձն քրիստոնեայ անուանել : Ցայտնապէս

աւուրս դառն նեղութե մեծապէս նպաստ
լինէր հաւատացելոց երանելին Թէոդիտոս ,
արարեալ զպանդոկ իւր տեղի ապաւինի ամ
վտանգելոց , և տուն աղօթից . զի կարծէին
հեթանոսք , եթէ տուն նր իցէ իբրև զմի
յայլոց պանդոկաց՝ տեղի արբեցութեան և
շուայտութե . նմին իրի ոչ զնաս կալան , և
ոչ զորս տեսանէին երթալ՚ի պանդոկ նորա :
Այլ հոգ մեծ էր երանելւոյն Թէոդիտոսի
վն բանտարկելոցն՝ թէ որպէս մարթասցէ
մխիթարական լինել նց , և լնուլ զկարօտութիս
նց . նոյնպէս և վն մարմնոց սրբ վկայից , թէ
որով օրինակաւ հնարեսցի ժողովել զնոսա .
քանզի հրամայէր բռնաւորն շանց արկա-
նել զսրբ մարմինս նահատակաց . և թէ ոք
իշխէր ամփոփել զնոսա , զնա ևս տայր կոր-
զել ՚ի կենաց :

Բայց քանզի համարձակ շրջէր Թէոդիտոսն՝
անուանք և ձևով զինեվաճառի , բազում
անգամ յաջողեցաւ նմա գտանել զտր ջերմե-
ռանդն փափաքանաց իւրոց զմարմինս վկայից
ընկեցիկ ՚ի բացի . զորս բարձեալ տանէր ՚ի
տուն իւր . և ոչ ոք ՚ի հեթանոսաց ակնու-
նէր վն այնպիսի գործոյ նր : Ըստ նմին օրի-
նակի մտեալ գտեալ այլով պատճառանօք ՚ի
բանտս և ՚ի տեղիս աքսորին , սրտապնդէր
զերանելի կապեալսն , և փութայր ՚ի հանդէս
առաջիկայ մրցանաց և պսակաց :

Պատուիրեալ էր Թէոդեկնոս ամենայն չարու-
թե խառնել ՚ի զոհից կաց ձարդ և արիւնն ՚ի
հաց և ՚ի գինի և յայլ կերակուրս՝ որոց վա-
ճառ

ճաւէլին զպարէնս և զգինի ։ Օ այն իմացեալ Թեոդորոսի՝ Թաքոյց 'ի պահեստի ցորեան և գինի մաքուր. և սնոտի բաշխէր հաւատացելոց, ևս առաւել քահանայիցն նոյ 'ի նուէր սրբ պատարագի. որպէս և 'ի տան իւրում կարգեալ սեղան խորհրդոյ՝ անդ տայր մատուցանել զսրբ պատարագն. և անդր ժողովէին իբրև յեկեղեցի նոյ՝ որք միանգամ հնարս ազատութե խնդրէին, որպէս 'ի նոյեան տապան յերեսաց հեղեղաց ։

Այլան հեթանոսք զորս 'ի ծանօթից Թեոդորոսի բեկոտր կամ վրկոտր անուն. քանզի ամբաստան եղեն զնմանէ քուրմք, թէ սա անարգեաց զդիսն, և թշնամանեաց զապողոն իբրև զհոմանի քեռ իւրոյ արտեմեայ, և զմեզ նախատէ ասեն իբրև զպաշտօնեայս պղծուծ ։ Որդ յետ սպառնալոյ նմա բազմօք՝ եթէ ոչ երկիր պագանիցէ կռոց, արկին զնա 'ի բանտ ։ Յուսա սրբն Թեոդորոս. և գնացեալ առ նա գիշերի՝ քաջալերէր և զօրացուցանէր զնա. մի՛ լիցի քեզ ասէ սրտաբեկել յառօրեայ տանջանաց, կամ զգութ ընտանեաց ածել զմտաւ. զի կեանք քրիստոնէի և խորհուրդ նորա յա̃ծպաշտութիւն անդր պարտի դեգերիլ. մի՛ հրապուրեսցեն զքեզ խոստմունք անօրինաց, որ են թոյնք մահաբերք հոգւոց. մի՛ ակնկալցիս բարւոյ 'ի չարաց. այլ յուսա՛ 'ի տր, և ամրացո զանձն քո 'ի զօրացուցիչն մեր քս ։

Իբրև ածին զբեկոտր յատեան 'ի վաղիւանդր, զառաջին համարձակ խոստովան

եղև զքն․ այլ իբրև մատուցին զնա 'ի տաճա-
ջանս, զանգիտեալ 'ի մահուանէ՝ խնդրեաց
'ի դատաւորէն ներել նմա աւուրս քանի մի․
զՈյ յետոյ կացին 'ի նմանէ դահիճք, և տա-
րեալ եդին անդրէն 'ի բանտ․ ուր ոչ յեր-
կարեալ նորա զկեանս՝ մեռաւ 'ի ցաւոց տա-
նջ․ և եթող յերկբայս զմիտս ամենեցուն։
Դէպ եղև երբեմն երանելւոյն Թէոդիտո-
նի երթալ արտաքոյ քան զքաղաքն անկիւ-
րիոյ․ և յանցանելն ընդ գիւղ մի, որ հեռի
էր իբր քառասուն մղոնաւ՝ մալոս կոչեցեալ,
իբրև մերձ եղև երկու ասպարիզաւ, կամե-
ցաւ հանգչել ուղեկցօքն հանդերձ յայրի
միում առ ալիս գետով․ քանզի անդ գտեալ
էր նր և թաղեալ յառաջագոյն զմարմինս
սրբոյ վկային վաղեսի, որ հրով կատարեցաւ
'ի մեդիկոս քաղաքի, և ոսկերք նորա արկան
'ի յորձանս ալիս գետոյ (3)։ Արդ յորժամ
նստէր անդ Թէոդիտոն, անցանէին ՟Ը այն
ոմանք յեղբարց՝ զորս ազատեալ էր նորա 'ի
բանտէ և 'ի ձեռաց հեթանոսաց․ սք եկին
ողջունեցին զԹէոդիտոն, և ողջագուրէին
զնա բազում շնորհակալութբ իբրև հայր
հասարակաց և բարեացապարտ բոլորից։
Նա սբյն ուրախացեալ ՟Ը գալուստ նց՝ ա-
ղաչեաց ճաշել այն օր ՟Ը նմա յափն գետոյն
'ի դալար վայրի, ուր էր ծառաստունկ զը-
ւարճալի՝ հանդերձ քաղցրաձայնութբ թռչ-
նոց։ Բայց քանզի սովորութի էր Թէոդի-
տոնի ոչ ուտել զհաց առանց օրհնել տալոյ
քահանայի ումեք զսեղանն, արձակեաց զեր-
կուս

կուս յիւրոցն, զի երթեալ փութանակի 'ի մերձակայ գիւղ անդր՝ ածցեն քահանայ զոմն՝ հացակից լինել նոցա, օրհնել զսեղանն, և աղօթս առնել վասն ճանապարհի նոցա։

Իսկ իբրև մտին՝ որք առաքեցանն՝ 'ի գիւղամէջն, հանդիպեցան վաներիցուն փրոնտոնի, որ գայր յեկեղեցւոյ զկնի վերջերորդ ժամու աղօթից. և իբրև յանծանօթս ողջունեցին զնա, ասէ ցնոսա քահանայն. եթէ քրիստոնեայք էք, մտէք 'ի տուն իմ. և նոքա ասեն. քրիստոնեայք եմք, և խնդամք ընդ հանդիպումն առն քրիստոնէի։ Յայնժամ 'ի զարմացման եղև փրոնտոն երէցն, և ասէ. գոհանամ զՏեառնէ՝ որ ոչ թաքուցանէ զխորհուրդս իւր յինէն. քանզի տեսանէի 'ի գիշերիս յայսմիկ երկուս աւետաբերս 'ի նմանութիւն կերպարանաց ձերոց, որպէս թէ գանձ բերէին այսր ընդ իւրեանս։ Ասեն ոքքն. և կարի իսկ քաջ. զի ընդ մեզ է կենդանի նահատակն Թէոդիտոն՝ քան զամենայն գանձ պատուական. այլ դու ցոյց մեզ աղաչեմք զերէց գեղջս։ Փրոնտոն ասէ. ես ինքնին իսկ եմ։ Իսկ իբրև ծանուցին նմա զկոչ Թէոդիտոնի, ետ պինի երէցն, և ասէ. մե՛զ արժան է հիւրընկալել զնա, քան 'ի կոչ նորա երթալ. զի ուր կան քրիստոնեայք, չէ՛ պարտ ումեք արտաքոյ ագանիլ։ Զայս ասացեալ եկն ընդ նոսա, և ստիպէր զԹէոդիտոն և զորս ընդ նմա՝ մտանել 'ի շէնն, և ագանիլ 'ի տան իւրում։ Բայց երանելին Թէոդիտոն ոչ էառ յանձն. փութամ ասէ դառնալ 'ի մայրաքաղաքն, զի անդ բա-

ցեալ կայ ասպարէզ ընդարձակագոյն 'ի փրը-
կութեան քրիստոնէից. և մեզ պա՛րտ է փու-
թալ յօգնութիւն եղբարց՝ որ են 'ի նեղութեան ։
Իսկ երբև ճաշեցին, ասէ Թէոդոտոս ցքահա-
նայն ժպտելով. կարի վայելուչ տեսանեմ
զտեղիս զայս 'ի պահարան նշխարաց սրբոց.
արդ փութա՛ մի՛ հեղգար, պատրաստեա՛ վանս
սրբոց ։ Մատանի ետ փրոնտոն. դու ինձ պատրաս-
տեսջի՛ր նշխարս, և եթէ գտցես զիս անպատ-
րաստ 'ի տալոյ նոցա վանս, յայնժամ յան-
դիմանեա՛ զհեղգութիս ։ Թէոդոտոս ասէ.
յիմ վերայ լիցի հասուցանել ա՟լ նշխարս առ
քեզ. միայն շինեսջի՛ր դու զհանգստարան
վկայից. զի փութով եկեսցեն նշխարք առ
քեզ ։ Իսկ հանեալ զմատանին՝ ետ 'ի ձեռս
քահանային, և ասէ. Տէր ինքնին լիցի՛ վկայ
ընդ իս և ընդ քեզ՝ 'ի կատարումն խոստմանց
մերոց. և զայս մարգարէութիւն խօսեցաւ
երանելին. զի թէ ոչ զայլոյ ուրուք 'ի վը-
կայից՝ զիւրն անվրէպ առաքեսցէ առ նա
զնշխարս. քանզի և ինքն անձկացեալ էր
ընուլ զընթացս նահատակութեան ։

Յետ այսորիկ հրաժարեալ յերիցուէն՝ դար-
ձաւ Թէոդոտոս 'ի քաղաքն իւր յանկիւրիա.
և ետես զհրդեհ հալածանաց ևս քան զևս
բորբոքեալ ։ Քանզի յաւուրսն յայնոսիկ կա-
լան պաշտօնեայք ատենին և զեօթն կուսան-
կանայս ձգնաւորս 'ի քաղաքի անդ անկիւ-
րիոյ, սնեալս 'ի մանկութենէ 'ի վարս բարե-
պաշտութեան և զարդարեալս յերկիւղն Այ,
հաստունս հաստակաւ և կատարեալս առաքի-
նու

նութ. որք բանիւ և օրինակաւ վարժիչք էին յոգւոց 'ի կարգս ածպաշտութե . և անուանք նոցա, Տեկուսա մօրաքոյր երանելոյն Թէոդորիտոսի, Աղեքսանդրա, Կղաւդիա, Փենա, Եւփրասիա, Մատրոնա, և Յուղիտա ։ Զարչարեաց զեօթանեսին զնոսա բռնաւորն Թէոդեկնոս, և փորձեաց պէսպէս տանջանօք . և ոչ կարացեալ խախտել զմիտս նոցա 'ի սէրոյն քսի խոստմամբք և սպառնալեօք, հրաման ետ անօրէնն մատնել զնոսա 'ի ձեռս անառակ երիտասարդաց 'ի նախատինս քրիստոնէից ։

Յայնժամ տեսեալ սբ և պարկեշտ կուսանացն զչարիմաց հնարս բանսարկուին, սկսան յոգւոց հանել, և ձեռս յերկինս տարածել բազում արտասուօք` գոչէին 'ի բոլոր սրտէ ասելով . Տր յս քս դու ինքնին գիտես, զի ցորչափ 'ի մեր ձեռս էր` դուն գործեցաք քոյովդ շնորհիւ անարատ պահել զմարգարիտ կուսութեան մերոյ մինչև ցայսօր` ոպ գանձ պատուական յաջս մաքուր փեսայիդ հոգւոց մերոց . և արդ տես Տր, նայեաց յերկնից յաթոռոյ սրբութե քո, զի անպատկառ երիտասարդք իշխանութիւն առին 'ի վերայ մարմնոց մերոց . խնայեա 'ի մեզ Տր, և այց արա մեզ ըստ բազում ողորմութե քում, և մի տար յապականութիւն զժառանգութիւնս քո . զի դու կարող ես ամի Տր Տր օրհնեալ 'ի բարձունս ։

Մինչդեռ յայսպիսի հեծութիւնս աղօթից պարապեալ կային երանելիքն, ընթացաւ առ

նո

նոսա ոմն յառաւել լիրբ երիտասարդաց, և բուռն եհար զհանդերձից տեկուսայի ձգել զնա յինքն ։ Յայնժամ անկաւ կոյսն աճ յոտս նորա, և բացեալ զքօղ գլխոյն՝ ասէր ։ հայեա՛ց աղաչեմ որդեակ 'ի սպիտակացեալ հերս գլխոյս, և 'ի պառաւելոյս հասակ, և 'ի մարմին տկարացեալ 'ի պահոց և այլադունեալ 'ի խստամբերութե, և այն կոչկոձեալ 'ի խոշտանգանաց ատենի ։ զի՞նչ շահ լիցի քեզ յեղթանասնամեայ պառաւոյ ։ ամօթ մեծ է քեզ սիրել զմարմին մեռեալ, որ յետ սակաւուց և ո՛չ գերեզմանի լիցի արժանի, այլ 'ի հրամանէ դատաւորին արկցի 'ի կերակուր հաւուց և գազանաց ։ Եւ զայս ասեմ քեզ և որոց ընդ քեզ, զի եթէ խնայեսջիք դուք 'ի մեզ 'ի պառաւեալքս, հասցէ 'ի վերայ ձեր շնորհք ողորմութեն այ՝ որ պարգևատուն է ամ բարեաց ։ ապա թէ ոչ՝ գո՛նէ 'ի պատիւ երեսաց մարց ձերոց, որ համահասակ մեզ լիցեն, խնայեցէ՛ք 'ի մեզ ։ Զայսոսիկ իբրև ասէր տեկուսա հանդերձ՝ սրբասէր ընկերօքն, յարտասուս ցնդէին երիտասարդքն ։ և ստրջացեալ 'ի բաց գնային 'ի նոցանէ ։ և այնպէս անփորձ պահեցան աճ կուսանքն խնամոքն այ ։

Յուզեալ և բռնաւորին թէոդեկնոսի զանգս նց՝ ոչ ևս կամեցաւ նեղել զնս վն այնր բանի, այլ զայլ հնարս մեքենայէր 'ի կործանումն նց ։ հրաման տայր պատիւ առնել նց իբրև մաքրասիրաց, և կարգել զնս քրմուհիս դիցն արտեմեայ և աթենայ ։ և զի հասեալ

սեալ էր յաւուրսն յայնոսիկ տօն չնծաւ-հեացն , եւ օրէնն էր քրմուհեաց տանել շքով զարձանս պղծոցն այնոցիկ , եւ լուանալ 'ի մօտաւոր լճին , պատուիրեաց՝ զի եօթն այն կուսանք կատարեսցեն զայն գործ ։ Իսկ երա-նելիքն ետուն պխնի , եւ ասեն ․ պատրաստ եմք մեռանիլ վն քի նոյ մեռոյ՝ քան պաշտօն տանել կռոց գարշելեաց ։ Այլ 'ի սոսկալեւ զնս դատաւորին բազմօք՝ որբուհին տեկու-սա միաբանութի որբանեալ ընկերացն՝ հա-մարձակ յանդիմանեաց զանմտութի հեթա-նոսաց , եւ անարգեաց զանօրէն պաշտամունս նոցա ։

Յղեաց զնս դատաւորն առ բուն իսկ քրմու-հիսն , զի կանխեսցի հրապուրանօք որսասցեն զնոսա նոյ ․ եւ նոյ բերեալ պսակս պսակս եւ հանդերձս պայծառս՝ մատուցանէին կուսա-նացն , յորդորելով պաշտօնակից լինել նո-քեանց 'ի ծառայութեան արտեմեայ եւ աթե-նայ ։ Նոյնց իմաստուն կուսանքն անարգե-ցին մերժեցին զշաղփաղփանս նոցա , եւ առ-ատն հարին զամենայն զարդս մնոտիս ։ Իբ-րեւ իրազեկ լինէր բռնաւորն , հրամանն տայր բարկութի՝ բանի տանել զնս մերկս եւ խայ-տառակս մինչեւ յափն լճին հանդերձ դրօշե-լովք ։ Յայնժամ մերկացուցեալ դահճաց զեօթանեսին զնս՝ եդին կանգուն 'ի մէջ սայ-լից , եւ զհետ նոց բարձեալ բերէին յայլ կառս զարձանս դիցն ․ դայր եւ բռնաւորն զկնի բա-զում հանդիսիւ , թմբկօք եւ պարուք հան-դերձ՝ հերարձակ կանանց ։ Այլ ո՞ կարէ պատ-

մել

մեւ զյետին պատկառանս պարկեշտ կուսա-
նաց՝ 'ի տեսանել զանձինս նշաւակ բազմու-
թեան հեթանոսաց. այլ բարեխնամ տ՟րն
գթացեալ յիւր աղախնայս՝ եարկ առաւել
գութ 'ի սիրտ ամբոխին. որոց տեսեալ ըզ-
մարմինս ն՟ց գանալիցս, և զկերպարանս յա-
ծուն համեստութ՟ե նոցա, չիշխէին հայել
ը՟ ն՟ս համարձակ. միանգամայն և կարեկ-
ցաբար գովէին զվարս պարկեշտութ՟ե նոցա
և զհամբերութ՟ին. այլ առաւել աղեգորով
սրտցաւութ՟բ բերեն՟ լինէին հաւատացեն՟ կա-
նայք, որք 'ի կերպարանս ծպտեալս տեսօղ
եղէն անցից ն՟ց կուսանացն. ուր ոչ ոք յա-
րանց քրիստոնէից իշխէր արտաքոյ երևիլ։
Իսկ առաւել երանելին Թէոդիտոն իբրև
լուաւ զանցս մօրաքեռն իւրոյ և ընկերաց
ն՟ր, 'ի հոգս և 'ի վարանս մտանէր յոյժ, և
յաղօթս անդադարելիս կանխէր աստուա-
ծօք, զի մի՛ արդեօք կանացի տկարութ՟բ յաղ-
թեսցի ոք յահէ տանջանաց և մահուան։
Իսկ էր յայնժամ Թէոդիտոն փակեն՟ 'ի տան
աղքատի միոյ, որում անուն էր Թէոխարի-
տէս, մերձ 'ի վկայարանն նահատակեաց, հան-
դերձ պողիքրոնիւ ազգականաւ իւրով, և
միւս ևս Թէոդիտոնիւ 'ի նմին ազգականու-
թ՟է, և այլովք 'ի բարեպաշտից։ Իսկ մինչ-
դեռ յաղօթս կային ն՟ք յառաւօտէ մինչև
ցվեցերորդ ժամն, եկն և պատմեաց կինն
Թէոխարիտեայ, թէ ս՟բ կուսանքն եօթա-
նեքին արկան 'ի լիճն, և այսպէս կատարե-
ցան 'ի տ՟ր։

Բան

Քանզի յորժամ տարաւ զնոսա դատաւորն յափն լճին, և ոչ կարաց հաւանեցուցանել զնոսա 'ի կամս իւր՝ պաշտօն տանել կռոց, և լուծանալ զպարծանս նց, հրաման ետ, և կապեցին 'ի պարանոցս կմ յոտս միոյ միոյ վէմս ծանունս. և խաղացուցեալ զնս նաւակաւ 'ի խորս անդր իբր երկու արտաչափ հեռագոյն յեզերացն, ընկեցին 'ի ջուր անդր. որով և կատարեցան իսկ. և պսակեցան 'ի քէն կուսական և վկայական անթառամ պսակօք։

Զայս ամ լուեալ Թէոդիտոսի՝ եռայր հոգի նր 'ի նմա 'ի տարաժամիլ աւուրն, թէ որպէս հանցէ 'ի լճէ անտի զմարմինս սր կուսանացն. և 'ի խորհել նր զիրացս Է պողիքրոնի և Է Թէոխարիտեայ՝ եկն պատահի մի գղիկերիոս անուն, և պատմեաց՝ եթէ զօրականք գիշերապահք կարգեցան 'ի դատաւորէ զգուշանալ լճին։ Յայնժամ տրտմեցաւ յոյժ Թէոդիտոսն, զի խափանումն եղև խորհրդոցն. թող զայն, զի ոչ գտանէր ելս՝ թէ զիարդ լինիցի 'ի վեր ձգել 'ի խորութենէ լճին զիւրաքանչիւր մարմինս, զորոց զքարինս մի մի սայլ հազիւ կարէր շարժել։ Իբրև երեկոյ եղև, գնաց Թէոդիտոս միայնիկ 'ի դուռն տաճարի նահապետաց. և գտեալ զմուտս նր խցեալ 'ի հեթանոսաց՝ եկաց յաղօթս յարտաքին գաւթի, աղաչելով զՏր յաջողել նմա զելս խորհրդոյն. և անտի անցեալ 'ի վկայարանն՝ որ կոչիւր հարանց, եգիտ և զայն տրմեալ նոյնպէս(4). և

յա

և 'ի զարդ, յորմէ ցոլանայր հուր շուրջանա-
կի. այն լինքն էր սրբին սաստանդրոս մինչ յերևե-
լի վկայից Տեառն զաղաղատացուց. մինչև խապա-
զարհուրեալ պահապանաց՝ փախս առին և
փախուցան 'ի տեղւոջէն՝ զնալ 'ի հեռու, որ
կային 'ի բացի: Իսկ ջուր լճին բանութն
հողմոյն ժողովեցաւ 'ի մի կողմն, մինչև ե-
րևիլ մարմնոց սրբոցն. յայնժամ մտեալ թէո-
դիտոնի և որոց ընդ նմա՝ հանին զպարանս 'ի
պարանոցաց եօթանեցունց կուսանացն. և
բարձեալ զպատուական մարմինս նոցա 'ի մի
գրաստուց՝ բերին մօտ յեկեղեցին նահապե-
տաց (կմ ... մերձ սրբ հարանցն), և անդ
ամփոփեցին 'ի մերձակայ շիրմի:

Նոյն իբրև առաւօտ եղև, տարածեցաւ լուր
'ի քաղաքին՝ թէ գողացեալ են քրիստոնեայք
զմարմինս կանանցն արկելոց 'ի լիճն. վասյ
և կռապաշտք յոյզ և խնդիր արարեալ՝ ծը-
դէին զոմանս յատեան: Խորհեցաւ սրբն
թէոդիտոն անձամբ զանձն մատնել, զի մի
այլք 'ի պատճառս իւր վտանգեսցին. բայց
ոչ թողին զնա հաւատացեալքն: Իսկ պո-
ղիքրոն զգեցեալ զձև շինականի՝ գնաց 'ի
գուղն դատաւորին լսել զիրսն. այլ իբ-
րև յայտնի եղև՝ թէ քրիստոնեայ է, կա-
ցուցին յատեանն. և 'ի խոշտանգել զնա դա-
տաւորին, և յերկեղուկս արկանել նմ մերկ
սուսերաւ, զանգիտեաց, և մատնեաց իսկ,
թէ ո՞ էր՝ որ եբարձ զմարմինս, և ուր թա-
ղեաց: Սոյ եկին հանին հեթանոսք զմար-
մինս սրբ կուսանացն, և այրեցին. և յանձն

ժամ 'ի միա եղաւ Թէոդոտոսն, եթէ պողի-քրոն էր այն՝ զորմէ երկիցս ազդեցաւ նմա զգոյշ լինել 'ի մատնչէ ։

Այնուհետև փառաւոր Թէոդոտոսն 'ի հան-դէս առաջիկայ նահատակութե՝ յաղօթս եկաց արտասուօք 'ի ժողովս եղբարց, և ա-սէ. Տէր յո քո յոյսդ անյուսից, տո՛ւր ինձ կատարել 'ի հաճոյս քո զընթացս վկայութե, և մատուցանել զհեղումն արեան իմոյ 'ի պա-տարագ քեզ ընդունելի՝ փոխան ամենեցուն, որք վն̄ քո չարչարին. Թեթևացո՛ տր̄ զբեռն նց̄, և հանդարտեցո՛ զմրրիկ հալածանաց. զի 'ի խոր խաղաղութե վայելեսցեն հաւա-տացեալքն 'ի քեզ ։ Եւ յարուցեալ յաղօ-թից, և քաջալերեալ զեղբարսն՝ որք մոր-մոքէին ը̄ նր̄ հրաժարումն, պատուէր ետ նց̄, և ասէ. Յորժամ եկեսցէ պատուական երէցն տր̄ Փրոնտոն 'ի մալոս գեղջէ՝ բերել ը̄ իւր զինի յիշելիք զմատանին, տո՛ւք նմա զնշխարս իմ, միայն թէ կարօղ լինիջիք գո-ղանալ ։ Զայս ասացեալ կնքեաց զբովան-դակ մարմին իւր նշանաւ տն̄ խաչին, և յա-ռաջեաց յասպարէզ նահատակութե ։

Եւ 'ի ճանապարհի հանդիպեալ նմա եր-կուց 'ի բարեկամաց հեթանոսաց՝ ասեն ցնա. յո՞ դէմ եդեալ գնաս Թէոդոտէ, դարձի՛ր փու-թանակի 'ի յարկս քո, և ապրեցո՛ զանձն. զի 'ի խնդիր են վն̄ քո. ո՞չ գիտես՝ զի պողի-քրոն վկայեաց զքէն վն̄ գողանալոյ զմար-մինս, և քուրմք հանդերձ այլովք ամբաս-տան եղեն զքէն վն̄ անարգելոյ քո զդիս

իբրեւ զքարինս անշունչս, եւ մի՛ յետոյ նա-
հանջեսջիք զքրիստոնեայս 'ի պաշտելութէ
դից․ արդ մեք խրատ տամք քեզ իբրեւ բա-
րեկամի զգոյշ լինել անձինդ․ Ախինի եւ ա-
ռաքինի նահատակն․ եթէ դուք բարեկամք
էք իմ, եւ բարիս ինձ կամիք առնել, մի՛ լի-
նիք խափան ընթացից իմոց․ այլ յառաջե-
ցէք քան զիս առ դատաւորն՝ տալ աւետիս,
թէ ահա Թէոդոտոսն այն՝ զոր խնդրէքն,
առ դուրս հասեալ կայ․

Օ այս ասացեալ՝ էանց զնոքօք․ եւ եկեալ
յապարանս դատաւորին՝ յայտնեաց զանձն․
եւ մտեալ 'ի ներքս յատեանն՝ եկաց աներ-
կիւղ յանդիման դատաւորին, եւ հայէր զը-
ճարթագին 'ի վ՟ր տանջանարանացն՝ որք
պատրաստեալ կային յընդարձակ սրահի զա-
տենին՝ վ՟ս քրիստոնէից, խարոյկ բորբոքեալ
եւ կաթսայ յեռանդեան, անիւք եւ կախա-
ղանք եւ գեղարանք, եւ ամ՟ անօթ չարչարա-
նաց։ Հայեցաւ ընդ նա դատաւորն Թէոդեկ-
նոս, եւ ասէ․ զի՞ կաս այր դու՝ ակն եդեալ
'ի վ՟ր տանջանարանացս․ ոչ է վ՟ս քո եւ ոչ
մի 'ի սոցունց յայսցանէ․ միայն թէ 'ի միտս
եկեալ զգաստութե՝ զոհեսցես դիցն, եւ ա-
զատ լինիցիս յամ՟ վնասուց՝ որովք ամբաս-
տան եղէն զքէն․ եւ ոչ այսչափ միայն, այլեւ
ընդ առաջին բարեկամս զետեղիցիս, եւ սիրելի
թագաւորաց անուանեսցիս․ եւ արժանի դատնի-
ցիս ընդունել հրովարտակաւ պատիւ եւ մեծութի
յոյժ․ միայն ուրացի՛ր զյս՟՝ զոր 'ի խաչ եհան
պիղատոս դատաւորն իշխանակալութե հռով-
մայ․

մայեցուոց 'ի Հրէաստան ։ Բազում և այլ ինչ խօսեցաւ ը՟ նմա դատաւորն՝ ողոք բանիւք, գովելով միանգամայն և զապողոն չ՟ածն և զայլ դիս իւր, յորոց ասէ յորդեն 'ի մեզ ա՟մ բարիք ։ Իսկ ժողովուրդն՝ որ անդ կայր, երանի կարդայր Թէոդորիտոսի մ՟ կարող լինելոյ այնպիսում հասանել պատուոյ և փառաց · մ՟յ յորդորէին լսօղ լինել իշխանին ։

Պխնի եա ս՟ վկայն ք՟ի Թէոդորիտոս, և ասէ · Աւխ քան զա՟մ՝ զայս շնորհս խնդրեմ 'ի փրկչէն իմմէ յս՟է ք՟է՝ զոր դուք իշխեցէք Թշնամանօք անուանել խաչեալ զմի 'ի սուկ 'ի մարդկանէ, զի կարող եղէց յանդիմանութեան յառեննիս զդիցապաշտ ձեր մոլորութիւն, և զա՟ն իմոյ յս՟ի ք՟ի զխորհուրդն սքանչելի ։ Արդ հարկ է ա՟յլ Թէոդորեկնէ, զիմ առնաս զհաւաստս բանիւք և արդեամբք յայտնի կացուցանել 'ի ձեռն բազում վկայից ։ Ապաքէն որ ինչ բանք իցեն մ՟ դից ձերոց՝ զայն և խօսել իսկ աղտեղի է · այլ ասեմ յամօթ ձեր · արամազդն հայր ա՟ծոց կարդացեալ առ 'ի ձէնջ՝ ը՟ ձերոց քերթողացդ վկայելոյ՝ հայրասպան էր և մծղնեայ, և ա՟մ զազրութեանց սկիզբն և կատարած · նոյնպէս և ապողոն և արէս և հեփեստոս 'ի քորս իւրեանց մտաքերեցին · Թողից զայլոցն զծանականս · զոր պարծանօք գրեցին՝ որք գրեցինն, և դուք պանծանայք յընթեռնուլն և 'ի լսելն · անսանեա ա՟յլ հիւպատոս զամօթալի պաշտամունս հեթանոսացդ ։

Ուր յաղագս ածահրաշ զօրութեն և սքանչելեաց տն մերոյ յի քի, զոր անդստին գուշակեցին տեսանօղք հոգւոյն սբյ, չիք մեզ տեղի ամաչելոյ. զի ածն է անտխեղծ սրբութբ լի. քանզի զորօրինակ վկայեցաւ՝ մինչև եղեալ, եթէ 'ի լրման ժամանակաց ած յերկրի երևեցի և ընդ մարդկան շրջեցի, լոյս ծագել խաւարելոց, և բժշկել զախտս հոգւոց և մարմնոց, յանձն առնուլ զմահ, և յարութբ իւրով կեանս մեզ պարգևել՝ և երկնից թագաւորութեան առնել արժանի, նոյնպէս և կատարեցաւ ամն ածավայելուչ տնտեսութբ: Վկայ եղեն այսմ 'ի սկզբան անդ խորհրդոյն և իմաստուն քաղդեայք և մոգք արևելից՝ եկաւորեալք առաջնորդութեամբ աստեղն յերկրպագութի այ երևելոյ 'ի մարմնի՝ հանդերձ պատարագօք: Եւ ո՞ կարէ պատմել մի ը միոջէ զնշանս և զսքանչելիս տն մերոյ. այն՝ որ զջուրն 'ի գինի փոխեաց, հինգ հացի՛ւ զհինգ հազարս յագեցոյց, գնաց 'ի վերայ ծովու իբրև 'ի ցամաքի. բանի՛ւ նր մեռեալք յառնէին, կոյրք տեսանէին, կաղք գնային, հի՛ւանդք բժշկէին, դևք 'ի բաց հալածէին. վն զի ած էր Ճշմարիտ՝ տր կենաց և մահու, և ոչ լոկ մարդ ոք 'ի մարդկանէ:

Յայս վայր լռեալ ամբոխին՝ այնուհետև ոչ կարէին հանդարտել. դղրդեցաւ ատեանն ամ. զօձիս պատառեալ և զհերս փետեալ քրմաց և այլոց բազմաց՝ բողոքէին ընդդէմ իշխանին, եթէ որպէս ներեաց նմա խօսել

զայն

զայնպիսիս 'ի լսելիս ամենեցուն ։ Յայնժամ
և դատաւորին ինքնին գլխովին լցեալ բար-
կութեամբ՝ հրամանս ետ դահճաց իսկ և իսկ 'ի
կախաղանս քերանաց հանել զնա . և յարու-
ցեալ յաթոռոյն՝ առաստանայր 'ի սրտի ան-
ձամբք տանջել զնա . և յայնպիսի ծուփս յուզ-
ման ամբոխին՝ Թէոդիտոն կայր հանդարտ ,
որպ̃ Թէ ընդդէմ այլոյ ումեք իցէ ցասումն
ատեանին ։ Իսկ դահիճքն այր զարամբ ելեալ՝
զամ̃ ազգս տանջանաց հնարէին միանգա-
մայն հեղուլ զնովաւ , և եթէ մարթ ինչ իցէ՝
որով և հրով ծախել զամ̃ ոսկերս նորա ։
Իսկ նախ մերկացուցեալ զնա և մատուցեալ
'ի կախաղան՝ յերկուս դասս բաժանեցան ,
և սկսան գազանաբար քերել զկողս նորա
երկաթի եղնգամբք , մինչև վաստակել և
փոփոխել նոցա ։ Իսկ սբ̃ վկայն զուարթե-
րես և անայլայլելի կայր մնայր զօրութ̃ վե-
րին օգնականութե̃ ։ Ապա հրամայէր բռնա-
ւորն արկանել բարկ քացախ 'ի վերայ կողիցն
քերելոց , և ջահս վառեալս մատուցանել ։
Իսկ էառ սբ̃ն զկծու հոտ քացախոյն հան-
դերձ խանձողմամբ մարմնոյն , շրջեալ զհո-
տոտելիս իւր առ փոքր մի ։ Յայնժամ 'ի վեր
վազեալ անմիտ իշխանին յաթոռոյ իւրմէ՝ ա-
սէր . ո՛ւր է արդ Թէոդիտոն ձոռոմութիւն
բանից քոց , զի տեսանեմ զքեզ փոքր մի ւս
եւս և նուաղիլ 'ի տանջանացս . և եթէ չէր
քո հայհոյեալ զդիս , ոչ պատահէին քեզ չա-
րիքս այս . և արդ ա՛ղէ այդ լիցի քեզ 'ի խրատ ,
զի, դու այր զինավաճառ և անշուք մի իշխի-

ցես դիմակաց լինել ինքնակալաց, որք իշխա-
նութիւն ունին ՚ի վ՟ր արեանդ քո ։

Բաւէ քաջ նահատակին . մի՛ է այդ զարմանալ ով հիւպատոս, եթէ դարձուցի զանդգունս յանսովոր հոտոյ կողիցս . այլ պատուիրեր տալ դահճացդ ծիրածիր ՚ի գլուխ հանել զհրամանս քո . քանզի տեսանեմ զնոսա խոնջս և թոյլս . և դու ծրացի՞ր զայլ ևս ազգի ազգի տանջանս մեքենայել՝ զփորձ առնուլ զիմոյ զօրութեան, որ չէ իմ, այլ՝ զօրացուցչին իմոյ և Տ՟ն յ՟ի ք՟ի . որով հզօրացեալ՝ առ ոչինչ դրեմ զքեզ և զամպարիշտ թագաւորդ ։ Եթէ իբրև չարագործ կալեալ էր քո զիս, դոյր թերևս յիս տեղի երկիւղի . իսկ այժմ ոչինչ զանգիտեմ ՚ի սպառնալեացդ, զի յօ-ժարութ՟ե պատրաստ եմ կրել զա՟մ չարչարանս
վ՟ն անուան ք՟ի ։

Ընդ այս սրտմտեալ դատաւորին՝ տայ հարկանել քարամբք զկզակս նորա, և խորտակել զատամունսն ։ Իսկ պատուական վկայն ասէ . Թէև զլեզուս հատանիցես ով Թէոդեկնէ, նաև լռութ՟ե լսօղ է ա՟մն քրիստոնէից ։ Յայնժամ հրամանն ետ դատաւորն
տանել և արկանել զնա ՚ի բանտ ։

Եւ իբրև անցանէր ս՟ն Թէոդոտոսն ը՟ն հրապարակս վիրալից և պատառոտեալ մարմնով, ասէր ցամբոխն . հայեցարո՛ւք առ հասարակ ՚ի հրաշալի զօրութ՟ի ք՟ին իմոյ, և տեսէք թէ ո՟մ որոց չարչարիմն վ՟ն սիրոյ նորա՝ տայ զանչարչարութ՟ի . և զակարութ՟ի մարմնոյս զօրագոյն առնէ քան զհուր, և տայ տկարա-
դու-

զաւանիցն 'ի մարդկանէ չհամարել ինչ զապա-
նալիս բռնաւորաց , և առ ոտն հարկանել
զա՛ծ ընդդէմ հրամանս ինքնակալաց . և զայս-
պիսի շնորհս առանց ակնառութեան պարգևէ
ա՛ր մեր մեծի և փոքու , ազատաց և բարբա-
րոսաց : Այս ցուցանելով զվերոյն իբրև նշա-
նակս արքունի պատուոյ՝ յայտ առնէր զու-
րախութիւն սրտի իւրոյ ընդ չարչարակիցն լի-
նել փրկչին , և ասէր . արժան իսկ է հաւա-
տացելոց 'ի քս զայսպիսի պատարագս մատու-
ցանել նմա , ուր նախ նա ոչ ամօթ համարե-
ցաւ զայսպիսիս կրել վս միոյ միոյ 'ի մէնջ .
Այս յետ հինգ աւուրց հրամայեաց թէո-
դեկնոս ածել միւսանգամ զթէոդիտոն յա-
տեան իւր յերևելի տեղւոջ առաջի ամբո-
խին , և ասէ ցնա . Մօտ եկ առ մեզ թէո-
դիտոն . քանզի գիտեմ , խրատեալ և զգա-
տացեալ ես քո տանջանօք , և 'ի լաւ անդր փո-
խեալ յամբարհաւանութենէդ . զի արդարև
անմտութեամբ յանձն առեր զառաջին զայն
խոշտանգանս ընդդէմ կամաց մերոց : Արդ 'ի
մէտ առ զմրութիւն ամենիշխան տէրոջն , և
զոհեա՛ նոցա , զի վայելեսցես յա՛մ բարիս՝
զոր խոստացայն և խոստանամ . քեզէն ըն-
տրեա՛ զքո բարին . ապաթէ ոչ՝ պատրաստ
կայ հուր կիզանող , և երկաթ սուր , և մռն-
չիւն գազանաց գիշատողաց . առ որովք իբրև
ստուեր համարեսցիս՝ որ ինչ անցքն անցին ը̃
քեզ :

Ասէ վկայն քի . զի՞ է քեզ թէոդեկնէ այդ-
չափ մեծամեծս խոստանալ ընդդէմ զօրութե

 տն

տն իմոյ յի քի. զի թէպէտև ամ մարմինս
պապականեալ է առաջին տանջանօք՝ ոչ տե-
սանես, մատի՛ր անդրէն 'ի փորձ նորանոր
հարուածոց. զի իմասցիս՝ թէ քանի՛ տոկուն
է ամ՝ այն, որ կարծի քեզ իսպառ ակարա-
ցեալ: Դատաւորն ասէ. քերեցէ՛ք զդա միւ-
սանգամ մինչև ցոսկերս. և դահիճքն արա-
րին ըս բանի նորա. մինչև վաստակեալ լու-
ծան. իսկ սրբն կայր իբրև զվէմ հաստատուն:
Յայնժամ հրամայեաց բռնաւորն իջուցա-
նել զնա 'ի փայտէ քերանաց, և տարածել
'ի վերայ հրացեալ խեցեղինաց. մինչև թա-
փանցել զփորոտիս նորա: Եւ մինչդեռ յայն
անհնարին տանջանսն էր, յաղօթս եկաց ե-
րանելին, և ասէ. տր յս քս յո՛յսդ անյոյս
եղելոց, լո՛ւր ձայնի աղօթից ծառայի քո, և
մեղմացո՛ զցաւս զայս. զի վն անուան քո սբյ
կրեմ զայսոսիկ: Զայս իբրև ասաց, զգե-
ցաւ նոր զօրութին, ոչ թէ ոչինչ զգալ ցա-
ւոցն: Սմին իրի դարձեալ փոխել հրամա-
յէր դատաւորն զտանջանս, և զառաջին
վէրսն հերկագործել քերանօք. իսկ թէո-
դիտոն ոչինչ ցաւ յանձին ցուցանէր. և դա-
հիճքն համարէին իբրև ըս խաղս չարչարել
զնա. զի չէր մնացեալ տեղի ողջ 'ի մարմնի
առ 'ի պէտս քերանաց. միայն լեզուն կայր
անվնասելի, յորմէ ակն ունէին առնուլ ինչ
բան տանջանաց. այլ այն էր վկային քսի գոր-
ծի հաստատելոյ զճշմարտութին, և օրհնելոյ
զտր ած իւր:

Յայնժամ վճիռ եհատ դատաւորն օրինակ

ղայս ․ Ո Թէոդիտոն զվերակացուն գաղի-ղիացւոց , և զա՟ծոց թշնամին , զընդդիմակացն հրամանաց անյաղթ թագաւորաց , և զիմոյ անձին անարգումն , հրամայէ իշխանութիս իմ՝ որամահ ընդունել պատուհաս ․ և յետ գլխատման հրովայրել զմարմինն , զի մի՛ անկցի 'ի ձեռս քրիստոնէից՝ տալ նմա թաղումն պատուով ։ Այս ընդ լինել վճռոյն կուտեցաւ քաղաքն ամ՟ տեսանել զկատարածնորա ։ Իսկ երանելոյն հասեալ ուրախութ՟ 'ի կատարման տեղի՝ աղօթս մատուցանէր այսպէս ․ Տ՟ր յս՟ քս՟ արարիչ երկնի և երկրի , որ ոչ թողուս զյուսացեալս 'ի քեզ , գոհանամ զքէն , զի արժանի արարեր զիս լինել քաղաքացի երկնաւոր քաղաքիդ և կցորդ արքայութե՟ քում ․ գոհանամ զքէն , զի ետուր ինձ յաղթօղ լինել վիշապին , և ջախել զգլուխ նորա ․ տո՛ւր հանգիստ անդորրութե՟ ծառայից քոց , յիս գլխաւորեալ զհալածանս և զհարստահարութիւն թշնամեաց ․ տո՛ւր խաղաղութի՟ եկեղեցւոյ քում , կորզելով զնա 'ի բռնութե՟ բանսարկուին ։

Այս իբրև ասաց զամէնն , հայեցեալ ետես զեղբարսն՝ զի լային , և ասէ ցնս՟ ․ մի՛ լայք եղբարք , այլ փառաւո՛ր արարէք զտ՟ր մեր յս՟ քս՟ , որ ետ ինձ կատարել զընթացս իմ , և կոխան առնել զթշնամին ․ զի յայսմ հետէ համարձակ եղէց բարիս մաղթել յայ՟ յերկինս վս՟ ձեր ։ Այս զայս Է բանիցն ընկալաւ զըճարթութ՟ զհարուած սրոյ , և կատարեցաւ 'ի քս՟ երանելին Թէոդիտոն ։

Յայն-

Յայնժամ խարոյկ մեծ պատրաստեալ զահա- ճաց՝ եդին ՚ի վերայ փայտից գիզելոց զմար- մին սրբ՛ վկային. այլ խնամօքն այ՛ ն որ յանձա- ման երևեցաւ ՚ի մէջ նո՛ լոյս ճառագայթել. յորմէ զարհուրեալ դահճաց՝ ընկրկեցին մեր- ձենալ և հուր մատուցանել ՚ի փայտսն. և այնպէս անարատ մնաց պատուական մարմին սրբոյն: Արդ եղեն սքանչելիքն յանձին քահա- նային. հրաման տայր զօրականաց պահել շուրջանակի զտեղին, ուր էր մարմինն և գլուխն Թէոդիտոսի:

Այս ՚ի կալ մնալ պահապանացն այնոցիկ անդ գէն առանձինն, եկն եհաս փրոնտոն երէց ՚ի մաւրոս գեղջէ՝ ըստ պայմանադրութեան սրբոյն, բերեալ ընդ իւր զմատանին նորա ՚ի գրաւ նշխարաց. ածեալ ընդ իւր և գինի հին բարձեալ ՚ի վերայ գրաստու յայգւոյ անտի իւրմէ: Այս եդև ՚ի մերձենալ նորա ՚ի քա- ղաքն ընդ երեկս, նստաւ գրաստն մօտ ՚ի տեղի գլխատման սրբոյն. ընթացան պահապանքն առ փրոնտոն, և ասեն. յո՞ դիմեալ գաս ՚ի տարաժամու այր դու ծեր. եկ մնա առ մեզ զայս գիշեր. և գտցի աստ կերակուր քեզ և իշոյդ. զի լաւ է քեզ առ մեզ օթագայել՝ քան նեղիլ յանմարդի պանդոկապանաց:

Զայս ասացին, զի ոչ գիտէին՝ թէ քահա- նայ է նա և կմ՛ քրիստոնեայ. և ինքն իսկ փրոնտոն ոչ գիտէր՝ թէ առ ի՞նչ կան ՚ի տեղւոջ անդ պահապանքն. բայց լուեալ խրատու նդ՝ եմուտ ՚ի հիւղ նոցա: Այս իսկ եդին առաջի նորա հաց և գինի, առեալ նք անօթ

անօթ մի դատարկ՝ ելից յիւրմէ գինւոյն, և մատոյց նոցա․ ասէ․ Ճաշակեցէք և դուք 'ի հնգամեայ գինւոյ այտի, և տեսէք՝ եթէ բարւոք թուի յաչս ձեր․ և նոցա զմայլեալ 'ի համոյ և 'ի հոտոյ հին և ազնիւ գինւոյն՝ խնդրէին այլ ևս անյագաբար, և նա տայր նոցա զուարթառատ միտօք ։

Այնժամ երիտասարդ մի 'ի զօրականէն Մետրոդորոս անուն՝ ասէ ծիծաղելով․ ինձ պէտոյ է ըմպել առատութեամբ 'ի գինւոյ աստի, զի մոռացայց զցաւս հարուածոցն՝ զոր ընկալայ 'ի պատճառս կանանցն 'ի լիճ արկելոց և դողացելոց ։ Փրոնտոն ասէ․ չգիտեմ, զորոց կանանց իցեն բանքդ ։ Իսկ այլ ոմն 'ի պահապանացն ասէ ցՄետրոդորոս․ զգո՛յշ լեր, զի մի՛ մեծ ևս չարիս անցուցէ ընդ քեզ բաժակդ այդ՝ 'ի պահուս, յորում հրաման ընկալար արթնութեամբ պահել զայլոն պղնձի, որ դողացաւ 'ի լճէ անտի զմարմինս կանանցն ։ Ասէ Փրոնտոն․ ցաւ է ինձ, զի ոչ բերի ընդ իս թարգման զոր ճարտար 'ի պէտս իմաստից թաքուն բանից ձերոց․ ո՞յք իցեն տղայաբեմ կանայքն հանեալք 'ի լճէ, և ո՞ այրն պղնձի՝ յորոյ կարգեցայք 'ի պահպանութիւն ։ Առ այս ետ պատասխանի Գաւդենտիոս զօրականն, և ասէ․ եթէ՛ պղնձի և եթէ՛ երկաթի կոչեսցուք զայլն, տակաւին չասեմք ինչ ընդ ուժոյ նր․ քանզի պղինձ և երկաթ տեղի տան հրոյ և կռանոյ․ ոչ և անդամանդն գլխովին ներքոյ անկանի հնարից ձեռին ճարտարաց․ իսկ զայլն՝ զորմէ մեր բանքս են, ոչ

հուր

Հուր և ոչ երկաթ կարացին նուաճել եր-
բեք ։ Իսկ թէ մարդ կոչեցից զնա, ոչ ոք 'ի
մարդկանէ այդպէս զօրաւոր գտաւ և տևօղ
'ի տանջանս . քաղաքակից մեր էր, և մարդ
ծանուցեալ 'ի մէջ մարդկան քաղաքիս . այլ
'ի վեր քան զմարդկան բնութիւն երևեցաւ ։
Անուն նորա Թէոդորոս, և կրօնիւք քրիստո-
նեայ . որ և յետ գողանալոյ զմարմինս եօ-
թանեցունց կանանց քրիստոնէից 'ի խորոց
լճին՝ ինքնակամ մատնեաց զանձն յատեան,
զի մի այլք տուգանեսցին ։ Արդ Թէպէտև
բազում խոստմունս և սպառնալիս առաջի
եդ նորա դատաւորն, Թէպէտև խստագոյն
տանջանօք փորձեաց, ոչ կարաց կակղել զսա-
լացեալ կարծրութիւն մտաց առնն, որ ծիծա-
ղէր 'ի չարչարանսն . մինչև ել հրաման հա-
տանելոյ զգլուխ նորա, և զմարմինն հրով այ-
րելոյ . բայց չեղև մեզ հնար հուր մատուցա-
նել յանծախելի մարմին նորա . զի առ խարու-
կաւն նորանշան տեսիլք ցուցան, զոր աչօք մե-
րովք տեսաք, այլ անկարանամք զիսկն պատ-
մել . և զի մի առցեն քրիստոնեայք զմարմին
նորա՝ զոր տեսանեաք մօտ 'ի հիւղս ծածկեալ
'ի ներքոյ խռամոյ և խոտոյ, կամք 'ի պահ-
պանութիւն ։

Զայս բան իբրև լուաւ Փրոնտոն երէց, զա-
հացաւ 'ի սրտի զնոյ, և խնդրէր 'ի նմանէ
պայծառութիւն բառնալոյ անտի զմարմին սրբոյ
վկային ։ Այնուհետև առաւել զուարթու-
թիւ 'ի զբոյցս անկեալ է պահապանաց՝ եբեր
նոցա այլ եւս գինի շատ, և արբոյց նոցա սիրով .
մին-

մինչև արբենալ ամենեցուն զգիշերն զայն , և խոր 'ի քուն լինել ։ Յայնժամ յարուցեալ արթունն երկիցուն՝ եբարձ զպատուականն մարմին վկային քնի 'ի վ͞ր գրաստու խուրջոյ , և ասէ ․ ո՛վ երանելիդ Թէոդորիտոն , կատարեա՛ զխոստումն քո՝ որ առ իս , և յաջողեա՛ զճանապարհս իմ ․ անցոյց և զմատանի ս͞բյն 'ի մատն ն͞ր ․ և յետ յարդարելոյ զխոստս տեղւոյն՝ ո͞ղ և զիարդ արկեալ կայլն 'ի վերայ մարմնոյ ս͞բյն , ͞ը այգանալ աւուրն Թողացոյց զգրաստն երթալ յառաջ ․ և ինքն ո͞ղ Թէ կորուսեալ իցէ զէշն՝ սկսաւ ընթանալ խուրև 'ի խնդիր ն͞ր ․ վ͞ոյ և պահապանքն՝ որ այն ինչ զարթնուին 'ի Թմբրուէ քնոյ , ցաւակից լինէին ͞ը կորուստ ն͞ր ․ մինչև հեռացաւ 'ի տեսուէ աչաց ն͞ց ։ Եւ այնպէս խնամօք ͞տն յառաջեալ փրկանտոնի անկասկած ͞ը անկոխ տեղիս՝ եհաս 'ի գիւղ իւր մալոս ․ և անդ հանգոյց զպատուականն գանձն ․ այն է վկայարանն ս͞բ և փառաւոր վկային Թէոդորիտոնի ․ ուր ընթանայիկն հաւատացեալքն 'ի պատիւ պատուականն նշխարաց նորա ։

# ՎԱՐՔ ԵՒ ՎԱՏԱՐՈՒՄՆ

## Սրբոյ երանելւոյն Տէր Հօրն մերոյ Գրիգորի Հայաստանեայց Լուսաւորչի. եւ Գիւտ նշխարաց նորա։

Հ. սեպտ. 30. եւ նոյեմբ. 18։ Հ=Յ. սեպտ. 30։ Յ. Լ. սեպտ. 30։ Λ'աւրնոսեր։ Լ. կաթանկելոս։ Օ. ենոք։ Խ. յորենեալ. եւ այլ պատմաբանք մեր։ Ս. եպտաքրոնտես։ Լ. նոնեմոս։ Ս. եբրեող. լոսս. յաւելեալերանէ, 'ի սորխաւսկ վարդապետէ, 'ի վարդանայ, յերջնկացւոյն. ևն։ Ի սուլլանդեանն յամսակերտէնկ. 'ի Է հատ. սեպտ. 30. եր. 295=413։ (1)

ԼՈՅՍ ԱՐՓԻԱՃԱՌ` Լուսաւորիչ տանն Թորգոմայ, հայր հաւատոյ Հայաստանեայց, ծնօղ հոգևոր, հովիւ հսկօղ և վէմ ճշմարտութե, առաքելանման սրբ հայրապետն մեր, մեծ խոստովանողն քրի` և բազմաչարչար կենդանի նահատակն, և կատարեալ ճգնաւորն տէր Գրիգորիոս, եր պարթևազգեան արշակունի` տոհմակից թագաւորութե Հայոց, յազգէ պահլաւ 'ի ցեղէ սուրէնեան, որդի պարթևին անակայ և ոգոհեայ, յղացեալ 'ի չու ծննդեան հաւատա-

ծի պատճառաւ յերկրէն պարսից 'ի Հայաս-
տան Ծ՝ յարտազ գաւառի մօտ 'ի տեղի Հան-
գստեան Տր. առաքելոյն Թադէոսի, և ծնեալ
յարքունիս Հայոց 'ի վաղարշապատ քաղաքի՝
յամի Տն. 257.

Յորում ժամանակի 'ի հարկանել անակայ
և եղբօր նր̃ դաւոյ զխոսրով արքայ Հայոց՝
ըս̃ պայմանին եդելոյ ը̃ արտաշրի սասանեան
բարձողի զթագաւորութի արտաւանայ ար-
շակունեաց, 'ի սուր սուսերի ընաջինջ եղև և
տուն մեղապարտին անակայ 'ի վրէժ արեանն
խոսրովու ։ Մ՝իայն առանձին խնամօքն այ̃
ապրեցան երկոքին տղայք որդիք պարթևին
անակայ 'ի ձեռն մանկաբարձաց. յորոց զմին
սուրէն անուն փախուցին 'ի պարս առ հօ-
րաքոյր իւր. և զմիւսն՝ որ լուսաւորիչ հան-
դերձեալ էր մեզ լինել, տարաւ 'ի յունաց Ծ
'ի կեսարիա կապադովկացւոց՝ որ և մաժակ
գամրաց՝ ստնտու նորա սոփի կին հաւատա-
ցեալ բուրդարայ առն պարսկի, և քոյր եւ-
թաղեայ կեսարացւոյ. զոր և ետուն մկրտել
'ի կեսարիա, և անուանեցին գրիգոր, որպ̃
աւի՝ ըս̃ յառաջագոյն ձայնելոյ զնա հրեշտա-
կին յաստոց ծառոյ զճանապարհայն 'ի կեր-
պարանս աղաւնւոյ՝ 'ի հեղլէն բարբառ զրի-
գորիօս, այն է գրիգորիոս. որ թարգմանի
արթուն կմ̃ հսկող ։

Ընդ 'ի կեսարիա սնեալ գրիգորի ը̃ ձեռամբ
դայեկին՝ որ էր երկիւղած քնի, և ըս̃ աճել
հասակին զարգացեալ յերկիւղն այ̃ և 'ի վարս
աստուածպաշտութե՝ ուսաւ և զքնական դպրութե.

հան-

հանգամանս, և ընտանի եղև գրոց ն̃յ, ա-
սէ Ագաթանգեղոս։ Զայլ զայս ամ̃ գործէ
յառաջատեսութ̃ին ն̃յ, ոմ̃ կամք են ասել
իմոյ բանի (ասէ խորենացին), յաղագս որ
'ի մեզ փրկութե̃ Ճանապարհ. ապա թէ ոչ՝
որո՞յ յուսոյ ակն ունելով՝ զմանուկն պարհա-
ւիկ 'ի հռովմայեցւոց իշխանութ̃ին սնուցա-
նէին, և քո̃ի ընծայէին հաւատոց։ Բայց
յորբունս հասեալ մանկանն հասակի՝ փե-
սայացուցանէ հաւատացե̃լ ոմ̃ն այր, որում
անուն էր դաւիթ, 'ի դուստր իւր մարիամ։
Որ յետ երից ամաց՝ երկուց որդւոց լինելոյ,
'ի կամաց երկոցունց՝ մեկնեալ 'ի միմեանց
զատչէին։ Մարիամ հանդերձ կրսերով ման-
կամբն, որում անուն եղաւ արիստակէս, 'ի
վանս կանանց երթեալ կրօնաւորէր. որ 'ի
յորբունս հասեալ մանկանն՝ զհետ ընթա-
նայ միաւորի ուրումն՝ որում անուն էր նիկո-
մաքոս, և առաքի յանապատ. իսկ անդրա-
նիկն վրթանէս կոչեցեալ՝ առ դայեկաց էր
մնացեալ. որ ապա Ցաւարե̃լ ամուսնացաւ։
Բայց հայրն ն̃ց գրիգոր՝ տեղեկացեալ հայ-
րենի գործոց, որ եղեալ էին, եւ գնաց առ
տրդատ որդի խոսրովու հայոց արքայի՝ սպա-
նելոյ 'ի հօրէն իւրմէ անակայ, զհայրե-
նեացն հատուցանել զպարտս ը̃ հեշտ պաշ-
տաման. և թաքուցանէր զանձն, և զայն
ինչ 'ի վէր ոչ հանէր՝ թէ ո՞յր որդի է կմ̃ ուս-
տի՞. այլ կամաւոր ծառայութ̃ տուե̃լ զանձն
'ի հնազանդութ̃ի՝ պաշտէր առաջի տրդա-
տայ. զի թերևս փոխան ը̃ մարմնաւոր ծնա-

սուրբ Հօր իւրոյ՝ Հաճեսցի տր 'ի ձեռան նորա առնել Հոգևոր օգուտ և այցելութե Հայոց ազին ընկղմելոյ 'ի խոր խաւար կռապաշտութե։ Իսկ սուրբն եղբայր Գրիգորի՝ ըստ գրելոյ զենոբայ , եղեալ այր զօրաւոր 'ի դրան պարսից՝ գնաց յերկիրն Ճահէն , և թագաւորեաց 'ի վր ճենաց և դարբանդայ մինչև ցմահ իւր։ Հասակակից էր սորա և Հօրաքեռորդի սոցին , այն է որդի խոսրովուհեայ քեռն անակայ՝ յակոբ զգօնն կոչեցեալ․ որ 'ի ձեռս քրիստոնէից սնեալ Հանգոյն գրիգորի՝ եղև զկնի եպս մծբնայ 'ի միջագետս։ Որդ զկնի կալոյ գրիգորի զժամանակ ինչ 'ի ծառայութե տրդատայ յազին յունաց և Հռովմայեցւոց , գայ ը̃ նմա 'ի Հայս , յորժամ դարձաւ տրդատ արքայ յարևելս պսակեալ փառօք 'ի դիոկղետիանոսէ․ և եկն եՀաս յառաջին ամի արքայութե իւրոյ , այն է յամի տն․ 286․ յեկեղեաց գաւառ 'ի գեօղն երիզայ , զի անդ 'ի մեծի մեհենին զոՀս մատուցէ անահիտայ՝ որ և արտեմիս չ̃ածուհի , դուստր կարգացեալ արամազդայ կ̃ր դիոսի Հօրն չ̃ածոց , և պաՀապան կարծեցեալ ազի Հայոց մեծաց։ Իսկ իբրև կատարեցին զգործն անարժանութե , իջին բանակեցան առ ափն գետոյն՝ որ գայլն կոչեն։ Իբրև եկն եմուտ տրդատ 'ի խորան անդր և յընթրիս բազմեցաւ , և իբրև ընդ գինիս մտին , Հրաման ետ թագաւորն գրիգորի՝ զի պսակս և թաւ ոստս ծառոց նուէրս մատուցէ բագնին անաՀտական պատկերին։ Բայց նա

ոչ առնոյր յանձն պաշտօնատար լինել դիցն երկրպագութե՟ , զի ես քրիստոնեայ եմ ասէ , և ծառայ ա՟յ ճշմարտի ։ Յայնժամ խօսել սկսաւ թագաւորն ը՟ Գրիգորի , և ասէ ․ այր մի օտարական և անծիրկ եկիր յարեցար 'ի մեզ ․ և զիա՞րդ իշխես պաշտել զա՟ծն զայն՝ զոր ես ոչ պաշտեմ ․ և առ այն որ պահել հրամայեաց ։ Եւ 'ի վաղիւն հրամանն ետ , և ածին զԳրիգորիոս առաջի թագաւորին ։

Ասէ արքայ ․ այսչափ ամք են , զի տեսի ըզքեզ , և յա՟մ զօրութե՟ քումմէ ծառայեցեր ինձ միամտութք ․ և ես դոհ էի զվաստակոց քոց , որ ունէի 'ի մտի կեցուցանել զքեզ՝ հանելով 'ի մեծ պատուի՟ աւագութե՟ ․ ընդէ՞ր ոչ առնես զկամս իմ ։ Ետ պ՟խնի Գրիգորիոս , և ասէ ․ հրամայե՟լ է յա՟յ , զի ծառայք հնազանդ լինիցին մարմնաւոր տ՟երանց՝ ոգ՟ և օրէնն է ․ Ե՟ս որում և դու իսկ վկայես ինձ , որպէս ծառայեցի քեզ յա՟մ զօրութե՟ իմմէ ․ այլ զա՟յ պատուին և զպաշտօնն ոչ ումեք փոխել է տալ ․ զի նա միայն է արարիչ երկնի և երկրի , և հրեշտակաց՝ որ փառաբանիչք են մեծութե՟ նր՟ , և մարդկան՝ որ 'ի նմանէ են ստեղծեալ ․ որոց պա՛րտ է պաշտել զնա և առնել զկամս նր՟ ։ Եւ 'ի սպառնալ նմա արքային բանտ և կապանս և մահ , և 'ի մեծացուցանել զդիս իւր՝ ասէ Գրիգոր ․ Որ սպառնաս ինձ մահու , ահա խառնես զիս 'ի գունդն ք՟ի , ուր են ա՟մ կոչեցեալքն՝ հարքն և արդարքն , մարգարէքն և առաքեալքն , մարտիրոսքն և ա՟մ ընտրեալքն ․ երանելի է ինձ ;

զի առեալ յանձն զօրինակ կապանաց տն՟ իմոյ , և Ը՟ նմին ուրախ եղէց և. ցնծացայց յուրախութեն նր՟ ։

Արդ որ ասես , թէ մահուամբ զայս քո հատանեմ ՚ի կենաց , ոչ այդպէս է . զի ած՟ասիրաց յոյսն զօրացեալ է . իսկ որ միանգամ են ոգ՟ զքեզ , որ պաշտէք զկուռս համերս և անշունչս , ձեռագործս մարդկան , արդարև իսկ յուսահատ էք ՚ի ճշմարիտ կենաց անտի այ՟ . զի փոխանակ այ՟ որ ՚ի բարիս նորա վայելէք , պաշտէք զքարեղէնս և զարծաթեղէնս , զոր այ՟ կարգեալ է ՚ի սպաս և ՚ի պէտս և ՚ի փառաւորութի մարդկան . իսկ ինձ լիցի այ՟ հնազանդութի և այ՟ իմաստութի և երկիւղիւ պաշտել զած՟ արարիչ և զորդին հաստիչ և զհոգին կազմիչ այ՟ արարածոց . ած՟ կենդանի՝ որ կարող է կենդանութի տալ մեզ , թէպէտև մեռանիմք . զի և որդին այ՟ մեռաւ և եկեաց , և մեզ եցոյց օրինակ կենդանութե յարութ՟ իւրով . զի որ մեռանիմքս վս՟ նր՟ , լինելոց եմք կենդանի . և անպակաս ուրախութիւք անդ լինին , յորժամ զիւր սիրեցեալսն և զկոչեցեալսն և զհրաւիրեալսն և զպատուիրանապահսն անմահացուցանէ յիւր ած՟ութին . ոգ՟ և զմեղաւորսն անմահացուսցէ ՚ի տանջանսն յաւիտենից ։ Արդ մեր յոյս այսմ ակնկալեալ սպասէ . և ձեր յուսահատութի այն է , զի ոչ ճանաչէք զարարիչն ձեր . որ պահանջէ ՚ի ձէնջ համար սաստկապահանջ վս՟ այդորիկ , զի ոչ եկէք ՚ի խնդիր այ՟ արարչին ձերոյ , և ոչ ծանեայք զնա .

զնա ․ արդարև իբրև զձիս եղէք կամ իբրև զջորիս , զի ոչ գոյ 'ի նս իմաստութի ․ և քան զեզն և զէշ պակասագոյն գտայք , զի ոչ ծանեայք զձեր հաստիչն , որպէս նք ճանաչեն զստացիչ իւրեանց և զմսուր տն իւրեանց ։ Խօսել սկսաւ Թգւորն և ասէ ․ քանի՞ցս անգամ տուճեալ է քեզ խրատ և պատուէր , զի մի երկրորդեսցես զհատուածս բանից առասպելեաց , զոր յօդեալ և ուսեալ ես ․ զոր ո՛չ վայել է քեզ խօսել ։ Այս խնայեցի 'ի քեզ իբրև 'ի փառաւորակաւոր , զի եկեսցես 'ի կարգ ուղղութե պաշտել զդիսն ․ զորոց դու առեր զնոյն պատիւ՝ Թշնամանես և անշքութիւնս և անմռութիւնս կոչես ․ և 'ի մեզ ես ձգեցեր Թշնամանս , մինչև իշխեցեր և մեզ ասել անաւանս ։ Արդ ես արկից զքեզ 'ի տանջանս , և արկից դանդանաւանդ 'ի կզակս քո որմս դրաստու ․ զի զխոստացես՝ եԹէ 'ի սին բանից քոց , զոր յանձախեցեր ասել առաջի իմ , եղեն արքինքն ․ ուր ես մեծարանս եդի քեզ , և դու ետուր ինձ պխնի իբրև ընկերի ։ Յայնժամ հրաման ետ արքայ տրդատ՝ ձեռս յետս կապել զգրիգոր , և արկանել գայլ 'ի բերանն նր ․ և ետ կապել շառաչիղս աղի 'ի վր ողնն նր , և տալ գելոցս կրծիցն նր ․ և 'արկանել առասանս 'ի կապանս կրծիցն գելարանացն , կապել և ամբառնալ 'ի բարձրաւանդակ տանիս ապարանից որմոյն մեքենայիւք ․ և կայր պրկեալ կապեալ այնպէս զաւուրս եօԹն ։ Ապա յետ եօԹնեկին ետ լուծանել զնա 'ի չարաչար և 'ի դառն տանջանացն ․

նացն. և ածին կացուցին առաջի նո՟ր։ Սկսաւ
հարցանել ցնա, թէ զիա՞րդ կարացեր ժու-
ժալ տոկալ մնալ մինչև ցայսօր. և կմ՟աւնե՞ր
զչափ, թէ արդարև իբրև զեշ և զջորի այն-
պէս սանձեալ բեռինս կրեցեր. վ՟ս զի իշխե-
ցեր դու թշնամանել զդիսն՝ թէ անշարժք
են, վ՟ս այնորիկ հատուցին քեզ զայնպիսի
պատուհաս։ Իսկ արդ եթէ ոչ առնուս դու
յանձն պաշտօն տանել ա՟ծոցն, այլ ևս չա-
րագոյն անցք անցանիցեն ը՟ քեզ։
Գրիգոր ասէ. դիքն՝ զորս կոչես դու ա՟ծս,
ստոյգ իսկ են հատուածք. վ՟ զի հատեալք
են 'ի մարդկանէ՝ գործք ձեռաց ճարտարի.
ոմն փայտեայ, ոմն քարեայ, ոմն պղնձի, ոմն
արծաթի, ոմն ոսկի. ո՛չ խօսել նմ՟ երբէք,
և ո՛չ զմտաւ ածել՝ ո՛չ վ՟ս քո և ո՛չ վ՟ս իմ.
և դու քեզէն քաջ գիտես, զի ո՛չ երբէք ա-
սացեալ է նմ՟ քեզ վ՟ս իմոյ տանջելոյս 'ի քէն,
որպէս և ոչ իմացան ինչ քարինք անմռունչք
զցաւս մարդկան. այլ ա՟ծն իմ ճշմարիտ՝ նա
պահեաց զիս անվնասելի 'ի քոց տանջանաց,
և պահեսցէ։ Յու զի կապեցեր ինձ աղ, յու-
սամ ես 'ի տ՟րն իմ, զի համեմեսցէ զանհա-
մութիւս իմ ստուգութ՟բ աղի՟ն ճշմարտու-
թե, և տացէ ը՟ ամենահեշտ լծոյն խոնար-
հութե վերանալ 'ի բարձունս երկնից. այն՝
որ բարձրացուցանէ զխոնարհս իւրով մար-
դասիրութ՟բն յանապառ և յանվախճան հա-
տուցմունս։ Իսկ որ պաշտեն զկուռս քարէ-
ղէնս, իջցեն ը՟ մարգարէին՝ իբրև վէմք 'ի
ջուրս բազումս. որպէս և վ՟ս որոց պաշտենն

զքան

չէն արարածոց, որ է ճարտարապետ ամենայնի՝
որ երեւին, եւ որ ոչն երեւին:

Յայնժամ հրամայեաց լուծանել զնա. եւ եւ բերել բեւեռս երկաթիս, եւ վարել ընդ ներքանս ոտից նորա. եւ առեալ զձեռանէ նորա սատրի անտի՝ ընթացուցանէին զնա յայսկոյս եւ յայնկոյս. եւ արիւնն հոսէր իջանէր յոտից անտի, եւ առոգանէր զերկիրն: Նա ասէ ցնա արքայ. այդ են աներեւոյթ արարածք այն քո, զոր դու տեսանես: Գրիգոր ասէ. բարիօք ասացեր, թէ այս են աներեւոյթ արարածք այն իմոյ. վն զի սերմանի տկարութ, եւ յառնէ զօրութ. սերմանի անարգութ, եւ յառնէ փառօք. զի լալով լան՝ որք տանին զսերմանս իւրեանց. նք են վիշտք եւ չարչարանք՝ որ վն ածպաշտութե հասանեն մեզ. այլ յորժամ որպէս 'ի հունձս եկեալ՝ մատուսցէ զատոքունեն բերելի զպտուղ՝ սերմանողացն, յն նմին բերէ եւ զցնծալից բերկրութն ուրախութեց ամի:

Նա ասէ թագաւորն. բախեցէք զաման լալոյն արտասուաց, թող եկեսցէ դմա ուրախութի. եւ հանէին նմա կուժս անհնարին հարկանելով: Նա հարցանէր տրդատ. այդ իցէ ուրախութիւն: Գրիգոր ասէ. այո այս է. զի թէ ոչ քրտնեսցի մշակն՝ 'ի տապ խորշակի ջերմոցն արեգակնակէզ լինելով, ոչ ըմբռնէ արդիւնս շահեկանս ուրախութեն պտղոյն 'ի պէտս ձմերայնոյն հանգստեան: Նա ասէ արքայ. դու սատէն իսկ աշխատեաց 'ի մշակութի տանջանացդ: Այս ասացեալ՝ հրամա-
յեաց

յեաց բերել աղ և բորակ և բարկ քացախ . և արկանել զնա յորսայս , և դնել զգլուխ նր̃ 'ի հիւսանց մամուլս , և դնել փող եղե-

գան 'ի քիթս նր̃ ։

Յետ այսորիկ ետ հրաման , և բերին պարկս ոզնենիս մեծամեծս , և լցին մոխրով հնոցի . և արարին թուլապոյն , զի մի̃ կարէ լի լիցէ վս̃ տուրևառի շնչոյն . զի հարկանելով ընդ-խելոյն՝ վտանգեսցէ զնա . և ագուցին զայն 'ի գլուխ նորա . և կապեցին զբերան պար-կին 'ի փողս նր̃ . և եկաց նովիմբ հանդերձ

աւուրս վեց ։

Եւ յետ այսորիկ ետ ածել զնա առաջի իւր . սկսաւ խօսել թագաւորն , և ասէ . ուստի̃ գաս , թերևս յարքայութե̃ անտի̃ գայցես՝ զոր ասէիր ։ Եւ սուրբն գրիգորիոս , և ասէ . այժմ իսկ յարքայութե̃ անտի գամ , զոր ասէի . վս̃ զի արժանի արար զիս ած̃ զայս ամ̃ կրել յանձն իմ վս̃ անուան իւրոյ , արդարև կայ և մնայ ինձ արքայութի̃ն՝ որ ոչ անցանէ . փո-խանակ մոխրոյն՝ անթառամ ծաղիկն , և փո-խանակ քացախոյն՝ անապակ ուրախութի̃ն ։ Եւ նա բարկացեալ թագաւորն ետ պնդել զոտս նր̃ 'ի վերուստ , և կախել զնա գլխ̃ 'ի վայր . և ետ դնել ձագար 'ի նստոյ տեղին , և արկանել ջուր տկաւ յորովայն նորա . և եկաց այնպէս , մինչև դառնալ ը̃ քիթս և ը̃ բերան նր̃ ։ Ապա ետ հրաման իջուցանել յայնմանէ . սկսաւ հարցանել , և ասէ . առ-նես զկամս իմ , թէ ոչ . պաշտեսցես զդիսն՝ որ-են ամ̃ երկրի կեանք և շինութի̃ ։ Ասա [illegible]

[illegible]

գրիգորիոս, և ասէ. Եւ Տն Տյ իմոյ երկիրպագա-
գանեմ. զի նա է արարիչ և կեանք և շինու-
թի. և որդւոյ նր՝ որ է հաստիչ և համագոր
և համագործ. և Հոգւոյ նորին՝ որ ելից ի-
մաստութեամբ զամ տիեզերս. այլ զկուռս
կռեալս՝ կոփեալս՝ քերեալս և արարեալս՝
ո՛չ կալայց երբէք առ ած ճշմարիտ, և մի՛ լիցի
այլ ունել, ցորչափ իցէ շունչ 'ի մարմնի ի-
մում:

Ասէ Թագաւորն. փոխանակ զի իշխեաց ա-
սել կռեալս՝ դիցն, պահանջեսցի՛ դա ընդ-
այդորիկ. և ետ հրաման քերել զկողս նորա
երկաթի քերչօք. մինչև ոռոգան ամ վայրքն
յարենէ նորա: Եկեալ ասէ ցնա. արասցես
զկամս իմ գրի՛գորիոս, որ յայդպիսի տան-
ջանս մատնեցար: Պատասխանի ետ սբն. Ինձ լիցի
պահել զուխտն ածպաշտութե, զոր ուսայ
'ի մանկութէ իմմէ. որ կարօղն է փրկել զիս
յամ նեղութէ, և զքեզ արկանել 'ի տան-
ջանս. որ ո՛չ ճանաչես զնա, և դարձեալ
զայլս ես զարհուրեցուցանել կամիս և քա-
կել 'ի պաշտմանէ սիրոյ նորա: Թագաւորն
ասէ. ո՞վ է այն ած քո, որ փրկէ զքեզ 'ի ձե-
ռաց իմոց, և կամ դատի՝ ոպ ասացեր՝ դա-
տաստանօք իւրովք: Յայնժամ հրաման ետ
բերել տատասկ երկաթի բազում սակառօք,
և արկին 'ի գետնի թանձր. և մերկացու-
ցեալ զգրիգոր՝ արկին 'ի վերայ տատասկին
մերկ. և քարշեցին և թաղեցին զնա 'ի տա-
տասկն, և շրջ շրջէին զնա անդէն. մինչև
առհասարակ ծակոտեցան մարմինք նորա.
մինչ

մինչ զի ոչ մնաց 'ի նմա տեղի ողջ ։ Եւ 'ի միւսում աւուրն ետ բերել զնա տրդատ առաջի իւր , և ասէ ցնա ․ զարմացեալ եմ կարի՛ քաջ , զիա՞րդ կաս դու կենդանի ․ և ոչ ինչ զգեցեր դու զցաւսդ , և խօսիս ես ․ զի արժան էր՝ թէ վաղուց էիր դու վախճանեալ 'ի տանջանացդ յայդցանէ ։

Ետ պատասխանի Գրիգորիոս , և ասէ ․ ո՛չ է իմ ժուժկալութի՟ն տոկալոյս իմով զօրութբ՟ , այլ՝ ուժով շնորհի տն՟ իմոյ , և իմոյ յօժարութե՟ն կամացս՝ որ խնդրեցի 'ի նմանէ ․ զի և դու զփորձ առցես զծառայիս ա՟յ , և գիտասցես՝ թէ ոչ ոք կարասցէ մեկնել զյուսացեալս 'ի նա 'ի սիրոյ նր՟ ․ զի նա տայ ոյժ և զօրութի՟ն համբերութե՟՝ համբերել նեղութե՟ց և փորձութե՟ ․ զի ամաչեսցեն անօրէնք յունայնութե՟ իւրեանց , և յամբարշտութե՟ և յապստամբութե՟ իւրեանց՝ որ իբրև զքեզդ իցեն ․ և կացցեն ամօթով յաւուրն այցելութե՟ և յանդիմանութե՟ ։

Յետ այսորիկ ետ հրաման արքայ՝ արկանել կապիճս երկաթի 'ի ծունկս նր՟ , և վարել ուռունս սոռճարս , և թառնալ 'ի կախան , մինչև յօշեսցին ծունկք նր՟ անդէն ․ և եկաց կախեալ զերիս աւուրս ։ Եւ յաւուրն չորրորդի ետ իջուցանել զնա , և ասէ ցնա ․ տեսա՞ս Գրիգորիոս , զի ոչ փրկեաց զքեզ սնոտի յոյսն քո՝ յոր յուսայիր դու ․ չեհան զքեզ ա՟ծ քո 'ի ձեռաց իմոց ։ Ետ պատասխանի վկայն , և ասէ ․ տեսեր դու , զի քո յոյսքն են սնոտի , և ոչ կարացին հաւանեցուցանել կմ՟ երկեցուցանել

նել զիս սնոտի պաշտամունք քո և ա՟մ գործք մոլորութե՟ քո ․ տես դու, զի ոչ 'ի տանջանաց քոց երկեայ ինչ ես, այլ զօրութ՟բ տ՟ն իմոյ մարտեայ ը՟ թշնամւոյն՝ որ 'ի ծածուկ քև պատերազմի ը՟ ճշմարտութե՟ն ․ և մատնեցի զմարմինս իմ 'ի կիզումն տանջանաց ․ զի եթէ վաղ և եթէ անագան՝ սակայն քակտեսցի հնացեալ մարմինն ։ Այլ եկեսցէ ճարտարապետն որդւոց մարդկան, և զնոյն հնացեալս միւսանգամ նորոգեսցէ ․ զի զարոց զհոգիսն գտանէ 'ի պարկեշտութե՟, 'ի սրբութե՟, 'ի քաղցրութե՟, 'ի հեզութեան, յա՟ծպաշտութե՟ կացեալ, նորոգէ զարդարէ կեցուցանէ՝ զնոյն ոգի նովին մարմնովն ։ Իսկ զորս գտանէ յանօրէնութե՟ և յամբարշտութե՟, յա՟ծատեցութե՟, 'ի կռապաշտութե՟, թէպէտև բուսանել բուսանին մարմինքն ն՟ց առժամանակ մի, այլ զնոսին իսկ նովին ոգւով և նովին մարմնով արկանէ 'ի գեհեանն՝ յանշէջ հուրն յաւիտենից ․ մնասցանդ զայնոսիկ՝ որ իբրև զքեզդ իցեն 'ի կռապաշտութեան ։

**Բարկացաւ Թագաւորն, և ասէ ․ ինձ չէ փոյթ զայնմանէ, եթէ նորոգեսցէ զքեզ ա՟ծ քո, եթէ ոչ ․ այլ զի սաստեցեր՝ թէ զքեզ յանշէջ հուրն արկանէ, ես զքեզ աստէն իսկ այրեցից շիջանելի հրովս ․ տեսցուք թէ քո ա՟ծ զի՞նչ արասցէ, կա՞մ զիա՞րդ այրեսցէ ։ Այնա հրամանն երկաթի պուտկօք հալել կապար ․ և ջերմն մինչդեռ ջուր իցէ՝ հոսել արկանել զմարմնովն ն՟ր, ոչ և է բերանն՝ մինչև**

չև 'ի փորոտիսն. և այրեցին զմարմինն նորա առհասարակ. և ոչ մեռաւ, այլ կայր մեծ ուժով. և զինչ հարցանէին՝ փաղփաղակի տայր պատասխանի: Զարմացեալ թագաւորին ընդ ժուժկալութիւն համբերութեան սորին, և ընդ տեսեալ նորա կարի անհնարին, ասէր. զիա՞րդ կայ 'ի քեզ շունչդ յայնչափ ժամանակաց՝ յերեսաց չարաչար տանջանացդ՝ որով զքեզ կոտտեցի: Նա պատասխանի կենդանի նահատակն, և ասէ. ո՞չ փաղ իսկ ասացի քեզ, եթէ այս է գործս սքանչելի, զի առցես դու զփառս համբերութեան ծառայիս այ̃. զի նա տայ զօրութիւն, և յամօթ առնէ զայնոսիկ՝ որ օտարանան յիւրմէ, և մարտնչին ընդդէմ նո̃ր իբրու զքեզդ. զի այսպէս ասէ ցիւրսն, ոչ թողից զձեզ և ոչ ընդ վայր հարից. արդ այն է պահպանութիւն նո̃ր առ սիրելիս իւր, զի պահեսցէ զնս̃ 'ի հաւատս իւրեանց՝ որ 'ի նա. մինչև հատուսցէ նց̃ 'ի զաւակեան իւրում:

Արդ յետ այսչափ հարցափորձի և տանջանաց, գանից և բանտից, գելարանաց և կախաղանաց, և դառն չարչարանաց և կտտանաց՝ որով կոտտեցին զերանելին զգրիգոր, քանզի կատարեալ համբերութիւն վկայեաց իբրև քաջ նահատակ 'ի վ̃ր անուան այ̃ մերոյ յս̃ի ք̃սի, խորհէր տրդատ ընդ աւագանին՝ խօսել ընդ գրիգորի ողոքանօք, յղել պատգամս և խոստանալ կեանս և պատիւս, արուամ ոչինչ էր լսելոց. ապա թէ ոչ՝ այլ և յաւելուլ տանջանս 'ի մահ: Զայնժամ [illegible] 'ի նախարարաց տաճատ աշըզցաց նս̃, որոյ [illegible]

դիկացեալ էր վն Գրիգորի 'ի կեսարիա՝ թէ ծոց լիցէ, ազդ առնէր աներոյ իւրում Արտաւազդայ Մանդակունւոյ Հայոց սպարապետին. Եւ նա մատուցեալ առ արքայ՝ այսպէս ասէր վն Գրիգորի. Սա զի չէ արժանի դա կենաց, վասն այնորիկ ոչ կամի կեալ, եւ ոչ զլոյս տեսանել. զի այս քանի՛ ժամանակք են՝ որ առ մեզ բնակեալ է, եւ ոչ գիտէաք զդա. այլ է դա որդի Անակայ մահապարտի՝ որ սպան զհայրն քո խոսրով, եւ արար խաւար Հայոց Տիս, եւ 'ի կորուստ մատնեաց զայս Տս եւ 'ի գերութի. արդ չէ պարտ կեալ դմա, զի որդի վրիժապարտի է դա:

Իբրեւ զայն լսէր Թագաւորն, թէ արդարեւ որդի Անակայ պարթեւի է Գրիգոր, հրամանս տայր կապեալ ոտիւք եւ ձեռօք եւ պարանոցօք խաղացուցանել զնա յայրարատ գաւառ, եւ տալ զնա 'ի դղեակ բերդին Արտաշատու քաղաքին, եւ իջուցանել զնա 'ի վիրապն ներքին, որ անհնարին էր խորութ՟, մինչեւ անդէն մեռցի. եւ այնուհետեւ եղեւ լռութիւն զնմանէ. զի համարեցան՝ եթէ 'ի սակաւ աւուրս ծախեցաւ նա անդ. ուր եւ այլ մարդիկ՝ զոր միանգամ իջուցեալ էր նց անդր, ամենեքեան մեռեալ էին վն դժնդակ չարաշունչ դառնութե տեղւոյն, եւ կարակում տղմին, եւ օձախառն բնակութե. զի վն չարագործաց իսկ շինեալ էր այն տեղի 'ի սպանումն մահապարտաց ամ Հայոց:

Բայց սակայն սքանչելին Գրիգոր պահեալ լինէր սքանչելապէս կենդանի՝ շնորհիւն Տն

իւրոյ 'ի խոր վիրապի անդ՝ աւելի քան զամս երեքտասան կամ չորեքտասան. և զայնչափ ժամանակս հոգեպէս սփոփեալ լինէր 'ի յետին տառապանս գբոյն՝ մխիթարութեամբ հրեշտակի ա՟յ, որ պահէրն զնա 'ի մանկութենէ, նոյն և երևեալ նմա օրըստօրէ՝ ուրախ առնէր զնա 'ի տ՟ր։ Նաև կին մի այրի՝ որ բնակեալ էր 'ի բերդին յայնմիկ արտաշատու, հրաման առեալ յարհաւրաց, զի աւուրն նկանակ մի պատրաստական արարեալ՝ ընկենուցու 'ի ներքս 'ի խոր վիրապն. և այնու կերակրեալ լինէր այրն ա՟յ 'ի հրամանէ տ՟ն զայն ամ՟ն՝

յորս եղև նա անդ։

Իսկ տրդատ արքայ յետ առաքելոյ զկապեալն գրիգոր յարտաշատ, եւ և ինքն յեկեղեաց գաւառէ՝ ուր զնա չարչարեաց, և խաղաց յաթոռ թագաւորութեան իւրոյ 'ի վաղարշապատ քաղաք այրարատայ. և գրեաց հրովարտակս ը՟ ամ՟ աշ՟ն հայոց՝ զի փոյթ լինիցին 'ի պաշտամունս դից. և եթէ զոք գտցեն քրիստոնեայ, մի ապրեցուսցեն. զոր օրինակ ասէ և ես ո՛չ խնայեցի յիմ վաստակաւոր սիրելին գրիգորիոս. զոր մ՟ն դորին իսկ իրաց չարչարեցի և սաստիկ տանջանօք տանջեցի. և յետ այնորիկ ետու զնա 'ի վիրապն ընկենուլ. զի անդէն իսկ միանգամայն հասցէ նմա օձից լինել կերակուր. զի և ո՛չ զմեծ վաստակ ն՟ր համարեցայ ինչ առ սիրոյ և ահի՛ դիցն։ Արդ զայս գրեցի, զի և ձեզ ահ լիցի և երկիւղ 'ի մահուանէ. և կեցջիք ը՟ հովանեաւ դիցն. և 'ի մէնջ բա-

րիս

րիս գտանել մարթանջիք . ողջ լերուք , և
մեք մեզէն ողջ եմք :

Արդ զկնի ամաց անցելոց՝ ՚ի հնգետասաներորդի ամի արկանելոյ սորին գրիգորի ՚ի վիրապն , այն ամ վեշտասաներորդ էր տրդատայ թագաւորութեն՝ յամի տն 301 , լինէր դաւուստ սը կուսանացն հռիփսիմեանց ՚ի հռովմայ ՚ի հայս , և նահատակիլ վն սրբութե և սը հաւատոց մօտ ՚ի վաղարշապատ : Եւ մինչդեռ անթաղ կային ՚ի բացի մարմինք սրցն , թգւորն տրդատ նորատեսիլ պատիժ պատուհասի և խրատ բարկուե ըունէր յայ . քանզի յաւուրն վեցերորդի յելանել իւրում յորս էրէոց ՚ի դաշտն փառաւական շեմակաց , յանկարծակի հարեալ այսոյն պղծութե զթագաւորն՝ ՚ի կառացն ՚ի վայր կործանէր . և անդէն մոլեգնել սկսաւ , և խոզի ուտել զիւր մարմինն . նաև ը նմանութե նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց ելել ը մարդկան բնութե արտաքս՝ ՚ի նմանութի վայրենի խոզաց , իբրև զնն ը նն ՚ի մէջ նց երթեալ բնակէր , և անհնարին անզգայութբ խոտաճարակ լեալ յեղեգնուտս՝ մերկ զանձն ը դաշտս կոծէր . զի թեպէտև կամեցան ՚ի քաղաքին արգելուլ , ոչ կարացին . մի՝ վն բնական ուժոյն , և մի՝ վն զի էր և ոյժ դիւացն , որ ՚ի նմա հարեալ էին : Նաև ամ ընտանիք թագաւորին , ծառայք և սպասաւորք և բազումք ՚ի մարդկանէ քաղաքին առհասարակ հարուածովք հարեալ լինէին , և դիւահարեալ մոլեգնէին . և այնպէս անհնա-

րին սուգ և կոծ 'ի վ՟ր ծնին հաստանեայ ։
Յայնմ ժամանակի տեսիլ ա՟յ երևեալ 'ի վ՟ր
քեռ Թ՟գաւորին, որում անուն էր Խոսրովի-
դուխտ, ազդ առնէր՝ եթէ չի՛ք հնար բժշ-
կութեան հարուածոցդ, եթէ ոչ ելանիցէ Գրի-
գոր 'ի վիրապէն. և թէպէտև լսօղքն ոչ հա-
ւատացին նմա, այլ յետ կրկին, և կրկին
պատգամաց տեսլեանն՝ առաքեցաւ Օտայ
նախարար. որոյ եկեալ յԱրտաշատ՝ եգիտ
զծառայն ա՟յ կենդանի. և հանեալ պարա-
նաւ 'ի գբոյն՝ տեսին զի թխացեալ էր մար-
մին նորա, և իբրև զածուխ սևացեալ. և ան-
դէն լուացեալ մաքրեցին, և հանդերձս նորս
մատուցեալ՝ զգեցուցին նմա. և խնդութ՟բ
առին գնացին յԱրտաշատայ 'ի Վաղարշա-
պատ ։

Իսկ նախարարքն արտաքոյ ք՟ղքին սպասէին.
և իբրև տեսին 'ի բացեայ զԳրիգորիոս Օտայ
իւ՟ն հանդերձ և բազմութ՟բ եկելոցն ը՟ն նմ, ը՟ն
առաջ խաղացեալ հարուածելոցն՝ մոլեգնէին
և փրփրէին առաջի ս՟յն. ուր և զԹագաւորն
վարէր ածէր դևն ը՟ն առաջ ն՟ր մերկ և խայ-
տառակ։ Իսկ ս՟բն Գրիգոր վաղվաղակի ծունր
եդեալ յաղօթս եկաց. և նոքա առ ժամայն
'ի զգաստութ՟ն դառնային՝ այնչափ, որչափ
պէտք էին 'ի միտ առնուլ զխայտառակութ՟ն
իւրեանց և զբանս ս՟յն. և նա անդէն հրա-
մայեաց արկանել զիւրեամբք հանդերձս ։
Նոյնհետև մատուցեալ Թագաւորն և նա-
խարարքն՝ բուռն հարկանէին զոտից նորա,
աղաչէին և ասէին. Թո՛ղ մեզ զյանցանս
մեր՝

մեր՝ զոր մեք ԺԵ̅ քեզ արարաք ։ Իսկ նա մա-
տուցեալ կանգնեաց զնոսա 'ի գետնոյն , և
ասէ . Ես մարդ եմ իբրև զձեզդ , և մարմին
ունիմ իբրև զձերդ . բայց դուք ծաներո՛ւք
զձեր արարիչն , որ զերկինս և զերկիր արա-
րեալ է , զարեգակն , զլուսին և զաստեղս ,
զծով և զցամաք , նա կարող է բժշկել զձեզ ։
Եւ նախ սկսաւ հարցանել սբ̃ն , թէ ո՞ւր
եդիք զմարմինս վկայից այ̃ . և նոքա ասեն .
զո՞րոց վկայից ասես . և նա ասէ . որ վս̃ այ̃
մեռեալ են 'ի ձէնջ ։ Եւ իբրև ցուցին նմա
զտեղին՝ փոյթ կալաւ ժողովել զնշխարս
նց̃ 'ի սպանմանն տեղեացն . և տեսին՝ զի զօ-
րութի այ̃ պահեալ էր զմարմինս նց̃ ինն տի՛ւ և
ինն գիշեր , յորմէ հետէ ընկեցեալ էին մար-
մինք նց̃ արտաքոյ . զի ոչ գազանի էր մատու-
ցեալ և ոչ շան և ոչ հաւու , և ոչ էր հոտեալ
մարմին նոցա ։ Իսկ նոքա բերէին բազում
հանդերձս պատանաց . այլ երանելին Գրի-
գոր ոչ արժանի համարեցաւ զպատանս բե-
րեալս թագաւորին կամ զայլոցն . այլ իւրա-
քանչիւր պատառատուն հանդերձիւքն պա-
տէր զսբ̃ն առ անդամ մի . ասէ . մինչև լի-
ցին պատանք ձեր արժանի սբ̃ մարմնոց սց̃ ։
Եւ ամփոփեաց , և առ գնաց 'ի հնձանն՝ ուր
էին իսկ վանք նց̃ . և իւր վանս անդէն կա-
լեալ օթևանս առնէր . և զայն գիշեր ող-
ջոյն աղօթս մատուցանէր առ ած̃ վս̃ փրկու-
թե՛ հայաստանեայց , և խնդրուածս առնէր
վս̃ դարձի նոցա ։
Ի վաղի՛ անդր թագաւորն և աւագանին

հանդերձ բազմութ̅բ եկեալ, և 'ի ծունր իջեալ առաջի ս̅րյն գրիգորի, և առաջի ս̅բ ոսկերաց վկայիցն ա̅յ, խնդրէին և ասէին. Թող մեզ զա̅մ զչարիս մեր. և խնդրեա՛ դու վս̅ մեր յա̅յ քումմէ, զի մի՛ կորիցուք մեք: Ծանո՛ մեզ և հաստատեա՛ զմիտս մեր, զի մարթասցուք աղաչել զերեսս արարչին մերոյ՝ զոր ոչն գիտէաք. իցէ՞ թէ դարձցի և ընկալցի զմեզ յապաշխարութի. և չիցէ՞ արդեօք հատեալ յոյս կենաց մերոց 'ի նմանէ. Զայս ասացեալ առ հասարակ լային և կոծէին, և խնդրէին զողորմութի ճշմարտին ա̅յ, զգեցեալ քուրձ, և նստեալ 'ի վերայ մոխրոյ:

Յայնժամ հետէ սկսաւ երանելին գրիգոր լուսաւոր բանիւ՛ և լի հոգւով ս̅բվ քարոզել նց̅ ճոխ և առատ վ̅րդպութ̅բ զճանապարհն ճըշմարտութե՝ զաւուրս վաթսուն և հինգ. յորս ժողովէին առ նա յա̅մ կողմանց ա̅մն հայոց բազմութիւք յոյժ, և ունկն դնէին ա̅ծայինն պատգամաց՝ զորս խօսէր 'ի հին և 'ի նոր կտակարանաց, խրատելով, ուսուցանելով, յանդիմանելով և մխիթարելով. և ա̅յդ իմաստուն բժիշկ դատանել ջանայր ըղգեղն օգտակարութե, զի բժշկեսցէ զանձինս նոցա աւետարանաւն ք̅ի:

Նա զայնչափ աւուրս պահօք և աղօթիւք կրթէր զնոսա. և յաւուրն վաթսներորդի վեցերորդի պատմէր նց̅ տեսիլ անպատում սքանչելի, զոր եսես 'ի գիշերին յայնմիկ. զի բացաւ ասէ խորանաշէնն յարկն հաստատու

տուԹէ երկնից , և իջեալ զուարթնոյն 'ի նմանութի լուսոյ՝ կոչեաց զիս յանուանէ , Գրիգորիոս , նայեա՛ց դու 'ի վեր , և տես զսքանչելիսս . և իմ նայեցեալ տեսի , զի լոյս հոսեալ վերուստ 'ի վայր մինչև յերկիր հասանէր , և ը̃ լուսոյն զօրք անչափ լուսե֊ղինաց երկթևեանք 'ի տեսիլ մարդկան . և որ զառաջին ունէր 'ի նմանութի որդւոյ մար֊դոյ՝ ահեղ տեսլեամբ սլացեալ գայր իբրև զարծուի . և 'ի ձեռին իւրում ուռն մի մեծ ոսկի . մինչև եկն էջ 'ի շինամէջ քաղաքին վաղարշապատու , և բախեաց զթանձրութի գետնոյն . և մեծ և անչափ թնդիւնք հնչե֊ցին 'ի սանդարամետս անդնդոց ։ Եւ տեսա֊նէի 'ի մէջ քաղաքիս մօտ յապարանս արքու֊նի խարիսխ ոսկի ձախարակաձև՝ մեծ և բարձր , և 'ի վ̃ր նր̃ սիւն հրեղէն , և 'ի վ̃ր նր̃ թակաղաղ մի ամպեայ , և խաչ լուսոյ 'ի վերայ նր̃ ։ Տեսի և այլ խարիսխս երիս կար֊միր 'ի գոյն արեան՝ հանդերձ ամպեղէն սեամբք և հրեղէն խոյակօք և լուսեղէն խա֊չիւք 'ի տեղիսն , ուր վկայեաց սր̃ն Գայիա֊նէ երկու ընկերօքն , և սր̃ն Հռիփսիմէ երե֊սուն և երկու ընկերօք , և 'ի տեղւոջ հնձա֊նիս՝ ուր միւսաւորն կատարեցաւ ։

Զայս ամ̃ խելամտեցուցանէր Գրիգոր թա֊գաւորին և ամ̃ ժողովրդեանն , և ը̃ յայտ֊նելոյ նմա յո̃յ՝ ձեռն 'ի գործ առնէր պարս֊պել դրամբք և դռնափակօք զտեղի շինուա֊ծոյ տաճարին այ̃ , որ է կաթողիկէն վաղար֊շապատու 'ի տեղի իջման միածնի , և զտե֊

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

Ներսեսի մեծի՝ Հայոց Հայրապետի. և Խադայ եպսի:

Տ. Նոյեմբ. 19. Խոր. Գ. 20=38: Առաքելոց. գործ. Գ. և Ե: Մեսրոպերեց: Յովհ. կաթ. և այլք: Ճառընտիր. Բ. եր. ՀԷ=ՀԵ. և Ը. յեէ—յէ: Շարակնոց: (1)

ՍՐԲԱԶԱՆԻՆ Ի ՀԱՅՍ և 'ի Հայրապետս Հայաստանեայց եկեղեցւոյ, մարգարէական հոգւովն առ լցեալ, և առաքելական վաստակօք պայծառացեալ, որ հայրն մեր՝ մեծն Ներսէս առաջին՝ էր պարթև արշակունի 'ի սերնդոց սբյ Լուսաւորչին, և հինգերորդ 'ի նմանէ, որ թոռն թոռին նր. զի էր որդի աթանագինեայ որդւոյ սբյ յուսկան՝ որդւոյ սբյն վրթանիսի որդւոյ սբյն գրիգորի: Սորա սա ինքն երանելին ներսէս դաստիարակեալ 'ի տղայ տիոց առ սոս երջանիկ հաւուն իւրոյ սբյ յուսկանն՝ սնաւ յերկիւղն այ. և զգեցաւ հոգի ածպաշտութն: Այլ մինչդեռ մանուկն էր՝ առաքեցաւ 'ի հրահանգս դպրոցաց կեսարիայ կապադովկացւոց. և վարժեցաւ անդ յամ իմաստասիր

բազկան ուսմունս հելլենացւոց, եւս առաւել 'ի գիտութիս ա՛ծային գրոց. եւ որ քան զոր յառաջադէմ գտաւ յընթացս առաքինութե

ա՛ծահաճոյ քաղաքավարութե՛ :

Ապա անցեալ 'ի կեսարիոյ 'ի կոստանդինուպոլիս՝ եւս քան զեւս զարգացաւ իմաստութե՛ եւ առաքինութե՛. եւ սիրելի եղեալ յաչս յունաց եւ հայոց անդ եղելոց՝ փեսայացաւ միում յերեւելի իշխանաց, որում անուն էր ասպիոնէս. եւ տունչութե՛ն ա՛յ ծնաւ որդի մի արու, որում անուն եդ իսահակ. այն ինքն է ս՛ն սահակ պարթեւն : Եւ լսելի լինել յառաջադիմութի եւ բարեհամբաւութի ներսիսի մինչեւ 'ի բնիկ աշխարհն իւր 'ի հայս : Եւ եղեւ 'ի ժամանակին յայնմիկ՝ իբրեւ մեռաւ փառնէրսեհ կաթողիկոսն հայոց յերկրորդ ամի թ՛գրութեն արշակայ տիրանեան, խորհուրդ արարեալ եպսաց ծին հանդերձ թագաւորաւն եւ նախարարօք՝ արժանաւոր ժառանգ լուսաւորչեան աթոռոյ համարեցան զնա ինքն զներսէս : Ապա ստիպաւ հրեշտակս առաքեալ՝ եւտուն բերել զնա 'ի կոստանդնուպոլսոյ 'ի հայս. Թէպէտեւ բազմօք հրաժարէր երանելին, բայց 'ի բռնադատել զնա ազգին յօգուտ եկեղեցւոյ՝ ոչ կարաց ընդդէմ կալ կոչմանն ա՛յ : Միայն ազդ արար ղեկոյց կանխաւ թագաւորին եւ մեծամեծաց նո՛ր, թէ յընտրել ձեր զիս ձեզ հովիւ եւ առաջնորդ՝ պարտական դատիմ անաչառ յանդիմանել զյանցանս մեծի եւ փոքու, եւ [illegible] րածել զձեզ 'ի բարեզարգութե [illegible]

առ

առ մեծաւն Գրիգորի՛, բառնալով զեկա-մուտ անկարգութիւն։ Նա և նք յանձն առին զնմ բանս նր. և յղեցին զերանելին շքով 'ի կեսարիա՝ ըն̃ երբեմն զլուսաւորիչն, առ 'ի ձեռնադրիլ յեպսկոպոսութի յեպսկոպոսապետէն Եւ-սեբեայ՝ յամի տն իբր. 364։

Նա եղեն անդ մեծահրաշ սքանչելիք 'ի տնե յօրհնիլ սբյն ներսեսի. քանզի 'ի ժամ օծու-թեն տեսանէին ակներև տմ բազմութի ու-խտին և ժողովրդեանն զհոգին սբ տյ, զի թռուցեալ 'ի սբ սեղանոյն աղաւնակերպ տեսլեամբ՝ էջ և նստաւ 'ի վր գլխոյն ներ-սեսի, ըն̃ և 'ի վր բարսղի կեսարացւոյ՝ որ սա ձեռնադրեալ 'ի նմին ժամու 'ի քահա-նայութի կմ յեպսկոպոսութի։ Յետ այնորիկ յոր-ժամ հրաւիրեցաւ երանելին ներսէս մատա-ցանել զտծային պատարագն քհյապետա-կան հանդիսին, էջ յերկնից 'ի վերուստ հրեղէն սիւն լուսոյ 'ի վր եկեղեցւոյն, և լսելի եղեն ձայնք երկնաւոր զօրաց՝ որք նուագէին ձայնակցութեամբ զերեքսրբեանն օրհնութիւն։ Նաև զկնի արձակման պատա-րագին՝ յորժամ ելանէր սբ հայրապետն ներ-սէս 'ի տաճարէ անտի, երևեցան երեսք նր լուսափայլեալ հանգոյն նախամարգարէին մովսէսի յէջս սինէական լերին. և ահ կալաւ զնմ տեսօղս. և սկսան ամենեքին երանել հօտին՝ որում ընտրեցաւ յնյ հովիւ այս-պիսի։

Դարձ առնէր այնուհետև յաթոռ իւր 'ի հայաստան ՟Ե. և 'ի ճանապարհին՝ ընդ որ

ան

անցանէր , Շապուհ նեղանէրն նր̃ բազմութեամբ
’ի քաղաքաց և ’ի գիւղից • քանզի լուեալ էր
և նշ̃ զաքանչելիսն՝ որ եղեն ’ի վր̃ նորա • և
խնդրէին զօրհնութիւն առն ա̃յ • մինչ զի և
ոչ սակաւ նշանք բժշկութե̃ եղեն նովաւ ’ի
վերայ ախտաժետաց : Իսկ երբեմն եմուտ ’ի
հայս , հանդիպեցաւ Շապուհ նր̃ թագաւորն
Արշակ հանդերձ նախարարակայտ զօրօք յա-
ռիւծ անուանեալ լերինն • և առեալ ածին
զնա պատուո̃վ յաթոռ իւր յէջմիածին վա-
ղարշապատու • և եղև անպատմելի ուրա-
խութի ազգին համօրէն • զի հայէին ’ի նա
երբեմն ’ի հրեշտակ ա̃յ , և համարէին ’ի նմա
տեսանել զկենդանի նահատակն քրի զմեծն
գրիգորիոս :

Այս արդարև նման նախահաւուն իւրոյ մեծ
լուսաւորչին հօղ̃ուց՝ ծաղկեաց մեծն ներսէս
յԱս հայոց , և նորոգեալ պայծառացոյց զե-
կեղեցի հայաստանեայց՝ ըստ սահմանին ա-
ւանդելոյ ’ի սր̃յն գրիգորէ և յորդւոց և ’ի
թոռանց նր̃ , ’ի բաց բառնալով զանչքուէս
և զանկարգութիւս մուծեալս ’ի ձեռն ծոյլ
և թուլամորթ մանկանն յանբարի ժամա-
նակին , և ’ի վր̃ բերելով զայլ ևս օրէնս բա-
րեկարգութե̃՝ զոր եատես ’ի յունաց Ձ̃ին :

Այս բուռն հարեալ զկատարեալ մշակութե̃
հօղ̃ուց՝ զոյն գործէր զարման մատուցա-
նել ամենեցուն ըս̃ ան̃ վիճակի՝ անձամբ և
գործակցութե̃ ընտիր ընտիր պաշտօնէից •
զողջէտան աւաւուցանէր , զմոլորեալսն դար-
ձուցանէր • զանառակս յանդիմանէր , և

ըզ-

զՏէրունն յորդորամիտս 'ի բարիս գործէր ․ և մեծատուր պարգևօք վճռպութեն և շնորհօք նշանագործութեն սքանչելի լինէր ․ և օրինակաւ վարուց սրբութեն հայելի ամ առաքինութեանց երևէր ։ Նա և տեսեալ ամենեցուն զկատարեալ ողորմածութիւն սորա 'ի վս աղքատաց, այնուհետև և ինքեանք զուարթամիտ բաշխէին զինչս իւրեանց 'ի պէտս կարօտելոց և եկեղեցեաց ։

Նորա սբ հայրապետն Ներսէս հաւանութեամբ արշակայ արքայի և ժողով եպսաց և աւագիշխանաց յաշտիշատ տարօնոյ իբրև 'ի նախկին եկեղեցի հիմնարկեալ 'ի սբ լուսաւորչէ ։ Եւր օրինադրեաց առաւելապէս, Նախ՝ զօրինաւորն պահել զկարգ աստիճանաց և իշխանութեն 'ի մէջ եկեղեցւոյ, նոյնպէս և զկարգ պատուոյ և երիցութեն յարքունիս ․ ուստի զի 'ի խաղաղութեն մարթասցին տեսանել զեկեղեցին և զթագաւորութիւն ։ Երկրորդ՝ պահել զօրինաւոր կարգ ամուսնութե՝ ցեօթն ազգ, և խորշիլ ըստ կանոնաց նաև 'ի մերձաւոր խնամութենէ ․ զի մի լիցի ամենք յիշխանաց և յազատաց մերձաւորիլ ընդ ազգականս՝ պատճառանօք պահելոյ զհայրենի ցեղապետութի ։ Երրդ՝ պահել զկարգ թաղման ըստ օրինի քրիստոնէութեն, և ոչ հեթանոսական օրինօք կոծել 'ի վերայ մեռելոյն՝ իբրև անյոյսք 'ի յուսոյ հասարակաց յարութեան ։

Չորրորդ՝ չհալածել զուրուկս և զփախստականս հրէական խտրանօք և հեթանոսական անգթու-

գթուղ յանբնակ վայրս՝ անդադրմամբ՝ և սո-
վալլուկ 'ի կերակուր գազանաց, այլ 'ի պէտս
նմ ցաւագնոտաց շինել ուրոյն ուրոյն տեղիս
բնակելութն 'ի բարեխառն վայրս գաւառաց
գաւառաց Հայոց աշխարհին. ուրկանոցս մի բորո-
տից, անկելանոցս մի կուրաց, կաղաց և այլոց
հաշմանդամից. հիւանդանոցս, որբանոցս,
այրիանոցս, աղքատանոցս, օտարանոցս,
հիւրանոցս և հոգետունս, կարգելով գիւղս
և ագարակս 'ի պէտս ռոճկաց նց՝ հանդերձ
վերակացուօք և պաշտօնէիւք. և գլուխ կար-
գէր ամենեցուն սոցա իբրև կոնոմոս և որբ-
տես 'ի հոգաբարձութն հաւատարիմ զառա-
քինի սարկաւագն իւր զներանելին Խադ, որ
էր 'ի գաւառէն կարնոյ 'ի մարգաց գեղջէ :
Չորրորդ՝ կանոնեաց առանձնացելոցն
յաշխարհէ օրրել և պահել զառանձնութն իւրեանց
ընդ սահմանեալ կարգաւ կրօնաւորութե. մի
յումպէտս դեգերիլ 'ի քաղաքս և 'ի շէնս 'ի
տունս աշխարհականաց, և բնականալ արտաքոյ
վանորէից. և զի բազմացեալ էին կրօնաւորք,
զորս ոչ տանէր արդեօք թիւ կրօնաստանաց,
սահմանեաց շինել զայլ ևս վանս միաբանա-
կեցաց և եղբայրանոցս, և մենաստանս և
միայնանոցս և խրճիթս՝ ընդ իւրաքանչիւր վի-
ճակի միայնակեցութե. և կացոյց 'ի վերայ
ամենեցուն սոցա տեսուչ և հայր հաստատա-
կաց զշաղիտա զայր առաքինի՝ զաշակերտ
սբյ ծերոյն դանիէլի, և զեպիփան հանգոյն
նմին, ևս և զեփրեմն զգինդ ողկունի. թող-
զառանձին առաջնորդս ընտրեալս և կար-
գեալս

դնելս 'ի վ՟ր իւրաքանչիւր ուխտից ։
Այսու օրինակաւ վայելչացեալ պայծառացաւ Հայաստան ☉ իբրև զդրախտ ա՟յ առ ս՟բվն Ներսեսիւ՝ որ՟ տունն իշխէր առ մովսեսիւ ․ յա՟մ քաղաքս և 'ի գիւղս՝ 'ի շէնս և յանշէնս փայլէր նորոգութի՟ և բարեզարդութի՟ շինութե՟ ․ կանգնեցան նորանոր տաճարք և վանորայք ․ բազմացան պաշտօնեայք եկեղեցւոյ ․ և լցան լերինք կրօնաստանօք՝ որ՟ առ մեծն անտոնիւ՟ յեգիպտոս ․ քանզի ընդ մեծ և ըշ փոքր՝ երկու հազար և քառասուն վանս ասեն շինեալ 'ի ս՟բյն Ներսիսէ ։ Բազմացոյց և զդպրոցս և զկրթարանս յոյն և ասորի դպրութե՟ ․ (զի ոչ գոյր տակաւին գիր Հայերէն ․) և հոգ յանձին կալաւ՝ զի որք յաստիճան եկեղեցւոյ հրաւիրին, կիրթ գտանիցին 'ի մարզս գիտութե՟ և ա՟ծային իմաստութե՟ ։

Իսկ վայելչութի՟ և զարդ հայրապետանոցին իւրոյ էր ապաւինական լինել աղքատացն ք՟ի, և սեղան հայրապետին ս՟բյ կարգեալ էր յընդունելութի՟ ա՟մ կարօտելոց ․ թո՛ղ զորս արտաքոյ խնամարկէր ․ ո՛չ նստէր 'ի ճաշ կամ յընթրիս առանց բարձակից աղքատաց և կուրաց, կաղաց, և ցաւագնելոց ․ որոց բազում անգամ անձամբ ծառայէր ս՟բ հայրապետն՝ ջամբելով զկերակուր, և լուանալով զձեռս և զոտս նց՟, որ՟ և օծանէր՝ պատէր և դարմանէր զվէրաւորս ․ և զա՟մ ինչս իւր 'ի պէտս նց՟ ծախէր ։ Նա 'ի վ՟ր ա՟մի՝ ս՟բ և ըզգաստ արթնութբ՟ հսկէր 'ի վ՟ր հօտին ․ զա՟մ

մարդ

մարդ պատերազմական յորդորէր յունկն-դրութիւն բանիւն իւր. զի զոր ասէր՝ նախ ինքն առնէր. և ոչ դադարէր զցայգ և զցերեկ 'ի խրատելոյ զամենեսին, և 'ի բողոքելոյ առ ամենեսին վկայութեամբ աստուածային պատգամաց. և զառաջնորդութիւն համօրէն եկեղեցեացն հայաստանեայց անձանձրոյթ և անվրէպ 'ի գլուխ տանէր։

Յայտնի կարգօք վայելչութեան պայծառացեալ հայաստանեայց յաւուրս մեծին ներսիսի. որ՝ միաբան խորհրդով եպիսկոպոսաց և իշխանաց հանդերձ թագաւորաւն հաստատեցին, զի կաթողիկոսն հայոց՝ այն է ընդհանրական եպիսկոպոսն ազգին մի ևս կարօտասցի ձեռնադրութեան առնուլ յեպիսկոպոսաց կեսարիոյ ըստ առաջնոցն սովորութեան, որ և ոչ տակաւ դժուարութիւն և զժտութիւն առթէր ընդ պէս պէս գլխոց 'ի մէջ յունաց և հայոց, այլ յեպիսկոպոսաց ազգին ձեռնադրեսցի՝ որպէս պատրիարգ ազգային. մանաւանդ որոյ միանգամայն պատրիարգ՝ նա և հայրապետ ինքնագլուխ անուանեցին զմեծն ներսէս. և այն սովորութիւն մնաց 'ի յաջորդս աթոռակալս նորա մինչև ցայսօր, անխզելով և զայն աւանդ հաստատութեան՝ եթէ և 'ի սկզբանէ անտի սուրբն գրիգոր այսպիսի պատուով մեծապատուեցաւ 'ի հռովմայ դահէն առ քահանայապետութեամբ սրբոյն սեղբեստրոսի։

Ընդ այն ժամանակս ծագեաց թշնամութիւն ընդ արշակ արքայ հայոց և ընդ վաղենտիանոս կայսր հռովմայեցւոց. մանաւանդ որպէս

սպան

սպան կայսերն զեղբայրն Արշակայ զՏրդատ՝ որ կայր առ նմա ՚ի պատանդի, և առաքեաց զսպարապետ իւր զմեծն Թէոդորոս Սպանիացի՝ զօրու ծանու ՚ի վերայ Հայոց աշխարհին ։ Յայնժամ զահի հարեալ Արշակայ՝ աղաչեաց զմեծ հայրապետն Ներսէս՝ գտանել իւրով իմաստութեամբ զհնարս հաշտութեան, և զիջուցանել զցասումն ինքնակալին ։ Իսկ սուրբն Ներսէս ել գնաց անդանդաղ ընդ առաջ Թէոդոսի արամբք պատուականօք. և հաւանեցոյց զնա ողոք բանիւք՝ չառնել ինչ վնաս աշխարհին. և ապա զդէմ եդեալ չոքաւ ընդ նմա մինչև ՚ի դուռն արքունի. և մեծիմաստ զգօնութեամբ և շնորհաբուղխ շրթամբք բերանոյ իւրոյ՝ համոզեաց զինքնակալն ՚ի խաղաղութիւն ։ Յայնժամ մեծապէս սիրով անսաց կայսրն, և մեծարեաց յոյժ զմեծ հայրապետն. և ետ ՚ի ձեռս նորա զայլ ևս պատանդս Հայոց. յորս էին և Տիրիթ Արտաշիսեան՝ եղբօրորդի Արշակայ, և Գնել Տրդատեան՝ միւս եղբօրորդի նորուն Արշակայ. և մինչ զի ՚ի զուր սպանեալ էր կայսեր զՏրդատ, առաւել գութ ցուցեալ ՚ի վերայ Գնելայ որդւոյ նորա՝ ետ նմա պատիւ հիւպատոսութեան և գանձս բազումս ։ Իսկ ՚ի վերջ ամի՝ լուեալ, թէ մեռեալ է կինն Արշակայ արքային Հայոց, առաքեաց կոյս ՚ի տիկնութիւն նորա զՈւլումպիադա անուն օրիորդ չքնաղ և գովելի յազգականութենէ իւրմէ (զոր ոմանք քոյր կոչեն կայսեր) ։ Իսկ այնուհետև դարձ արար փառօք մեծն Ներսէս ՚ի Հայս, և ուրախ արար զամենեսին, առաւել

ւել զԹագաւորն զԱրշակ ։

Բայց Արշակ առ ոտն եհար յետ սակաւուց զպատուակս սրբոյն Ներսիսի և զսէր կայսերն, յանհնարին չարիս հակամիտեալ գործակցութ̃բ Տիրիթայ. քանզի իբրև ետես Տիրիթ՝ թէ Գնել հօրեղբօրորդի իւր մեծացաւ յոյժ, և փեսայացաւ Անդովկայ Սիւնեաց նահապետի՝ առեալ 'ի կնութիւն զդուստր նորա զՓառանձեմ մեծահանդէս շքով իբր թագաւորական հարսանեօք, չարախօս եղև զնմանէ առ Արշակ ։ Իսկ Արշակ քանզի ակն եդեալ էր յինչս Գնելայ՝ միանգամայն և 'ի կին նորա, ետ սպանանել զԳնել յորս, և էառ զՓառանձեմ առ իւր. և զի դեռ կենդանի էր նոր թագուհին Ոլումպիադա, Փառանձեմ ետ անօրինաբար սպանանել զնա, խառնելով 'ի ձեռն սուտ քահանայի միոյ Մրջնիկ կոչեցելոյ զմահադեղ 'ի դեղն կենաց 'ի խորհուրդն ս̃բ. և ինքն եղև փոխանակ նորա թագուհի ։

Զայս ա̃մ չարիս Արշակայ և զգործակցաց նորա տեսեալ ս̃բյ հայրապետին Ներսիսի՝ անէծ զն̃ս. և առանձնացեալ մեկուսի 'ի Վաղարշապատէ 'ի թ̃գւորական քաղաքէ՝ սուգ էառ 'ի վերայ Արշակայ, ո̃պ Սամուէլ 'ի վ̃ր Սաւուղայ ։ Յետ այսորիկ 'ի թշնամութիւն դարձան ը̃ Արշակայ նախարարք Հայոց 'ի պատճառս Արշակաւանայ վատանուն քաղաքի, և գրգռեցին ը̃դդէմ նորա զՇապուհ արքայ պարսից ։ Մինչդեռ յայն վարանս կայր Արշակ, լուեալ և Վաղեսի կայսեր յունաց եղ-

եղբօրն Վաղենտիանոսի՝ թէ Արշակ նշկահեալ զհռովմայեցիս՝ միաբան է ընդ պարսիկս, առաքեաց զԹէոդոս զօրավար զօրօք բազմօք՝ աւերել զերկիրն հայոց ։ Յայնժամ յամ կողմանց տագնապեալ Արշակայ՝ դիմեաց անդրէն առ սբն Ներսէս, միջնորդ ունելով զեպիսկոպոսունս և զոմանս յաւագանւոյն, և խոստանալով ապաշխարել 'ի վերայ ամ չարեաց իւրոց, միայն թէ գտցէ հայրապետն հնարս խաղաղութե ։

Իսկ մեծն Ներսէս զիջեալ յաղաչանս այլոց՝ եկն և հաշտեցոյց նախ զնախարարս ընդ թագաւորին, դնելով ուխտ 'ի միջի, զի թագաւորն յայնմհետէ զհետ լիցի ուղղութե և շինութե, և նախարարքն ցուցցեն նմա զարժանի պատիւ հպատակութե ։ Ապա երթեալ միւսանգամ անձամբ ընդ առաջ մեծին Թէոդոսի՝ արգել զնա չառնել ինչ աւեր երկրին հայոց, խոստանալով տալ նմա հարկս և պատանդս զորդիս ոմանց 'ի նախարարաց, ընդ որս և զՊապ արքայորդի ։ Իսկ Թէոդոս երկիւղած յԱյ դիւրաւ զիջաւ յաղաչանս սրբոյն ․ այլ յորդորեաց զնա գալ ընդ իւր վերստին 'ի գուռն, և անձամբ հաճել զթգւորն ։ Յանձն էառ հովիւն քաջ վն օգտի իւրումն հօտի, և գնաց ընդ Թէոդոսի հանդերձ պատանդօք և թղթովն Արշակայ 'ի Կոստանդինուպօլիս ։ Իսկ Վաղէս՝ որ էր աղանդովն արիոսեան, և բարուքն ժանտ, ընդ լսելն զգալուստ առն այ Ներսէսի՝ թափեաց զամ ցասումն իւր 'ի վերայ նորա ․ քանզի գիտէր զնա կատա-

րեալ վրդպ ուղղափառութե և անաչառ յանձնմանիչ մոլորութե՛ իսկ և իսկ հրամայեաց աքսորել զնա հանդերձ երկու սարկաւագօք նո՛ր և քանի մի քահանայիւք ։ (2)

Նաւ քանզի աւուրքն էին ձմերայնոյ , 'ի նաւարկել սոցա 'ի տեղի աքսորանաց՝ յարեաւ 'ի ծովու հողմ դառնաշունչ , և ընկէց զնաւն յեզր անբնակ կղզւոյ միոյ ․ ուր զքարի հարեալ նաւուն խորտակեցաւ ․ այլ որք 'ի նաւուն էին՝ իջեալ 'ի մակոյկն՝ ապրեցուցին զանձինս 'ի ցամաքն ․ և դադարեցան 'ի կղզւոջն յայնմիկ ․ ( որ թէ աւանդութե ոմանց կարծի լինել մի 'ի կղզեացն մարմառայ ծովուն , որ այժմ յայլազգեաց եասը ատա կոչի , ո՛չ թէ կոչելի իցէ ներսեսի կղզի ) ։ Նաւ զի ոչ գոյր նոցա ինչ ուտել՝ բաց յարմատոց ծառոց , տեսչութբն այ և աղօթիւք սրբյն ներսեսի ընկենոյր ծովն յիւրմէ զձկունս 'ի կղզին ․ յորոց առատապէս կերակրէին զամիսս իբր ութ կամ ինն , ցորչափ մնացին անդ ․ այլ ինքն սբն ներսէս կամաւոր անսըճաղութբ ձգնէր , և յաւուրն միանգամ դոյզն ինչ մի առնոյր 'ի բերան ։ Բղխեցոյց երանելին աղօթիւք և ջուր ցուրտ և բարերեհամ 'ի կղզւոջն ․ և էր հանապազորդեալ յաղօթս այ ։

Իբրև մեռաւ վաղէս չարաչար մահուամբ , և թագաւորեաց փոխանակ նորա բարեպաշտն թէոդոս՝ դահակից լինելով գրատիանոսի կայսեր և փոքուն վաղենտիանոսի , հաւանութբ նոցին յետս դարձոյց յաք-

տարանաց զա̃մ ս̃բ հարս. ընդ որս և զմեծն Ներսէս եւս ածել պատուով մեծաւ և փառօք 'ի Թագաւորեալ քաղաքն. և Նստոյց զնա յերևելի տեղւոջ 'ի մէջ ս̃ց հայրապետաց ժողովոյն կոստանդնուպօլսոյ, որ գումարեցաւ յաւուրսն յախոսիկ ը̃դէմ հոգեմարտին Մակեդոնի և այլոց հերձուածոց ժամանակին :

Այլ մինչդեռ հանդերձեալ էր ս̃ն Ներսէս դառնալ յաթոռ իւր, լուաւ զվտարանդուն և զչարաչար մահ արշակայ հայոց արքայի, և զաւեր աշ̃ին յերեսաց պարսից. վ̃յ աղաչեաց զմեծն Թէոդոս՝ Թագաւորեցուցանել զպապ արքայորդին, որ կայր անդէն 'ի կոստանդնուպօլիս, և առաքել 'ի հայս զօրօք յունաց՝ առ 'ի վանել անտի զպարսիկս : Այլ իբրև արար ա̃ծանէր կայսրն զա̃մ ը̃ կամաց ս̃յն Ներսէսի, դարձ առար ս̃ն հայրապետն հանդերձ պապաւ և բանակաւ կայսեր յաշ̃ իւր : Յայնժամ առաքեաց արքայն պարսից գունդ ստուար 'ի վերայ հայոց. և հայք ժողովեալ 'ի մի ը̃ կայսերական զօրու՝ Ճակատեցան ը̃դէմ պարսից :

Այլ 'ի խմբել պատերազմին՝ օրհնեաց ս̃ն հայրապետն Ներսէս զզօրավարս և զզօրս հայոց և յունաց. և խաչակնքեալ 'ի վ̃ր զինուց նց̃՝ քաջալերեաց զն̃ս աներկիւղ մարտնչել ը̃ Թշնամիս խաչին ք̃սի : Այլ ինքն ելեալ 'ի գլուխ լերինն Նպատայ՝ համբարձ զձեռս իւր յաղօթս, և եկաց բազկատարած 'ի ձև խաչին՝ անխոնարհելի պահելով զբա-

նոր մեռանի՝ վկայելով Ճշմարտութեան և արդարութեան օրինաց 'ի վրէժխնդրութիւն փառացն նոյ։ Նա կամեցեալ 'ի զեղջ ածել զանապաշաւ թագաւորն՝ խօսել սկսաւ երանելւոյն, և ասէ. օրհնեա՛լ է տէր աստուած մեր, որ արժանի արար զիս ըմպել զբաժակս զայս, և հասանել մահուա՝ որ վասն նորա է. որում և ցանկացեալ իսկ էի 'ի մանկութենէ. արդ զբաժակս փրկութեան ընկալայց, և զանուն տեառն կարդացից. զի և ես հաւասարեցից հարցն իմոց առաջնոց՝ հասանել 'ի մասն ժառանգութեան սրբոցն 'ի լոյս։ Այլ քեզ ո՛վ թագաւոր արժա՛ն էր իբրև զայր թագաւոր յայտնի հրամանս տալ և սպանանել. զի ո՛վ էր՝ որ արգելոյր զքեզ, կամ ո՛վ էր՝ որ պահէր զձեռն քո 'ի գործոյ՝ զոր ինչ կամէիր գործել։ Բայց դո՛ւ տէր թո՛ղ սոցա զայս գործս՝ զոր ինչ գործեցին յիս. և ընկա՛լ զհոգի ծառայիս քո, որ հանգուցիչդ ես ամենայն աշխատելոց, և կատարիչ ամենայն բարութեանց։

Զայսպիսի բանս ասելով՝ յարեաւ սուրբն 'ի ծնգնոց անտի, և գնաց 'ի վանս իւր յեկեղեցին. գնացին զհետ նորա և բազումք յաւագ իշխանացն հայոց՝ հանդերձ քահանայիւքն և պաշտօնէիւք սրբոյն. Եւ որս էր և դպրապետ նորա երանելւոյն Մաշտոց, այն ինքն է սուրբն Մեսրոպ. որ եղև առաջին գրիչ այս ամենայն անցիցս՝ ըստ Ճառընտրաց. (Թո՛ղ զայլ ամենայն Մեսրոպ երէց պատմիչ և բուզանդայ՝ զկնի խորենացւոյն և որոց զկնի։) Արդ սոքա առհասարակ հնարս խնդրեալ ապրեցուցանել

զմէն՝ մատուցանէին նմա անդեղեայս և թիւ-րակէս . իսկ նա ոչ կամեցեալ զայն՝ 'ի բաց տանել հրամայէր . ասէ . այս մեծամեծս եղև ինձ բարի, զի եհաս ինձ մեռանել վն զգաշութե պատուիրանացն քոց . ցանկայի ար-դեօք՝ որպէս և 'ի դէպ էր ինձ՝ հրապարակա-մեռանիլ, ուր հրապարակախօս բանիւ քա-րոզէի ամենեցուն զճշմարտութի և զուղղութի . բայց և այս վիճակ բարիոք ել ինձ ընդ ըն-տիրս, և ժառանգութի իմ հաճոյ եղև ինձ . օրհնեցից զտր՝ որ այսմ մասին պահեաց զիս . և մեծապէս խնդութի է ինձ, զի վաղվաղա-կի լուծայց ես յՏէ աստի չարէ :

Յաւել երանելին խօսել և բազում խրատս որոց անդն կային, իբրև կտակ թողլով հօտի իւրում զհոգեշնորհ վրդպուն իւր և զմեծայ-լին յայտնութիս . նախ քան զամ ազդաչէր զա-մենեսին զգուշանալ անձանց, և պահել ըզ-պատուիրանս տն . զի ոչ ես տեսանելոց էք ասէ զծառայակիցս ձեր զներսէս մարմնով . զի ես երթամ առ արարիչն իմ՝ որում ցան-կացեալ եմ 'ի մանկութէ իմմէ . արդ փոխա-նակ իմ նա ինքն տրն հովուեսցէ ձեզ, և պահեսցէ զձեզ ողջս և անարատս 'ի հաւատս ճշմարտութե և 'ի գործս բարութե : Այլ մինչդեռ եմ 'ի մարմնի, պատմեցից ձեզ ըզ-տեսիլն՝ զոր տր եցոյց ինձ յանքնակ կղզւոջն յարտասահմանութե իմում . և ես ոչ կամե-ցայ յայտնել ումեք մինչև ցօր մահուան իմոյ . և այժմ ինքնին տր հրամայէ պատմօղ լինել վս ձերոյ օգտի :

Յայն

Հայածեալ սկսաւ երանելին պատմել մար-
գարէաբար զլինելոցն ըստ կարգի. զաւեր
ածիս Հայոց, և զբարձումն թ̄գ̄րութ̄ն յազգէն
Արշակունեաց, և քահանայական ցեղին ՚ի տա-
նէ Լուսաւորչին. որպ̄ և զելս պղծոյն անա-
պատի, և զյարձակումն ազգին նետողաց, և
զզօրանալ թագաւորացն արևելից՝ ապակա-
նել զերկիր լրիւ իւրով. զառումն ս̄ր̄բ̄յ քա-
ղաքին Երուսաղէմի, և զգերութի ս̄ր̄բ̄յ խա-
չին. և զոր այլ ևս երևելի երևելի փոփո-
խութիս ը̄ տիեզերս՝ մինչև ՚ի գալուստ նե-
ռինն։ Ասաց և վ̄ս̄ կատարածի աշխ̄ի, և վասն
ահագին ատենին և արդար դատաւորութեան
ք̄ի ՚ի միւսանգամ գալստեանն, և վ̄ս̄ ար-
դարակշիռ հատուցմանն ըստ իւրաքանչիւր
գործոց։ Այլ ունկն դնէր աշակերտ իւր մեա-
քար, որ անուանեցաւն մաշդոց (տե՛ս Ճառ-
ընտիրն), և ՚ի միտ առնոյր զամ̄ ասացեալսն
՚ի ս̄ր̄բ̄յն։ (3)

Այլ իբրև դադարեաց ս̄ր̄բ̄ն ՚ի խօսելոյ, ըս-
կսաւ արիւնն գունդ գունդ ՚ի ներքուստ ը̄
բերանն արտաքս հոսել իբրև ժամս երկուս։
Այլ յետ այսորիկ յարուցեալ եկաց յաղօթս,
և ծունր եդեալ խնդրէր թողութի ՚ի վ̄ս̄
ապանողին իւրոյ, և յարտասուս ցնգէր զամ̄
տեսօղս և զլսօղս. ապա յիշեաց յաղօթս իւր
զամ̄ աշխ̄՝ զմերձաւորս և զհեռաւորս, զա-
նարգս և զպատուականս. զի գտցեն զողոր-
մութի ՚ի տն̄է. և խնդրեաց և հաղորդեցաւ
կենարար խորհրդոյ մարմնոյ և արեանն տն̄։
և յաւարտ աղօթիցն համբարձեալ զձեռս

սեն ։ Ջնաւելու մեծօրայ երեց յաւանդաւէ , Թէ յետ այսորիկ սբ̃ն լուսոյ եկաց 'ի վե̃րն գերեզմանի նշ̃յն զաւուրս ես ․ և բազում բժշկութիւնք եղեն 'ի գերեզմանէ նր̃ ․ և առ նուլին հող 'ի գերեզմանէ նր̃ , և բուժեին յախտէն՝ զոր ժանդ անուանեն ․ և հող գերեզմանի նր̃ առեալ բժշկել զժանդ և զփտղացաւ և զա̃մ վէրս մարդոյ և անասնոյ ։ Եւ Թէպէտ անյայտացաւ գերեզմանն նշ̃յն յետ ժամանակաց , բայց վերստին յայտնեցաւ՝ ան̃ց առաջի զկնի ․ և ցարդ եւս է ուխտատեղի նշանաւոր ։

Իսկ երանելին խաչ էր փախձանէլ յաւաջ քան զմեծն ներսէս ․ այլ 'ի միասին կատարի յիշատակ նր̃ իբրև զգործակից խոստովանութե̃ վ̃դպին իւրոյ , և ա̃մբ նմանօղ առաքինութե̃ց նորա ․ քանզի նախ՝ յորժամ կարգեցաւ խաչ սարկաւագ 'ի նշ̃յն ներսիսէ 'ի վերակացութի̃ հիւանդանոցաց և օտարանոցաց , այնչափ փոյթ էր և առատ 'ի դարմանել զհիւանդս , և 'ի յանձանձել զաղքատս և զօտարս , մինչև սպառել նմա զա̃մ շտեմարանս պատրաստեալս 'ի պէտս կարօտելոց ․ և 'ի կարդալ նր̃ առ ի̃ր՝ լուաւ ա̃ծ աղօթից խաչայ , և հայեցեալ 'ի զուարթառատ ողորմածութի̃ նորա՝ աղբերացոյց սքանչելեօք զշտեմարանս նորա իբր առ եղիայիւ և եղիսէիւ ․ զի որչափ և տայր ռոճիկս կարօտելոց , անպակաս գտանէր զհամբարս ։ Իսկ 'ի ժամանակին՝ յորում հանդերձեալ էր գնալ մեծն ներսէս 'ի յոյնս՝ 'ի հաշտեցու-

ցա-

ցանել զվաղէս կայսր ՟Է արշակայ Հայոց ար-
քայի, ձեռնադրեաց զերանելին զխադ յեպիս-
ուԹիւն բագրեւանդայ և արշարունեաց. և
կարգեալ զնա որպէս փոխանորդ իւր՝ յանձն
արար 'ի նա զգործ հովուապետութեան ամենայն
մինչև 'ի դարձ իւր։ Իսկ քանզի յամեաց սրբոյն
Ներսիսի՝ երԹալով և յաքսորս, նա ինքն խադ
եպս հովուէր 'ի ժամանակին զհօտ նորա. և
էր հզօր 'ի բանս, և անաչառ 'ի խրատել և
'ի յանդիմանել ոչ միայն զժողովրդականս,
այլև զմեծամեծս և զԹագաւորն գլխովին.
և չէր ոք՝ որ զդէմ ունէր բանից նր։

Բայց քանզի առ փոքր մի պղծնող զանձն ցու-
ցանէր խադ 'ի հանդերձս, և էր ձիաւոր,
նմին իրի յանդիմանեալքն 'ի Նմանէ՝ փոխա-
նակաբանեալ եպերէին զնա. իբր այն Թէ՝
զոր մեզ ուսուցանէ, զի՞ է՝ զի ինքն ոչ առ-
նէ. յայնժամ երանելւոյն խրատ անձին ա-
ռեալ 'ի բամբասանաց այլոց՝ եԹող այնու-
հետև զշուք հանդերձից և զերիվարն, և
խարազնազգեաց եղեալ՝ իշով շրջէր մինչև
ցօր մահուան իւրոյ. մինչև չկարելոյ ումեք
արատ դնել սրբուԹեն նր։

Իսկ եղև 'ի կոտորել Թագաւորին արշակայ
անգԹուԹբ զազգն կամսարականաց, և 'ի
հրամայել ընկենուլ զմարմինս նց 'ի կերա-
կուր շանց, ոմանք 'ի սայլորդաց գտեալ զոս-
կերս նց 'ի բացի՝ ժողովեցին և ամփոփեցին
'ի նոյն խորս, ուր հրամայեալ էր Թգւրն
դնել զինչս սպանելոցն. զոր զգացեալ ար-
շակայ՝ հրամանս ետ կախել զայլորդսն ըզ-
փայ-

փայտէ 'ի վ՛ր նորին խոցոց ։ Նոքօ լուծաւ երա-
նելին Խադ զանպերելի գործս արքայի, ե-
մուտ առ նա, և սաստկագոյնս յանդիմա-
նեաց զնա սաստիկ ապաճանալեաց անծայլին
գաստատանաց · Եւ որ ցասուցեալ արշակայ՝
հրամայեաց քարշել զայրն այ, և քարկոծ
առնել ։ Նայց քանզի անդ հանդիպեցան
երեւելի արք 'ի քաղ տոհմէն ապահունեաց՝
առաջերոք զատերացն խաղայ, սուսեր հանեալ
ահացուցին զքարշօղսն, և յափշտակեալ
զԽադ՝ զերծուցին 'ի գաւառն իւրեանց · ուր
ոչ յերկարեալ նի զկեանս՝ փոխեցաւ առ ա̄ծ
խոստովանողական պարծանօք · նմին իրի և
յայսմաւուրքն ասէ զնա քարկոծմամբ կա-
տարեալ 'ի ք̄ս ։

## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՆՇԽԱՐԱՑ

### Այսն Ներսեսի Մեծի յեկեղեաց գաւառի 'ի փետրվարի · ա̄ ։

Ձայնն · Ը · եր · յԲ̄—յՂ ։ Մաղթեսս պարոմեւ ։
Յողես · Երջանկացէ 'ի շարականին ։ (5)

Յետ երջանիկ փոխման սր̄բ հայրապետին
մերոյ Ներսեսի, որոյ պատուական մարմինն
թաղեցաւ 'ի մեծ եկեղեցւոջ՝ որ 'ի Թիլն
աւանի յեկեղեաց գաւառի մօտ յերիզա, որ
և երզնկա, փայլէր գերեզման նորա նշանօք
բժշկութեանց՝ պատուեալ 'ի հաւատացելոց,
ցորչափ շէն էր եկեղեցին այն ։ Իսկ եղև յան-
ցու

ցանել քանի մի դարուց՝ 'ի ժամանակին, յարուամ յարեաւ պատերազմ 'ի մէջ խոսրովապարսից արքայի և հերակլի կայսեր յունաց, ատեանկոխ եղեն բազում տեղիք Երին հայոց յերեսաց զօրուն պարսից, և առաւել ևս զկնի սակաւուց՝ յերեսաց զօրուն հագարացւոց։ Վասնզի ուԹ ամօք յետոյ քան զմահն խոսրովու՝ աբդռահիմ ոմն քեռորդի առաջնոյ ամիրապետի եւ 'ի հայս ուԹևտասն հազար արամբք. ժողովեաց հարկս 'ի բնակչաց Երի, և կոտորեաց զզօրս քրիստոնէից՝ որ 'ի տարօն գաւառի։ Նա և նոյնօրինակ շրջեալ 'ի բարձր հայս, 'ի բասէն, 'ի վիրս, 'ի ջաւախս, և 'ի վանանդ, յետ բազում աւերածոյ դարձ արար 'ի տեղի իւր 'ի տաճկաստան։

Նա և ահա 'ի նոյն արշաւանս՝ յամի տն 632, քակեցան երեք մեծամեծ հին եկեղեցիք հիմնարկեալք 'ի սրբոյն գրիգորէ լուսաւորչէն. մին՝ եկեղեցին որ յաշտից վանսն յաշտիշատ տարօնոյ. վկայարան սրբոյն յովհաննու յինն ակնեան վանս՝ այն է սբ կարապետ մշոյ. և կաԹուղիկէն՝ որ 'ի Թիլն աւանի յեկեղեաց գաւառի, ուր էին գերեզմանք որդւոց և Թոռանց սրբոյ լուսաւորչին, ընդ որս և գերեզման սրբոյն ներսեսի մեծի։ Արդ՝ յաւերածոյ և 'ի փոփոխմանէ շինուածոյ այնր եկեղեցւոյ, և 'ի սրով սպառելոյ պաշտօնէից տաճարին՝ ոչ ծանօԹք էին միոյ միոյ 'ի գերեզմանաց սրբոցն, անյայտացաւ զկնի ժամանակաց և գերեզման մեծին ներսեսի. զի ոչինչ այլ գիտէին բնակիչք տեղւոյն, բայց

միայն

միայն զայս, թէ 'ի տաճարի անդ է տեղի գե-րեզմանաց նախնի սրբոց Հայրապետաց իւ-րեանց. որոյ վս կոչիւր և տաճարն այն եկե-ղեցի սրբ Հայրապետաց, կամ հանգստեան եկե-ղեցի, քն սրբոց Հարցն հանգուցելոց 'ի քս: Իսկ մնաց այնպէս զբազում դարս մինչև ցա-ւուրս Լևոնի երրորդի Հայոց արքային՝ որ 'ի կիլիկէ, և յակոբայ կլայեցւոյ կաթղկոսի ամն Հայոց. յորում ժամանակի՝ յամի տն. 1272. և 'ի թուականութե Հայոց. չիա. կամք եղեն այ սքանչելեօք յայտնել զայն՝ ըս օրինակիս [illegible] այսմիկ:

Որ յայնմ ժամանակի առաջնորդ մայրաքա-ղաքին եզնկայ և բովանդակ եկեղեցեաց գա-ւառի՝ տր սարգիս արքեպս, այր առաքինի և ածասէր. որ և շինեաց զգեղեցկայարմար եկեղեցին՝ որ յանուն փրկչին՝ յեզնկա, բա-րեսէր իշխանաւն պարոն յովհաննիսիւ. և ունէր եւս փափագ այլ եւս բարեշինութեանց և պայծառութե եկեղեցւոյ: Իսկ առաջնորդ վանիցն՝ որ 'ի թիլն աւանի յեկեղեցեաց գաւա-ռի անդ, էր ներսէս վրդպ. որոյ էր ձեռամբ էին վանականք ոչ սակաւ. և 'ի մէջ նց էր սարկաւագ մի սրբակրօն՝ կարգեալ 'ի գործ սպասաւորութե վանիցն, և եկեղեցւոյն՝ որ յանուն սր Հայրապետացն, Պարունական ա-նուանակոչեալ, և արդեամբք այն պաշտօնոյ արժանի՝ այր հեզ և հանդարտ վարուք, և անօթ ընտիր ընդունելութե հոգւոյն:

Նորա՝ տեսիլ երևեցաւ պատուական սարկա-ւագիս 'ի գիշերի հինգշաբաթոջ, որ օր իէ

էր

էր յունվարի: Տեսանէր այր մի ծերունի, որ զգեցեալ էր զՀանդերձ ծիրանի՝ քահանայական ձևով, և նստեալ ՚ի ջորւոջ փառաւորապէս՝ մտանէր ընդ դուռն վանիցն, և ասէր ցսարկաւագն. Եղբայր՝ ո՞ր է Հանգուցեալ եկեղեցին, որ աստ կայ. և նորա կալեալ զսանձս ջորւոյն՝ իջոյց զնա, և առաջնորդեաց մինչև ՚ի Հանգուցեալ եկեղեցին: Այլ իբրև եմուտ ծերունին ՚ի ներքս, ասէ. ա՛ստ է գերեզման սրբոյն Ներսիսի. և գաւազանաւն՝ զոր ՚ի ձեռին ունէր, նշանակէր զտեղին ՚ի կողմն գլխոյն. և ՚ի Հարկանել գաւազանաւն՝ լոյս Հրախառն փայլատակէր ՚ի տեղւոյն. և ասէ պատուիրելով ցսարկաւագն. տեղիս՝ զոր ցուցի, ստուգապէս է գերեզման սրբոյն Ներսեսի, յորում կան նշխարք ամենայն ոսկերաց նորա. ասասջի՛ր առաջնորդի տեղւոյդ, և եկեալ Հանջիք. և չէ՛ խորադոյն, այլ՝ սակաւ Հողով ծածկեալ. և այս չորս ամսաւ է՝ զի ասացին ինձ գալ և ցուցանել զտեղիս, և ես պատճառաւէի զծերութիւն. և ետուն ինձ զջորիս զայս, զի բարձցէ զծերութիւն իմ. և ես եկեալ ցուցի:

Այլ իբրև զարթեաւ ՚ի քնոյ պատուական սարկաւագն, ՚ի զարմացման եղեալ՝ կայր ահի՛ պակուցեալ. և իբրև պատմեաց զտեսիլն առաջնորդին և եղբարցն՝ որ ՚ի վանսն, նոքա ասեն ցնա. աղօթեա՛, զի երկրորդեսցի տեսիլն: Այլ առաջինի սարկաւագն ընդ Հլութեամբ աղօթից Հպատակեալ՝ ՚ի միւսում գիշերի յորում ուրբաթ լուսանայր, տեսանէր երի-

քան 'ի ձեռին ունիս՝ զգուշասջի՛ր պահել. ապա թէ զերծեալ թուիցէ, դժուարին է ըմբռնել: Այս յորժամ յարուցեն պատմեաց պատուհական սարկաւագն զվերջինս զայս տեսիլ, հաւատարիմ եղև ամենեցուն. և 'ի միտ առին զտեսութիւն առակաւոր բանին, թէ անձն սրբ՝ որ իբրև զձնձղուկ ապրեալ եղև յորոգայթից որսողին, հրեշտակական վարուք 'ի մարմնի ազատ մնացեալ յամ խաբէութէն չարին, և զայսքան ժամանակս անյայտ լեալ 'ի մարդկանէ՝ այժմ ինքնին յօժարի յայտնել զինքն իւրոցն. և եթէ անհոգացին իւրքն գտանել զնա, դարձեալ ծածկէ զինքն. և այնուհետև թէև կամիցին՝ չկարեն գտանել: Այլ փառս ետուն այ ամ եղբարքն վն այց առնելոյ նոցա յայտնութեամբ այնպիսի անգին գանձուն:

Ապա վաղվաղակի վրդպն ներսէս հայր վանիցն փութացեալ գնաց 'ի քաղաքն եզնկայ առ մեծապատիւ արքեպսն տր սարգիս, և պատմեաց նմա զամ հանգամանս տեսլեանն՝ աւետիս տալով նմա, թէ մեծամեծ բարեաց և փրկութե նշան է այսպիսի երևումն սբյն ներսեսի, որ յաւուրս առաջնորդութե նորա կամեցաւ յայտնել զինքն: Յայնժամ լցեալ արհիեպսին մեծաւ խնդութբ՝ գոհանայր զայ. և ապա ասէ ցներսէս վրդ. գնասջի՛ք զգիշերս զայս եղբայրական դասիւքն հսկումն արասջի՛ք. և 'ի վաղիւն բերցէ՛ք զտեղին, մինչև երևեսցի գերեզմանն. և ինձ ազդ արարէք, զի եկեալ հանցուք զուրախարար գանձն

հայաստանեայց ։

Իսկ արարին վանականքն ըստ հրամանի ե-
պիսկոպոսին. քանզի յետ հսկելոյ զգիշերն
զայն, ապա 'ի վաղիւն անդր՝ որ օր առաջին
էր փետրուարի ամսոյն, բրեցին զտեղին նշա-
նակեալ 'ի տեսլեան. մինչև 'ի վեր երևեցաւ
գերեզման նոցին ներսեսի. և ազդ արարին
եպսին ։ Իսկ մինչ չև եկեալ էր նորա, փու-
թացան բնակիչք վանիցն հանել զնշխարս
նոցին արտաքոյ գերեզմանի, երկուցեալ 'ի
բազմութենէ ամբոխին, գուցէ ոչ կարիցեն հա-
նել պատրաստութբ ։ Իսկ էր կազմեալ գե-
րեզմանն ըստ երկայնութեն չափ երից կանգ-
նոց, և լայնութբ իբր կանգուն մի 'ի կողմ
ներքին. և խորութբ չորս աստիճանօք մար-
դաչափ մի, կազմեալ կռամած քարիւ. և յա-
րևմտից կողմ գերեզմանին էին նշխարքն նոցին
ներսիսի բազմեալ յաթոռ, և այնպէս ե-
դեալ 'ի գերեզմանն հանդէպ արևելից ։
Որ և նոյնպէս կային նմ յօրինուածք մա-
քուր ոսկերացն յիւրում տեղւոջն, և գլխոյն
դեր 'ի վերոյ նմ անդամոցն ողջ կենդանւոյ.
և էին առաջի նր 'ի մէջ գերեզմանին այլ
նշխարք, ոչ բովանդակ մարմին. այլ՝ մասն
ինչ եդեալ 'ի մեծամեծ անդամոցն, և սա-
կաւ ինչ հողովլ ծածկեալ էին նը նշխարքն.
և ապա 'ի վերոյ երեք կրկին կամարք կա-
պեալ 'ի կրոյ և 'ի քարանց 'ի վերայ գերեզ-
մանին ։

Պայր այնուհետև 'ի նմին աւուր 'ի մուտս
փետրուարի ամսոյ մծապատիւ սրբեոյն

երզնկայու տր̄ սարգիս , և բարեսէր իշխանն
պարոն յովհաննէս որդի նորա , առեալ ընդ
ինքեանս և զպաշտօնեայս եկեղեցւոյն , և
'ի պատուաւոր արանց ք՟քին . և այլ բազմ
ամբոխ ժողովուրդ ելին զհետ նորա իբրև
զեղջերուս ծարաւի 'ի ջուր փափագեալ . զի
վկայէր 'ի միտս ամենեցուն մեծի և փոքու ,
թէ եհաս ժամանակ փրկութե̄ և ազատու-
թե̄ հայաստանեայց ։ Եւ իբրև եկին 'ի տե-
ղին , անկեալ երկրպագեցին գերեզմանին՝
հրեշտականման մարմնոյն օթարանի , և յար-
կին ՚ի ծածկողի զգանձն լուսոյ ։ Եւ հրա-
մայեաց եպ̄սն սպասաւորաց եկեղեցւոյն՝ բե-
րել զնշխարս ՚ի նոյն մերձ 'ի գերեզմանն . զի
անդ տեսցէ ինքն և բազմութի̄ ժողովրդեանն ։
Եւ իբրև ետես զմ̄ծային հոգւով կենդանի
նշխարս ոսկերաց ՚ի հայրապետին մերոյ
ներսեսի և երկրորդ լուսաւորչին հայոց ,
յարտասուս եղեալ սկսաւ լալ . և ողբական
ձայնիւ՛ իբրև ընդ կենդանւոյ խօսելով՝ գութս
արկանէր ՚ի նոյն , և ասէր ։ Ահա ժամանակ
գթալոյ ՚րդ ո՟յ , եթէ ողորմեսցիս քո ան-
կեալ և տառապեալ ազգիս ։ Ի բազում ա-
լեաց ծփեալ և հողմակոծեալ կայ նաւ եկե-
ղեցւոյ . ձեռնտու լեր և օգնեա՛ բազմահր-
մուտ և ամենիմաստ նաւավար ։ Մոլորեալ
է հօտ քո , և կարօտեալ 'ի կենաց կերա-
կրոյն . դահավիժեալ և ցրուեալ՝ մատնեալ
'ի ձեռս գայլոց յանխնայ վիրաւորողաց . այս
է ժամանակ այցելութե̄ և թափելոյ քաջ
հովուիդ զգառինս քո 'ի գայլոց ։ Հիման-

գտցեալ է մարմին եկեղեցւոյ, և ոչ գտանէ հարազատ բժիշկ իւրոյ բեկմանն, և դեղ մահաբեր ցաւոյն. ո՛չ է մասն՝ եթէ պատեասցի, և ո՛չ 'ի միում տեղւոջ՝ թէ սպեղանի դնիցի, այլ՝ բոլորովին է ախտացեալ. Հայնո՛ց բժիշկդ ցաւակցաբար. և հայցեա՛ 'ի մարդասէր բժշկէն բնութեանս ստեղծողէ, զի խոնարհեցուսցէ զունկն լսել տառապանօք

ձայնի հեծութեան նեղելոցս:

Զայս և որ սոցին նման է, մաղթէր սուրբքն երկոքեան առաջի Սուրբ նշխարացն. և ապա հրամանաւ տայր բազմութեան ամբոխին՝ քահանայից և ժողովրդոց, միջնորդութեամբ սպասաւորի ումեմն բանի՝ զնախնեացն խոստովանել զյանցանս, և զանհնազանդութեան նոցա խնդրել զթողութիւն, յաղագս որոյ այս ամ չարիք եկին 'ի վերայ մեր. և դնել ուխտ առաջի կենդանի նշխարացն՝ ո՛չ գնալ ընդ նոյն Ճանապարհ չարեաց, և ոչ ապստամբ լինել Աստուածայինն պատուիրանացն, և օրէնսդրացն խրատու: Յայնժամ յառաջ մատուցեալ ոմն յընտրելոց վարդապետաց՝ սկսաւ ասել 'ի բերանոյ ազգին ողջոյն, ձայնակցութեամբ ամենայն եկեղեցւոյն՝ այսպէս.

Մեղա՛ք քեզ հա՛յր սուրբ, և հոգւոց մերոց վերակացու. մեղաք մեք և հարքն մեր, անօրինեցաք և յանցեաք: Եթէ ճաշակեալ էաք զպտուղ քաղցր պատուիրանացն քոց, ո՛չ էաք կարօտ մնացեալ 'ի լուսաւորիչ հարցն տեսչութենէ: Զիւրաւի ծածկեաց զմեզ տրտմութեան խաւար, զի 'ի լոյս պատուիրանացն

ոչ

ոչ հետևեցաք ։ Արդարապէս աղքատացաք , զի զցանկալին քան զոսկի և զարծաթ և քան զա̃մ ականս պատուականս՝ զօրէնսն Ա̃ծային յոգիս մեր ոչ գանձեցաք ։ Եւ այնորիկ տիրեցին մեզ ցաւք մահաբերք , զի հոգևոցուցիչ և կենդանի բանին ա̃յ ոչ կերակրեցաք ։ տիրեաց մեզ քաղց կսկծելի և ծարաւ պապակման , զի զա̃յ բանին կերակուր 'ի քաղցր հարանցդ ոչ ըմպեցաք ․ և քաղցր սուտուղ լուսաւորիչ զարմին ս̃յն Գրիգորի պակասեաց 'ի մէնջ ։ Մոռացաք մեք զխրատ խաղաղութե հօրդ հոգևորի , մոռացար և զմեզ այժմ յաջողակ ․ այժմ՝ որ պարիսպ հրեղէն էր զօրացն հայոց ․ այժմ՝ որ բարձրացուցանէր զդրօշ թագաւորացն հայաստանեայց ․ այժմ շնորհաբաշխ և պարգևաշատ ․ այժմ սնուցանօղ և դաստիարակ կաթնասուն մանկանց սիոնի ։ Արդ՝ հա՛յր , հաշտեա՛ց հայրենի գթոյդ միջնորդութ̃բ , թո՛ղ զպարտիս յանցաւոր որդեացս ։ Ծարկանէ հայր զորդի , ցաւեցուցանէ , և ինքն ոչ մ̃նայ առանց ցաւոց ․ այլ քան զխրատեղէն դաւազանաւ զանհնազանդ որդի՝ առաւել եւս զգայ ցաւոյն վ̃ն ծնողական գթոյն ։ Եւ զի եկեալ կատարեցան 'ի վերայ մեր տեսիլքն 'ի քէն մարգարէական հոգւով , և կրեցաք զբերմունս դառնութե ժամանակաց 'ի պատուհաս պատուիրանազանցութե մերոյ , և արդ հա՛յր՝ եթէ զայս աղէտ տարակուսանաց յիշեցուցես հօրն գթածի և մարդասիրի , որ ոչ երբէք մոռանայ , գիտեմք՝ զի դարձցի 'ի բարկութե

սրտմտութեն , որ ոչ է իւր բնական . և շարժի 'ի գութ քաղցրութե և ողորմութե՝ որ իւր է սեփհական ։ Այս հայր մաղթեամ ընդ մեղուցելոցս. գիտէ հայրն հասարակաց լսել մաղթանաց հօր , որ վ՟ որդւոյ անառակ կենօք վարեցելոյ . պատուէ զայլս պատուական , որ վ՟ պարտաւոր որդւոց երաշխաւորէ ։ Որդ այսպիսի և որ ինչ նման է սոցին բանք պաղատանաց յիշատակեցան 'ի տեղւոջն , և ուխտադրութիւք արտասուաց հառաչանօք յամ ժողովրդեննէն եղեն առա.

Չի կենդանի նշխարաց սրբոյն Ներսեսի ։

Յայնժամ առեալ եպսին զսրբ նշխարսն՝ պատէր 'ի սպիտակ և 'ի ոսկ կտաւ , և առանձին դնէր յեկեղեցւոջն յերկուս արկեղս , և կրնքէր իւրով մատանեաւ ։ Այս երկու մասն մեծ տայր 'ի սպասաւորս եկեղեցւոյն՝ 'ի համբոյր և 'ի տես ուխտականաց ժողովրդեանն , որ գային յամ կողմանց . և այլն կայր պահեալ զգուշութբ . և ինքն եպկսն դարձաւ 'ի քաղաքն՝ ծնալով տեսչութեն այս , թէ զինչ արասցէ ։ Այս վ՟ զի հնչեաց համբաւն յծ , և զուարճացան որ յամ տեղիս ազգ հայաստանեայց , և դիմեալ գային բազմութբ հաւատացելոց յերկրպագութի և 'ի տեսութի ոսկ գերեզմանին , յայսմանէ ընդոստուցեալ այլազգեաց՝ զմտաւ ածէին , եթէ յինչ կամի աւարտիլ խորհուրդ բանին . քանզի գոյր և 'ի մէջ նց յիշատակ հրաշալի տեսլեան սրբոյն Ներսիսի՝ գրով և բանիւ , վ՟ հանդերձելոց ժամանակաց , և տագնապէին

խաղ

խորհրդով. և բազումք 'ի նոցանէ 'ի նախանձ մտաբերեալ՝ խորհեցան զնալ զհետ 'ի վանսն, և յափշտակել զնշխարս սրբոյն. Թերևս կարասցեն ծածկել զհամբաւն աշխարհալուր:

Ապա եղև երկոքին. անձնապարեաց զնաց անդրէն 'ի վանսն, և առեալ զսուրբ նշխարսն՝ բերէր 'ի քաղաքն, ուր զաջն սրբոյն և զմիւս բազուկն տայր յօրինել իմաստուն ոսկեգործաց. և զմանր մասունս մատանցն առ միմեանս միաբանեալ՝ պատէր արծաթով և ոսկւով, մանրամասն յօրինուածով տեղի երեսման 'ի ցոյցս տեսլեան արարեալ պահպանիչ անձոյն և շնորհաբաշխ բազկին: Նոյնպէս տայր յօրինել զլուխ արծաթեղէն՝ յարմար մեծահասակ անձինն, պահարան զլխոյն նշխարաց, և 'ի բաց առնելով զզլուխ երեսացն և զբերանոյն, և յերիս տեղիս հանդէպ ձևակատուն խաչաձև հատուածս արարեալ յարծաթոյն, տայր երևիլ նշխարացն: Նաև զմնացեալ նշխարս նորա ոսկերացն լուանայր և մաքրէր 'ի հողոյն մնացելոյ՝ անապակ և անուշահամ գինւով յանուշահոտ ծաղկանց խառնելով, և օծանէր խնկահոտ իւղով կազմեալ արուեստաւորապէս. և պահէր զգուշութեամբ, մինչև շինեսցի եկեղեցի նոր 'ի վերայ գերեզմանին. որոյ վէմ և տայր հաւաքել նիւթ շինուածոյ և պատրաստել քարանց. զոր կատարեաց կամ անձամբ և կամ 'ի ձեռն յաջորդաց իւրոց. և կոչեցաւ յանուանէ եկեղեցին այն և վանքն՝ որ 'ի

Թիլն աւանի, Ներսէս հայրապետ. ուր սկսան նստել զկնի առաջնորդք եզնկայու մինչև ցայսօր :

Նաև թէ ո՞ւր պահէին յայժմուս այս և այն մասունք Նշխարացն սրբոյն, աւանդապահից անհնար է գիտել. զայս գիտեմք 'ի պատմութենէ, զի սարգիս եպիսկ զաջ սրբոյն եդ յիւրաշէն եկե-ղեցին եզնկայու, ուր աւագ խորանն էր յա-նուն փրկչին Յ̃ի. և խորանն երկրորդ կոչիւր կաթուղիկէ. և երրորդն էր յանուն սրբոց ա-ռաքելոց : Նաև զմիւս բազուկն եդ 'ի Նը ուխտն տիրաշէն՝ շինեալ յիւրմէ յայնկոյս գետոյն եփրատայ, ո՛չ թէ (ասէ պատմա-գիրն) տարածել ունիցի սրբն Ներսէս զԹևան Հոփանի եկեղեցւ. զաւանին և քաղաքին ե-զնկայ, և զբազուկն տղաչող բարեխօս առ-բարձրեալն, և զձեռնն յառնուլ յանձնուաց բարեաց և բաշխել եկեղեցւոյ մանկանց 'ի փարթամութի փառաց հայրենի գանձիւք :

Սայս սրբ ճառօրէն փաղաքանութ̃ք և Ներ-բողենին Ճոխագոյն նկարագրէ՝ վայելչաբան և իմաստուն վրդպ ոմն եզնկացի, ակնատես եղելոցն. և Թերևս ինքն իսկ յովհան երզն-կացին իցէ՝ որ և ծործորեցի կոչ̃ պլուզ վրդպ վերաձայնեալ, որ փայլէր 'ի ժամանակին, և 'ի պատճառս այսր յայտնութ̃ նշխարաց երևի յօրինեալ զշարականն սրբոյն Ներսիսի. զ̃ որում և խորագիր ճառիս ունի այսպէս. * Յայտնութի նշխարաց սրբոյն Ներսիսի հայոց
,, պատրիարգի և երկրորդ լուսաւորչի. որ
,, որ մի է զ̃ հաւաքմայեցւոց ամսոյն փետրուա-
,, րի.

„ արի . և հայոց ամսոյն որ է արաց իէ . յո-
„ րում տօնեն եկեղեցիք հայաստանեայց (կա-
„ մա յեկեղեցեաց գաւառի ) մեծաւ հանդի-
„ սիւ : Ո՜ որ կարգեալ հաստատեաց արհի-
„ եպսն տր սարգիս՝ տօնել յամ ամի զնոյն օր
„ յայտնութեն նշխարաց նըյն՝ խորհրդական
„ երգովք շարականաց , և ներբողական ճա-
„ ռիւ || :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Մարք սքյն ներսիսի մեծի․քաղէ յերից մատենագրաց, յորոց առնուն և յետինք. Առաջին ը ժամանակի է բուզանդ փաւստոս՝ Ճշմարիտ և ականատես. երկրորդ՝ մերձաւոր ժամանակաւ, և տեսող ականատեսից՝ խորենացին. և երրորդ մարդ երեց ոմն յետոյ ժամանակաւ՝ հաւաքիչ հին պատմութեց, և առեալ 'ի բուզանդայ: Ցորս յայտ է թէ նախապատիւ է վկայութի խորենացւոյն առ հաւատարմութն իւրոյ, զորմէ չունիմք երկբայութի. ուր զբուզանդայ ում իմաստուն մարք վկայեն գոլ շաղակրատ և շաղփաղփ. մինչ զի և 'ի խօսելն զճշմարիտն՝ աղօտացուցանէ զճշմարտութիւն աւելորդաբանութեք. սմին իրի այնչափ ինչ առաք 'ի նմանէ՝ որչափ միաձայնի ընդ հարազատ աւանդութե խորենացւոյն. ոչ առնեն և յոմհաննէս կաթղիկս. ասողիկ. շնորհալին, վարդան, երզնկացին. և այլք. ը նմին և յայսմաւուրքն: Իսկ մարդ երեց թէպէտև բաղում ինչ 'ի բուզանդայ առնու, և սակայն ունի իւր առանձնորդ և զայլ ընտիր հեղինակ՝ զանանուն գրիչն տեսլեան մեծին ներսեսի. քզի բուզանդ զանց առնէ զբանիւ տեսլեանն, զոր մարդ երեց լիով յառաջ բերէ: Արդ ոչ նշանակեցաք 'ի կարգի պատմութես, հաւանելի երևի մեզ, ոչ ցուցանեն և ճառընտիրք. թէ առաջին գրիչ այնր տեսլեան եղև նը վճռյն մաշտոց՝ որ և մեծն մարդ՝ աշակերտ և նոտար սքյն ներսեսի: Նոր զի թէև անյայտ մնասցէ անունն գրչին, ոչինչ

ակա-



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Դանիէլի մարգարէին, եւ Երից մանկանց:

Հ. օգոստ. 24. եւ մարտ. 15: Յ. դեկտ. 17:
Լ. յուլ. 21. եւ դեկտ. 16: Բոլլանդեանն պէննա.
'ի Է. հատ. յուլիսի. 21. եր. 117=130: (1)





ՅԱՆՈՒԱՆԻՆ ԺՈՂՈՎՐԴԵԱ-նոց, եւ պանծալին 'ի պատգամաւորս այ՟, մարգարէն Դանիէլ՝ էր ազգակից եւ տոհմակից քսի յսի փրկչին մերոյ՝ ըստ մարմնոյ, այս է 'ի տանէն յուդայ. եւ այն՝ 'ի Թագաւորական զարմէ, կմ՟ յազատաց յուդայեանց. զորօրինակ էին եւ երեք մանկունքն երանելիք, անանիա, ազարիա եւ միսայէլ, ազգակիցք եւ գերեկիցք դանիէլի. եւ ոչ՟ հասակակիցք, նոյնպս եւ առաքինութբ՟ հաւասարորդք նմին: Զորեքեան սք՟ 'ի մատաղ հասակի մանկութե՟ կմ՟ յառոյգ տիս պատանեկութե՟ գերեցան 'ի հրէաստանէ 'ի բաբելոն ընդ յովակիմայ, իմն ը՟ եղիակիմայ արքայի յուդայ՝ 'ի վախճանի երրորդ ամի Թագաւորութե՟ նորին, որ է սկիզբն չորրորդին. այն ամ առաջին էր նաբուգոդոնոսորայ արքային քաղդէացւոց 'ի կենդանութե՟ հօր իւրոյ նաբուպալասարայ:

Եւ

Եւ եղև յետ արձակելոյ յովակիմայ և դառ-
նալոյ անդրէն յեմ յիւր Թագաւորութիւն
Թողլով՝ ի բաբելոն իբր պատանդ զմանկունս
աւագաց և ազգականաց իւրոց , հրամանն ետ
նաբուգոդոնոսոր ցասփանեզ ներքինապետն ,
զի առցէ ընտրանաւ մանկունս անարատս և
գեղեցիկս և մտավարժս յորդւոց անտի գե-
րութեն հրէաստանի , և դիցէ յարքունի կըր-
Թարանի՝ մարզիլ՝ ի դպրութիւն քաղդէացւոց
և 'ի պալատական հրահանգս , զի արժանի
լինիցին կալ 'ի սպաս արքայի ։ 'Ի կարգի սո-
ցա ընտրեցան և դանիէլ , անանիա , ազա-
րիա , և միսայէլ 'ի տանէն յուդայ . այլ սո-
քա չորեքեան չառին յանձն ուտել 'ի սեղա-
նոյ արքայի . վնոյ աղաչեցին զմաղասար ներ-
քինապետ՝ որ վերակացուն էր նց , տալ ին-
քեանց լոկ ունդս 'ի կերակուր , և ջուր յար-
բումն . և յայսր ամի վերայ առաւել կայտառ
և բարի երևեցան երեսք նց քան զամ ման-
կանց՝ որք ուտէին 'ի սեղանոյ Թգւրի ։
Եւ ետ ած չորեցունց նց իմաստութի և հան-
ճար յամ դպրութե և 'ի գիտութե . այլ քան
զերկոսին ևս առաւելաւ դանիէլ հոգետեսու-
Թբ . զի խելամուտ էր ամ տեսլեան յածա-
կոյս կողմանէ . և ընդարձակութբ խորհըր-
դոյ և ուշոյ մնաց երևելի ոչ սողոմոն այլ .
զորոյ և զնմանութի անդստին եցոյց յանձին
յայտնի փորձիւ՝ սքանչելի դատաստանին ,
զոր արար՝ յապրեցուցանել անդ զանմեղն
զշուշան՝ յանդիմանելով զչարախօսս նորա
զանօրէն ծերս . քանզի մինչդեռ տանէին
զշու-

Այն ինչ առանձինն Թագաւորեաց Նաբու-
գոդոնոսոր զկնի մահու հօր իւրոյ, յերկրորդ-
ումի ամի տեսանէ զահաւոր զայն երազ մե-
ծի արձանի 'ի զանազան նիւթոց կազմելոյ,
որոյ գլուխն էր ոսկի . այլ ընդ յառնելն 'ի
քնոյ՝ մոռացեալ արքային զոր ետեսն, կոչեաց
զամ մոգս և զքաղդեայս, զի պատմեսցեն
նմա զերազն, և տացեն զմեկնութի նորա . և
յանկարօղ լինել նց՝ ել հրաման յարքայէ
կոտորել զամ մոգս ։ Այլ զի նաև զդանիէլ
և զընկերս նորա մոգ համարէին քաղդեա-
ցիք վն իմաստութե նց, փութացաւ դանիէլ
և աղաչեաց զԹագաւորն՝ արգելուլ զկոտո-
րած մոգուց, և տալ ինքեան ժամ վն բանին
այնորիկ ։ Այլ 'ի կալ դանիէլի և ընկերաց
նորա յաղօթս, ուսաւ դանիէլ յայ 'ի տես-
լեան գիշերոյ զխորհուրդ իրացն . և մտեալ
առաջի Թագաւորին՝ պատմեաց նմա մի ըստ
միոջէ զերազն նորուն, և ետ զստոյգ մեկ-
նութիւն ։ Ընդ որ սքանչացեալ Թագաւորին՝
գովեաց զած դանիէլի, և մեծացոյց զդա-
նիէլ փառօք և պարգևօք . կացոյց զնա իշ-
խան 'ի վերայ ամ իմաստնոց բաբելացւոց,
և միանգամայն վերակացու Տէրն՝ անպակաս
լինելով և յարքունի դրանէ ։ Այլ դանիէլ
խնդրեաց յարքայէ, և կացոյց 'ի վր գործոց
Տէրն բաբելացւոց իբրև գործակիցս իւր զիւր
սիրելի մննդակիցս՝ զսեդրաք, զմիսաք և զա-
բեդնագով ։

**Որք՝ այց էին չորեքեան իսկ հաւատարիմ**
**յիրս արքունի, նոյնպէս և անարատք ամի՛**
**յա**

յօրէնս այ՝ փայլեալք անձայնին իմաստութբ
և առաքինի գնացիւք. որ և միանգամայն
բազմօք ձեռնտուք ազգակցաց բնակելոց 'ի
բաբելոն, որք առաւել բազմացան զայնու
ժամանակաւ. քանզի յայնմ միջոցի գերե-
ցաւ և [illegible]ն յովակիմ, որ և յեքոնիա
որդի յովակիմայ առաջնոյ՝ արքայ յուդայ
հանդերձ բազմութբ հրէից. ը որս էր և եզե-
կիէլ մարգարէ. ըս ոմանց նաև մուրթքէ.
որպս և յետ քանի մի ամաց նաև սեդեկիա
վերջինն 'ի թագաւորս յուդայ:

Նաև յայն աւուրս գերութե՝ ոչ երեմիա մար-
գարէանայր 'ի հրէաստան, նոյնպէս և յերին
բաբելացւոց ը քաղդէացւոց մարգարէանայր
եզեկիէլ. և այն՝ յիշելով զդանիէլ 'ի կեն-
դանութե նր իբրև համադաս ը նոյի և ընդ
յոբայ, ըս որում արդար քան զամ մարդիկ
ճմկին. և դրձլ կշտամբելով զիշխանն ծու-
րայ, որ կարծէր զանձն ած ոմն լինել իմաս-
տութե մասամբ, այսպիսի իմն պանծալի
հարցուածով. * միթէ իմաստնագոյն իցես
քան զդանիէլ||. որով և զայն է իմանալ, թէ
անուանն դանիէլի և իմաստութե նր անհամե-
մատ՝ համբաւեալ էր ը ամ տեղիս:

Օ այնու ժամանակաւ քանզի զօրացեալ էր
նաբուգոդոնոսոր ք զամ թագաւորս երկրի,
մեծամտեալ յետին ամբարտաւանութեամբ՝
կանգնեաց զիւր պատկեր ոսկի ահագին մե-
ծութբ յերին բաբելացւոց, հրաման տուեալ
զի ամ ազգք և ազինք երկրպագցեն արձա-
նին իւրում իբրև այ. և որ ոչն հնազանդի,

արկցի 'ի հնոց հրոյն բորբոքելոյ ։ Այլ 'ի
գործոյ անտի ամպարշտութեան անարատ պա-
հեցին զանձինս դանիէլ և երեքին բարե-
կամք նր, զգուշացուցանելով և զհրեայս ։
Ընդ այս զզարեալ քաղդեացւոց, և ոչ իշ-
խեալ ասել ինչ զդանիէլէ՝ որ սիրելին էր
արքայի և իբրև գլուխ ամ իշխանաց, ամ-
բաստան եղեն զերից ընկերաց նր, և ասեն
ցնաբուգոդոնոսոր ։ ահա երեքին այն արք
հրեայք գլխաւորք՝ զորս կացուցեր 'ի վերայ
գործոց Յիս բաբելացւոց, սեդրաք, միսաք,
և աբեդնագով, ո՛չ հնազանդեցան հրամանի
քում արքայ ։ զի ո՛չ զդիս քո պաշտեն, և ո՛չ
պատկերիդ քում ոսկւոյ երկիր պագանեն ։
Ապա թագաւորն բարկութեամբ կոչեալ զնոս առա-
ջի իւր՝ իբրև ստուգեաց 'ի նոցանէ զիրսն, սպառ-
նացաւ նոցա արկանել զնոս 'ի հնոց հրոյ ։ և ո՞վ
է աստուած՝ որ փրկեսցէ զձեզ 'ի ձեռաց իմոց ։
Պատասխանի ետուն երեքեան նք իբրև 'ի միոջէ
բերանոյ, և ասեն ցթագաւորն ։ ոչինչ է պի-
տոյ մզ բանիդ այդորիկ տալ քեզ պատասխանի ։ զի
է մեր աստուած յերկինս՝ զոր մեքն պաշտեմք ։ նա
կարող է փրկել զմեզ 'ի հնոցէ հրոյդ բորբո-
քելոյ, և 'ի ձեռաց քոց արքայ ապրեցուցա-
նել զմեզ ։ ապաթէ ոչ՝ այս ինչ յայտնի լիցի
քեզ, զդիս քո մեք ո՛չ պաշտեմք, և պատկե-
րիդ ոսկւոյ՝ զոր կանգնեցեր, երկիր ո՛չ պա-
գանեմք ։ Այս գեղեցիկ վկայաբանութիւն
երեցունց քաջ նահատակացս, որք կոչին Ա-
բեք Մանկունք, եղև նախանկար օրինակ ամ
վկայիցն քնի, որք արիաբար դաւանեալ զճշ-

որ պանծալի վկայութե սիրելեաց իւրոց ։ Բայց նաբուգոդոնոսոր դրաստամիտն իբր 'ի մոռացօնս արկեալ զզօրութիւն այ՝ ոչ ցածեաւ յամբարտաւանութէ սրտի իւրոյ, այլ ածակերպ ձոխանալ կարծէր 'ի վր համօրէն տիեզերաց. և ոչ առնոյր 'ի միտ՝ եթէ 'ի այնէ է յաջողուն իշխանութե նր և յաղթութիւն պատերազմաց, զի այր էառ զնա իբրև զաւազան բարկութե 'ի ձեռս իւր՝ խրատել նովաւ զամ աշխարհս, և ապա խորտակել զնա և զթագաւորութի նորա միանգամայն. զոր և եցոյց նմա 'ի տեսիլ երազոյ՝ օրինակաւ երկնաբերձ և երկրաւոր ծառոյ, յորմէ կերակրիւր ամ մարմին. այլ փոյթ համաւ յարմատոյ ։ Նազայս ևս տեսիլ արքայի, զոր լուեան, բայց ոչ կարացին մեկնել ամ իմաստունք քաղդէացւոց, մեկնեաց մարգարէն դանիէլ, յայտ արարեալ թագաւորին զցասումն այ 'ի վր հպարտութե նր. և զուշակելով նմա՝ թէ հալածեսցեն զքեզ 'ի մարդկանէ իբրև զազան վայրենացեալ, և է զազանս անապատի եղիցի բնակութի քո. մինչև ծանիցես՝ թէ տիրէ բարձրեալն թագաւորութե մարդկան. և ում կամի, տացէ զնա ։ Նա թէպէտ խրատեաց զնա [illegible]ել հաշտ առնել զած ողորմութբ և [illegible] տնանկաց, զի թերևս ողորմութի գտցէ յայ, այլ յապախտ առնել նորա՝ եկն այս ամ 'ի վր նորա. զի 'ի մարդկանէ հալածեցաւ, և խոտ իբրև արջառ ուտէր, և 'ի ցօղոյ երկնից մարմին նորա ներկաւ. մինչև վարսք նր իբրև զառիւծուց մե-

ծացան, և եղնգունք նորա իբրև զթռչնոց ։
Ու այսպէս զեօթն ժամանակս՝ ըստ բանի դա-
նիէլի, այս է զեօթն ամ, կամ զեօթն ամիս,
գազանական կեանս վարեաց ՚ի բացի՝ ան-
կեալ ՚ի մտաց, և այլափոխեալ ըստ կերպա-
րանաց. և ապա միտք նորա առ նա դարձան,
և զբարձրեալն օրհնեաց. և աստուած դարձոյց
զնա յաթոռ իւր ։

Յետ այսորիկ յաւուրս թագաւորութեան բաղտա-
սարայ՝ որդւոյ (կամ թոռին) նաբուգոդոնո-
սորայ, յորժամ երևեցան ՚ի ժամ ընթրեաց
յանկարծակի մատունք ձեռին մարդոյ, որ
գրէին գիր անծանօթ ՚ի վերայ բռելոյ որմոյ
տաճարի թագաւորին, դարձեալ անկարա-
նային ամենայն մոգք և քաղդեայք ընթեռնուլ
զայն, թող թէ մեկնել ։ Յայնժամ խնդրե-
ցաւ դանիէլ, և եկեալ ընթերցաւ զգիրն,
և ետ զմեկնութիւն նորա, որ վասն լրման ժա-
մանակի ՚ի բարձման թագաւորութեան ՚ի տանէն նա-
բուգոդոնոսորայ, որ եղ ՚ի գլուխ առ օրին.
քանզի և ՚ի նմին գիշերի սպանաւ բաղտասար
արքայ, և դարեհ մարն էառ զթագաւորութիւն քաղ-
դեացւոց՝ ձեռնտուութեամբ մեծին կիւրոսի
պարսկի ։

Ու եղև ՚ի կացուցանել դարեհի զնախա-
րարս հարիւրև քսան ՚ի թագաւորութեան իւ-
րում՝ կարգեաց ՚ի վերայ նոցա երիս գլխաւոր
հրամանատարս. և մի ՚ի նոցանէ էր դանիէլ՝
ծերացեալ հասակաւ, այլ զօրաւոր հոգւով
և մարմնով ։ Որ և այնչափ սիրելի լինէր յաչս
դարեհի, մինչև կարգիլ ՚ի նմանէ իբրև գլուխ
ամենայն

ա՟մ իշխանաց, և վերակացու ա՟մ թ՟գւորութե՟ն
նորա ։ վ՟յ նախանձեցան ը՟ նա հրամանա-
տարք և նախարարք, և խորհէին տալ կո-
րուսանել զնա ։ Այլ իբրև ոչ գտին պատճառս
չարախօսութե՟ն զնմանէ առ արքայ, պատճա-
ռեցան զօրէնս ա՟յ նորա ։ և ետուն դարեհի
հանել հրաման անհեթեթ, զի թէ ոք խնդ-
րեսցէ խնդրուածս յա՟մ ա՟յ կամ 'ի մարդոյ
մինչև յաւուրս երեսուն, բայց միայն 'ի դա-
րեհէ արքայէ, անկցի 'ի գուբ առիւծուց ։
Այլ զայս վ՟ն այն արարին, քանզի գիտէին,
զի դանիէլ ը՟ հանապազորդ սովորութե՟ն իւ-
րում աղօթէ առ ա՟ծ բարձրեալ 'ի տան իւ-
րում, ուր պատուհանք բաց էին նմա 'ի վեր-
նատան ը՟դէմ եղ՟մի ։ և երիս ժամս յաւուրն
դնէր ծունր, և կայր յաղօթս և գոհանայր
առաջի ա՟յ իւրոյ ։ արդ տեսեալ՝ զի և յաւուրս
արքունի հրամանին զնոյն առնէ նա, չոքան
չարախօս եղեն թշնամիքն առ արքայ, եթէ
արհամարհեաց դանիէլ զհրաման քո ։ վ՟յ
հարկեցուցանէին ընկենուլ զնա 'ի գուբ ։ և
թագաւորն յակամայս արար զկամս նոցա ։
և ասէ ցդանիէլ ։ ա՟ծ՝ զոր դու պաշտես, նա
փրկեսցէ զքեզ ։ Այլ իբրև 'ի վ՟ր եանց գի-
շեր մի, եկեալ արքայի ը՟ առաւօտն՝ եգիտ
զդանիէլ ողջանդամ ։ զի եխից ա՟ծ զբերանս
առիւծուց, և ոչ արարին ինչ նմա վնաս ։
յայնժամ եհան զնա թագաւորն, և ընկեց
փոխանակ նո՟ր զչարախօսս նորա ։ զորս և նոյն-
ժամայն ծախեցին առիւծքն ։

Ընդ այն ժամանակս կիւրոս արքայ պար-

նոց՝ յառաջնում ամի թագաւորելոյ իւրոյ տիրաբար 'ի վերայ արեւելեայց աշխարհի, արար զդարձ գերութեան հրէից 'ի բաբելոնէ յերուսաղէմ, որոյ վասն ստէպ աղօթեալ էր դանիէլի. այլ ինքն դանիէլ ոչ դարձաւ յերուսաղէմ ընդ զօրաբաբելի եւ որոց ընդ նմա. զի ոչ միայն դարեհ արքայ չկամէր թողուլ զնա, այլ եւ դանիէլ ինքնին լաւ համարէր կալ մնալ անդէն յաշխարհին քաղդէացւոց, զի օգնական լիցի հրէից մնացելոց անդ. քանզի զի բազումք անդէն հաստատեալ էին զտուն եւ զընտանութիւն, եւ ոչ ելին յերուսաղէմ։

Այս էր դանիէլ կենաց կցորդ դարեհի արքայի, միանգամայն եւ կիւրոսի, որ երբեք երբեք գայր 'ի բաբելոն. եւ քանզի ամենայն յաջողեալ էր դանիէլի 'ի թագաւորութեան, համարձակութիւն առեալ 'ի դարեհէ՝ կործանեաց զերեւելի բագինսն բելայ զկռոյ չաստուծոյն բաբելացւոց, յայտնելով արքայի զխարդախանս քրմաց. որոց արարեալ գետնափոր անցս 'ի մեհեանն՝ ուտէին զնուէրսն թագաւորի կանամբք եւ որդւովք՝ զերեւեալն առաջի դիցն բելայ։ Ապա սպան զկնոյ եւ զմեծ վիշապն, զոր 'ի պաշտօն առեալ էր բաբելացւոց. ընդ որ չհանդուրժեալ ամբոխին՝ կուտեցան 'ի վերայ թագաւորին. հրեայ եղեւ ասեն թագաւորն, զի բանիւ դանիէլի զբէլ կործանեաց, եւ ըզվիշապն սպան, եւ զքուրմսն կոտորեաց. եւ ստիպէին զթագաւորն՝ տալ զդանիէլ 'ի ձեռս իւրեանց. ապա թէ ոչ՝ սպանանեմք ասեն զքեզ եւ զտուն քո. եւ նա հարկեալ մատնեաց զդանիէլ 'ի ձեռս նոցա. եւ նոքա արկին զնա

'ի

'ի գուբն առիւծուց , ուր կային առիւծք եօթն . և եկաց անդ դանիէլ զվեց օր . յորում ժամանակի եբեր նմա ճաշ ամբակում մարգարէ յեմէ՝ փոխադրեալ ձեռամբ հրեշտակի տն 'ի բաբելոն :

Իսկ յաւուրն եօթներորդի իբրև եկն թագաւորն աշխարհել զդանիէլ իբրև զմեռեալ , այն ինչ եգիտ զնա կենդանի , աղաղակեաց և ասէ . մե՛ծ ես տր ած դանիէլի , և չի՛ք այլ ոք բաց 'ի քէն . և 'ի վեր առեալ զնա՝ ընկեց փոխանակ նր 'ի գուբն զգլխաւորս յառախաց նր . և նոյնժամայն գէշ գէշ պատառեցան նք առաջի թագաւորին .

Զայս վայր են պատմութիւնք մեծին դանիէլի աւանդեալ 'ի գիրս մարգարէութե նորա . ուր գրին և այլ սքանչելի տեսիլք և յայտնութիւնք՝ որք եղեն առ նա 'ի տնէ վն հանդերձելոց իրաց , և վն կրկնակի գալստեան փրկչին յս , և մեկն աւանդի 'ի ձեռն եօթանասուն եօթներորդաց թուական ժամանակի կործանման երկրորդ տաճարին , և բարձման զօհից ամի 'ի հրէից յետ պատարագելոյ գառինն այ 'ի վր խաչին : Արդ քանզի յիշէ դանիէլ զհասանել իւր յաւուրս կիւրոսի , և ոչ յիշէ զկնի ինչ , ասեն ոմանք 'ի մեկնչաց՝ թէ եհաս մինչև յերրորդ ամն կիւրոսի , և վախճանեցաւ իբր 534 ամօք յառաջ քան զծնունդն քի՛ 'ի կատարեալ ծերութեան իբրև հարիւրեմեան : Որպէս և երեքին բարեկամք նր անանիա , ազարիա , և միսայէլ 'ի ծերութե փոխեցան առ տր :

Բայց են որ դնեն թէ դանիէլ եհաս և ցաւուրս արտաշէսի արքային պարսից ․ և զի յայնմ ժամանակի եզրաս դպիր օրինաց հաւաքեալ էր կանխագոյն զգիրս մարգարէից առաջնոց ՚ի մի մատեան , և գիրք դանիէլի չև էր տակաւին ամբողջ հանդիպեցեալ , նմին իրի հրէայք զսորա գործն թուեցին յայլում կարգի որբազան մատենից՝ արտաքոյ հին օրինաց , և հին մարգարէից ․ և կամ յետնորդք հրէից յայտնի տեսեալ զծմկ գալատեանն քմի գլխաւորեալ ի բանի նր՝ զոր ոչն կամէին , ուրոյն զատուցին զգիրս նր ․ մանաւանդ զի քաղդէարէն էր գրեալ , և ոչ եբրայեցերէն ։ (2)

Սմանք ՚ի մատենագրաց վկայս կամ մարտիրոսս անուանեն զդանիէլ և զերիս մանկունս՝ թերևս վն խոստովանողական վկայութեան նց ․ բայց եղեն և վկայագիրք առ յոյնս , յարոց եանց և ՚ի յայսմաւուրս հայոց , որք յանաստոյգ աւանդութեց ուստեք հրէից՝ գրեցին , թէ առատաղոս կմ ատտիկոս ոմն թագաւոր ( յաջորդ արտաշէսի կարծեցեալ , ) յանդիմանեալ վն ամպարշտութե իւրոյ ՚ի դանիէլէ և յերից մանկանց ծերացելոց՝ սրով նահատակեալ իցէ զնս , հանդերձ պէսպէս պարագայիւք , որոց չիք վաւերական վկայութե ՚ի հաւատարիմ պատմագրաց առաջնոց ։

Միայն գրէ յովսեպոս եբրայեցի ( ՚ի Ժ գիրս նախնեաց ․ գլ ․ վերջին ) , թէ դանիէլ ՚ի կենդանութե իւրում շինեաց յեկբատանս մարաց զաշտարակ մի հոյակապ՝ գործ չքնաղ և

զքան

սքանչելի , որ կայ մնայ առէ մինչև ցայսօր՝
ամպ նորաշէն երևեալ , անճառելի ամենևին
յերևսաց հնութեն , իբր այն թէ առ օրին
կանգնեալ իցէ . և մինչև ցօրս ցայս յաշտա-
րակի անդ Թաղին Թագաւորք մարաց և պար-
սից և պարթևաց : Արդ՝ ոմանք ՚ի նախնեաց
համարին , թէ յաշտարակի անդ իւրում թա-
ղեցաւ և ինքն դանիէլ պատուով յառանձին
այրի իբրև ՚ի Թգ̃րական շիրմի . և զայն այր
կոչեն ոմանք ՚ի պատմագրաց՝ գուբ կմ̃ գե-
րեզման դանիէլի . բայց կէսք ասեն զայն լի-
նել ՚ի խուժաստան , որ և եղամ կամ երկիր
եղիմացւոց՝ ը֊ պարսից . կէսք ՚ի շօշ կմ̃ յաս-
պահան պարսից , որ և ամուրն շուշան կամ
տուշտար քաղաք . որպէս և պատմագիրք մեր
բաբելոն կամ բաղտատ կոչեն , ուր երբեմն
բանտարկեցան նախարարք հայոց՝ ՚ի տեղին
կոչեցեալ գուբ դանիէլի , իբրև որիշ ՚ի գբոյ
առիւծուց : (3)

Պատմէ և եւսեբիոս ՚ի մեծին կոստանդիա-
նոսի ՚ի վարս նորա ( Գիր․ Գ․ Գլ․ 49․ ) թէ
շինեաց մահարձան կմ̃ արձան յիշատակի ՚ի
պատուոյ դանիէլի մարգարէին ՚ի կոստանդի-
նուպօլիս . այս է՝ յաղբերս անդ , որ կային
՚ի մեծ հրապարակի , եւ դնել զպատկեր դա-
նիէլի պղնձի հանդերձ առիւծուք՝ պատեալ
ոսկի թիթղամբք : Նա և կայսրն վասիլ առ-
շակունի՝ ը֊ այլոց պերճեռուժէն , հեղինակ
յայսմաւուրացն յունաց բարսեղեան կոչեցե-
լոյ , նկարել զպատկեր դանիէլի մարգարէի՝
կանգնեալ ՚ի մէջ երկու առիւծուց կենդա-

նի

նի 'ի գլխի, և արտաքոյ ուրոյն նկարեն գրել- խատուածս ոսկի մարտիրոսի։ Այլ ըստ հռովմայ- եցւոցն աւանդութեան հին սովորութիւն էր քրիստոնէից՝ 'ի գերեզմանս իւրեանց տալ փորագրել 'ի նշանակ յուսոյ յարութեան զդա- նիէլ անարատ 'ի գլխի առիւծուց. Թող զի և մեկն քարոզեաց մարգարէն զյարութիւն մե- ռելոց։

Զինչ է յայսմաւուրքն հայոց զգիւտ նշխարաց երից մանկանց՝ լինել 'ի բաբելոն յաւուրս վռամայ պարսից արքայի. յորում ժամանա- կի հրեայ ոմն նստեալ 'ի բաբելոն 'ի տան միում առանձին՝ տայր ըմպ ցաւագնելոց և հիւանդաց զջուր ինչ մաքուր յըմպել, և ողջանային բազումք. յայնժամ այր ոմն քրիս- տոնեայ անուն մալխութեայ յազգաց ազգէ՝ կարգեալ յարքայէն պարսից իշխան կող- մանցն բաբելացւոց, առաքեաց զնա 'ի ծա- ռայից իւրոց, և 'ի վերայ եհաս՝ թէ զօրու- թիւն բժշկութեանց էր 'ի տեղւոջն՝ յայսմանէ, զի ասէր հրեայն, թէ յայսմ տեղւոջ՝ յորում դնեմ զամանս ջրոյն, են նշխարք երից ման- կանցն 'ի մէջ տանս. զի անդ շինեալ էր շի- րիմք նոցա։

'Ի մէջ բերէ և բարոնիոս զաւանդութիւն արև- մտեայց, թէ նշխարք երից մանկանցն ընդ դանիէլի ասին փոխադրեալ 'ի բաբելոնէ յաղեքսանդրիա եգիպտացւոց, և եդեալ յեկեղեցւոջ սրբոցն յովհաննու և կիւրոսի. և ապա նշխարք երից մանկանց համարին փո- խադրեալ 'ի վենետիկ, իսկ բարձք սրբոյն դա- նիէ

նիէլի 'ի վերկեզա: Աւանդի և 'ի հնումն կոս-
տանդինուպօլսոյ, թէ վաղագոյն դշխոյն հե-
ղինէ եդ անդ մասն յեկեղեցի սրբոյն ռոմանոսի
գտապանակ մի, յորում կային նշխարք դա-
նիէլի մարգարէի. նոյնպէս ամփոփեաց և
զայլոց ոմանց 'ի մարգարէից զնշխարս, զորս
բերեալ էր յեհեմէ: Ըստ գաղղիացւոց՝ սկա-
ւառակ գլխոյ դանիէլի մարգարէին եդաւ
յուրբանոսէ հինգերորդէ հռովմայ հայրա-
պետէ 'ի տեղւոջ ծննդեան իւրոյ 'ի տրեկա՝
յեկեղեցւոջ, զոր շինեաց յանուն համա-
նուան իւրոյ սրբոյն ուրբանոսի: Իսկ և ըստ իտա-
լացւոց՝ մասն մի սրբոյն դանիէլի 'ի բաբելո-
նէ բերեալ է յարետ քաղաք յամի տեառն իբր
1220: Այլ զեկեղեցիս և զվանս շինեալս
'ի զանազան տեղիս 'ի վաղ ժամանակաց յա-
նուն սրբոյն դանիէլի մարգարէի:

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Դանիէլ թարգմանի դատաստանն Այ, կամ դատա-
ւոր Այ, և կամ դատ արար ինձ Ած, 'ի դէպ եկեալ գոր-
ծոց և բանից մարգարէիս. ոմանք կարծեն՝ թէ նաև
բաղդատաւր զնոյն նշանակիցէ քաղդէարէն, զոր այլք
լաւ ևս ստուգաբանեն՝ բաղհազու գանձ ծածկեալ, կամ
իմաստութեն բէլայ. զի և արքայորդին այնպէս կոչիւր:
Յորդւոցն յուդայ սոյն դանիէլ և երեք մանկունքն՝ 'ի
ցեղն. ամ 6. ուր և 'ի հասակն 3. յիշէն ... որդւոց
դերութեն՝ 'ի զաւակէ թագաւորութեան և 'ի պարթևաց.
իսկ քաղդէացւոց եբրև մրսանեանց, վասն այլք ընթեռնուն՝
'ի բանաւորաց: Յովսեպոս պարզապէս դնէ զսոսա լի-
նել յազգականութէ սեդեկիայ արքայի յուդայ. որում
'ի

# ԵՐԿՐՈՐԴՈՒՄ՟Ն ՏՕ՟ՆԻ

## Ս՟րց Թարգմանչաց մերոց՝ Սահակայ, և Մեսրոպայ, և աշակերտաց ն՟ց ։

Հ. սեպտ. 17. և նոյեմբ. 25. Ճառընտ. Ը. ն՟խ—ն՟էը ։ Կորեան. Խորենացի. Փարպեցի. և այլք ընդ նոցա ։

ՎԵՐՈՅ ՍՐԲՈՅՆ ՍԱՀԱկայ պարթևի աւանդեցաւ 'ի մեզ յառանձին աւուր տօնի ն՟ց 'ի միջոցի առաջաւորաց և աղուհացից. նոյնպէս և վարք նորին մեսրոպայ և գլխաւոր աշակերտացն տեսցի 'ի միջոցի ած՟ածնի և խաչի ։ Իսկ պատճառ աստանօր կրկնութ՟ե միաբան տօնի սոցա՝ այն է, զի ըստ հին կարգաւորութ՟ե ճաշոցին, ո՟չ տօն սահակայ պարթևի ուրոյն եղաւ 'ի նաւասարդի Է. յաւուր փոխման ն՟ց, և տօն մեսրովպայ յօր վախճանի ն՟ց 'ի մեհեկի ժԳ, նոյնպ՟ս և 'ի ժԷ արեգ ամսոյ՝ որ կարծի լինել ն՟ց յայսմաւուրաց օր գիւտի գրոյն հայոց (թէպէտև 'ի ժԷ սեպտ. ևս կրկնէ. ուր միայն դնէ ն՟ր իշ՟ն,) վայելչապէս՝ յաւելաւ հանրական տօն ս՟րց Թարգմանչաց. նմին իրի յայսմ միջոցի զկնի ս՟րյն ներսեսի (հօրն սահակայ)

որ

որ գտնի 'ի Ճաշոցս 'ի տօնէ ամսոյ ժա՛, և զկնի դանիէլի և երից մանկանց 'ի ժէ տօնէի , գրեալ է ը̃ ուղղագոյն օրինակաց հին Ճաշոցին այսոքիկ ․ * Տրէ ․ ժէ ․ սահակայ թարգմանչի և մեսրոպայ և այլոց թարգմանչաց ‖ , կամ * Տրէ ․ ճ ․ թագմանչին սահակայ , և այլոց թարգմանչաց ‖ ․ կմ՞ տօնէ ․ ժէ ։ * Սահակայ , և այլոց թարգմանչացն ‖ ․ և կամ պարզապէս՝ * Թարգմանչացն ‖ ։ Այլ արդարև եթէ գիւտ գրոյն հայոց՝ որ է պատճառ և գործի թարգմանութե , և եթէ բուն թարգմանութի՞ սբ գրոց և այլոց մատենից անքաւից՝ որ եղև պտուղ նորագիւտ գրոյ , անմոռաց յիշատակաց և յաւերժական տօնախմբութե էր և է արժանի ․ ը̃ նմին և վաստակ և արդիւնք սբց թարգմանչաց՝ վարդապետաց և աշակերտաց նոցին յաւիտենական օրհնութե պատուելիք և պաշտելիք ․ զի եղեն մեզ յետ մեծին գրիգորի լուսաւորչի , և մեծին ներսեսի նորոգողի , լուսաւորիչք և պայծառացուցիչք պանծալիք ․ մինչ զի յոր ինչ բարի և վայելէ մինչև ցայսօր տունն թորգոմայ հոգեպէս և բանաւորապէս , 'ի սբց թարգմանչացն յորդէ իբրև 'ի կրկնավտակ աղբերէ անհատահոս բղխմամբ հոգւոյն պարգևաց ․ որում փառք և պատիւ յաւիտեանս ․ ամէն ։

ԻԱ․ ԱՊՐԻԼ

# ՎԱՐՔ ԵՒ ԿԱՏԱՐՈՒՄՆ

## Սրբոյն Զաքարիայ մարգարէի ։

Հ. մայիս. 16 ։ Յ. փետր. 8 ։ Լ. սեպտ. 6 ։
Բոլլանդեանն յաւել. արեւմտեից. 'ի Բ. հատ. սեպտ.
եր. 655=661 ։

ԶԱՔԱՐԻԱՍ ՈՐԴԻ ԲԱրաքեայ՝ որդւոյ Ադդովայ, 'ի դասէ երկոտասան մարգարէից, էր ժամանակակից և գործակից Անգեայ մարգարէի՝ միանգամայն և ազգակից. զի երկոքին եւս էին ղեւտացիք ։ Ծնաւ ը̃ ամանց 'ի կողմն յերկրին քաղդէացւոց յաւուրս եօթանասնամեայ գերութեան յուդայ. իսկ ըստ այլոց՝ 'ի հրէաստան ծնեալ՝ վարեցաւ 'ի բաբելոն, ուր եկաց մինչև ցծերութի̃. և բազում օրինակօք մարգարէացաւ վն̃ դարձի ժողովրդեանն, և վասն այցելութեան այ̃՝ որ լինելոց էր առ նս̃ 'ի մատոյ և յապայ ժամանակս. և նշան ետ սքանչելեօք 'ի հաստատութի̃ բանից իւրոց. ետ և նշան վն̃ յաղթութե̃ կիւրոսի և զօրանալոյ նր̃ և ձեռնտու լինելոյ իէլի ։ Գուշակեաց և առ յովսեդեկ քահանայ 'ի բաբելոն, թէ ծնցես որդի, և կոչեսցես զանուն նր̃ յեսու,

որ լինիցի քահանայ նմայ յետ իմ: Օրհնեաց և զաղաղաթիւլ, և ասաց, ծնցիս որդի, և կաչեսցես զանուն նորա զօրաբաբել: Սոս և եռես իսկ. և Ը նոսին դարձաւ յեղմ յարձակիլ ժողովրդեան հրամանաւ կիւրոսի. և անդ առ դարեհիւ զօրացուցանէր զնա հանդերձ անդէրիւ մարգարէիւ՝ ի շինել և ՝ի կատարել զտաճարն տն:

Սառես և ազգի ազգի տեսիլս և յայտնութիս, և խօսեցաւ և գրեաց յայտապատում կանխասացութիս վն կրկնակի գալստեանն քի, այլ և վն տնօրինական գործոցն նր, և վն վեճակի եկեղեցւոյն քի: Հանդիմանեաց զապարասանութի ազգին, և մխիթարեաց զյառացեալսն ՝ի տր. և լի աւուրբք կատարեցաւ և թաղեցաւ մերձ ՝ի գերեզմանն անդեայ մարգարէի:

Սա քանզի տրն մեր զդաքարիայն՝ որ սպանանէ մէջ տաճարին և սեղանոյն, կոչէ որդի բարաքեայ, և չիք այլ ոք յայն անուն յայտնի ծանուցել՝ այլ սա ինքն մարգարէս զաքարիա, նախն իւր ՝ի մէջ տմ կարծողական մեկնութեց զառաջին տեղին ունի՝ սաել, թէ նր մարգարէն զաքարիա կատարեալ իցէ մարտիրոսութե, սպանեալ ՝ի հրէից ՝ի մէջ նորա շէն տաճարի երկրորդի՝ վն վկայութե բանին տն և յանդիմանելոյ զժողովուրդն խրատապարանոց: Եւ զայսմանէ տես Ճոխագոյն ՝ի ծանօթութիս: (1)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Որ 'ի չգոյէ այլում անդէկուն 'ի վ̄ղ զաքարիայ մարգարէի, խնդիր 'ի մէջ առնու աստանօր սախլաւինգ, թէ * որդեաք զաքարիա մարգարէն իցէ այն, զորմէ „ ասէ քն̄՝ ի թէ սպանաւ ը̄ մէջ տաճարին և սեղանոյն ||. զոր և մեզ կարեւոր է հետազօտել։ Արդ՝ նախնի հարք և վարդապետք քանզի զերիս արս ոքս գտին 'ի նք գիրս զաքարիա անուամբ, 'ի վ̄ղ երեցունց ևս 'ի կարծիս եղեն. ըն- ն. ա. ազարիա՝ ը̄ այլոց զաքարիա կոչեցեալ՝ որդի յովիդայեայ. ը̄. զաքարիա մարգարէ. գ̄. զաքարիա հայրն յովհաննու մկրտչի։

Պատճառն է, զի քն̄ տ̄րն մեր 'ի բանս իւր. մատթ. իգ̄. 35. նախ՝ կոչէ զզաքարիայն սպանեալ՝ որդի բարաքեայ, որ անիրապէս անուն է մարգարէին, զի 'ի գլուխ գրոց իւրոց կոչէ զանձն իւր * զաքարիա որդի բարաքեայ որդւոյ ադդովայ ||. 'ի նոյն միտս և եղբաս կոչէ զնոյն մարգարէն զաքարիաս՝ որդի, ըստ թուոյն ադդովայ։ Երկրորդ՝ ասէ տ̄րն, թէ սպանաւ 'ի հրէից ը̄ մէջ տաճարին և սեղանոյն, որ 'ի դէպ գայ ազարիայի կմ̄ զաքարիայի որդւոյ յովիդայեայ. զոր եւ քարկոծել և սպանանել յովաս արքայ 'ի սրահի տանն տ̄ն. բ̄. մն. իդ̄. 20. և 21։ Երր̄դ՝ ցուցանէ տ̄րն մեր, թէ զաքարիայն յիշատակել յիւրմէ՝ է վերջինն արդարոց սպանելոց յաւուրց անտի աբէլի արդարոյն առաջնոյ՝ մինչև ցօրն, յորում խօսեցաւ զայն բան. մանաւանդ զի առ լսօղսն ասաց. * զոր սպանիք ||. և այս անուն է զաքարիայի հօրն յովհաննու մկրտչի։

Ուր տեսանես, զի միոյ միոյ յերից զաքարիայից մի մի փաստս եղանէ 'ի բանից տ̄ն. ը̄ նմին և պակասի միոյ միոյ 'ի նչէ կարեւոր ինչ պարագայ. զի որդ վասն զաքարիայ մարգարէի, նոյնպէս և վ̄ղ հօրն մկրտչի չունիմք 'ի գրոց, թէ սպանեալ եղեն 'ի հրէից. իսկ զաքարիա կամ ազարիա սպանեալն 'ի յովասայ ոչ էր որդի բարաքեայ, այլ յովիդայեայ. թող զանուն հօրն զաքարիայի վերջնոյ, զոր այլուստ անգիտանամք։

Սորին վ̄ղ ոսկեբերան յիշէլ յիշէ զերեսին ևս կարծիս, այլ ոչինչ որոշէ իբրև ստոյգ։ Բայց հերոնիմոս հաս-

տատեաց զբանն 'ի վ̄ր̄ որդւոյն յովլիդայեայ. և յե̄ այսմ խօսեցան ոչ սակաւք 'ի նոր մեկնչաց. ըստ որոց եդ և հայրն մեր մխիթար բաբունապետ 'ի մեկն. մատթ. երես. 609, և 610. տես անդ: Այլ արժան է լսել զբուն ասութն սբ̄յն հերոնիմոսի 'ի մեկն. մատթ. ի̄գ̄. 35:

* Խնդրելի է (ասէ), թէ ո՞ իցէ զաքարիայս որդի բա֊
,, րաքեայ. քանզի յոլովս վերծանեմք զաքարիայս. այլ
,, զի մի տացի մեզ տեղի համարձակագոյնս սխալելոյ,
,, յաւելաւ ('ի տ̄ն̄է). զոր սպանիք ը̄ մէջ տաճարին և
,, սեղանոյն: Աւ զանազանս զանազան ընթերցայ բանս.
,, և պարտ է ինձ զիւրաքանչիւր կարծիս դնել առաջի:
,, Ոմանք զզաքարիա զորդի բարաքեայ ասեն, որ յեր֊
,, կոտասան մարգարեսն է մետասաներորդ. և այսմ
,, 'ի դէպ գայ անուն հօրն. այլ թէ ո՞ւր իցէ սպանեալ
,, ընդ մէջ տաճարին և սեղանոյն, ոչ խօսի ինչ գիրն.
,, թող զի 'ի ժամանակս նր̄ և ո՛չ իսկ աւերակք տաճա֊
,, րին կային: Ոմանք զզաքարիա զհայրն յովհաննու ասեն
,, լինել, հաստատելով զայս յերազոց ուստեք անյայտ
,, գրոց. որպս թէ յայն սակս սպանաւ, զի քարոզեաց
,, զգալուստ փրկչին. այլ այս քանզի չունի վաւերական
,, վկայութի 'ի գրոց, նովին դիւրութբ մերժի՝ որով
,, հաստատի: Իսկ ոմանք դնեն զզաքարիա՝ որ սպանաւ
,, 'ի յովասայ արքայէ յուդայ ընդ մէջ տաճարին և սեղա֊
,, նոյն. ոպ̄ պատմէ պատմութիւն թագաւորաց: Այլ
,, պարտ է 'ի միտ առնուլ, զի այս զաքարիա ո՛չ էր որ֊
,, դի բարաքեայ, այլ՝ որդի յովիադայ քահանայի. վս̄
,, և գիրն ասէ, թէ ոչ յիշեաց յովաս զգութն՝ զոր ա֊
,, րար ը̄ նմա յովիադա հայրն նր̄. բայց քանզի ունիմք
,, 'ի ձեռին զզաքարիայդ անուն, և 'ի դէպ իսկ գայ տե֊
,, ղի սպանմանն, խնդրելի է՝ թէ ը̄է՞ր բարաքեայ որ֊
,, դի ասի ('ի տ̄ն̄է), և ո՛չ յովիդայեայ: Բարաքիա 'ի
,, մեր լեզու վերածի՝ օրհնեալ տ̄ն̄. և յովիդայեայ քա֊
,, հանայի արդարութին եբրայական բարբառովս յայտ֊
,, նաբանի: Յաւետարանն՝ որով վարին նազարեցիք,
,, փոխանակ որդւոյ բարաքեայ գտաք գրեալ որդի յո֊
,, վիդայեայ ||:

Այս կարծիք հերոնիմեան՝ որ զօրացաւ և առ ոմանս յարեւմտեայց, ունի արդարև հաւանականութի, բայց ոպ̄ տեսանես՝ չունի հաստատութիւն բաւական, թող թէ աւելի քան զայլ կարծիս՝ զորս կարծէ հերոնիմոս դիւրաւ ստել. բայց ո՛չ հաւաստեաւ: Նախ՝ զի ենթադրէ, զոր պարտ էր ցուցանել, թէ զաքարիա իցէ ա֊

նուն

,, չափեալ 'ի ցանկոյն 'ի պարտէզ անդր, դէպ 'ի Ճանա_
,, պարհն՝ որ տանի 'ի բիւթթերերին քաղաք։ Եւ գտցես
,, տապանակ կրկին. փայտեայ ներքինն, և արճճեայ
,, արտաքուստ. և շուրջ զտապանակաւն աղակի անօթ
,, լի Հրով, և երկու օձս մեծութեամբ չափաւորս, և հեզս
,, և անվնասս. ոչ զի երբեք ձեռնընդել լինել։ Արդ ը
,, հրամանի մարգարէին եկեալ կալիմերոսի 'ի յայտնել
,, անդրին՝ փոյթ կալաւ գործոյն. և 'ի նախատացեալ
,, նշանակաց արտափայլեալ Ծր. արկեղն 'ի վեր երևեցաւ
,, ամբարեալ մարգարէն, գտեցեալ պատմուճան սպի_
,, տակ, զի որպէս կարծեմ՝ քահանայ իսկ էր. իսկ Է
,, ոսկեայ նորա արտաքոյ տապանակին՝ մանկիկ եդեալ
,, կայր՝ Թագաւորական արժանացեալ Թագման. մն զի
,, ունէր 'ի վր գլխոյն ոսկի պսակ, և ոսկի կօշիկս, և
,, հանդերձ պատուական։ 'Ի տարակուսիլ յայնժամ
,, իմաստնոց և երիցանց մն մանկանս այսորիկ, մի իցէ
,, և ուստի, և մէր աղագաւ այնպէս գտեցեալ, ասէ՝
,, Թէ Զաքարիա, որ առաջնորդ էր միաբանակեցացն վա_
,, նից 'ի գերարա, հանդերձեալ իցէ երբայական և հին
,, մատեանի, բայց ո՛չ յորոց Է ունելի են յեկեղեցի. ուր
,, յայտնէր, Թէ յորժամ զԶաքարիա մարգարէն սպան
,, յովաս արքայ յուդայ, ոչ յետ բազմաց դառն ողբոց
,, հասին 'ի վր տան նր. քանզի յաւուր եօթներորդի
,, սպանմանն մարգարէին, յեղակարծ ցաւով մեռաւ նր
,, շնորհագեղ կորիւն։ Եւ 'ի միտ առեալ՝ Թէ յայն պա_
,, տուհասեցաւ այսպիսի կրիւք, Է ոսկեայ նր զմանկիկն
,, Թաղեաց, քաւելով այսուհետ՝ զոր 'ի նա յանցեաւ։ Եւ
,, զայսոսիկ այսպէս լուեալ։ Բայց մարգարէն՝ Թէպէտև
,, 'ի շատ դարուց Է հողով ամփոփեալ, ամբողջ 'ի վեր
,, յայտնեցաւ. ըստ մորթոյն քերեալ, ունչքն լաւ, մօ_
,, րուսն չափով երկայնեալ, գլուխն կարճագոյն. և
,, աչքն փոքր մի 'ի խորս՝ յօնիւք ծածկեալ||։ Ցայս վայր
Սոզոմենոս. ուր պակասի խոստումն նորա և զնշխարաց
Ստեփաննոսի։

Արդ՝ մի ոչ անտանէ, Թէ ո՛րչափ տարբեր կարծիք եղեն
'ի վր զաքարիայ որդւոյ բարաքեայ, նոյնչափ և 'ի վր
այս նշխարացս ասելին լինել. զի զաքարիա առաջնորդ
վանից գերարայ հանդոյն հերոնիմոսի ըստ հրէական ա_
ւանդից մեկնել է զերան 'ի վր զաքարիայ կմ աղարիայ
որդւոյ յովիադայ. բարոնիոս ընտրէ իմանալ սմաւ
զնշխարս զաքարիայ մարգարէի. կարէր ոք և զհայրն
յովհաննու մկրտչի իմանալ արդեօք. այլ զնմանէ անե
'ի

կան վարուք հաճոյ եղեալ այ՟՝ փոխեցաւ, և կամ յովհաննու մկրտչի անապատաւորն եղելոյ 'ի մանկութենէ. որում չիք զուգահաւասար 'ի ծնեալս կանանց։

Իսկ սոփրոնիոս վիճաբանէր ՃԷ ամբ հայրս, թէ զիարդ հնար է միայնացելոց յանապատ համագարտուն վերագոյն լինել ք՟ զվանականքս. զի քաջ գիտէր՝ թէ բազում խոնարհութե և կատարեալ համբերութե և անձին մեռելութե պէտք են առ 'ի կարօղ լինելոյ բնակել ընդ եղբարս առանց տրտնջանաց, և սիրով ծառայել ամենեցուն։ Նաև լսէր պիմնի, թէ մեծ ես է պատերազմն անապատականաց յերեսաց գաղտնաբոգայթ հնարից աներևոյթ թշնամւոյն. և չիք ինչ նց՟ մխիթարութե եղբայրութե 'ի հոգևոր կմ՟ 'ի մարմնաւոր պէտս. այլ միմ՟ այցելութի նց՟ մնայ 'ի բարձանց, եթէ գիտասցեն համբերել իմաստութբ 'ի ճգնութիս նեղութե. և երանի է ասեն այնպիսւոյն՝ որ յայնպիսի չափ հասեալ իցէ։

Օ այսոսիկ իբրև լսէր սոփրոնիոս, ընդ սիրոնոյ նեռացմամբ՝ լինել իբրև զմի 'ի նոցանէ, և յանձին զգայր քաղցրութի իմն հոգևոր առաւել քան զխորիսխ մեղու. վ՟զի ևս քան զևս հարցանէր և ստուգէր զիրսն այլևայլ պատճառանօք։ Նա 'ի միում գիշերի յարուցեալ բազում յօժարութբ էառ ընդ իւր հաց սակաւ և ջուր, զոր կարծէր բաւական լինել անձին զաւուրս չորս. և դէմ եդեալ գնաց յանապատն կոյս՝ 'ի տեղին, ուր առաջնորդեացէ նմա ած՟։ Նաև Ը հեռանալ

նա

նորա 'ի տեսութենէ մարդկան, 'ի մեւսա անդ-անշէն անապատին՝ տեսեալ զփշերայն լոյս մեծ առաջի իւր, զարհուրեցաւ յոյժ. մինչև խորհել յետս դառնալ. այլ յոյժ ապաւինեալ՝ զօրացաւ յառաջ խաղալ ։ Եւ նոյնժամայն երևեցաւ նմ͞ հրեշտակ ա͞յ՝ որ պահէր զնա 'ի մանկութենէ, և առաջնորդեաց նմա մինչև 'ի խորս անապատին ։ Իբր գտեալ ոնոփրիոսի քարանձաւ փոքրիկ՝ բաղխեաց զդուռն, և ձայնեաց. օրհնեա՛ տ͞ր. զի թերևս իցէ աստ ոք բնակեալ 'ի ներքս ։ Եւ ահա ել յայրէ անտի այր մի ալևոր պատուական և շնորհալի դիմօք. և ողջունեաց զնա, և ասէր. դու ես եղբա՛յր իմ ոնոփրիոս, և գործակիցն իմ 'ի տ͞ր. մնա՛ ո՛րդեակ, և ա͞ծ օգնակա՛ն լիցի քեզ. այն՝ որ կոչեացն զքեզ յա՛յս կոչումն ս͞բ ։

Եւ կացեալ ոնոփրիոսի ը͞ ծերոյն ը͞ այնմիկ աւուրս ինչ՝ ուսաւ ա͞մ փութով զա͞մ զգործս սրբութե͞ կրօնից ն͞ր ։ Եւ իբրև ետես ծերն զյօժարութի͞ ոնոփրիոսի, առեալ տարաւ զնա այլ ևս 'ի ներքսագոյն անապատ՝ մինչև աւուրս չորս և գիշերս չորս, և ապա հասին առ խուց մի փոքրագոյն, առ որով էր ծառ արմաւենի ։ Յայնժամ խօսեցաւ այրն այն պատուական, և ասէ ցոնոփրիոս. ահա այս է տեղին՝ որ պատրաստեցաւ քեզ 'ի մարդասիրութենէն ա͞յ, զի բնակեսցես յայրի աստ առանձինն՝ կրել քեզ աշխատութի͞ վ͞ս ա͞ծն ։ Եւ յետ կալոյ ծերունւոյն առ նմա աւուրս երեսուն՝ ուսուցանելով զա͞մ կարգ անապա-

տաւ

տանկան վարուց , մեկնեցաւ 'ի նմանէ . և այնուհետև միանգամ 'ի տարւոջն հանդիպէին միմեանց . մինչև փոխեցաւ երանելին ծերն այն 'ի կենաց . զորոյ զնշխարս ամփոփեաց ճգնաւորն մերձ առ բնակութիւն իւր : Իսկ նորին ճգնաւորին Ճգնաւէր՝ յորէ յորմէ եկին յանապատ անտի , եւ զանձն 'ի խիստ ճգունս պահոց և աղօթից . ուր 'ի սկզբան անդ առանձնութե̃ իւրոյ այնչափ աշխատութե̃ կրեաց բազմաժամանակեայ յերեսաց քաղցոյ և ծարաւոյ , տօթոյ և խորշակի , ցրտոյ և գժնդակ օդոյ , մինչև բազում անգամ մերձ լինել նմա 'ի դրունս մահու : Այլ բարերարն ա̃ծ իբրև ետես զայնպիսի համբերութիւն կենդանի նահատակին իւրոյ և զջան վաստակոյն , հրամայեաց հրեշտակի իւրոյ ածել՝ տանել նմա զօրըստօրէ կերակուր և ջուր չափաւոր . որպէս և արմաւենին՝ որ առ դուրս այրին , բերէր երկոտասան բաղում ամի ամի . և այնպէս ողկոյզ մի ամսոյ ամսոյ բաւական լինէր նմա՝ հանդերձ բանջարօքն անապատին :

Նոյն եկաց երանելին յառանձնութե̃ անդ անապատի զամս վաթսուն այսպիսի խստամբեր վարուք և բազմապատիկ մրցանօք ընդդէմ հասարակաց թշնամւոյն , զօրացեալ ձ̃րամբ յ̃նմի , և գեր 'ի վերոյ ա̃մ փորձանաց երևեալ՝ անմարմին քաղաքավարութբ̃ 'ի մարմնի : Որ և Շ̃Ծ իւրաքանչիւր շաբաթուց ընդունէր զանապական խորհուրդ փրկական հաղորդութե̃ սպասաւորութբ̃ հրեշտակի ա̃յ . և

և զմայլեալ 'ի քաղցրութէ ան̃՝ հալէր օրըստ
նէ իբրև զմոմ առաջի նորա ․ և բազում ան-
գամ արտաքոյ իւր յափշտակեալ՝ տեսանէր
զանձն իբրև յերկնաւոր դրախտի՝ վիճակա-
կից Ժէ դասս երջանկաց ․ և յայնպիսի տես-
լեանց լցեալ լինէր հոգի նորա անպատում
ուրախութբ , մինչև ոչ յիշել նմա՝ թէ իցէ
'ի կենցաղս յայս ․ վ̃յ և 'ի միտս եկեալ՝ ա-
ռաւել յօժարութբ ձգնէր , զմտաւ ածեալ
զանդաւոր վարձս ընդ վաստակոց՝ զանձառ
բարիս ։

Նա յորժամ մերձեցան աւուրք ելից երանել-
ւոյն 'ի մարմնոյ աստի , էարկ ած 'ի սիրտ
ծառային իւրոյ պափնուտիոսի՝ որ մին էր 'ի
սբ հարանց և 'ի միայնակեցացն եգիպտաց-
ւոց , շրջիլ 'ի ներքսագոյն անապատս , տե-
սանել՝ թէ իցէ ոք անդ բնակեալ առանձինն ,
և առաւել քան զինքն հեռացեալ 'ի բնակու-
թէ մարդկան ։ Նա եղև յետ հանդիպելոյ
ձգնաւորի ումեմն սքյ տիմոթէոս կոչեցելոյ ,
առեալ զօրհնութի նր՝ դարձաւ ուրախութբ
'ի տեղի իւր , և պատմեաց ամենեցուն ։

Նայլ զկնի այնորիկ միւսանգամ կարօտեալ
տեսոյ այնպիսի ածահաճոյ միայնացելոց՝ յա-
րեաւ անդրէն ազդմամբ այն , և դիմեաց
յնս խորագոյն անապատ , անցանելով ընդ
բնակութի վայրենի ազգին՝ որ մազիկք կմ
մազիկոնք կոչէին , և միջամուխ լինելով յան-
շէն անապատն՝ որ յոմանց յովասիս ասի ․ և
այնպէս ձանապարհ արարեալ զաւուրս հըն-
գետասան կամ եօթնևտասն , հասանէր ա-
ռաջ-

ռաջնորդութեն հրեշտակի տն մօտ 'ի լեառն-
մի . և անդ տեսանէ 'ի հեռաստանէ զմեծ
հայրն ոնուփրիոս՝ ահաւոր տեսլեամբ և քստ-
մնելի ձևով . զի երևէր իբրև երէվայրի մար-
դակերպ հերարձակ , մերկ 'ի զգեստուց ,
պատեալ յերկայնութէ հերացն իջելոց զա-
վանդակ մարմնով , և տերև բանջարոյ ածա-
ծեալ զմիջովն . իսկ դէմքն այլագունեալ 'ի
պահոց , և անձամբքն աղջոյն ոսկարացեալ 'ի
բազում աշխատութէ ճգնողական վարուց .
և յայսպիսւոյ տեսլենէ զարհուրեալ պափ-
նուտիոսն 'ի վեր վազեաց զերծանիլ 'ի լեառն :
Իսկ տր հայրն ոնուփրիոս իբրև ետես զնա ,
ձայն ետ և ասէ . էջ առ իս ով այրդ սրբա-
սնեալ . քանզի և ես մարդ եմ իբրև զքեզ ,
և բնակեմ յայսմ անապատի վս անուան
տն մերոյ յսի քսի : Յայնժամ փութացեալ
էջ պափնուտիոս , և անկաւ առ ոտս սբյ ծե-
րունւոյն . և նա ասէ . արի կաց որդեակ իմ .
քանզի և դու ծառայ ես այ , և սիրելի սբց :
Ապա իբրև նստան 'ի միասին , սկսաւ երա-
նելի ծերն հարցանել նմա զծէ և զկրօնա-
ւորացն բնակելոց յեգիպտոս . և պափնու-
տիոս արար պմնի 'ի կարճոյ , և ինքն աղա-
չել սկսաւ զսբ ծերն պատմել նմա զքաղա-
քավարութն իւր . զի ծարաւի էր լսել զսբ
վարս նր և յագեցուցանել զփափագ իւր , և
մխիթարիլ 'ի բազում աշխատութեց ճանա-
պարհի : Իսկ սբյն զիջեալ յաղաչանս նորա՝
պատմեաց նմ միով միոջէ զօրինակ գալստեան
իւրոյ յանապատ՝ ըստ նախաճառելոցս , և


զաշ-

զաշխատութիւն՝ զորս կրեաց յանապատի անդ մէջ սիրոյ տն, և զայցելութիւն այ եղեւ առ նա զամ աւուրս կենաց իւրոց. ոպ և գրեալ է բանիւ պափնուտիոսի 'ի վարս Հարանց ։ Այլ իբրև դադարեաց երանելին 'ի խօսիցն, առեալ տարաւ զպափնուտիոս 'ի խուցն իւր. ուր կացեալ զտիւն ողջոյն՝ պատմէին միմեանց զշնորհս այ բարերարութեն ։ Այլ 'ի մտանել արեգական՝ գտաւ 'ի մէջ խցին նկանակ մի հաց, և սակաւ մի ջուր. յայնժամ ասէ երանելին ծերունին ցպափնուտի. արի՛ որդեակ ճաշակեա՛ սակաւ մի հաց և ջուր՝ որ եդեալ կայ առաջի. քանզի տեսանեմ զքեզ մերձեալ 'ի մահ յերկարաց անսուաղութեն և յաշխատութենէ ճանապարհիդ ։ Իսկ պափնուտի ասէ. կենդանի է տր իմ և փրկիչն իմ յս քս, զի ոչ ճաշակեմ և ըմպեմ, եթէ ոչ 'ի միասին արձակեսցուք զձեռս մեր և ճաշակեսցուք. և այնպէս բազում աղաչանօք ստիպեալ հազի՛ հաւանեցոյց զսբ ծերն մխել զձեռն իւր ընդ իւր. և բեկեալ զհացն՝ ճաշակեցին 'ի միասին. և գոհացեալ զայ՝ կացին զգիշերն ամ յաղօթս ։

Այլ իբրև այգ եղև, տեսանէր պափնուտի 'ի ժամ առաւօտեան աղօթից՝ զի այլագունեալ պայծառացան երեսք սբ հօրն ոնոփրիոսի իբրև զարեգակն, և այլափոխեալ եղև 'ի կերպարանս հրեշտակի այ. սբ որ զահի հարեալ պափնուտի՝ կայր պակուցեալ ահիւ և դողութ ։ Յայնժամ ասէ ցնա այրն այ. մի՛ երկնչիր եղբայր պափնուտի, քանզի որ յամի

գթած և մարդասէր տէրն է, նա առաքեաց զքեզ առ իս, զի ամփոփեսցես զնշխարս մարմնոյ իմոյ. զի աւասիկ ես 'ի սմին իսկ աւուր կատարեմ զընթացս վտարանդեայ իմոյ 'ի տէր 'ի հանգիստն յաւիտենից. և է օրս այս Ը թուոյ ամսոյ եգիպտացւոց պաւնի ժզ. և Ը հոռոմոց՝ յունիսի երկոտասան։ Այս ասաց յելանել քում յերկրէն եգիպտացւոց եղբայր պատուական, քարոզեա՛ զյիշատակս իմ 'ի խունկս անուշահոտութեան 'ի մէջ եղբարց և ամենայն հաւատացելոց. քանզի և տէր հաճեցաւ ընդունել զխնդրուածս իմ. զի որ ոք վասն յիշատակի իմոյ մատուսցէ ինչ նուէրս, կամ արասցէ աղօթս, կամ բարեգործեսցէ եղբարց, յիշեսցի զնա առաջի տեառն. և տէր արժանի արասցէ զնա բիւրապատիկ բարութեանց երկնից։

Զայս աղաչեաց պափնուտիոս զսուրբ ծերն, զի յետ ելանելոյ նորա 'ի մարմնոյ՝ ինքն բնակեսցէ 'ի տեղւոջ անդ նորա։ Իսկ նա ասէ. ո՛չ եկիր 'ի գործդ յայդ. այլ դարձ 'ի տեղի քո. զի տէր առաքեաց զքեզ՝ տեսող լինել ծառայից նորա բնակելոց յանապատի, և պատմել զվարս նոցա 'ի մէջ եղբարց աստուածասիրաց՝ յօգուտ լսողաց և 'ի փառաբանութիւն անուանն տեառն։ Յայնժամ անկաւ պափնուտիոս յոտս սրբոյ ծերունւոյն, և ասէ. աղաչեմ զքեզ հա՛յր պատուական՝ օրհնեա՛ զիս, զի գտից ողորմութիւն առաջի տեառն. և ո՛չ արժանի արար զիս փրկիչն իմ քրիստոս տեսանել զքեզ յայսմ աշխարհի և երկրպագանել, նոյնպէս առ-

ժա

ժամանաւորեսցէ զիս եւ 'ի հանդերձելումն հան-
դիպիլ քեզ ։

Եւ նա եւս պխնի . որդեակ պափնուտիէ՝ տր ոչ ընդունայն առնիցէ զխնդրուածս քո , այլ՝ օրհնեսցէ զքեզ , եւ հաստատեսցէ զքեզ 'ի սէր իւր . եւ լուսաւորեսցէ զմիտս քո լուսով ածութե իւրոյ , եւ փրկեսցէ զքեզ յամ պատականութէ եւ յորոգայթից թշնամւոյն . եւ կատարեսցէ զընթացս քո 'ի բարի . եւ պահպանեսցէ զքեզ հրեշտակօք իւրովք , օգնական լինելով յամ մարտս պատերազմի բանսարկու թշնամւոյն . ամ զի եւ ո՛չ մի ինչ գտանիցի նր յանդիմանել զքեզ 'ի ժամու ահեգին , յորժամ կայցես առաջի ած , եւ առնիցես պխնի ամ վարուց ։

Յետ այսորիկ յարուցեալ երանելւոյն ոնոփրիոսի՝ եկաց յաղօթս առ ած արտասուօք եւ բազում հեծեծանօք . եւ սակաւ մի դադարեալ՝ խոնարհեցոյց զոռ անձն իւր յերկիր . եւ ծունր եդեալ՝ ասէ , 'ի ձեռս քո ած յանձն առնեմ զհոգի իմ . եւ նոյնժամայն կատարեցաւ 'ի տր՝ աւանդեալ զմաքուր հոգին 'ի ձեռս ած ։ Եւ նոյնժամայն լուաւ պափնոտիոս զձայն հրեշտակաց սրբց քաղցր բարբառով , որք օրհնէին զած՝ երթալով առաջի հոգւոյ երանելւոյն ոնոփրիոսի . եւ եղեւ ուրախութի մեծ 'ի ժամու հանդիպման հոգւոյ նր առաջի ած ։ Ապա յարուցեալ պափնուտի՝ մերկացաւ յանձնէ զաղաբողոնն իւր , եւ կտրեալ յերկուս մասունս՝ էարկ զմի մասն 'ի վր մարմնոյ սրբյն . եւ գտեալ վէմ մի փո-

 րեալ

ըեալ իբրև զգերեզման՝ եդ անդ զպատուա-
կան մարմին առն այ . և ժողովեալ քարինս
մեծամեծս՝ ծածկեաց զսբ նշխարս նորա՝ ար-
տասուօք և օրհնութբ :

Եւ այնուհետև սկսաւ պափնոտիոս խըն-
դրել յայ աղօթիւք, զի՛ մնասցէ 'ի տեղւոջ
անդր . և առ նոյնժամայն ետես զխուց սբյն
'ի վայր կործանեալ, և զարմաւենին՝ յորմէ
կերակրիւր, անկեալ 'ի գետին . Է որ զա-
հի հարեալ՝ 'ի միտ էառ, զի ոչ էին կամք այ
բնակել նմա անդ : Յայնժամ զգացեալ պափ-
նոտի զանջատումն սբյն այ յիւրմէ, որոյ տե-
սութբն և լուսաւոր բանիւքն մնացեալ էր
զաշխատութի. Ճանապարհին, սկսաւ հեկե-
կանօք լալ, և աղօթել առ տր : Եւ նոյն-
ժամայն երևեցաւ նմա հրեշտակ այ . և մխի-
թարեալ զօրացոյց զնա . և առաջնորդեաց
նմա անդրէն դառնալ յճն եգիպտացւոց .
Ւ.յլ 'ի ճանապարհի անդ անապատին հան-
դիպեցաւ երանելին պափնոտիոս նաև այլոց
ճգնաւորաց բնակելոց յայլ և այլ տեղիս .
որք ընդառաջ ելեալ ողջոյն տային նմա յա-
նուանէ, և երանելի կարդային նմա վն հան-
դիպելոյ սբ հօրն ոնուփրիոսի, և արժանի լի-
նելոյ առնուլ զօրհնութի նր և ամփոփել
զսբ նշխարս նորա : Եւ յետ բազում սքան-
չելի անցից անցելոց՝ դարձ արար պափնո-
տիոս յեգիպտոս, և պատմեաց ամնայն եղ-
բարց զամ զոր ետես և զոր լուաւ . և նոքա
Է գրով արկին զամ. և ընթացեալ ընդ ամ
սկիտէ և Է բնակութիւնս միայնակեցաց՝

պատ-

պատմէին ամենեցուն զսքանչելի քաղաքավարութ՟ի ծառային ՟այ և կատարեալ ճգնաւորին ՟այ ոնոփրիոսի , և հետևողաց նր ։ Իւ իբրև ընթերցան և լուան սրբ՟ հարքն եգիպտացիք , փառաւոր առնէին զ՟ած՝ որ սքանչելին է 'ի վ՟ր ՟ամ ս՟ց իւրոց ։ Իւ յետ ժամանակաց գտեալ անդէն յեգիպտոս զհարազատ օրինակ նորին լիակատար պատմութե՝ երանելին ՟որ գրիգորիոս առաջնորդ եգիպտոսի՝ քեռորդի վկայասիրի , կմ ինքնին գրիգոր վկայասէրն՝ 'ի ժամանակին՝ յորում էր նա յ՟ձին եգիպտացւոց , թարգմանեաց 'ի հայ բարբառ · որ այն իսկ է տպագրեալս 'ի կարգի հարանց վարուց ։

---

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) [redacted]արագաստ պատմութեն վարուցս սրբյն ոնոփրիոսի է մի և նոյն՝ որ գտանի 'ի հարանց վարս և 'ի յայսմաւուրս ՟ամ ազգաց , և առ զանազան մատենագիրս , առեալ 'ի մի և 'ի նոյն աղբերէ՝ յ 'ի սրբյն պափնուտիոսէ · որ կամ անձամբ գրեաց , և կմ գրել ետ յեգիպտոս ։ Գտանին զանազան օրինակք առ յոյնս և առ լատինս՝ կէ զի նախլին շարագրութե ը հայունս , և կէ զի ը մաւոց · կէ զի ամբողջ օրինակեալ , և կէ զի ը մասին՝ որ հայի լոկ 'ի վարս ոնոփրիոսի · ո՟ղ յիշէ և յաննինոս կոնրադոս բոլլանդեան , որ զմասն վարուց նեթ տպագրէ ։ Թող զանծանօթն մեզ զայլ անհարազատ վարս ոնոփրիոսի՝ զառ 'ի յաննինոսայ յիշատակեալ , ուր առաջի դնի առէ մանրապատում պատմութի ծնդարան 'ի մանկութէ մինչև 'ի մահ ոնոփրիոսի , յերկս գրքոյկս և յերեսուն գլուխս բաժանեալ՝ 'ի լատին բարբառ · անգամոր ոնոփրիոս առ լինել արքայորդի պարսից · զորմէ կասկածեալ արքային՝ թէ չիցէ զաւակ իւր , ընդ ծնանիլն՝ 'ի

ատութն իմոյ սուտեալ կոչէին զիս 'ի պատարագել՝ իբրև մերձաւոր արևելեան սրբոյ․ պատկեր սրբոյն յաւագ բեմի էր թաղուածն 'ի պատփնոտիոսէ՝ յարևնմանն պատմութե վարուց նր ։ Կայր և 'ի հռովմ եկեղեցի սրբոյն ոնոփրիասի 'ի տեղին կոչեցեալ յանիկուլոն՝ որ է մի յեօթն բլրոց հռովմայ ։

'Ի վախճանի ծանէր, զի 'ի մէջ ընտիր օրինակաց վարուց սրբոյն ոնոփրիոսի գտեալ առ յոյնս և առ լատինս՝ ընտրելագոյն օրինակ է եղեալն 'ի հայերէն վարս հարանց․ ուր 'ի վերջոյ գնի յիշատակարան այսպիսի․ * Ջնորհ-
„ գող և զթարգմանիչ սրբոյ պատմութեան զտր գրիգոր
„ հայոց կթղկս յիշեցէք 'ի քս․ և թարգմանեցաւ 'ի
„ թոհականութեն հայոց չծթ ամին ( այն է ամ տն․
„ 1110․) յՅիս եգիպտացւոց 'ի փառս ամենասրբ երրոր-
„ դութեն ‖ ։ Արդ եթէ իմացուք զգրիգոր վկայասէր ։
պարոն է ընթեանուլ չճթ, կամ չծը․ զի վկայասէրն վախճանեցաւ 'ի թուէին չծդ․ ապա եթէ իմացուք ըզգրիգորիոս եղբ զքեռորդի վկայասիրին՝ զկարգեալն 'ի նմանէ առաջնորդ եգիպտոսի, թերևս կենդանի էր նա տակաւին 'ի թուէին չծթ ։



ԿԱՐԳ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Տրդատայ Թագաւորի, և Աշխէն տիկնոջն, և Խոսրովիդխտոյ:

Դ. նոյեմբ. 29: Ծառընդ. Ա. ՉԿԴ: Ա. գաւառ. գեղջ: Սորենայց. և այլ: (1)

ՔԱՋԱԶՕՐՆ ԵՒ ԱՐԱ-րեյաղթն ՚ի Թագաւորս՝ երկո-քումբք Թագրեալ սրով և խա-չիւ, մեծն Տրդատէս՝ լուսաւո-րեալ լուսաւորիչ Հայաստանեայցս, որդի էր խոսրովու Հայոց արքայի ՚ի տանէ արշակու-նեաց պարթևաց, անձնեայ և Թիկնաւէտ, հաստաբազուկ և զօրաւոր, հսկայ ահեղ և փառացի իբրև զգիւցազն ՚ի դիւցազանց: Արդ՝ յորժամ սպան անակ պարթև դաւով զխոսրով զհայրն տրդատայ, և արտաշիր սա-սանեան պարսիկ համարձակ միջամուխ եղև յերկն Հայոց՝ ջնջել զզաւակ Թագաւորութե՛, և տիրել ինքնին Հայաստանեայց համօրէն, տարեցաւ ՚ի կատորածէ մանուկն արքայոր-դի տրդատ և եթ, և քոյր մի նորա խոսրովի-դուխտ անուն: Զտրդատ ապրեցուցանէ ար-տաւազդ մանդակունի նախարար Հայոց՝ փա-խուցեալ զնա ՚ի կեսարիա կապադովկացւոց,

որ

որ էր ընդ տէրութեամբ կայսեր . իսկ զխոսրովիդուխտ ազատեաց օտայ ամատունի , և տարեալ յամուրն անի՝ որ և կամախ , անդ սնուցանէր զնա գաղտ , և զամուրն պահէր զգուշութեամբ .

Իսկ եղև յետ սնանելոյ տրդատայ առ ժամանակ մի 'ի կեսարիա՝ առեալ տարաւ զնա արտաւազդ յարևմուտս 'ի հռովմ քաղաքէ . ուր յարքունս հասեալ պատանեկոյն՝ եկաց յարքունի դրան ընդ ձեռամբ լիկիանեսի , որ մին էր յաւագ իշխանաց կայսեր , և յետ ժամանակաց եղև կեսար ։ Իսկ քանզի էր տրդատ հզօր զօրութեամբ և անպարտելի ուժով , յաջողեալ 'ի զէնս և յառաջադէմ յամենայնի , արար բազմապատիկ գործս քաջութեան և զարմացոյց զհռովմայեցիս . մինչև համարէին հերակլէս զոմն նոր , կամ աքիլլէս տեսանել . վասն զի՝ էր զի առանձինն զգունդ թշնամեաց 'ի բաց դարձուցանէր , և էր՝ զի միայնակ զբազումս 'ի բերան սրոյ կոտորէր . էր զի 'ի գազանամարտ մտեալ՝ զամեհի ցլուց զեղջիւրս միով ձեռամբ 'ի բաց թափէր , և էր զի 'ի կառամարտիկ ասպարիզի բուռն զօրութեամբ զընթացս քառաձի կառաց ձեռամբացի յետս ընկրկէր ։

Իսկ այսպիսի արութեամբք անուանի լինէր մինչև յաւուրս կայսերութեան դիոկղետիանոսի դաղմատացւոյ . որոյ զանգիտեալ մենամարտիլ ընդ հռչէի գոթացւոյ , և լուեալ 'ի լիկիանեայ զմեծամեծ գործս տրդատայ , ըզգեցոյց նմա զիւր կայսերական զարդ , և եհան

հան 'ի հանդէս. և իբրև զօրացաւ քաջն Տրդատիոս, և ձերբակալ արար զբռնաւորութիւնն զհուռչէ, պատուեցաւ յոյժ յինքնակալէն պարգևօք և փառօք. և պսակեալ 'ի նմանէ թագաւոր բնիկ ծնին իւրոյ՝ եկն 'ի հայս կայսերական գնդաւ. և վանեալ ահագին քաջութեամբ զպարսիկս և զամ[ենայն] թշնամիս՝ տիրեաց հայաստանայ ծի 'ի ծագաց մինչև 'ի ծագս նորուն, և բազմեցաւ իրաւամբք յաթոռ հայրենի թագաւորութեան: Սա էառ իւր կին զդուստր արքային ալանաց զԱշխէն տիկին, որ ամենևին համանման էր հսկայաձև հասակին իւրոյ: Փառաւորեաց և զքոյր իւր զԽոսրովիդուխտ մեծ օրինօքն. որ ոչ կամեցաւ լինել առն, և սիրեաց զկուսութիւն զամ[ենայն] աւուրս իւր:

Բայց սէգ արքայն Տրդատ մոլեալ 'ի պաշտօն դից իւրոց հայրենեաց՝ յորոց կարծէր լինել զյաջողուածս թագ[աւո]րութեան իւրոյ, յառաջնում ամի անդ չարչարեաց բազմօք ըղվաստակաւոր և զսիրելի ծառայն իւր զերանելին զԳրիգոր քաջ նահատակն ք[րիստոս]ի, որ անծանօթ երեսօք կայր 'ի սպասու նորա. և յետ ահագին տանջանաց՝ զորս ետ նմա, իմացեալ՝ եթէ որդի անակայ պարթևի է նա, հրամայեաց տանել արկանել զնա 'ի խոր վիրապ մահապարտաց՝ որ յարտաշատ քաղաքի. և ինքն գրեաց հրովարտակս՝ զի յամ[ենայն] տ[է]րութեան իւրում անխափան լիցի պաշտօն դից, և մի ոք գտցի քրիստոնեայ. զոր օրինակ և հայր նորա խոսրով գոյն գործեալ էր

ընջել

ընծէլ զհաւատացեալս մնացեալս յաւուրց
անտի սրբոց առաքելոցն Թադէոսի և Բարթո-
ղիմէոսի ։

Անցին 'ի վր̅ ամք չորեքտասան , և եկին դաղթականք յՅէն Հռովմայեցւոց 'ի Հայս որ կոչեանքն Հռիփսիմեանք . և կատարեցան նահատակու՛թ յարքայէն տրդատայ 'ի սահմանս վաղարշապատ քաղաքի ։ Նաև եղև զկնի երից աւուրց կատարմանն նոցա՝ յելանել Թագաւորին արտաքոյ քաղաքին յորս , հարաւ 'ի տ̅նէ նորանշան պատուհասիւք . քանզի անկեալ 'ի կառացն՝ սկսաւ մոլեգնիլ իբրև զայսահար . և ը̅ս նմանութե̅ նաբուգոդոնոսորայ բաբելացւոց բռնաւորի՝ օտարացեալ 'ի մարդկային գնացից՝ վայրենացաւ և եղև 'ի կերպարանս անասնոյ 'ի նմանութիւն վայրենի խոզի . և վարեալ 'ի դիւաց մերկ և խայտառակ 'ի շամբս եղեգնուտս՝ վայրաբնակ լինէր իբրև զվարազ . և ոչ ոք իշխէր մանձել զնա և բերել 'ի քաղաքն ։ Նոյ նմին և բազումք 'ի ծառայից Թագաւորին և յիշխանաց և 'ի զօրաց ա̅ծասաստ բարկու՛թ բախեալ 'ի դիւաց՝ հարան 'ի մոլեգնութի , մինչ չև ատամամբք ուտել զմարմինս իւրեանց , և առհասարակ նմ̅ բնակիչք Յին յահ և յերկիւղ պաշարեալ կային ։

Արդ յայնմ ժամանակի յետին աղէտից տարակուսանաց՝ այց առնէր ողորմութ՛ի տ̅ն 'ի բարձանց՝ նորոգել զհնու՛ի հայաստան Յի . քանզի արժանի լինէր երկնաւոր անսպեան առաքինի կուսանն խոսրովիդուխտ քոյր Թա-

գա

դաւորին. և եկեալ օրիորդն խօսէր ընդ մար-
դիկն, պատմէր տեսիլն, և ասէր. տեսիլ
երևեցաւ ինձ յայսմ գիշերի. այր մի ՚ի կեր-
պարանս լուսոյ եկեալ պատմեաց ինձ, եթէ
ոչ այլ ինչ բժշկութիւն գոյ հարուածոցդ՝ որ
եկին հասին ՚ի վ՟ր ձեր, եթէ ոչ առաքէք ՚ի
քաղաքն արտաշատ՝ ածել անտի զկապեալսն
զգրիգորիոս. նա եկեալ ուսուսցէ ձեզ զդեղ
ցաւոցդ բժշկութ՟ն:

Իբրև լուան մարդիկն, սկսան ծիծաղել ըզ-
բանիւքն՝ զոր խօսեցաւ խոսրովիդուխտն. և
ասեն ցնա. և դու ուրեմն մոլեգնեցար, դև
ուրեմն հարաւ ՚ի քեզ. զիա՞րդ է՝ զի այս հըն-
գետասան ամ է, զի ընկեցին զնա յանհնա-
րին ՚ի խոր վիրապն. և դու ասես՝ թէ կեն-
դանի իցէ. արդ և ոսկերոտին իւր ո՞ւր իցէ.
զի նոյն օրին իսկ իբրև իջուցին զնա անդր՝ ՚ի
տեսլենէ օձիցն սատակեալ իցէ: Կրկնեաց
դրձլ հրեշտակ՟ոյ զնոյն տեսիլ առ օրիորդն,
և հինգկնեաց սպառնալեօք. զի թէ ոչ
պատմեսցէ ստէպ ստէպ, մեծամեծ տան-
ջանս ընկալցի, և հարուածք մարդկան և
թագաւորին՝ առաւել ևս սաստկասցին մահ-
ուամբ: Այլ մինչ անդրէն խոսրովիդուխտ
առ աշխէն տիկնին և առ մեծամեծ աւագա-
նին՝ մեծաւ երկիւղիւ և զգուշութ՟բ ասաց
զբանս հրեշտակին: Իսկ նոքա վաղվաղակի
յղեին յարտաշատ զաւագ նախարարն օտայ,
որոյ իբրև սան էր խոսրովիդուխտ. և նորա
երթեալ եհան զսուրբն գրիգոր կենդանի ՚ի
խոր վիրապին. և ՚ի վեր հանեալ՝ առ եբեր

ուրախութ՟բ 'ի վաղարշապատ :

Յայնժամ ընդառաջ գնաց սբ̃յն Է̃ այլ աւագանին՝ և խոզակերպեալ թագաւորն, և ամենայն դիւաբախ մարդիկն ընդ նմա, և անկան յոտս գրիգորի : Եւ նա խնդրեաց յա̃յ տալ նոցա զգաստութիւն մտաց, զի կարող լինիցին իմանալ զկենարար մի̃պութ̃ի փրկչին 'ի բժշկութ̃ի հոգւոց և մարմնոց : Եւ օթևանս կալեալ սբ̃յն գրիգորի մերձ 'ի հնձանատեղին սբ̃ց կուսանաց՝ ուր հաւաքեաց զմարմինս նոցա, քարոզէր ա̃մ ժողովելոցն զաւուրս վաթսուն կամ վաթսուն և վեց՝ պահօք հանդերձ և աղօթիւք : Իսկ տրդատ՝ որ դեռ 'ի պատժին կայր քստմնելի կերպարանաց, բայց զգաստացեալ միտք, հանապազ դեգերէր հեծեծանօք առ ոտս գրիգորի քրձազգեաց, և զցաւս սրտին արտասուօքն յայտնէր, և յախտակցութ̃ի ինքեան զսբ̃ն ստիպէր : Եւ յետ կատարման աւուրց պահոց՝ բժշկեաց սբ̃ն գրիգոր զձեռս և զոտս թագաւորին, զի կարող լիցի աշխատիլ՝ ո̃պ փափաքէր, 'ի շինութ̃ի շիրմաց և վկայարանաց սբ̃ց կուսանացն՝ ը̃ս տեսլեանն, զոր ետես և պատմեաց սբ̃ն գրիգոր :

Ապա առեալ թագաւորին զաշխէն տիկին զթագուհին, և զքո̃յր իւր խոսրովիդուխտ, նոքօք հանդերձ պատրաստէր զդիրս սբ̃ կուսանացն . ինքնին տրդատ բրէր բահով և փայտատով, և նոքա 'ի հանդերձս իւրեանց ընկալեալ զհողն՝ արտաքս պեղէին . և ա̃մ

բազմութիւն մարդկանն ընթացեալ պատարագա-
տէին նուէր շինուածոյ վկայարանաց, և բե-
րեալ կուտէին 'ի հրամայեալ տեղիսն՝ ոմն
քար, ոմն աղիւս, ոմն զմայր փայտ՝ խնդա-
լից փութով 'ի մ̃ր, և մեծաւ երկիւղիւ։ Նաև
ինքն ս̃ն գրիգորիոս զլար ճարտարութեան
շինողաց 'ի ձեռն առեալ՝ ճարտարապետ լի-
նէր 'ի կանգնել զվկայարանս. և ա̃մ ոք ձեռ-
նարկեալ 'ի գործս՝ գործէին զշինուածն.
մինչև կանանոյն անգամ սատարել ըստ իւ-
րեանց տկարութեան։ Նաև յաւել բերել տրդատ
անձամբ քարինս մեծամեծս 'ի մասիս լեռա-
նէ՝ 'ի պէտս սեմոց վկայարանացն, իբրև
փոխարէնս կամելով հատուցանել անմիտ
մարտին՝ որով մրցեցաւ ը̃ս սրբուհւոյն հռիփ-
սիմեայ. որ զօրութիւն ա̃յ յաղթեաց հսկայ
արքային, և այսչափ զարմանալեաց եղև ա-
ռիթ. վ̃յ և սա իբրև պսակ յաղթութեան
կուսին զիւրոյ ձեռագործութե̃ն զվաստակսն
մատուցանէր։

Ներքին և աշխէն տիկին և խոսրովիդուխտ
և այլ օրիորդք թագաւորազունք և կանայք
պատուականացն և դստերք մեծամեծաց ծի-
րանիս և ոսկեհուռ դիպակս և երկնագոյնս,
և այլ ազգի ազգի ազնիւ հանդերձս, 'ի հան-
դերձանս և 'ի պատանս մարտ̃ինոց ս̃բ կուսա-
նացն. նոյնպէս և թագաւորն և արքայա-
զունքն և աւագքն բերէին զիւրս անուշա-
հոտս և խունկս ազնիւս, և զգունագոյն նա-
րօտս պատանաց՝ զմետաքսաւէշս և զոսկէ-
թելս կերպասուցն, հանդերձ ոսկւով և ար-
ծաւ

ծածոյլ, և կուտէին առ դուրս հնձանին ։
Մրդ իբրև ելեալ տեսանէր զնս գրիգորիոս
զայն տմ, ասէ . ոչ վաղ իսկ ասացի ձեզ,
եթէ ոչ է պատշաճ զձեր լինել՝ որ չևդ էք
որքեալ մկրտութիւն, առ նոյ մատուցանել .
այլ յօժարութիւնդ ձեր բարիոք է վս ձերոյ
փրկութեն . այլ այս տմ յարքայական գան-
ձուն պահեալ կայցէ . զի յորժամ տացէ ձեզ
տր քահանայապետ՝ և հովիւս և առաջ-
նորդս՝ եկեղեցական կարգօք լուսաւորու-
թեն, այդ տմ երթիցէ 'ի սպաս պաշտաման
փառաւորընկալ սեղանոյն նյ . այլ այժմ
եկա՛յք զսէսն յիւրաքանչիւր հանգիստ մա-
տուսցուք . զի և նոքա բարեխօսութեն իւր-
եանց տացեն ձեզ հանգիստ 'ի տառապա-
նաց հոգւոյ և մարմնոյ ։

Այլ իբրև ամփոփեցին զմարմինս սբց կուսա-
նաց յիւրաքանչիւր վկայարանս, պարսպե-
ցին որմով և զտեղի իջման միածնին՝ առ 'ի
շինել անդ եկեղեցի ըստ տեսլեանն . ուր
և կանգնեալ գրիգորի զնշան սբյ խաչին՝
հրամայեաց ամենեցուն ծունր դնել և եր-
կրպագել, և կարդալ աղօթիւք առ տծ . զի
արասցէ նց բժշկութե 'ի հարուածոցն մնացե-
լոց ։ Յայնժամ 'ի կալ և սբյն գրիգորի յա-
ղօթս ուժգին զուգամանք վս կատարեալ բժշ-
կութե թագաւորին և տմ վտանգելոց, անդէն
վաղվաղակի թօթափեալ տրդատայ յանձնէ
զտմ հետս օտար կերպարանաց՝ դարձաւ յա-
ռաջին կերպարանս իւր, առաւել պայծառ և
վայելուչ . սոյնպէս և տմ ախտացեալքն ող-

նոջ և խոստովանողխոյ, յամ աւագաց և յիշխանաց Հայաստանի ձի. և հաստատեաց նոքօք հանդերձ՝ ընտրել հովիւ և առաջնորդ և քահանայապետ իւրեանց զմեծն Գրիգոր, զոր մկրտեաց զնոսա, և հաստատեաց զեկեղեցիս: Իսկ յոչ առնուլ Գրիգորի յանձն՝ տեսլեամբ հրեշտակի Տն այդ եղև որոշատայ, թէ պարտ է ձեզ զԳրիգոր վիճակեցուցանել անյապաղ 'ի քահանայապետութի. նոյնպս և զԳրիգոր հաւանեցոյց հրեշտակն, թէ 'ի քմէ է քեզ այդ հրամայեալ:

Յայնժամ Թգրն մեծաւ երկիւղածութբ և խնդութբ՝ արձակեաց զԳրիգոր բազմութբ նախարարաց և զօրաց, 'ի կեսարիա կապադովկացւոց. ուր ձեռնադրեցաւ նա լուսաւորիչն յեպսկոպոսութի Հայաստանեայց 'ի նմին ղևոնդեայ պատրիարգէ. և դարձաւ փառօք 'ի Հայս՝ հանդերձ բազմութբ պաշտօնէից. և յետ մկրտելոյ զձանապարհայն զուգեկից նախարարս և զզօրս նոցա, իբրև մերձեցաւ 'ի մեծն Հայս, ել Թգ առաջ նորա Թագաւորն 'ի քաղաքագեօղն Բագուանն առ ափն եփրատ գետոյ՝ հանդերձ աշխէն տիկնաւն և խոստովանողխտով և ամ արքունի բանակաւ:

Իսկ յետ տեսանելոյ զքհնյապետն Տն անչափ ուրախութբ՝ պատրաստեցան յընդունելութն նր մկրտութէ պահօք և աղօթիւք, ջերմեռանդն հաւատով: Նայս առեալ նր հայրապետին Գրիգորի զԹագաւորն Տրդատ և զաշխէն տիկինն և զմեծ օրիորդն խոստովանողուխտ հան-

դերձ աշխարհաժողով բազմութ՟բ՟՝ էջ յափն եփրատայ · և անդ մկրտէր զնոսա յանուն հօր և որդւոյ և հոգւոյն ս՟բ՟յ · և որք ասեն յայսմաւուրք՝ ՚ի մկրտութե՟ անդ փոխեաց ս՟բ՟ լուսաւորիչն զանունն տրդատայ , և կոչեաց զնա Յովհաննէս՝ յանուն ս՟բ՟յն յովհաննու կարապետի և մկրտչի որդւոյն ա՟յ , զորոյ զնշխարս բերեալ էր ը՟ իւր ՚ի կեսարիոյ ։ Իսկ եղև ՚ի մտանել թագաւորին , և որոց ընդ նմա՝ ՚ի գետն , լոյս սաստիկ երևեալ ՚ի բարձանց ՚ի նմանութի՟ լուսեղէն սեան՝ եկաց ՚ի վերայ ջրոց · և ՚ի վերայ սեանն նըմանութի՟ տ՟րունական խաչին , համդերձ այլև ահաւոր նշանօք · և ՚ի վաղւէ անդր մատուցեալ ս՟բ՟յ լուսաւորչին զս՟բ՟ պատարագն ՚ի բազումս՝ հաղորդէր զթագաւորն և զօրս ը՟ նմա ՚ի պատուական խորհրդոյն ։

Յայնմ հետէ օր քան զօր՝ բիւրք բիւրուց , և հազարք հազարաց գային ՚ի լուսաւորութի ս՟բ՟ մկրտութե՟ · և ա՟ծ ասէր թագաւորն բանիւ և օրինակաւ ծաղկեցուցանէր զհաւատս բարեպաշտութե՟ ը՟ ա՟մ աշխ՟ն · և տայր լուսաւորչին շինել ը՟ ա՟մ տեղիս եկեղեցիս արքունի ծախիւք , և կարգել եպիսկոպոսունս և քահանայս և պաշտօնեայս՝ համդերձ հասիւք ՚ի կալոց ածոց իւրաքանչիւր տեղեաց ։ Իսկ դարձեալ ը՟ խորհրդոյ գրիգորի հրաման տայր թագաւորն ժողովել յա՟մ գաւառաց մատաղմանկտի , և բաժանեալ զն՟ս յերկուս դասս՝ զոմանս կարգէր յասորի դպրութի , և զոմանս ՚ի հելլէնն · նոյնպէս և զորդիս քրմաց

Է հաւատարիմ վարժապետօք տայր մարզել յուսումն Տեառն գրոց, և այնպէս 'ի սակաւ ժամանակի ծաղկեր Հայաստան իբրև դրախտ Աստուծոյ ամենայն շնորհօք պարգևաց սրբոյ Հոգւոյն։

Յետ այսորիկ 'ի կամիլ Տեառն լուսաւորչին առանձնանալ յանապատ տեղիս՝ բազում թախանձանօք աղաչէր զնա աստուածասէր թագաւորն, զի հանապազ առ նմա կայցէ. և յոչ առնուլ նմա յանձն՝ տեղեկացեալ արքայի, եթէ երկու որդիք են սրբոյն Գրիգորի 'ի Կեսարիա, Վրթանէս յաշխարհական կարգի, և Արիստակէս միայնակեաց, առաքեաց պատուիրակս, և ետ ածել զնոսա առ ինքն. և նոքօք հանդերձ եկեալ 'ի խնդիր սրբոյն Գրիգորի՝ եգիտ զնա 'ի Դարանաղեաց գաւառի 'ի Սեպուհ լերին յայրում Մանեայ. և իջուցեալ զնա 'ի լեռնէն՝ ետ ձեռնադրել փոխանակ իւր զԱրիստակէս 'ի կաթողիկոսութիւն ամենայն Հայոց։

Նա հանդերձ Արիստակիսիւ գնացին Տրդատ և Գրիգոր 'ի տես Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի 'ի Հռոմ. որոց ասացաւ 'ի վարս լուսաւորչին. և յետ ամաց զնա ինքն զԱրիստակէս առաքեցին 'ի դիմաց իւրեանց 'ի սուրբ ժողովն Նիկիոյ. և յայնմհետէ իսպառ առանձնացաւ սուրբ լուսաւորիչն 'ի միայնութիւն։

Իսկ աստուածասէր թագաւորն Տրդատ յովհաննէս օր քան զօր առաւելեալ 'ի հանդէս կարգաց աստուածպաշտութեան եւ զանձն բոլորանուէր 'ի պաշտօն Փրկչին իւրոյ Քրիստոսի, անձանձիր յաղօթս և 'ի պահս, և յընթերցուածս սուրբ կտակարանաց 'ի յոյն բարբառ, զի քաջ խոկ

տեղեակ էր հելլէն դպրութե. որով քաջքրքրե-
ցեալ յօրէնս այ՝ հեղոյր զանձն առաջի նորա,
և անդադադար արտասուօք ուրախութե գոհա-
նայր զանորա մարդասիրութե արարչին. և
ամ արթնութե հսկեր 'ի վն անձին և այլոց՝
զնալ ամենեցուն յամ պատուիրանս և յիրա-
ւունս այն անարատ. և ինքն թէպէտ յա-
կալով դեր 'ի վերոյ լինէր քան զանապատա-
ւորս, գեղեցիկ կրօնաւորեալ սրտիւ ըն ա-
քունս ծերանեօք : Որոյ զպանծալի գո-
վութե այսպէս առաջի ամէն աստենադպիր
նր ճեծնապաթանգեղօս՝ վկայ ականատես.
* Մծանէր թագաւորն տրդատիոս բարե-
պաշտութե ապաստանութէ ըն աշակերտական
հաւատոց 'ի քս՝ երկիւղած զատանիւր. որով
տեղեկացեալ և վարժէ ածակերտաց հրամա-
նօքն, և ցանկալի եղեալ օրինապահն կա-
լով, և բարեաց օրինակ ամ ոգի. Նա անդէն
'ի նմին ուշ եղեալ փութով ընթերցուածոց
ածեղէն գրոց. զի յունական հայկան դպրու-
թեն երկրաւոր իմաստութեն յառաջագոյն
էր տեղեակ՝ առաւել փիլիսոփայական մտաց
հանճարագիտութե. զի ուսեալ էր զայս :
Որդ ընկալեալ և զշնորհս երկնաւոր պար-
գևացն. որով առժամայն լուսաւորեալ և
թեւակուռ թեւամուխ եղէ ածատուր հրա-
մանացն որպիսութեց, և ամ պատրաստու-
թե զանձն յարդարեալ, և ըն աւետարանա-
կան չափոցն 'ի ծառայութի այ մարդասիրին
զարձեալ, մերկացեէ այնուհետեւ զհեթա-
նոսակիր ցանկութիս, առեալ զնշան պար-
ծու

ծանեաց խաչին յանձն իւր . և պաշտել զկնի ամենակեցոյց խաչելոյն , հանել զհրամանացն պայման , զկնի խաչակիր գնդին քի աշակերտելոցն հետևել : Նա և անձին իւրում եղեալ սահման՝ պահօք և տքնութբ աղօթս մշտնջենաւորունչս , և բազկատարած պաղատանս առ ած , և արտասուս հանապազաբուղխս մն ծին իւրոյ : Սոյնպէս և մն իւր խնդրել , զի մի՛ յիշեսցին մեղքն՝ որ յառաջին տգիտութեն յայնժամ որ 'ի հնութե անդ գործեր : Նա բազում և ամ ուժով նպաստաւորութե ընծայեցուցեալ աւետարանագործ վրդպութենն՝ հպատակութե ցուցեալ , և ծառայեալ ըն աւետարանին վայելչութբ . և այսպէս խրատեալ և զգաստացեալ կրօնաւոր վարուք յառաջադէմ լինել ամ ուղղութբ յամ գործս բարութե նր , առաւել ևս պայծառացուցանէր զվրդպութե սատարութի ‖ . իմն՛ աջակից և գործակից լինելով յամի՝ սբ ոյ լուսաւորչին , նոյնպէս և յետ նր սբյն արիստակիսի , և զկնի՝ սբյն վրթանիսի , որ յաջորդեաց յաթոռ եղբօր իւրոյ :

Բայց յորմէ հետէ զատաւ երանելի թագաւորն 'ի տեսութե սբ լուսաւորչին հոգւոց , հանապազ յիշէր զնա , և փղձկէր յոյժ կարօտանօքն նր . և անձկանայր ընթանալ զհետ կոչման նր ճգնաւորական վարուք . Թող զի ձանձրացեալ էր 'ի հոգոց ծի , և տաղտկացեալ յոմանց ըմբոստ իշխանաց և յանլսող նախարարաց . զի որչափ և խրատէր զնս արժանի գնալ կոչման սբ հաւատոց քրիստո-

նէ-

նէութեն, գտանէր զնոսա թարթափեալս 'ի խառնակեցիկ վարս ը՟ն առաջին հեթանոսական սովորութե: Մ'ինչև ոչ կարացեալ այլ ևս հանդուրժել ա՟ծասէր թագաւորին, այլ ընկեցեալ զթագն արքունի՝ գնաց 'ի լեառն սեպուհոյ 'ի միայնարան ս՟րբոյն գրիգորի. և տուեալ զանձն 'ի խիստ ճգունս և 'ի խոկումն ա՟ծայնոց՝ նոյն ժուժկալութբ անցուցանէր

զբազում աւուրս:

Բայց թէ զիարդ եղև վախճան ս՟րբ թագաւորին, արժան է լսել զգրեալսն 'ի խորենացւոյն՝ օրինակ զայս. * Զսրբոյ և զմեծէ և զերկրորդ նահատակէ, և զմերոյ լուսաւորութեց հոգևոր վերակացուէ ճառելով, զ'ի ք՟սէ հանուր եղելոցս ճշմարիտ թագաւորէ, հրաշափառագունից պարտ էր անցանել բանից, որք զգործակցէ և զհաւատար ճգնողէ մերոյ նախաշաւղի և լուսաւորութեց նահապետի. որք թուեցաւ հաճոյ հոգւոյն ս՟րբոյ՝ երիցացուցանել զիմ լուսաւորիչն՝ վկայութեն միայն վիճակաւ, 'ի վ՟ր բերեմ՝ թէ և առաքելութեն. իսկ որ ինչ զկնի այսորիկ, զուգաքան և հաւատարագործ: Բայց զառաւելունի ասեմ զթագաւորին. քանզի խորհեալն յաղագս ա՟յ, և ճգնազգեցիկ լինել՝ զոյգ երկոցունց. իսկ նուաճել հաւանողական կ՟մ բռնաւորական բանիւք՝ առաւել թագաւորին շնորհ. քանզի ը՟ն հաւատոցն ոչինչ կարեցուցանէր զգործսն. այսորիկ աղագաւ կոչեմ զնա նախաշաւիղ ճանապարհ (յետ լուսաւորչին), և լուսաւորութե մեր հայր երկ-

րորդ . . .

Սա յետ հաւատոցն որ 'ի քո՝ մեծ առաքինու-
թե՟ բացափայլեալ, եւս քան զեւս յաճախեր՝
որ ինչ յաղագս քո՟ գործ եւ բան, սաստե-
լով եւ հաւանեցուցանելով զմեծ նախա-
րարսն, միանգամայն եւ զա՟մ բազմութիւնս
ռամկին, լինել արդարեւ քո՟ . որպէս զի վկայ-
եսցեն ա՟մ հաւատոցն ամենեցուն եւ գործքն ։
Այլ զխոստաւորութի կամիմ ասել, թէ՝ եւ
զամբարհաւաճութի մերոյ ազգիս յիսկըզ-
բանէն եւ այսօր, որպէս անհամբոյր բարուց, եւ
ճշմարտութե անհարազատ, կ՟մ թէ բնութի
ունելով զբարձրայօնութի եւ կամակարութի,
ընդդիմանան կամաց թագաւորին յաղագս
կրօնից քսականաց, զհետ երթալով կամաց
կանանց եւ հարճից ։ Սրուս ոչ կամեցեալ նե-
րել թագաւորին, ընկեցեալ զերկրաւոր
պսակն՝ զհետ ընթանայր երկնաւորին, ա-
րագ հասանելով 'ի տեղին՝ ուր ճգնաւոր զին-
ուորն քո՟ ծակամուտ լեռնակեցիկ եղեալ ։
Աստանօր ամաչեմ ասել զճշմարտութիւն, մա-
նաւանդ թէ զանօրէնութի եւ զամպարշտութի
ազգիս մերոյ, զմեծի ողբոց եւ արտասուաց
արժանի զսոցա զգործս . քանզի զհետ առա-
քեալ կոչեն զնա 'ի լինել ա՟մ կամաց նո՟ց, եւ
ունել զթագաւորութիւն ։ Իսկ 'ի չհաւանել
նո՟յ (կ՟մ ա՟մ այլ օրինակի, 'ի հաւանել նո՟յն)
տան նմ արքունին, ո՟նց անդ ուրեմն 'ի հնումն
զարկրատայ զմոլախինդան . եւ կ՟մ թէ զմեր
իսկ ասել՝ կատաղեալ երբայեցիք ըմպելի
լեղեաւ խառնեալ ա՟յ մերոյ . եւ զայս արա-

րեալ՝

րեալ՝ չիջուցին յինքեանց զբազմափայլ ճա-
ռագայթ ամճառաշառաւիղ նր ։ Որոյ վա յոգնա-
դարձուցանէ քերթողահայրն զճառս բա-
նից ․ և անդրէն հաստատէ զայսօրինակ կա-
տարումն նր ․ * Այլ ( առէ ) պատմութիւս
յաղագս սրբյն տրդատայ ճշմարիտ է ․ քան-
զի արբուցեալ նմա դեղ մահու՝ զրկեցան 'ի
բնաոյ շնորհաց ճառագայթից նր ․ որ թա-
գաւորեաց ամս յիսուն և վեց ։

Արդ զոր հարևանցի նշանակէ խորենացին
զմահ տրդատայ , և այլք 'ի պատմագրաց
նոյնպէս՝ փոքր մի այլայլութբ հանգամանաց ,
գտանեմք 'ի հին ճառընտրի մանրապատում
աւանդեալ յումեմնէ 'ի նախնեաց օրինակ
զայս ․ * Յաղ թագաւորն տրդատ յետ հա-
ւատոցն 'ի քս ամ առաքինութբ փայլեալ
մինչև ցվախճան արի ծերութե ․ այլ խստա-
սրտութի ազգիս մերոյ կի ամբարտաւանու-
թին որ 'ի սկզբանէ՝ պատահեցին ամ գլոր-
մանց տոցա պատճառք ։ Քանզի չարք ոմանք
հրամանաւ շապհոյ խորհեցան սպանանել
զտրդատ , և միաբանեալ անդրէն զկատարաշ-
տութիւն հաստատեալ յԾիս հայոց ․ յորում
խորհրդի լեալ էր և սենեկապան տրդատայ՝
ըստ օրինակի յուդայի մատնչի ։ Բայց ոչ գի-
տէր թագաւորն , թէ քանիք կին ոյք իցեն ․
վասյ կոչեաց զսենեկապանն զայն՝ հարցանէր ,
եթէ իցէ ինչ 'ի դրանն արդարև այսպիսի
խորհուրդ ։ Նա իբրև լուաւ , զահի հարեալ
սրտապէկ լինէր ․ և ուրացաւ՝ թէ ոչ երբեք
լուեալ է իմ այսպիսի բանս ․ վասյ եկեալ առ

ըն

ընկերսն երկիւղագին՝ 'ի բաց կորուսանէին զխորհուրդն անօրէնութե, ոչ զարհուրեալք ։ Բայց ինքն Թագաւորն ոչ առնլով դուլ՝ հեռանայր յարևմուտս կոյս՝ մինչև 'ի գաւառն եկեղեաց՝ տեղի տուեալ լռոյն այնորիկ ։

Այլ քանզի բազումք էին 'ի խորհրդին, ոմանք զկնի նր գնացին. մանաւանդ ազատքն սիւնեաց կողմանցն, որք առաւել հրամանաւ կատարք շապհոյ լինէին՝ մեծին իւրեանց խաղաղական մեռելոյ ։ Որք և 'ի յորս երեաց երբեմն ընդ Թագաւորին լինելով. յորոց և խոցեալ լինի Թագաւորն, ոչ Թէ յանդէտս ուստեք դիպեալ պատահեաց նմին ։ Այլ եկեալ յարքունիսն դնի 'ի մահիճս սակաւ ինչ վիրաւորեալ. յորոց մտեալ սենեկապանն այն պատել զվէրս նորա, և տեսեալ՝ զի ոչ է մեռանել նմա 'ի վիրէն, արբուցանէ դեղ մահու և վախճանէ. որ յետոյ յայտնի լինի եդև 'ի նորին խորհրդակցացն ։

Այլ բարձեալ տարան զնա 'ի Թորդան արծաԹապատ դիակիր դագաղօք, յորում ածեալ Ջորիք ոսկէսանձք, և գունակ գունակ հանդերձիւք զդագաղսն զարդարելով. և փաշտք զօրացն աստի և անտի վառեալք զինուք և նշանակօք ։ Իսկ առաջի դագաղացն ձայնք ածօրհնութե և բուրմունք խնկոց. իսկ աստի և անտի բարեկամք և սիրելիք, ընտանիք, և բազումք յորդւոցն նր հետևակ անկեալ. Այլ զկնի դագաղացն փողք և ստւիղք ողբոց, և կուսանք ողբասացք. Թող զայլ ամ ռամիկսն՝ որ երԹային զհետ ան-

Թիւ

Թիւ՛ բազմութն ։ Իսկ այսպէս համեալք ՚ի տեղւոյն, առարեալ տապան Թագաւորական ՚ի քարանց կճեայ, և ՚ի վր այ ապակի արկեալ, յորում եդեալ զգանձն պատուականն, զանուշահոտ զպատարագն, զմեծ փառաւորաւորն. և տարեալ Թաղեցին զնա ՚ի տեղւոջ զբօսանաց մեծին գրիգորի. զոր պարսպեալ անուանեալ իւր պարտէզ. և կանոնեցին զօր կատարման նր տօնել ամ յամէ. զոր յանձն առարեալ եպսին գեղջն՝ գնացին ։ Իսկ այս եղև յերկրորդ ամի կթղկսութ սրյն վրթանիսի, յամի տն. 341 ։ Բայց թէ ՚ի թորդան Թաղեալ իցէ սրն տրդատ, և եթէ յամուրն անի՝ որ է կամախ (որպ երևի ցուցանել խորենացին, ) աւանդի ՚ի գիրս ինչ՝ թէ ոմանք գողացան մասն ինչ ՚ի պատուական նշխարաց նր, և տարան ՚ի հոգւոց վանս տծածնի ։

Իսկ զի՞նչ պարտ է ասել զառաքինազարդ Թագուհւոյն հայոց զաշխէն տիկնոջէն. որ ՚ի վաղուց հետէ հրաժարեալ էր ՚ի վայելչութենէ կենցաղոյս, և առանձնացեալ բնակէր ՚ի գաւառի քաղաք, զորոյ զամրոցն նորոգ չինեաց տրդատ ընտիր կոփածոյ քարամբք. ուր և եկաց տծասէր Թագուհին ձգնողական վարուք, մինչև փոխեցաւ յերկրէ յերկինս ։

Բաց նմին օրինակի և սքանչելի քոյր Թագաւորին մեծ օրիորդն և սբ կուսանն խոսրովիդուխտ, որ ճանաչի մայր կուսաստանեաց համօրէն հայաստանեայց, մաքրափայլ վարուք սրբութե միայնացեալ անդէն ՚ի գաւա-

նի

# ՎԱՐՔ ԵՒ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ

Սրբոց Հայրապետաց մերոց, Որդւոց և Թոռանց Լուսաւորչին.
որ է սրբոյն Արիստակիսի, Վրթանիսի, Յուսկանն, Գրիգորիսի, և Դանիէլի։

Հ. դիրք. 1. (նոյն և ճաշոց. 6. և տօնաց. 30։)
Ագաթանգեղոս ։ Բուզանդ ։ Խորէն. Ճառընտիրք. և այլն ։ (1)



ՆԵԻՆԵՐԻՆ ՍՈՒԲԻ ՊԱՆ ծայլի զաւակք և ժառանգակալք առաքելական հոգւոյ և սրբութեն և իշխանութեան սրբ Լուսաւորչին, 'ի բարի արմատոյ եղեն շառաւիղք բարիք, 'ի լուսաբուղխ աղբերէ վտակք շնորհասփիւռք. արիստակէս և վրթանէս հարազատք՝ ծնունդք սրբոյն գրիգորի, և յուսիկ և գրիգորիս՝ որդիք վրթանայ՝ թոռունք գրիգորի. Է որս և դանիէլ աշակերտ սրբոյն գրիգորի՝ 'ի հոգևոր որդւոց նորա համարի, առ հասարակ հոգելից հարք և վկայք, ծննդեալք նահատակութբ 'ի վկայութի Քրիստոսի. զորոց մի առ մի մնայ մեզ ճառել։ Այն ինչ երից երանելի հայրն մեր սրբն գրիգոր լուսաւորիչ մնեաց 'ի կեսարիա 'ի տանն

շնորհօքն ն՟յ յն՟մ կարգս կրօնաւորական վա-
րուց ․ մինչև 'ի չափ հասակի կատարելութեն
հրամանն առեալ 'ի ծերոյն իւրմէ՝ առանձնա-
ցաւ յանապատ ․ և փակեալ զանձն յարգե-
լական խցի՝ ետ զանձն 'ի մեծ ճգնութիւս պա-
հոց և աղօթից , և եղև միայնակեաց սքան-
չելի՝ զարդարեալ ամ՟ առաքինութ՟բ և իմաս-
տութ՟բ ․ և սնուցեալ աշակերտս ըն՟ ն՟յ՝ փայ-
լէր իբրև զլուսաւորս երկնից 'ի վ՟ր երկրի ,
պայծառացեալ 'ի ժամուն ոչ միայն քան զե-
րեց եղբայր իւր զվրթանէս , այլ և քան ըզ-
հայր իւր զմեծն գրիգորիոս ։

Քանզի այսպէս վկայէ զնմանէ ականատեսն
ագաթանգեղոս ․ * Արիստակէս ( ասէ ) , որ
,, 'ի մանկութէ ըն՟ ած՟պաշտ ծառայութե
,, սնեալ էր , որ 'ի միայնակեաց լեռնակեաց
,, կրօնս էր մտեալ , և բազում ազգի ազգի
,, վշտակեցուի ըն՟ ուխտաւորանին կրեալ ամ՟
,, կրթութ՟բ ․ և ամ՟ իրաց հոգևորաց զանձն
,, տուեալ՝ միայնաւորութ՟բ , լեռնակեցու-
,, թե , քաղցի և ծարաւոյ , և բանջարաճա-
,, շակ կենաց , և արգելանաց անլուսից , խա-
,, րազնազգեստ՝ և գետնատարած անկող-
,, նոց ․ և բազում անգամ զհանգիստ գիշե-
,, րաց և զհարկ քնոյ յաւնաւոր տքնութե 'ի
,, թարթափ ական վճարելով ․ և զայս արա-
,, րեալ ոչ սակաւ ժամանակս ։ Գտեալ եւ
,, զօմանս , և յինքն յարեցուցեալ , և աշա-
,, կերտեաց ա՟ն աւետարանական սպասաւո-
,, րութեն ․ և այսպէս ամ՟ փորձութեց 'ի վ՟ր
,, հասելոց կամայական քաջութ՟բ տարեալ ․

,, և նուիրմք լուսաւորեալ և պայծառացեալ.
,, և ծանօթականն և հաճոյ եղեալ առաջին այ̃
,, և մեղկան ||։

Նաև վրթանէս առաւ եղբայր նորա յաշխարհի կալով զեր 'ի վերայ լինէր քան զաշխարհական կարգ. քանզի իբրև անձեաց բարեպաշտութ̃բ ընդ ձեռամբ դայեկաց իւրոց 'ի կեսարիա, և վարժեցաւ յարտաքինն և 'ի հա գեստ հրահանգս ուսմանն, մուծին զնա 'ի կարգ դպ̃ի. և ծնաւ երկուս որդիս՝ ոչ̃ առի՝ երկուորեակս. որոց անուանք կոչեցան գրիգորիս և յուսիկ։ Նաև ապա վ̃ս իւրոյ անսարատ քաղաքավարութ̃ե և իմաստութ̃ե հրաւիրեցաւ յա̃ծային կոչմանէ 'ի կարգ երիցութ̃ե եկեղեցւոյ. և պաշտէր զքահանայութի ա̃մ սրբութ̃բ և առաքինութ̃բ, դաստիարակեալ և զմանկունսն նորին զամէնն վարուք. մինչև օրինակ բարի լինել ա̃մ ուսողաց։

Արդ մինչդեռ այսպիսի ա̃ծահաճոյ քաղաքավարութ̃բ փայլէին երկոքին որդիքն սբ̃ լուսաւորչին 'ի կողմանս կեսարիոյ, սքանչելի հայր նց̃ սբ̃ն գրիգոր՝ յետ բազմամեայ հանդիսի նահատակութ̃ե, և լուսաւորիչ լինելոյ հայաստանեան երին հայրապետական փառօք, կամաւոր մոռացութ̃բ լռեր զորդւոցն. և որդիքն գիտելով զհօրն փառաւորութիւն՝ նոյնպս լռիկ մնջիկ կային անփառասէր մտօք։ Նաև այս է ասելն խորենացւոյն. * Որդւոցն
,, հօր սքանչելւոյ որդիք զարմանալիք՝ առա-
,, ւել քան զառաւել. զի ոչ նա խնդրեաց
,, զորդիսն, յորժամ դարձաւ ի̃ տրդատայ
,, ('ի

„ ('ի Թագաւորել Նոր ), և ո՛չ Նոքա չոգան առ
„ Նա ։ Եւ այն՝ գրեա՛ թէ յաղագս երկիւղի
„ հալածանացն ( յերեսաց տրդատայ , կամ
„ դիոկղետիանոսի ) ․ բայց և ո՛չ 'ի քահանա-
„ յանալն ( գրիգորի 'ի կեսարիա՝ ) եր-
„ ևեալ , փառօք հօրն պերճացան ։ Ս՛ն որոյ
„ և ո՛չ Նա յաձեաց 'ի կեսարիա , ( զի մի՛ յայտ-
„ նեսցի որդւոցն , ) այլ՝ փութապէս դար-
„ ձեալ՝ 'ի սեբաստացւոց քաղաքին ան-
„ սայր հաւաքել զնիւթ վկայութեան ։ Բայց
„ թէև բազում աւուրս արարեալ ( էր Նոր )
„ 'ի կեսարիա , ոչինչ յորոց զմտաւ ածէր առ-
„ Նելոց էին , անսպառին և մնացականին
„ միայն սպասելով ․ որք ո՛չ զպատիւն յին-
„ քեանս ձգէին , այլ՝ պատիւն զհետ Նոցա
„ ընթացաւ ․ որ ուսուցանէ քեզ ագաթան-
„ գեղոս Ս ։

Քանզի յետ անցանելոյ ամաց բազմաց՝ յոր-
ժամ սո՛ւրբն գրիգոր զկնի լուսաւորելոյ զբո-
հանդակ հայք , և պայծառացուցանելոյ զե-
կեղեցիս , յաւուրս ծերութեան ցանկացաւ
առանձնութե և միայնացաւ 'ի լերինս , երա-
նելին տրդատ արքայ կարի կարօտեալ աշ-
խարհաւն հանդերձ զնմանէ , լուաւ ասել
յոմանց՝ թէ կան երկու որդիք գրիգորի 'ի
կողմանս կեսարիոյ , երէցն քահանայ , և
կրտսերն աբեղայ ․ քանզի տաճատ աշոցայ
տէր՝ փեսայ արտաւազդայ մանդակունւոյ ,
տեղեկացեալ զնոցանէ 'ի կեսարիա՝ պատ-
մեաց աներոյ իւրում ․ և Նա հասոյց յունկն
թագաւորին ։

Որդ իւրն զայս ամ̃ լուեալ Թագաւորն Տըր-դատ, լի եղև ուրախութ̃. և վաղվաղակի փութով արձակէր առս երիս աւագս փառա-ւորս պատուականս՝ հրովարտակօք հան-դերձ, զի զերկու որդիքն գրիգորի վաղ առ-նա հասուսցեն : Եւ որք առաքեցանն յար-քայէ՝ զի ածցեն զնա, այսոքիկ են . առաջ-նոյն անունն արտաւազդ, որ սպարապետ էր ամ̃ զօրացն հայոց մեծաց . և երկրորդին ան-ուանն՝ իշխան աշոցացւոց գաւառին . և երրորդն դատ անունն՝ կարապետ արքայի : Հասեալ ա̃յ յԵ̃ն կապադովկացւոց, և հարց-փորձ արարեալ գտին զոդ̃ երեցն վրթանէս 'ի քաղաքի անդ կեսարացւոց . և առին զնա յոյժ կամաց նորա առ իւրեանս՝ հանդերձ եր-կու մատաղ մանկամբք նորին, որ էին գրիգո-րիս և յուսիկ : Ապա երթեալ գտանէին և զոդ̃ միայնակեացն ռոստակէս բնակեալ յա-նապատի 'ի միայնաստանս իւր . և իբրև ծա-նուցին նմա զկոչն արքայի, նա ոչ հաւանէր ելանել յանապատէ անտի . մինչև եղև ժո-ղով բազմութե քրիստոնէից, որք հաւանե-ցուցին զնա գնալ անտի . զի լաւ է ասեն քեզ գործ մշակութե ա̃յ՝ քան զայդ միայնա-կեցութե բնակութեան յանապատի այդր . և այնպէս յուղարկեցին զնա անտի ընդ նախա-րարսն :

Եւ իբրև եկին հասին յԵ̃ն հայոց, յանդիման եղեալ նախարարքն զածեալսն զերկու որ-դիսն գրիգորի առաջի թագաւորին . և ա̃ծա-ծէր թագաւորն յետ ցուցանելոյ նց զա̃մ մե-ծաւ

Ծարանս պատուհոյ խնդամտութեան՝ առեալ զերկոսին զնոսին ընդ իւր՝ եւ ինքնին նոքօք հանդերձ 'ի խնդիր սրբոյն գրիգորի, ուր և գտցէ. և եկեալ գտանէին զնա 'ի դարանաղեաց գաւառին, 'ի լերինն՝ որ կոչի մանեայ այրք՝ յանապատին: Այսպէս աղաչեաց երանելի թագաւորն տրդատ զսրբն գրիգորիոս, զի փոխանակ այնր՝ զի ոչ հաւանեցաւ նա կալ և շրջել ընդ նմա, և սիրեաց զմիայնաւորութեան կեանս, ձեռնադրեսցէ և տացէ նմա եպս՝ 'ի հայրապետութիւն ամ Հայոց զսրբն ուրտակէս զորդի իւր. ըստ գրեցելոյն՝ թէ փոխանակ հարց եղիցին որդիք:

Ուղղեալ սրբոյն գրիգորի յաղաչանս թագաւորին՝ էջ 'ի լեռնէ. և առարեալ ժողով եպիսկոպոսաց՝ ձեռնադրեաց իւր փոխանակ զերանելին արիստակէս. որ առաւել ևս քան զհայրն (ասէ ագաթանգեղոս) լուսադոյն ևս երևեցուցանէր սա զիւր վրդպութիւն՝ առ հարբն. և յետ նորա կալաւ զտեղի հայրենեացն սրբազէն նստեալ յաթոռ կաթողիկոսութեան Հայոց մեծաց: Նա ցորչափ կենդանի էր սրբն գրիգոր՝ գայր ընդ ժամանակս ժամանակս, և սրբ որդւովն իւրով արիստակիսաւ և ամ երևելի օգնականօքն զամ աշակերտելովքն շրջէր, և հաստատէր զնոսա կալ 'ի պատուիրանսն ճշմարտութեան:

Այս ուղ տարաւ սրբ լուսաւորիչն զարիստակէս ընդ իւր 'ի հռովմ, 'ի գնալն հանդերձ տրդատաւ յողջոյն սրբյն սեղբեստրոսի և կոստանդիանոսի, նոյնպէս և զկնի ամաց ինչ 'ի

հրաւիրիլ խուռնմ 'ի կոստանդնուպօլսաւ գալ 'ի ժողովն նիկիոյ տրդատաւ հանդերձ , առաքեաց փոխանակ իւր զսրբն արիստակէս եպս . որում ուղեկից գտան և սրբն յակոբոս մծբնայ հայրապետ , և եւթաղ եպս եդեսիոյ , և յովհան եպս պարսից : Եւ յորժամ անցանէին չորեքին սոքա ընդ կեսարիա , հանդիպեցան սրբոյն ղեւոնդի . և առաջիկայ գտան հանդիսին՝ յորում մկրտէին մեծն ղեւոնդ և եպսն նազիանզու զգրիգորիոս զհայրն գրիգորի ածաբանի . և տեսին լոյս շուրջ փայլատակեալ զնովաւ յելանելն 'ի սրբ աւազանէն : Ապա առեալ սոցա ընդ իւրեանս և զսրբն ղեւոնդիոս՝ գնացին 'ի միասին 'ի սրբ ժողովն , և մեծապէս պատուեցան և փառաւորեցան յինքնակալէն և 'ի հարց ժողովոյն :

Գրի աստանօր 'ի յայսմաւուրս ԺԸ հին աւանդութեց , թէ 'ի գնալ սրբյն արիստակիսի 'ի ժողովն անդր՝ ունէր ընդ իւր զսրբ նշանն 'ի կենաց փայտէն , զոր տուեալ էր սրբյն գրիգորի մեր հայրապետին սեղբեստրոս պապն հռովմայ . և թէ՝ այնու արար սրբն արիստակէս բազում սքանչելիս յամ ճանապարհս իւր՝ ընդ որ էանց . և մանաւանդ 'ի ծովն բիւթանիոյ՝ ուր ձգեաց զակոս անհետ ընթացիւք . քանզի իբրև տեսին ասէ զսրբն զծուծ կերպարանաւ , և անձամբն նիհար և ներգեւեղ 'ի բազում ձգանց , ոմանք 'ի նաւակաց չարափառ արիանոսաց այպն առնելով անարգեցին զնա , և ասէին ցմիմեանս . տեսէք տեսէք զառաջնորդդ արևելից , որում արժան

է

է ըմպել մշակ մաճակալ ։ Նաւ՝ զի էր անդ ամոլ մի եզանց՝ որ վարէր մերձ 'ի ծովափն , եկեալ ոմանք 'ի նոցանէ կեղծաւորութ՟ն ասէին ցս՟ն ․ ո՛վ այրդ ա՟յ և որդի՛ նահատակի՛ լծեա՛ զլուծս եզանց , և ե՛կ 'ի յուս դոցա , և գնա՛ 'ի վ՟ր ծովուդ ։

Ածինք եւ տե՟ր հայրապետն արիստակէս , և ասէ ցն՟ա ․ իրաւացի՛ են բանքդ՝ զի մշակ զիս անուանեցիք ․ բայց մշակ եմ տ՟ռն ա՟յ ամենակալի՛՝ որ առնէ աքանչելիս միայն ։ Զայս ասացեալ՝ կորզեաց զմաճ՟ն 'ի ձեռաց մաճակալին , և վարեաց զեզինսն 'ի վ՟ր ծովու արտաշափ մի ․ և այնպէս պատառեալ զակօս յերեսս ջրոյ երթևեկ մի՝ դարձաւ 'ի ցամաք ․ և ասէ ցայպանիչս իւր ․ ո՛վ արխանոսք՝ եթէ ունիք հաւատս , բերէ՛ք զհետ իմ զսերմն ցորենոյն , ցանեցէ՛ք և տափեցէ՛ք ․ ապա թէ ոչ՝ զի՞ աշխատ առնէք զծ՟ա հայրսդ , որ աստ ժողովեալ են ․ և որք տեսինն և լուա՛ն , զահի հարան , և պատկառէին 'ի նմանէ իբրև 'ի հրեշտակէ ա՟յ ։

Արդ՝ իբրև արձակեցաւ ս՟բ ժողովն նիկիոյ բիւթանացւոց , առեալ ս՟բն արիստակէսայ զսիւնհոդոսական սահման հաւատոյն և ըզկանոնական օրէնսդրութի՟ս՝ դարձ առար 'ի հայս , և մատոյց առաջի հօր իւրոյ և թագաւորին ․ և նք՟ ընկալան սիրով ․ և յաւել եւս ս՟բն գրիգոր ինչ ինչ 'ի զգուշութ՟ն վիճակին իւրոյ ․ և յայնմհետէ յանձնեալ բոլորովին զհօտ իւր 'ի ձեռս որդւոյն՝ իսպառ առանձնացաւ յանապատ անտեսս 'ի մարդկանէ ։

Իսկ

Իսկ սորին առաքինակէս այնուհետև առանձինն կալեալ զաթոռ կթղկսութ. յէջմիածինն վաղարշապատու, և քան զեւս պայծառացուցանէր զեկեղեցիս հայաստանեայց. զարգարէր զվանորայս, և կարգաւորէր զկրօնատանս. և զա̃մ ուխտ եկեղեցւոյ վայելուչ կարգօք փայլեցուցանէր: Այլ բազում այնէր՝ զի անձամբ շրջագայեալ այցելութ̃ 'ի տեղիս տեղիս՝ հաստատէր և զօրացուցանէր զհօտ հաւատացելոց. խրատէր և ուղղէր զյանցաւորս, և անապաշաւ յանդիմանէր զխոտորեալսն՝ զփոքունս և զմեծամեծս.

Իսկ արքեղայրս ամ̃ն մերականցու չրրդ. հայոց յանդիմանեալ 'ի սմին մ̃ծ անուղղայ գործոց իւրոց՝ սպասէր նմա նենգաւ՛ք դաւել զնա. և եղև անցանել սմին առաքինակեայ ը̃ գաւառն ծոփաց, ուր շինեալ էր նր̃ եկեղեցի մեծ 'ի գիւղաքաղաքն խողան. և ահա 'ի ճանապարհի եհաս 'ի վ̃ր նր̃ արքեղայրսն այն, և սուսերաւ հարեալ սպան զնա հայրապետն. և մինչդեռ աշակերտքն փութային այսր անդր աղդ. առնել, զերծաւ անօրէնն փախըստեամբ 'ի տարածն կրլկեցւոց: Այսու օրինակաւ կատարեցաւ երանելին առաքինակեաց վկայական խոստովանութ̃՝ 'ի ծն̃ք. ամի թագաւորութեանն տրդատայ, կացեալ յաթոռ հայրապետութե̃ առանձինն ամս եօթն կմ̃ ութ: Այլ բարձեալ աշակերտացն զմարմին սմին՝ տարան յեկեղեաց գաւառ, և հանգուցին 'ի թիլն աւանի, որ էր կալուած հայրապետանոցին՝ տուեալ սմին զգիւղորի 'ի թորդ-

դա

դաստայ․ ուր և ինքն իսկ արխստակէս շինեալ
էր իւր առանձին վանս բնակութեան ։

Յետ կատարման սորին արխստակեայ՝ միաբանութիւն եպիսկոպոսին և ըստ փափաքանաց որդատայ արքային , կոչեցաւ յաթոռ կաթողիկոսութեան աւագ եղբայրն սորին վրթանէս ․ որ նորին մաքուր վարուք և պայծառ վդպութբ փայլէր 'ի պաշտօն հովուապետութեն իւրոյ՝ ամենեցուն խրատիչ գոլով և յանդիմանիչ․ և համապազորդ տքնէր հսկողութբ 'ի վր հօտին՝ որ քան զոր յառաջէլ 'ի կարգս ածպաշտութե ։ Իսկ առ առաւել յարդարելոյ զբարեզարդութի եկեղեցւոյ իւրոյ՝ գրեաց առ երանելին մակար եմի հայրապետ , և խնդրեաց 'ի նմանէ զկարգաւորութիս եկեղեցւոյն եմացւոց 'ի պաշտամունս սրբ խորհրդոց և յայլ եկեղեցական արարողութիս , ըլ որում հաստատուն աւանդութբ իջեալ 'ի սորին յակոբայ առաքելոյ՝ ծեղբայր կոչեցելոյ , և համդխոացեալ առ բազում ։ Իսկ առեալ 'ի նմանէ զխնդրելին՝ յարմարեաց ինչ ինչ իւրումն վիճակի , լրացուցանելով զաւանդս հօր իւրոյ սրբ լուսաւորչին , և առաւել ևս պայծառացուցանելով ։ Ունէր երանելին վրթանէս ընտանի թղթակցութի և ըն սորին յակոբայ զգօն կոչեցելոյ՝ հայրապետին մծբնայ ․ յորմէ ընկալաւ և զօրինակ հոգելից ճառից նր , զոր՝ ոչ ցուցանէ ճառընտրին՝ խոստացեալ էր եղբօր
նր արխստակեայ ։

Այլ յառաջին ամն անդ կթղկոսութե սորին

վրբ

Վրթանիսի՝ եկեղեցին գործակալք յաղուանից, որ 'ի կողմանս փայտակարան էին, և խնդրեցին 'ի մեծէն տրդատայ արքայէ՝ տալ ինքեանց հովիւ զոք 'ի զարմէ զաւակաց սրբոյն գրիգորի. զի թերևս պատկառեսցեն յանուանէ լուսաւորչին՝ յորմէ լուսաւորեալ էին և ինքեանք, զգուշասցին 'ի պահել զօրէնս հաւատս և զկարգս ուղղութեան. քանզի էին բնակիչք կողմանցն հեթանոսամիտք և բարբարոսք՝ անհաւանք առաջնորդաց և քահանայից: Յայնժամ ետ թագաւորն ձեռնադրել վասն նոցա ուրոյն քահանայապետ իբրև կաթողիկոս 'ի մէջ աղուանից զերէց որդին սրբոյն վրթանիսի զերանելին գրիգորիս. որ էր պատանի տիօք իբր լինել, կատարեալ այլոց ժամանակաց, այլ հասակաւն բարձր, անձնեայ և առոյգ՝ նման հօկայազօրն տրդատայ, և գեղեցիկ տեսլեամբ. և՛ս առաւել հոգւով և միօք կատարեալ. և գրեցելովն՝ ալիք մարդոյ իմաստութիւն իւր:

Արդ՝ զսա յղեաց տրդատ արքայ և սանատրկոյ ումեմն իշխանի երևելւոյ յազգէ արշակունեաց 'ի քաղաքն փայտակարան 'ի կողմանս աղուանից. ուր սքանչելի երևեցաւ սրբոյն գրիգորիս առաքինի գնացիւք և յորդառատ վարդապետութեամբ՝ համանման հաւուն իւրոյ մեծին գրիգորի: Բայց վայրենամիտ բնակիչք այնր իբրև տեսին՝ թէ քաջ հովիւն յորդորէ զնոսա յերկիւղածութիւն և 'ի պատուիրանապահութիւն և օրինի քրիստոնէական անուան, և աներկիւղ կշտամբէ զանմարդի

բարս

քարս և զանարժան վարս նց՟, ոխակալին ընդ-դէմ երանելւոյն. այլ երկնչէին յահէ տըրդատայ ։

Այս եղև երբև լուեալ յետ ամաց ինչ զվախճան արքային տրդատայ, յարեան անօրէնքն ՚ի վր՟ սրբյ՟ կթղկսին իւրեանց գրիգորիսի՝ համախոհ ունելով զնա ինքն զսանատրուկ արշակունի, որ խորհէր թագաւորել ՚ի վր՟ սահմանացն աղուանից. և կալեալ զերանելին՝ կապեցին յագի ձիոյ, և վարեցին արշաւակի Ը՟ դաշտս և Ը՟ բլուրս. և այնպէս հարեալ ՚ի քարս և ՚ի թուփս՝ չարաչար խոշտակմամբք ա՟մ անդամոց կատարեցաւ մեծ նահատակն և սքանչելի այրն ա՟յ ՚ի վատնեան կամ ՚ի վատնիանեան դաշտի մերձ ՚ի ծովն կասպից ։ Ոսկորս զպատուական մարմնոյն բարձեալ սպաշտօնէիցն՝ բերեալ եդին ՚ի փոքր սիւնիս յամարեանն աւանի. ուր և յետ ժամանակաց սքանչելեօք յայտնեցաւ. ո՟մ ունիմք ձոխագոյն պատմել յաւուր գիւտի սր՟ նշխարաց նորա ։ Իսկ որք յաջորդեցինն յաթոռ սրբյն գրիգորիսի ՚ի փայտակարան և ՚ի գանձասար, կոչեցան կթղկսք աղուանից կամ գանձասարայ ։

Լուեալ մեծին վրթանիսի զայսպիսի կատարումն զուգահրեշտակ զաւակին իւրոյ, ո՟մ և զկանխաւ սպանումն սրբյն տրդատայ դեղով մահու յիւրոցն, ՚ի սուգ ներքին համակէր անփարատելի. քանզի ոչ չափ և զուն գործէր յա՟ծպաշտութի անդր կրթել զմերձաւորս և զհեռաւորս, տեսանէր զբազումս ՚ի

'ի փառաթափ անդր հակամիտեալ: Մինչ զի
և ամենք յանխրատից խորհէին դաւել և
զնա լինելն զՏէր հայրապետն. այլ Տէր պահեաց
զնա աքանչելեօք: Իսկ զի յաւուրս կատար-
ման մեծին որդատայ սրբն վրթանէս դատաւ-
'ի վկայարանս սրբ կարապետին 'ի մատրալանս
տարօնոյ. յայնժամ դաւաճանօղքն որդա-
ւոյ առաքեցին պատուհեր առ բնակիչս տա-
րօնոյ, զի սպանցեն և զհայրապետն վրթա-
նէս. և եղև 'ի յարձակիլ ամանց յանօրինաց
անտի 'ի վերայ սրբյն՝ կապեցան ձեռքն նց ան-
երևոյթ զօրութե. և երանելին էանց զնոց
ընդ մէջ նց անվնաս. և եկեալ 'ի թիլն աւանն՝
որ յեկեղեաց գաւառի, դադարեաց առ ժա-
մանակ մի առ տապանի եղբօր իւրոյ որբյն ա-
րիստակեսի, խնդրելով 'ի տնէ այցելութի
'ի վերայ հօտին իւրոյ. զի մի կորիցէ ազգն
նորահաւատ:

Իսկ քանզի անտէրունչ և անթագաւոր մնաց
հայաստան աշխ զամս երկուս, և բազմացան
չարիք 'ի վր երկրին յանմիաբանութէ նա-
խարարաց և յարշաւանաց պարսից, տեսեալ
աւագ իշխանաց և ազատաց բարեպաշտից՝
եթէ աշխն աւերի, և քրիստոնէութին լռեալ
դադարէ, ժողովեցան առ սրբն վրթանէս՝
խորհուրդ 'ի մէջ առնուլ վս հնարից խաղա-
ղութե աշխին: Ապա հաւանութբ ամենեցուն
գրեաց մեծն վրթանէս գիր աղաչանաց առ
կոստանդ կայսր որդի մեծին կոստանդիա-
նոսի 'ի թագաւորեալ քաղաքն 'ի կոստանդ-
նուպօլիս՝ ձեռն տալ լինելոց ընդ հայրե-
նի

նի բարեկամութեան, և թագաւորեցուցանել 'ի վ̄ր Հայոց զխոսրով զորդի մեծին Տրդատայ ։ Իսկ կոստանդ առաքեաց 'ի Հայս զանտիոքոս զօրավար զօրօք բազմօք ․ և նա միաբանեալ զերևելի նախարարս՝ թագաւորեցոյց զխոսրով, և կարգեալ զզօրս Հայոց և զյունաց յայլևայլ գունդս՝ առաքեաց ընդդէմ ապստամբաց, և խաղաղացոյց զն̄ս ։ Իսկ եղև յետ անցանելոյ ինն ամաց՝ յորժամ մեռաւ խոսրով, եկին անդրէն նախարարք առ ս̄բն վրթանէս, զի փոյթ կալցի 'ի ձեռն կայսեր նստուցանել զտիրան զորդի խոսրովու յաթոռ թագաւորութեան հօր իւրոյ ։ Իսկ ս̄բյն գրեալ 'ի խնդիր նոցա՝ գնաց անձամբ 'ի դուռն կայսեր հանդերձ տիրանաւ ․ և թագաւորեցուցեալ զնա՝ դարձոյց անդրէն 'ի Հայս ։ Իսկ եհաս ս̄բ Հայրապետն վրթանէս մինչև ցերրորդ ամն տիրանայ ․ և լցեալ զաւուրս իւր՝ խաղաղական մահուամբ և ի սրբեամբք փոխեցաւ յՔ̄ս ․ յետ ժե̄ ամաց կթղ̄կոսութեան իւրոյ ․ և եդաւ մեծաւ պատուով 'ի թորդան աւանի եկեղեաց գաւառի ․ քանզի այսպէս հրաման տուեալ էր երանելին (ըստ գրելոյ խորենացւոյն), ոչ թէ մարգարէական ակամբ տեսեալ թէ զկնի ժամանակի և մարմին հօր իւրոյ ս̄բյն գրիգորի անդր փոխադրելոց իցէ ․ որպէս և եղև իսկ՝ յորժամ եգիտ զայն ս̄բն գառնիկ, և եբեր 'ի թորդան ։

Իսկ զաթոռ հայրապետութեան ազգին կալաւ ս̄բն յուսիկ՝ կրտսեր որդի նորին ս̄բյն

վրթա

վրթանիսի , և եղբայր գրիգորիսի աղուա-
նից կաթողիկոսի , ամենեքին յար և նման հօրն և
եղբօրն առաքինութեաց՝ լի հոգւովն այ : Մա-
յաւաջագոյն մտեալ էր 'ի կարգ Տր , փե-
սայացեալ՝ որդի ասի , տիրանայ արքայի նախ
քան զթագաւորել նր . այլ յետ ծնանելոյ
զերկուս որդիս՝ որք կոչեցան պապ և աթանա-
գինէ , հրաժարական վարէր կեանս՝ աղօթա-
սէր գտեալ և ճգնասէր : Որդ իւրև ընտրե-
ցաւ 'ի կարգ եկեղեցական և յաթոռ հայ-
րապետական , յաւել և եւս 'ի ճգնութս և 'ի
մշտամռունչ աղօթս , փայլեալ սքանչելի սըր-
բութբ : Բայց որդիք նր չեղեն նման հօրն
իւրեանց . և ս առաւել թագաւորն տիրան՝
աներ կարծեցեալ յուսկան , և հաւ մահ-
կանացն 'ի մօրէ , խոտորնակի գնայր յնձա-
կողմն կոյս . և բազում անգամ խրատեալ
'ի սրբ հայրապետէն՝ ստուգանօղ լինէր . և
վարէր կեանս անհաղուբ և անպիտանութբ :
Ընդ այն ժամանակս յուլիանոս կայսր ու-
րացօղ՝ յաջորդ կոստանդեայ , մինչդեռ խա-
ղայր ընդ դէմ պարսից 'ի պատերազմ , առա-
քեաց 'ի հայս զպատկեր իւրն նկարեալ՝ 'ի տախ-
տակի հանդերձ ուրուականն և դիւականն
նմանութբք ըս հեթանոսական պաշտաման ,
հրամանն տուեալ տիրանայ հայոց արքայի՝
դնել զայն պատկեր յեկեղեցւոջ իւրում յա-
րևելից կուսէ , և պատուել : Իսկ տիրան
այր վատասիրտ՝ յանձն էառ առ ահի ուրա-
ցողին կատարել զգործն անարժան . եբեր
զդիւականն զայն պատկեր 'ի դաւառն ծո-
փաց ,

փայց, և ճեմոյծ յիւր արքայական եկեղեցին՝
զի կանգնեսցէ անդ :

Ազդ. եղև բանն յականջս սբյ հայրապետին յուսկաննն · փախեաց իսկ և իսկ յեկեղեցին, և հասեալ առ Թագաւորն՝ մինչդեռ 'ի ձեռին նորա էր պատկերն, խրատել սկսաւ զարքայն սիրով և սաստկութբ՝ յետս կալ 'ի հեթանոսական գործոյ անտի դիւապաշտութէ, զի մի պղծեսցի ինքն և եկեղեցի սբ : Նա յոչն անսալ Թագաւորին, բուռն եհար սբն յուսիկ, և կորզեալ զպատկերն դիւական 'ի ձեռաց արքայի՝ ընկէց անարգանօք 'ի գետին, և առաթուր կոխեալ՝ խորտակեաց և մանրեաց զայն քաջութբ :

Յայնժամ սրամտեալ տիրանայ, և յիշեալ զայլ ևս յանդիմանութիւս որ 'ի սբ հայրապետէն լեալ անկարգ գնացից իւրոց, յաւել զայն ևս 'ի վր, և հրամայեաց ջայլոտիւք ծեծել զնա յերկար · և յայն հարուածս աւանդեաց առաքինի նահատակն զհոգի իւր՝ զկնի վեցամեայ կթղկսուն իւրոյ · իսկ պատուական մարմին սբյն եդաւ պատուով 'ի Թորդան առ հօրն իւրում վրթանայ :

Այնուհետև ընտրեցաւ յաթոռ լուսաւորչին սբ ծերունին դանիէլ՝ ազգաւ ասորի, որ ձեռասուն աշակերտ էր սբյն գրիգորի, ձեռնադրեալ 'ի նմանէ քահանայ, և կարգեալ խնամակատար և քորեպիսկս 'ի վերայ [illegible]ին · որ և յաւուրս անդ ծերունի բնակեալ էր 'ի մենաստանի միում՝ 'ի վանսն կոչեցեալ հացեկաց դրախտ 'ի կողմանս տարօնոյ : Արդ.

իբրեւ ածին զերանելին Նատուցանել յաթոռ կաթողիկոսութեն , մինչդեռ Նորա առաջի արքային տիրանեայ՝ սկսաւ յանդիմանել զՆա բանիւ ճշմն վսն անօրէնութեն , զոր անիրաւեցաւ առ ա՛ն յուսինկ առ այլն այ , եւ յորդորէր ապաՆալ եօք յաձակոյս կողմանէ՝ զի զղջասցի եւ քաւեսցէ զմեղս իւր ձշմարիտ ապաշխարութբ ըստ այ ։

Իսկ յարհամարհել տիրանեայ զբան այն՝ անէծ զՆա դանիէլ իբրեւ զանուղղայ ծրգեալ ՚ի չարիս ։ Իսկ Թագաւորն մոլեալ բարկութբ՝ հրամայեաց փաղփաղակի խեղդամահ առնել զերանելին ․ եւ այնպէս կատարեցաւ սբ ծերունին դանիէլ ․ զորոյ զմարմինն բարձին աշակերտք Նորա շաղիտա եւ եղիփան , եւ տարեալ Թաղեցին ՚ի մենարանի Նորուն ՚ի հացեաց դրախտ ։ Բայց անէծք սբյն կատարեցաւ փաղփաղակի ՚ի վե տիրանեայ ․ զի կալաւ զՆա արքայն պարսից , եւ խաւարեցոյց զերկոսին աչս Նորա ․ եւ այնպէս զրկեալ ՚ի Թագաւորութենէ ՚ի վախճանի խեղդամահ ըսպանաւ ՚ի դաղձանի հրամանաւ որդւոյ իւրոյ արշակայ ։

Յայս ժմս ձոխագոյն ստորագրէ պատշաճաւոր գովասանութբ հնդեցունց սբ հայրապետացս՝ յառաւանձին Ներբողեան Նոցին , յովհաննէս վրդպ երզնկացի՝ որ եւ ծործորեցի , մականուանեալն պլուզ ․ ուր եւ յայս առնէ ցաւագնութբ՝ թէ որպիսի լուսաւորիչս խաւարեցուցին հարքն մեր , ապաշնորհ գտեալ առ Նախածնողս մեր ՟Ը հօգւոյ՝ ան

բաղմ-



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Եղիսէի մարգարէի:

Դ. յունիս. 17: Յ. և Լ. յունիս. 14: Է. Եւգ. ԺԲ. և Փ. Եւգ. Է=Բ. և ԺԷ: Բոլլանդեանն եսեեղբարք 'ի Է. հատ. յունիսի. եր. 784:



ԿՐԿԻՆ ՀՈԳԻՈՎՆ ԵՂԻԱ-յի մեծապայծառ փայլելովքն, չեղին Եղիսէ, որ և Եղիշա, մարգարէութ. ամեն և նշանագործութեամբ, և 20 անուանն իւրոյ՝ որ թարգմանի ած փրկիչ կմ փրկութի այ՝ նախանկար օրինակ ցուցեալ բազմաց ածեղէն նշանաց փրկչին մերոյ երևելոյ 'ի մարմնի, որդի էր սան չինականի սափատայ յաբելմաուլայ 'ի վիճակէ կիսոյ ցեղին մանասէի յայսկոյս յորդանանու: Արդ՝ յորժամ առաքեցաւ Եղիա մարգարէն յաւուրս հալածանաց յեզաբելայ՝ օծանել փոխանակ ըն իւր մարգարէ զեղիսէէ, եգիտ զնա յանդի, զի վարէր երկոտասան եզամբք. և խորև ընկեց Եղիա զմաշկեակն իւր 'ի վերայ նորա, վաղվաղակի փութացաւ աշակերտիլ նմա՝ ոչ առաքեալքն 'ի կոչ ան մերոյ. ողջոյն ետ՝ հրաժարեցաւ 'ի ծնողաց իւրոց, և եհառ զզոյգս զոյգս եզանցն, և եզեն. և

զմսն

գործեօք եզանցն հաստոյց զնոսա, և ետ ժո-ղովրդեանն և կերան, և յարեաւ գնաց զհետ Եղիայի, և պաշտէր զնա որպ՟ սպասաւոր կմ՟ փոքրաւոր:

Եւ եղև 'ի վերացուցանել Տն՟ զԵղիայ շարժ-մամբ յերկինս, մինչդեռ էին երկոքեան 'ի Գաղգաղա՝ պատմէր իմ՟ն Եղիա, որպ՟ թէ ինքն առաքի 'ի Տնէ 'ի Բեթէլ. վրյ դու նի՛ստ ասէ աստ: Իսկ Եղիսէէ գիտելով՝ եթէ յանկարծ ունի յափշտակել զնա Տր, ոչ մեկնե-ցաւ 'ի նմանէ երբէք. այլ ասէր, կենդանի՛ է Տր և կենդանի՛ է անձն քո, թէ թողից զքեզ. քանզի կամէր տեսող լինել վերաց-ման նր՟, և առնուլ զվերջին օրհնութիւն. որպ՟ և ժտելով խնդրէր 'ի նմանէ, թէ եղիցի կրկին ոգին քո 'ի վերայ իմ: Արդ որպ՟ ետես զվերանալ նր՟ առ յորդանանաւ, նոյնպէս և ընկալաւ զխնդիր իւր՝ յարկանել Եղիայի ըզ-մաշկեակն իւր նմա 'ի ժամու վերանալոյն. որով իսկ և իսկ արար զնոյն նշան՝ զոր տե-սեալ էր յԵղիա, զի մաշկեկաւն բաժանեաց զջուրս գետոյն, և էանց ըն՟ ցամաք:

Եւ 'ի նստիլ իւրում յԵրիքով՝ ըստ խնդրոյ բնակչացն բժշկեաց զանպիտան ջուրս տեղ-ւոյն, և արար առողջարար և բեղմնաւորիչ: Եւ 'ի Բեթէլ սաստեաց որդւոցն քրմաց ման-րիկ մանկտեաց, որք այպն առնէին զնա, կո-չեաց զնս՟ որդիք յանցանաց և դատարկութե՟. և անդէն ելին երկու արջք յանտառէն, և պա-տառեցին 'ի նոցանէ քառասուն և երկու ման-կունս: Իսկ Եղիսէ գնաց 'ի լեառն կարմե-

 ղոս,

րա բորոտեալ իբրև զձիւն ։ Խորհրդաւոր էր և այն, զի 'ի հարկանել որդւոց մարգարէիցն փայտս յեզր յորդանանու՝ վասն շինելոյ իւրեանց բնակութ̃ի, անկաւ 'ի ձեռաց միոյն երկաթն 'ի ջուր․ յայնժամ եղիսէ ձեղքեաց փայտ, և ընկէց անդր 'ի խորս․ և 'ի վեր եկաց երկաթն ։

Յայտնեաց եղիսէ արքային իէ̃լի զդարանս ասորւոց․ և արքային ասորւոց կարծէր՝ թէ մատնիչ կայցէ 'ի բանակէ իւրմէ․ և ասէ միումն 'ի ծառայից իւրոց․ ո՛չ ոք իմ արքայ, այլ եղիսէէ մարգարէ յիէ̃լի պատմէ արքայի իէ̃լի զա̃մ բանս զոր խօսիցիս 'ի սենեկի քնոյ քո ։ Եւ ն̃ր զժուժարեալ՝ առաքեաց կառս և երիվարս և զօր ծանր 'ի դովթայիմ, ուր էր յայնժամ եղիսէ՝ ունել զնա․ և եկին գիշերի, և պատեցին զքաղաքն ։ Իսկ եղիսէ կանխեաց յառնել 'ի պաշտօն առաւօտու, և ել զնաց ը̃ մէջ ն̃ց․ այլ քանզի երկնչէր պատանեակն, ասաց եղիսէ․ մի՛ երկնչիր, զի ընդ մեզ բազում են քան ը̃ ն̃ա․ որոյ վ̃ն իսկ յաղօթս եկաց մարգարէն, և ասէ․ տէ՛ր բա՛ց զաչս պատանեկիս, և տեսցէ․ և եբաց ա̃ր զաչս նորա, և ետես, և ահա լեառնն լի էր ձիովք, և հրեղէն կառօք շուրջ զեղիսէիւ ։ Եւ 'ի գալ թշնամեաց 'ի վ̃ն նորա՝ արք ոչն տեսանէին զերկնաւոր զօրս, եհար ա̃ր շլացութ̃բ զասորիս ը̃ բանին եղիսէի․ և եղիսէ ճանապարհ հորդեալ ն̃ց՝ տարաւ 'ի սամարիա․ և անդ բացան աչք նոցա․ և 'ի կամիլ արքային իէ̃լի կոտորել զն̃ս՝ ոչ եթող եղի-

Ձենաւ մեռելոյն յոսկերաց Եղիշէի՝ կենդանացաւ, և կանգնեցաւ 'ի վ՛ր ոտից իւրոց ։
Զայս վայր են բանք սր̃ գրոց զԵղիշէէ մարգարէէ ․ յոր յաւելլուն և ոմանք հրէից պէսպէս աւանդութիւս՝ կարծելով և ևս մեծացուցանել զնա ․ ուր չափ է գովութիւն մեծութե՛ն նր̃ յԱծ̃աշունչ տառից ։ 'Ի նոյն րաբբունեացն աւանդից առեալ է և այն՝ որ գրի 'ի յայսմաւուրս, թէ * մարգարէն Եղիշէ էր 'ի
„ 'ի յաբեղմաւուլայ յազգէն ռուբենի ․ և
„ յորժամ ծնաւ զնա մայր իւր, երկու ե-
„ րինջքն ոսկի՝ որ կային 'ի դան և 'ի բեթէլ՝
„ այնպէս գոչեցին մեծաձայն, զի լսելի եղև
„ յԵՀմ ․ և քահանայապետն՝ որ կայր 'ի տա-
„ ճարին՝ ասաց ․ մարգարէ մեծ ծնաւ այսօր,
„ որ բարձցէ զկռապաշտութիւն յԻէ ։ Սմին
նման գրեալ կայ և 'ի յունաց յայսմաւուրս ։
Այլ չէ արժան լսել այսպիսի կեղծեաց հրէական ազգին, որք անփոյթ առնեն զԱծ̃շմարտութ̃, և 'ի ստայօդ աւանդութիւս զբաղեցուցանեն զանձինս ։
Գրէ հերոնիմոս յարձանականն պաւղայի ; թէ երևելի ուխտատեղի էր յաւուրս իւր գերեզմանն Եղիշէի մարգարէի և աբդիու ընդ յովհաննու մկրտչի 'ի սամարիա՝ որ և սեբաստուպօլիս կոչեցաւ, փայլեալ սքանչելեօք ․ իսկ յետ ժամկաց մասունք ինչ նշխարաց Եղիշէի ասին բերեալ յաղեքսանդրիա և 'ի կոստանդնուպօլիս, և ապա յարևմուտս ․ այլ զայսցանէ ունիմք ասել ճոխագոյն 'ի ծանօթութիւս ։ (1)

ԾԱ



# ՏՕՆ ՍՐԲՈՑ

## Երկոտասան Առաքելոցն, և գլխաւորացն Պետրոսի և Պօղոսի :

Հ. յունիս. 29. և 30: Յ. յունիս. 29. և 30.
Լ. յունիս. 29:

Ո երկոտասան են զերկոտասան ժ̄բ առաքելոյ ք̄ի Տ̄ն̄յ մերոյ, լուսատուրքս աշխարհի, ոչ միայն ուրոյն ուրոյն կամ երկու երկու տօնեն յատանչին ա-ւուր յեղանակի նոցա՝ ամ եկեղեցիք քրիստոնէից, այլ և համախումբ տօնախմբեն յոյնք և հայք 'ի յունիսի 30, այսինքն միով աւուրբ զկնի տօնի գլխաւորացն պետ-րոսի և պօղոսի, որոց սեպհական տօնախմբութիւն կա-տարի առ ամենեսին 'ի յունիսի 29. այլ հայք կրկին նաև տօնեն զՊետրոս և զՊօղոս 'ի դեկտ. 27 կամ 28. 'ի կարգի առաջ տօնից. առ որ ունիմք և մեք առանձնել զկատարեալ պատմութիւն վարուց նոցա. որպէս և զիւ-րաքանչիւր առաքելոց յաւուր տօնի նոցա առանձինն : Բայց լիցի աստանօր նշանակել զպատմութիւն համա-գումար տօնախմբութեան նոցա ( զոր չունին Հռոմայե-ցիք ), 'ի բառիլեան մեկնեալ յայսմաւուրացն յու-նաց, որ ունի այսպէս. 'ի յունիսի. Լ.

* Տօնախմբութիւն ժ̄բ̄ց երկոտասան առաքելոց: Ուղղեա ,, և իւրաքանչիւրոք 'ի ժ̄բ̄ց առաքելոց յայլևայլ ,, ժամանակս վճարեալ, այլ արդ եկեղեցին ա՛յ 'ի նոյ-,, նոյն գերաշանցելով պարտուց տօնէ զհամախմբութիւն ,, նոյ

# ՃԱՌ Թ. ԴԻՈՎՆԵՍՏԻ

## Ի պատիւ համօրէն Առաքելոց:

ՏԻՐԱԿԱՆԻՆ ԱՐԺԱՆԱ-ցեալք երանութեան՝ երանելիք ոք առաքեալք, յայսմ ծի և 'ի հանդերձեալսն. և նմանապէս կրկնակի գովելիք և պանծալիք և նախանձելիք մեզ խնկապէս՝ յերկրի, և յերկինս: Առաքէն ըստ առաջնոյն ասէր առ նա բանն ճշմարտութեան. * Ձեր երանի է աչաց՝ զի տեսանեն, և ականջաց ձերոց՝ զի լսեն. ամէն ասեմ ձեզ, զի բազում մարգարէք և արդարք ցանկացան տեսանել՝ զոր տեսանէքդ, և ոչ տեսին, և լսել՝ զոր լսէքդ, և ոչ լուան: Յայտ է, թէ՝ զի երանելի աշակերտքն առաքելական կոչմանն պատուեալք՝ ականատեսք և սպասաւոր եղեն բանին երևելոյ 'ի մարմնի, նախաձայնելոյն 'ի մարգարէից անտի անդուստ 'ի հեռուստ ըղձափափաք տեսութիւն, և օրինակելոյն աղօտ օրինակաւ յազգի ազգի անցս նախահարց առաջնոց և նահապետաց արդարոց՝ ակնունողաց գալստեան փրկչին. և լուան զբանս և զխորհուրդս Աստուածայինս ընտանի կենակցութ 'ի բերանոյ անտի բանին Այ, յորում էմ գանձք

իմաս-

իմաստութիւն և գիտութիւն ծածկեալ կան ։
Այլ ըստ երկրորդին ասէր ․ * Ընդ այն մի՛
խնդայք , եթէ այսք հնազանդին ձեզ ․ այլ
խնդացէ՛ք , զի անուանք ձեր գրեալ են յերկ-
կինս ‖ ․ և դարձեալ՝ թէ * Այլ ես ուխտեմ
ձեզ , որպ և հայր իմ ուխտեաց ինձ զարքայ-
ութի ․ զի ուտիջէք և ըմպիջէք 'ի սեղան իմ
յարքայութեան իմում , և նստիջիք յերկոտա-
սան աթոռ՝ դատել զերկոտասան ազգ իսրայէլի։
Այլ արդ՝ զո՞րն 'ի կրկին մասանց աստի ան-
պատում երանութեան մարթ իցէ թարգմա-
նել հողեղէն լեզուի ․ և այն՝ անճաշակ ե-
ղելոցս յերկոցունց միանգամայն ․ յորոց մին
անցեալ անդառնալի , և միւսն հանդերձեալ
ակնունելի ։ Զի թէ կենաց կցորդ լեալ էր
իմ ժբ առաքելոց , որով և ժբ փրկչին Քի՝ 'ի
մի երկրի , թերևս փորձիւ բերկրապատար
խնդութիւն անձին կարող լինէի փոքր 'ի շատէ
և զառաքելոցն բարերջանիկ զայն վիճակ ըն-
տիր բանիւ բացայայտել ․ և կամ եթէ ժբ պա-
ղոսի 'ի վերուստ կոչեցելոյ յառաքելութի
յերրորդ ելեալ երկինս՝ զփառսն տեսանէի
զերանելի առաքելոց աթոռակցաց Քի և
վճռալի իւրեանց , գէթ դոյզն մի յանբաւ բա-
րեմասնութէ նշ ճառել իշխէի , զանճառսն
լուեալ զներքինս ․ զոր լինի վայելել , այլ
ոչ պատմել ։ Իսկ արդ՝ զիա՞րդ ․ և լաւէլ
զյայտնիս 'ի դէպ համարեսցուք առ անկա-
րութիւն խօսելոյ զանյայտոյց և զծածկեցե-
լոց ։ Մի՛ այդպէս ․ ոչ առաքեալն գրեալ է ,
* զխորհուրդ թագաւորի բարւոք է ծած-
կել ․

ԼՐ

·կել· այլ զգործս նոյ յայտնել՝ փառօք ‖ ։
Նաւ կարի իսկ քաջ · զի թէ երկինք պատմեն
զփառս նոյ , և զարարածս ձեռաց նր պատ-
մէ հաստատութի , յօրինակ երկնանման պայ-
ծառութե առաքելոց երկոտասանից՝ ԺԲ թուոյ
կենդանատեսակ զարդուց երկնից՝ ընտրե-
լոց · և եթէ լուսաւորն մեծ և փոքր՝ լուսա-
տու լինին տունջեան և գիշերոյ՝ 'ի տիպ
գլխաւոր առաքելոցն պետրոսի և պօղոսի ,
մեք զիա՞րդ անտես արասցուք ակնարկել 'ի
յայտնի տեսութի երանութե գեղեցիկ պա-
րու առաքելական դասուն · ո՞վ այն թէ առ-
չկարելոյ համարձակահայեաց լինել 'ի պայ-
ծառ դէմս արփւոյն՝ 'ի վայելից անգամ լու-
սոյն զանձինս գլխովին զրկեաք · կմ զիա՞րդ
անլօղ լինիցիմք տիեզերալոյր բարբառոյ
աւետարանութե աւետարանչացս սիոնի · ուր
ը· ամ երկիր ել բարբառ նոցա , և մինչև 'ի
ծագս տի են խօսք նց , եթէ աւետարանաւ ,
և եթէ թղթովք , եթէ բանիւ և եթէ գոր-
ծովք ։

Այլ դու՛ք երանեալք և փառաւորեալք յայ
և յած , և փառաւորիչք այ յերկինս 'ի վեր
և յերկիր 'ի խոնարհ · կոչեցեալքդ և ըն-
տրեալքդ , հրաւիրեալքդ 'ի սկզբանէ , և
վայելեալք յանսահման բարին՝ 'ի ժամանա-
կի , և յետ ժամանակի յաւիտեան և յաւի-
տեանս և ևս , երջանիկ դա՛սք առաքելոց ,
դո՛ք բան 'ի բերան իմ , աղաչեմ , խօսել
զձէնջ զէ՛թ չափով զարժանն և զօգուտն 'ի
պէտս լսելեաց , յուշ ածելով ևեթ տօնա-

սիրաց զձեզ սիրողաց՝ համբական աստուա-ցութեան, նախ՝ զոր յերկրի զձեր բարեմաս-նութի, և երկրորդ՝ զոր յերկինս յաւիտենա-կան է քան թէ գրութին:

Ո առաջինն այսպէս ինձ իմաստասիրեալ քեզ՝ ով հանդիսացեալ ժողովուրդք, լուսածնունդ զաւակք և հարազատ աշակերտեալք Երա-նելի առաքելոցն: Որ փառք կամ որ պատիւ և կամ որպիսի երջանկութիւն կայցէ յայսի, ոչ կոչել և ընտիր գտանիլ ի սպասաւորութիւն թագին թագաց և տեառն տերանց՝ քանի փրկչին մերոյ և այս մարդասիրելոյ. որ և զառհաւատ-չեայն անսուտ կնքէր առ պաշտօնեայս իւր՝ անզուգական խոստմամբ հանդերձեալ վար-ձուց ի փոխարէն գեղեցիկ պաշտամանն, եթէ՝ * ուր եմ ես, անդ և պաշտօնեայն իմ եղիցի||:

Իսկ որ պարծանք պարծանաց՝ տեառն երանութ լի, ոչ գրիլ ի զինուորութի զօրագլխին հա-ւատոց յիսի, անզէն և անսուսեր և անվա-հան՝ վանել վարել՝ հարկանել յաջ և յա-հեակ զօրաւոր զինուքն արդարութեան զ... և զիշխան ...ի միանգամայն, թիկնապահ և անձնապահապետ գոգցես երևելով տեառն ... զերաց. և այն՝ հանդերձ վկայութ գովութ հաւատարիմ նիզակակցութ առաքինի զօրա-կանացս յապենիազ տեառն անտի. քեզի ասէ: * և դուք էք՝ որք ցանգ կայիք ընդ իս ի փոր-ձութիս իմ||:

Կամ զի՞նչ այլ ցանկալի վեհական ընտրութե ի վերայ երկրի, ոչ աշակերտիլ առ տաս երկ-նաւ

Նաեւ որ վճապին՝ իջելոյն յերկնից յաղագս մեր մարդկան և վն մերոյ փրկութե . որ և ընտ-րանաւ և Թուով որոշեալ զերանելի պա-քեալսն յիւր ձեռատուն աշակերտութի՝ զոր ճմ. դա'ս ասէր նշ երկնային , և խօսէր ճծե-ղէն բերանովն մարդկապէս վն արքայութեն ճյ , և զանյայտս և զծածկեալս իմաստութե իւրոյ բանայր նոցա առաջի յայտապատում . և ուր առ ժողովուրդն առակօք հրապարա-կախօս լինէր , * առանձինն աշակերտաց իւ-րոց մեկնէր զճմ . զի ձեզ տուեալ է ( ասէ ) գիտել զխորհուրդս արքայութեն ճյ . բայց այլոցն առակօք լինի ։

Եւ պարզաբար՝ զինչ նախանձելի այլ , ոչ բարեկամ լինել քն , և հաղարապետ և խորհրդազգած խորոցն ճյ . * Դուք բարե-կամք էք իմ ( ասէր ճրն ցառաքեալսն ) , և-Թէ առնիցէք՝ զոր ես պատուիրեմ ձեզ . ոչ ես կոչեմ զձեզ ծառայս . զի ծառայն ոչ գիտէ՝ զինչ գործէ ճրն նր . այլ զձեզ կոչե-ցի բարեկամս , զի զճմ զոր լուայ 'ի հօրէ իմմէ , ծանուցի ձեզ ։

Այլ աքանչելեացս . որք աննշանք՝ զաւակք ձկնորսք յորդիս աբրահամեան տոհմին , և տխմարք յաշակերտս մովսիսական օրինաց , գեր 'ի վերոյ գտանին և' պատուով և' գիտու-Թե և ճծամերձ ընտանութե քան զաբրա-համ և քան զմովսէս . որք տգէտք և առանց դպրութե՝ խորագգած լինին , երկնային վար-դապետութե և գաղտնեաց միածնին հօր-որք գովելեացիք և որսորդք ձկանց՝ աջակից

լինելն բարձրելոյն աՀաւորի , և գործակից փրկագործին տիեզերաց , որ արարն զնոսա լինել տուողս մարդկան՝ առ 'ի ժառանգել զօղջս և զազգս յաւերժական աւետարանին . արք արՀամարՀք յաշս Տի՝ սիրելիք և ընտանիք լինին նոյ , խոստակիցք և Հացակիցք , ընթացակիցք , և վաստակակիցք . միով բանիւ ասել , Հաղորդք և կցորդք նն իւրեանց և վճարիչ յամ՛ 'ի տնօրինական գործս նր :

Սոյ և զկնի իջման Հոգւոյն սրբ՝ նովին զօրացեալք սքանչելապէս՝ ընթացան ընդ տիեզերս , և աշակերտեցին վճարին իւրեանց քնի . արծուօրէն խոյացան , և առիւծաբար շաՀատակեցին յասպարէզ Հանդիսի աւետարանական քարոզութե . և յաղթօղ գտեալ որ՝ ամ ընդդիմակաց զօրութե երևելի և աներևոյթ թշնամւոյն , յեղափոխեցին զՏս Համօրէն 'ի նոր կերպարան ածաՀրաշ , Հանդերձ նշանօք և արուեստիւք մեծամեծօք , գերագոյն Հանդիսացեալք զօրաւորաց և իմաստնոց և Ճականաց . վսյ ոչ առաւելուե , այլ նուազութեն առաւել ըղձաձայնէ զառաքելոց եկեղեցի զառածն դաւթեան . *Ձայնք երկրի , իշխանք Տի , անպակաս գանձուց բաշխօղք . և որ սոցին նման են :

Որ այնուՀետև պարծանք Հողեղինաց պարծելոց յերկրաւոր վիճակս արքունիս , յիշխանականս և 'ի մեծաՀարուստս , 'ի գիտնաւորս և 'ի զօրաւորս , բարձրապատիւս և գերապատիւս . զի մարդ 'ի մարգոյ և առ մարդկան զաստուածս երկրի , և զատա-

նէ

նի երրէք մեծարու : Իսկ Տր. առաքեալք՝
յԱյ և առ Այ մեծացեալք և վերապատ-
ուեալք եղեն և եղիցին յայժմ հետէ մինչև
յաւիտեան : Իսկ այս Այ անքննին տեսութեն
գործ՝ յառաքելոյ անտի յայտնաբարբառ քա-
րոզեալ . * Օրինակս Յիս (ասէ) ընտրեաց
Ած, զի յամօթ արասցէ զիմաստունս . և
զտկարս Յիս ընտրեաց Ած, զի յամօթ ա-
րասցէ զհզօրս . և զանտոհմս Յի և զարհա-
մարհեալս ընտրեաց Ած և զոչինչսն, զի զէսն
իմն խափանեսցէ . ոպ զի մի պարծեսցի ամ
մարմին առաջի Այ ‖ : Իսկ այս 'ի մեր ամենե-
ցուն մխիթարութե կոչեցելոցս 'ի քս, զի
փոյթ կալցուք պինդ պահել զկոչումն, և
Է̃ ընտրեալս գոլ . ոպ և կանխէ ասել առ-
ետեղ . * Թէպէտև զձեր իսկ կոչումնդ տե-
սէք եղբարք, զի ոչ բազում իմաստունք ըստ
մարմնոյ, և ոչ բազում հզօրք, և ոչ բազում
ազնուականք ‖ : Ոչ կոչեաց զհերովդէս ար-
քայ, ոչ զկայիափա քահանայապետ, ոչ զիշ-
խանս հրէից, և ոչ զբարձրայօն դպիրս և
զփարիսեցիս . այլ զխոնարհս և զանպիտան
կարծեցեալս յաչս Յի և յաչս անձանց իւ-
րեանց :

Այլ ձեզ հաւատացելոցդ ասեմ՝ կոչեցելոց
'ի քս Տրց 'ի ձեռն Տր. առաքելոց, ծաներուք
զպարգ. կոչման ձերոյ ընդ ընտրեալ առա-
քեալսն, զի արժանի լինիջիք շնորհս առ-
նուլ և ընտրութե փոխանակ շնորհաց կոչ-
ման . ապա թէ ոչ՝ երկերուք, հայեցեալ յոր-
դին կորստեան . որ զնոյն շնորհս ընկալաւ

ցէն կոչողին, և ոչ մեկնեցան 'ի հետոց նորա կենօք և մահու։

Իսկ մեք որպէս. զառաքելոցն սբց զկոչումն և զընտրութիւն նախանձելի վարկանիմք, և շնորհաց նոցա խղճ լինիմք, և վիճակի նոցա երանեմք. այլ 'ի գործոց անտի նց 'ի բաց խուսափեմք. զհաւատս նոցա դաւանեմք ունել, այլ իբրև անյոյսք՝ անպտուղ գտանիմք, զի չեն հաւատք մեր սիրով յաջողել։ Ո՞ւր, և ո՞ 'ի մէնջ խաչասէր է պետրոսի և անդրէի. ո՞ւր և ո՞ ոք 'ի մէնջ պատրաստ վս անուանն քի 'ի գլխատումն և 'ի տապականումն ոտղ զյակոբոս և զյովհաննէս. ո՞ նման նոց վաստակոց և կրիցն պօղոսի՝ ընդ զչարչարանս քի 'ի մարմնի իւրում վս մարմնոյ նր, զի եկեղեցւոյ սբյ, մեռեալ էի, և կենդանի 'ի քս, պարծելով 'ի խաչն կենարարին. ո՞ ճշմարիտ աշակերտ յոր հանգոյն այլոց առաքելոցն՝ քրտամբ և արեամբ չափ. որք ամ յերկրի եղեն խաչակցեալք ընդ քի, նոյնպէս և ընդ նմին թագաւորեսցեն 'ի յերկինս։ Իսկ մեք կամիմք աստ թագաւորել ընդ քի, և անդ. որում անհնար է լինել. զի և տէրն ասաց. * իմ թագաւորութիւն չէ յայսմ աշէ ‖. և թէ՝ * ո՞չ զնոյնս պարտ էր չարչարիլ քի, և մտանել 'ի փառս իւր ‖. և առաքեալք նորա եղեն միաբան վկայութն, թէ * բազում նեղութբ պարտ է մեզ մտանել յարքայութիւն այ ‖։ Այլ թէ ո՞չ են արժանի չարչարանք ժամանակիս համբերձելոյն փառաց, մեկն զրկեաց պօղոս. և մեք յարդեանց անտի ի-

քան զքնուէն , և բազմաշահ քանքարով յար-
գեցին զտաղանդս շնորհաց տն 'ի մեծի պաշ-
տաման , վասն և 'ի գերբնական վիճակ պար-
գևական՝ յերանութեան երկնից ասեմ , անհա-
մեմատ է քան զմիտ դասս սոցա՝ յաղթանակ-
նոցին և պսակ և փառք . զոր նա միայն գի-
տէ՝ որ հանդիսադիրն է նն և պսակիչ : Մեզ
զայն ևեթ է ասելի , զոր Ճշմարտեալ գի-
տեմք յհանաւր տեսութեամբ , զի սոքա են
ընտրեալք յընտրելոց , և փառաւորք 'ի փա-
ռաւորաց երկնից արքունեաց , մեծամեծք և
ընտանիք երկնաւոր արքային , և գերագոյնք
քան զվերագոյնս յաստիճանս պէսպէս և 'ի
զանազանեալ օթևանս հօրն երկնաւորի , և
գլխաւորք և մեծագոյնք 'ի նմ՝ որք ըստ տն
ձայնի մեծ կոչեսցին յարքայութեան երկնից :
Իսկ մի ոք յերկբայեսցի . զի թէ յերկրի փա-
կակալ արքայութեան երկնից երանելին պետ-
րոս , զի՞նչ անդ յերկինս իցէ . եթէ աստ ե-
րեցփոխան քսի և հովիւ ոչխարաց նորա , և
վէմ հաւատոյ , և գլուխ եկեղեցւոյ , զի՞նչ
անդ կարծիցես 'ի վեր քան զհաստատութիւն
մարդկեղէն մտաց : Իսկ պօղոս եթէ աստէն
տեսող անՃառելի դրախտին և երրորդ երկ-
նից . անօթ ընտրութեան արարչին իւրոյ , հե-
թանոսաց առաքեալ՝ հայր համատարած և
զտիեզերս աշակերտեալ , ո՞րպիսում արդեօք
փառաց իցէ ժառանգորդ 'ի թգրութեան երկ-
նից : Այնորինակ և զմիոյ միոյ յառաքելոցն
իմասցիս , և զբոլորեցունց առ հասարակ .
զորոյ զնծապատիւ բարձրութիւն ընդ առաքե-
լոց

անպատում թգ̃րութեան երանելի առաքելոյն
քո յարքայութեան անդ Նր . յոր վայելեն և
վայելեսցեն անկորուստ և անկապտելի՝ յաւ-
ւերժական անմահութք ՚ի մշտնջենաւոր կեն-
դանութեան ընդ Այ կենդանւոյ յաւիտենս յաւ-
իտենից ։ Ո՜վ ՚ի մեծամեծաց Տր , կամ ՚ի
բազմազանն կարծեցեալ մեծատանց իշխե-
ցէ ոք ՚ի կշիռ դնել ընդ անքաւ մեծութեան Նց
և անչափ հարստութե . որոց անսպառ Ճո-
խութիւն է ինքն իսկ Թագաւորն փառաց Քս՝
հանդերձ Հարբ և ամենասուրբ Հոգւով ։ Ո՜վ
՚ի հզօրաց կմ՝ ՚ի փառաւորաց Տր , կմ՝ ՚ի չնՏիկ
անուանեալ գեղաւորաց և յամենայնի բախ-
տաւորաց՝ համարեսցի ոք նմանեցուցանել մե-
ում ՚ի յետնոց և ՚ի փոքունց յարքայութեան
երկնից , թող թէ ընդ աւագագս և մեծամե-
ծաց . ընդ առաքելոց ասեմ սրց՝ երջանկաց ,
փառաւորելոց , Քսազգեցից և Քսացելոց ։
Այսու հետև տկարանայ բանս ձգել յառա-
ջել անդր . ահաւասիկ ձեզ՝ ով աշակեր-
տեալքդ առաքելոց սրց , մատամբ ծայրիւ
նշանակեցի զընտրեալս Այ , և զերանութի
Նց յերկրի և յերկինս . հայեցարուք յառե-
ցարուք խորհրդով մտաց և հոգւոյ ակամբ՝
որչափ և բաւական իցէք , ՚ի մեծութի շնոր-
հաց և փառաց Նց , ՚ի Ճոխութի սքանչելի
մեծութեան Նց , ՚ի գեղ անճառամ վայելչու-
թեան Նց , և ՚ի զօրութի զօրացելոցն յԱյ և յԱծ ,
արիական նահատակաց , առաքինի զօրակա-
րաց , ժիր մշակաց , քաջ հովուաց , Տնտե-
սուց ոստիկանաց , տիեզերաց գիտապետաց ,

տիե-

տիեզերալոյս վիճակաց, եկեղեցւոյ հիմանց, ածապատիւ քահանայապետաց, քսի բարձակից իշխանաց և աթոռակից դատաւորաց, իսկապէս ծնողաց մերոց հոգւով յորդիս այ. և զի՞նչ ես տացից. Ճշմարիտ աշակերտաց և երանելի առաքելոցն քսի, հարազատ սիրելեաց և որդեկաց և բարեկամաց արարչին իւրեանց։ Որոց զօրաւոր մաղթանօք և շնորհաբաշխ ողորմութբ լիցի մեզ ամենեցուն՝ զհետ ընթանալ զհետոց նց, և Ճանապարհին՝ որ տանի առ ած. և 'ի նոյն վիճակ երանութե հասանել 'ի քս յս 'ի տր մեր. որում և ընդ որում հօր ամենակալի և կենդանարար սբ հոգւոյն փառք և երկրպագութի յաւիտեանս. ամէն։

---

Մաղթիմ առ ձեզ՝ աղերս սրտի,
Ով Առաքեալք՝ հովիւք հօտի,
յեկեղեցւոյ դիմաց աստի,
տենչմամբ ոգւոյ՝ վերառաքի։
Նայեցարուք յերկնից անտի,
'ի հօյլս խաշանց՝ ձեր արօտի.
առաջնորդել՝ դէպ ուղղակի,
յերկնից գաւառ փափաքելի։
Հայեցարուք սիրով ծնողի,
'ի պանդխտեալս աստէն յերկրի.
'ի ձեր ծընունդս որովայնի,
հոգւով երկնեալ՝ ազգաց որդի։
Ձեր եմք զաւակք 'ի սիօնի,
աշակերտեալք՝ ձերում բանի.

ձեր

Ձեր ձեռագործ աշխատալըն ,
'ի տիրական տնկեալ յայգի :
Արդ կարօտեալ կամք յիրաւի ,
ձեռընտուութին ձեր հզօրի ·
նեղեալք հոգւով 'ի հոգս սրտի ,
թօղ , տառապեալք և 'ի մարմնի :
Կամք վատթարեալ վարանելըն ,
'ի չար մեղաց հարեալ յօգի ·
տնանկացեալ` կարօտ շնորհի ,
հիւանդ մտօք` անյօյսք յերկրի ·
Գիտէք ըզմերս ազգի ազգի ,
ցաւս և ըզվէրս անբժերելի ·
միշտ տեսանէք ա՛չք ընտանի ,
ըզմեր կարիս յամենայնի :
Գիտէք զօրաւորք 'ի հանդիսի ,
դեղ դարմանոյ մեր միակի ·
դի՛ք խոցոտածոցս ըսպեղանի ,
ըզկարօտեալս լցէ՛ք հացի :
Խաւարեալոցս լոյսք աշխարհի ,
ծագեցարո՛ւք` որպէս զարփի ·
անհամելոցս` ո՛վ աղք երկրի ,
համեղութին տո՛ւք արժանի :
Իշխանութին ունիք յերկրի ,
թէ և ննջեալք այժմ 'ի յերկնի ·
փոյթ հասանէ՛ք յամենայնի ,
որում առ ձեզ ապաւինի :
Այլ օգնութին մեզ պիտանի ,
մեծ կարևոր` յօր օրհասի ·
նոյն և յահեղ անդ ատենի ,
'ի թիւ լինել ձեր սբ հօտի :

Ացէ

Ինչ՞ երկնից փակակալն ,
բանալ զդուռն մեզ արքունի ․
և երկնաւոր գործակալն ,
տալ մեզ տեղի յօթևանի ։
Նաև սբ՟ սիրոյն աշակերտի ,
մեզ հանդիպել ը՟ սիրելի ․
և խաչակիր մեծն անդրեի ,
հանդիստ շնորհել խաչազգեցի ։
Բարթուղիմեոս ընդ Թադէի ,
հայել'ի հայս՝ ը՟ զաւակի ․
առաքելոցդ հանուր գնդի ,
ուրախ առնել զմեզ 'ի հոգի ։
Օ ի յանվախճան կեանս բերկրալի ,
զուգապարեալ ձերում խմբի ,
փառաւորեսցուք անլռելի ,
զՀայր և զՈրդի և զսբ՟ Հոգի ։



# ՑԱՆԿ

## ՎԱՐՔԻՑ ՍՐԲՈՑ

### որ 'ի Հատորն Գ.





ժէ

# ՎԱԽՃԱՆ

Հատորիս.

